ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԱԶԳԱՅԻՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԻ — ԹԻՒ 12



# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

ԳՐԵՑ
ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ

ԳԱՀԻՐԷ
ՏՊ. ՆՈՐ - ԱՍՏՂ
1950

# ՑԱՆԿ


Էջ

*Յառաջաբան* ա

Ա. ՄԱՍ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ 1

Ա.

ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ԱՇԽԱՐՀԱՄԱՍ 2

Բ.

ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՀԱՅԵՐՈՒ ԲՆԱԿԱՎԱՅՐ 4

Ա. Հայ ազգին ցեղագրական կերտուածքը 5
Բ. Հայ-Արմէններու գրաւած տարածութիւնը իրանեան տիրապետութեան շրջանին 9
Գ. Բնիկ հայ թագաւորներու շրջանին հայերու ցեղագրական նուաճումները 12
Դ. Արաբական արշաւանքներէն մինչեւ թրքական տիրակալութիւն 20

Գ.

ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՀԱՅԱԽՕՍ ԵՐԿԻՐ 26

Դ.

ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՀԱՅԱԴԱՒԱՆՆԵՐՈՒ ԵՐԿԻՐ 33

Ե.

ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՊԱՏՄԱԿԱՆ ԵՐԿԻՐ 46

Զ.

ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՊԵՏՈՒԹԻՒՆ 56

Ա. Արտաշէսեան հարստութեան շրջան (Քր.է առաջ 189—1 Քր.է յետոյ) 57
Բ. Արշակունի թագաւորներու շրջան (66—428) 58
Գ. Պարսիկ-Բիւզանդ. տիրապետութիւն (428—640) 60
Դ. Արաբական տիրապետութեան շրջան (654—885) 61
Ե. Բագրատունեաց շրջան (885—1045) 63
Զ. Բիւզանդական տիրապետ. շրջան (1045—1071) 65
Է. Սելջուկեան » » (1064—1220) 66
Ը. Մոնկոլեան » » (1220—1380) 70
Թ. Էօզպէք-թաթարական » » (1380—1467) 75
Ժ. Թուրք, պարսիկ եւ ռուս » » (1467—1918) 81
ԺԱ. Անկախ Հայաստան 88

## ՅԱՒԵԼՈՒԱԾ

ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԴՈՒՐՍ ՀԱՅ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ 95

Ա. Սեբաստիոյ Արծրունի թագաւորութիւնը 97
Բ. Գագիկ Բագրատունիի Պիզուի » 97
Գ. Գագիկ Աբասեանի Ծամնդաւի թագաւորաւ. 97

Էջ

Դ. Պահլաւունիք եւ այլ իշխանական տուներ 97

ՓԻԼԱՐՏՈՍԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ 100

Ա. Մարաշի իշխանութիւնը 103
Բ. Քեսունի » 103
Գ. Եդեսիոյ » 103
Դ. Անդրիունի » 104
Ե. Ծովքի հողատիրութիւն 104
Զ. Պիրի իշխանութիւն 104
Է. Արեւընտանի հողատիրութիւն 104
Ը. Կարկառի իշխանութիւն 104

* * *

Ա. Տարսոնի իշխանութիւն 105
Բ. Լամբրոնի եւ Պապեռոնի իշխանութիւն 105
Գ. Ռուբինեանց իշխանութիւն 105
*Ա. Կիլիկեան թագաւորութեան բեկորներ* 106
*Բ. Կիլիկիա Ֆրանսական հովանիի տակ* 107

Բ. ՄԱՍ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԵՐՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ 113

Ա.

ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (640—1045) 115

Ա.

Բագրատունեաց թագաւորութիւն 115

Բ.

Բագրատունի տան բաժանումները 122
*Ա. Վանանդի կամ Կարուց թագաւորութիւն* (961—1064) 123
*Բ. Կիւրիկեան Բագրատունեաց թագաւորութիւնը կամ Օձունի իշխ.ը* (980—1249) 125
*Գ. Դրուց Աշխարհի թագաւորութիւն* (1021—1039) 127

Գ.

Արծրունեաց թագաւորութիւն 129

Դ.

Սիւնեաց թագաւորութիւն 139

Ե.

Տարօնի իշխանապետութիւն 146
*Ա. Տարօնի Բագրատունի իշխանութիւն* 150
*Բ. Սասունի իշխանութիւն* 153

Զ.

Հայկական փոքր իշխանութիւններ 155
*Ա. Կոգովիտի իշխանութիւն* 156
*Բ. Մոկաց* " 158
*Գ. Անձեւացեաց* " 161
*Դ. Խաչէնի* " 164
*Ե. Սեւորդեաց կամ Սերվոդենց իշխանութիւն* 166

Է.

Աղուան իշխանութիւններ
*Ա. Աղուանից թագաւորութիւն* 170
*Բ. Գարդմանի իշխանութիւն* 173
*Գ. Փառիսոսի թագաւորութիւն* 174
*Դ. Բաղաց կամ Կապանի թագաւորթ.* 175
*Ե. Ծարի թագաւորութիւն* 176
*Զ. Դիզակի* » 177
*Է. Անդրկուրեան Աղուանք* 177

Ը.

Մահմեդական իշխանութիւններ 179
*Ա. Կայսիկ էմիրներ* 180
*Բ. Աղձնիքի կամ Արզնի էմիրները* 192
*Գ. Փատլունեանք կամ Շատտատիկեանք ի Գանձակ* 197
*Դ. Գողթան ամիրաներ* 200
*Ե. Դուին* 203

Թ.

Հայ-վրական պետութիւններ 206
*Ա. Վրաստանի Բագրատունի թագաւորութ.* 209
*Բ. Արտանուջի թագաւորութիւն* 217
*Գ. Ափխազներու կամ Եգերացւոց թագւ.* 218
*Դ. Տայքի կիւրապաղատ թագաւորութիւն* 223
*Ե. Սպերի իշխանութիւն* 228

Բ.

ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1046—1071) 232

Ա.

Դերջանի պրոտոսպաթարութիւն եւ Տարօնի զօրավարութիւն 242

Բ.

Վասպուրականի գաւառապետութիւն կամ կուսակալութիւն Արեւելից 244

Գ.

«Տանն Հայոց իշխանութիւն» կամ Անիի կուսակլք. 248

Դ.

Բիւզանդական մանր իշխանութիւններ 251
*Ա. Չորրորդ Հայոց բնիկ իշխանները* 251
*Բ. Թէոդոսուպոլիսի (Կարին-Էրզրում) հրամանատարութիւն* 253
*Գ. Մանազկերտի իշխանութիւն* 254
*Դ. Երզնկայի* » 254

Գ.

ՍԵԼՋՈՒԿ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1064—1220) 257

Ա.

ՀԱՅ ԱՆԿԱԽ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ 259

Ա.

Բագրատունի թագաւորութիւններ 259
*Ա. Տաշիրքի թագաւորութիւն* 259
*Բ. Կախէթի կամ Ջորագետի թագաւթ.* 260
*Գ. Տաւուշի* " 261
*Դ. Մածնաբերդի* " 261
*Ե. Ծանարաց* " 262

Բ.

Սիւնեաց թագաւորութիւն 263
*Ա. Արեւելեան Սիւնեաց կամ Բաղաց եւ Կապանի միաց. թագաւորութիւն* 263

Գ.

Արծրունեաց տան մնացորդներ 265
*Ա. Վանի, Ամուկի եւ Աղթամարի իշխողները* 265
*Բ. Մահկանաբերդի իշխանութիւն* 269

Դ.

Մամիկոնեանց մնացորդներ 270
*Ա. Սասունի իշխանութիւն* 270
*Բ. Դսեղի Մամիկոնեանց իշխանութիւն* 273

Ե.

Արցախ կամ Խաչէն
*Ա. Հաթերք կամ Վերին Խաչէն* 275
*Բ. Ներքին Խաչէն կամ Խոխանաբերդ* 276

Զ.

Պահլաւունիք 277

Է.

ՎՐԱ-ՀԱՅ ՀԱՄԱԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ 281
*Ա. Վրաստանի Բագրատունիք* 281
*Բ. Զաքարեանց իշխանութիւն ի Հայաստան* 285
*Գ. Զաքարեանց հովանաւորած եւ կազմած իշխանութիւններ* 289
1. Վահրամեան 289
2. Վաչուտեան 290
3. Օրբէլեան 290
4. Պռօշեան կամ Խաղբակեան 292
5. Դոփեան 293

Գ.

ՄԱՀՄԵՏԱԿԱՆ ԷՄԻՐՈՒԹԻՒՆՆԵՐ 294

Ա.

Արաբական շրջանէն մնացողներ 296
*Ա. Շատտատիկեանք կամ Փատլունեանք* 296

Ա. Շատտատիկեանք կամ Փատլունեանք ի Գանձակ 296
Բ. Շատտադիկեանք կամ Փատլունեանք Անիի մէջ 297
Գ. » » » ի Դուին 299

Բ.

Հարաւային Հայաստանի Արաբ եւ Քիւրտ էմիրներ
Ա. Համտանեաններ կամ Համտանիններ 299
Բ. Նփրկերտի Մերուանեան էմիրութիւն 300

Գ.

Սելջուկեան շրջանին կազմուած էմիրութիւններ 302

Ա.

Հայաստանի Սելջուկ Փոխարքայութիւն 302
Ա. Գանձակի էմիրութիւն 304
Բ. Աթաբէկեանք (1156—1225) 305

Բ.

Հայաստանի կէս անկախ Սելջուկ-Թուրքմէն էմիրութիւնները 308
Ա. Սալտուքեանք Կարնոյ մէջ (1070—1201) 309
Բ. Մենկուչեանք Երզնկայի մէջ (1071—1227) 311
Գ. Կարսի էմիրութիւնը 310
Դ. Խլաթի էմիրութիւն (Շահի Արմէններ) (1100—1207) 311
Ե. Օրթոքեանց Թուրքմէն էմիրութիւններ 314
1. Մուֆարղինի եւ Մարտինի Օրթոքեանք 315
2. Հասան Քէֆի էմիրութիւն (1101—1231) 318
3. Խարբերդի Օրթոքեան Իշխանութիւն 318
Զ. Դանիշմենտեան էմիրներ (1071—1175) 321
Է. Գոնիայի Ռումի Սելջուկ Սուլթանութիւնը (1076—1300) 322
Ը. Մուֆարղինի եւ Խլաթի Էյուպեանք 324

Դ.

ՄՈՆԿՈԼԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1220—1380) 326

Ա.

Հայաստան Մոնկոլ վարչութեան տակ 326
Ա. Հայաստան ուղղակի մեծ Մոնկոլին ենթակայ (1236—1251) 327
Բ. Հայաստան՝ մաս Իլխանեան իշխանութեան (1251—1335) 328
Գ. Անիշխանութեան եւ խառնակութեանց շրջան (1335—1380) 332

Բ.

Վրա-հայկական իշխանութիւններ 337
Ա. Վրաստան 337
Բ. Զաքարեանք 340
Գ. Վահրամեանք 344
Դ. Վաչուտեանք 345
Ե. Մահկանաբերդի իշխանութիւն 345
Զ. Դսեղի » 345
Է. Մածնաբերդի թագաւորութիւն 346
Ը. Շոթոռկանց իշխանութիւն 346
Ազիզբէկենք 473
Թ. Արցախի կամ Խաչէնի հայ իշխանութիւններ 346
1. Ներքին Խաչէնի Ջալալեանք 347
2. Դոփեանք 348
3. Դիզակի իշխանութիւն 349
4. Խաղբակեանք կամ Պռօշեանք ի Խաչէն 349
5. Մեծ կողմանց կամ Կուենից իշխանք. 349
Ժ. Խաղբակեանք կամ Պռօշեանք ի Սիւնիք 350
ԺԱ. Օրբէլեանք 351
1. Մայր ճիւղ 351
2. Ձեգարի ճիւղ 354
3. Ջալալեանք 354
4. Լիպարիտեանք 354
ԺԲ. Շահունեցիք 355

Գ.

Խլաթի իշխանութիւն 356

Դ.

Վասպուրականի հայ իշխանութիւնները
Ա. Աղթամար 356
Բ. Ամուկ 357

Ե.

ԵՕԶՊԷՔ ԹԱԹԱՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ (1380—1467)

Ա.

Հայաստանի մէջ Թիմուրեան վարչութիւն 358

Բ.

Թուրքմէն իշխանութիւններ
Ա. Գարագոյունլուներ կամ Եուսուֆեանք (1380—1469) 360
Բ. Ագգոյունլուներ կամ Պայընտրեանք 362

Գ.

Հայ իշխանութիւններ 362
Ա. Զաքարեանք 363
Գ. Օրբէլեանք 363
1. Որոտնայ ճիւղ 363
2. Եղեգեաց » 364
Գ. Խաղբակեանք կամ Պռօշեանք 364
Դ. Արցախի կամ Խաչէնի իշխանութիւններ 365
Դոփեանք եւ իրենց բաժանումները 365
ա. Այտինեցիք 365
բ. Ուլուբէկեանք 366
գ. Ջիանշէցիք 366
Դ. Ծարի իշխանութիւն 367
Ե. Վասպուրականի հայ իշխանութիւններ 367
1. Ամուկ 368
2. Աղթամար 369
3. Ոստան 370
4. Մակուի Իշխողներ 372

Դ.

Վրաստան 373

Էջ

## Զ.

ԹՈՒՐՔ, ՊԱՐՍԻԿ ԵՒ ՌՈՒՍ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1467—1918) 375

Ա.

Պարսկահայաստան 376

Ա.

*Հայաստանի պարսիկ խաները* 376
- Ա. Երեւանի խանութիւն 376
- Բ. Գանձակի » 379
- Գ. Ղարաբաղի կամ Շուշիի խանութիւն 382
- Դ. Նախիջեւանի » 385
- Ե. Շիրուանի կամ Շամախիի » 386
- Զ. Շաքէի կամ Նուխիի » 389

Բ.

*Հայ իշխանութիւններ* 390
- Ա. Խամսայի մելիքութիւններ 393
  - 1. Խաչէն 395
  - 2. Ջրաբերդ կամ Ջարաբերդ 396
  - 3. Դիզակ կամ Դուզախ 397
  - 4. Վարանդա 399
  - 5. Կիւլիստան 400
- Բ. Գանձակի մելիքութիւնները 401
  - 1. Գարդման (Ոսկանապատ) 401
  - 2. Բարսումի մելիքութիւն 402
  - 3. Գետաշէն 402
  - 4. Մեծ Բանանց եւ Խաչակապի գիւղ 402
  - 5. Միափոր գաւառ (Մեծ Ղարա Մուրատ) 403

* * *

Տերպենտ (Խաչ-Մառ) 403
- Գ. Գեղամայ երկրին մելիքութիւնները 403
  - 1. Ծար 403
  - 2. Սոդ 405
- Դ. Ղափանի մելիքութիւնները 405
  - 1. Անգեղակոթ 406
  - 2. Բռնակոթ 407
  - 3. Տաթեւ 407
  - 4. Քաշաթաղ 407
  - 5. Բրիտիսի մելիքութիւն 409
  - 5. Հալիձոր եւ Բեխ 409
- Ե. Դաւիթ Բէկի իշխանապետութիւն կամ Ղափանի անկախ իշխանութիւն 410
- Զ. Դաւիթ Բէկի ստորադաս կառավարչութիւններ 414
  - 1. Չաւնդուր 414
  - 2. Բարկուշատ կամ Քիւբարա 414
  - 3, Մեղրի-Գենուազ 415
- Է. Դաւիթ Բէկի իշխանութեան վերջին բեկորները 416
  - 1. Հալիձոր եւ Բեխ 416
  - 2. Գորիս 417
  - 3. Տեղ 418
  - 4. Խնձորեսկ 418

Գ.

*Քրիստոնեայ իշխանութիւններ* 418
- Ա. Վրաստան 418

Բ.

Թրքական Հայաստան 425

Ա.

*Հայաստանի թրքական վարչութիւնը* 425
- Ա. Ճելալիներ 427
- Բ. Ապազա փաշայի իշխանութիւն (1623—1627) 429
- Գ. Շէյխ Օղլու Օսլոյի իշխանութիւն (1785—1787) 430

Բ.

*Հայաստանի աննուաճ մասերը* 431
- Ա. Հայ ազատ համայնքներ 432
  - 1. Մոկս 432
  - 2. Շատախ (Ջերմաձոր) 433
  - 3. Խիզան կամ Հիզան 433
  - 4. Սասուն 433
  - 5. Իսեան կամ Իսքեան 435
  - 6. Սավուր 43
- Բ. Քրտական ինքնավար շրջաններ 436
  - 1. Կեդրոնական Հայաստանի քուրտ աւատապետութիւն (Պիթլիսի կամ Բաղէշի իշխանապետութիւն 440
  - 2. Արեւելեան Հայաստանի քուրտ աւատապետութիւն ·Հեքեարիի կամ Ճուլամերկի իշխանապետութիւն 447
    - *ա. Վանի քուրտ աւատապետներ* 449
    - *բ. Խօշապի կամ Մահմուտիյէ իշխանութիւն* 451
    - *գ. Ճուլամերկի կամ Հեքեարիի »* 453
    - *դ. Ոստան — Գաւաշ* 454
    - *ե. Բերկրի — Արճէշ* 455
  - 3. Ամատիյէի իշխանապետութիւն 456
  - 4. Հարաւային Հայաստանի քուրտ իշխանութիւններ (Ճէզիրէի իշխանապետութիւն) 456
    - *ա. Ճէզիրէ* 457
    - *բ. Տէրսիմ* 459
    - *գ. Խարբերդ* 460
    - *դ. Բալու* 460
    - *ե. Էկիլ կամ Ակլ* 460
  - 5. Հիւսիսային Հայաստանի քուրտ աւատապետութիւն (Պայազիտի փաշայութիւն) 461
    - *ա. Մանազկերտի իշխանութիւն* 461
- Գ. Նեստորական Անկախ Համայնք 462
- Դ. Վրացի անկախ իշխանութիւններ (Ախըլցխայի փաշայութիւն) 463
- Ե. Լազ ձորապետութիւններ 465

Գ.

Ռուսական Հայաստան 466

*Ռուսական վարչութիւն* 470
- Ա. «Հայկական աշխարհ» 470

*Յաւելուած* 473

*Վրիպակներ* 474

*Ցանկ* 476



ՊՍԱԿ ԱՆԹԱՌԱՄ

ԿՆՈՋՍ

# ԱՆՆԻԿ Ա. ԱԼՊՕՅԱՃԵԱՆԻ

(ԾՆ. ԿՈՏԱՆԵԱՆ)

(1879 Կ. Պոլիս — 1941 Գահիրէ)

ԱՆՄՈՌԱՑ ՅԻՇԱՏԱԿԻՆ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Երբ 1941ին հրատարակուեցաւ իմ «Պատմութիւն Հայ Դաղթականութեան» գործը, ոմանք գրաւոր եւ բերանացի, իբր կարեւոր պակաս մը, մատնանիշ ըրին թէ չէին ճշդուած Հայաստանի սահմանները, գիտնալու համար թէ ո՛ւր էր հայ ազգին բուն հայրենիքը, եւ թէ ո՛ր սահմաններէն անդին հայերը պէտք է նկատուէին գաղթականներ։

Կ՚ընդունիմ, թէ այս դիտողութիւնը անարժէք ու աւելորդ չէր:

Արդարեւ պէտք էր ճշդել Հայաստանի սահմանները, Մայր-Հայրենիքին եւ գաղթականութիւններու միջեւ տարբերութիւնը ցոյց տալու համար, վասնզի Հայաստանի անմիջական սահմաններուն վրայ գաղթականութիւններ գոյութիւն ունէին եւ կային երկիրին չորս բոլորը աշխարհամասեր, որոնք այնքան հայաբնակ էին որքան Հայաստանի ուէէ մէկ մասը:

Այս պատճառով իսկ Հայաստանի սահմաններր գծելու պէտքը, թէեւ ոչ զերծ դժուարութիւններէ, անհրաժեշտութիւն մըն էր, որուն կարեւորութիւնը ըմբռնելով, ձեռնարկեցի փորձի մը, ճշդելու Հայաստանի սահմանները, ո՛չ թէ աշխարհագրական կամ քաղաքական անձուկ իմաստով այլ աւելի լայն տեսութեամբ մը, Հայաստանը սահմանելով վեց տարբեր հիմնական ըմբռնումներով:

Այս մասը աւարտելէ վերջ, գաղափարներու զուգորդութեամբ մը մղուեցայ, Հայաստանի ներքին սահմաններով զբաղիլ, ինչ որ ոչ նուազ կնճռոտ հարց մըն էր, վասնզի Հայաստան այնպիսի հողամաս մըն էր, որուն մէջ կազմուած հայ եւ օտար իշխանութիւնները բնաւ տեւականութիւն եւ հաստատունութիւն չէին ունեցած եւ իրենց սահմանները շարունակ փոփոխութեան ենթարկուած էին:

Այս գործը իբր առաջադրութիւն եւ իբր գործադրութիւն, իր տեսակին մէջ նորութիւն մըն է վասնզի իր նախընթացը չէ ունեցած:

Զայն պատրաստողը, իր բոլոր կարելին ըրած ըլլալով հանդերձ, բնաւ յաւակնութիւն չունի, անթերի եւ կատարեալ գործ մը երեւան հանած ըլլալու, վասնզի հեռու մեծ կեդրոններէ՝ եւ կանոնաւոր մատենադարաններէ, ձեռքի տակ չէ ունեցած լայն միջոցներ, եւ հնարաւոր ամէն աղբիւր պրպտելու պատեհութիւն:

Հետեւաբար պէտք է ներողամիտ աչքով դիտուին թերութիւնները եւ վրէպները, որոնք անխուսափելի կերպով պատահած պէտք է ըլլան։

Ես հիմ մը եւ խարիսխ մը ստեղծել աշխատեցայ, աւելի կարողներու թողլով յառաջիկային աւելի մանրակրկիտ ուսումնասիրութիւններ կատարել, եւ սրբագրել իմ թերիներս եւ լրացնել պակասութիւններս։

Այսպիսի գործերու մէջ անթերիին ձգտիլ, անկարելին հետապնդել է, ուստի ըրի ես ինչ որ կարելի էր ինծի համար, թողլով ուրիշներուն զայն լրացնելու գործը։

Նկատելով թէ նիւթը կարելի պիտի չըլլար ներկայացնել առարկայական կերպով, առանց աշխարհագրական քարտէզներու, կցեցի գործին քարտէզներ, որոնց մեծ մասը բոլորովին աննախընթաց՝ իմ կողմէս ուրուագծուած են եւ շատ սուղ արժած են ինծի. սակայն գործը արժէքաւորելու եւ աւելի մատչելի եւ հասկնալի դարձնելու տեսակէտով կարեւոր դատեցի անոնց պատրաստութիւնը։ Այդ քարտէզները պէտք չէ նկատել գիտակոն ճշգրտութեամբ պատրաստուած, բայց իրենց այս ձեւին մէջ գոնէ նիւթը առարկայացնելու եւ զայն ընթերցողին աչքին առջեւ ներկայացնելու կը ծառայեն:

Մէկ խօսքով, ոչ մէկ զոհողութեան առջեւ ընկրկեցայ, Հայ ազգին պատմութեամբ հե-

տաքբքրուող հայ անհատներու հարցասիրութեան գոհացում տալու եւ մեր պատմութեան մութ էջերը լուսաբանելու համար։

Այս գործին պատրաստութեան ատեն, Հայոց Պատմութեան բոլոր սովորական դասագիրքերու մէջ գրուած եւ ամենուն յայտնի անցքերու եւ իրողութեանց վրայ չեմ ծանրացած։ Իսկ ընդհակառակը մեր երկիրին մէջ տեղի ունեցած այն դէպքերը, որոնք մեր պատմութեան չեն անցած, ինչպէս նաեւ մեր հայրենի հողին վրայ կազմուած հայ եւ օտար այն իշխանութիւնները եւ տէրապետութիւնները, որոնց յիշատակութիւնը շատ անցողակի եւ պատահաբար եղած է մեր պատմութեան մէջ, ներկայացուցած եմ իբր առանձին առանձին իշխանութիւններ, եւ իրենց պատմութիւնը զէթ համառօտ կերպով ուրուագծած եմ։

Այս մանր իշխանութիւնները, երբ նոյն ժամանակամիջոցին եւ նոյն հողամասին մէջ իրարու դրացի եղած են, բնական է անոնց պատմութիւնները իրարու հետ կապակցութիւններ ունեցած են, բայց որովհետեւ ծրագրուած էր անոնցմէ ամէն մէկը ներկայացնել իբր առանձին միութիւն մը, որչափ կարելի է կրկնութիւններէ զգուշանալով եւ յղումներ ընելով հանդերձ, տեղ տեղ կրկնութիւններ եղած են, պարզապէս պատմութեան շղթան չխզելու համար:

Նոյնպէս պարտք կը համարեմ դիտել տալու թէ Հայաստանի հողին վրայ ապրող մեծ ու փոքր հայկական թագաւորութիւններու եւ իշխանութիւններու, որքան որ ուշադրութիւն ընծայած եմ, նոյնքան ալ կարեւոր համարած եմ մեր երկիրին մէջ կազմուած Մահմետական իշխանութիւններու վրայ խօսիլ ըստ կարելւոյն ընդարձակ, որպէս հայ ժողովուրդին պատմութեան մէկ էջը, որ պէտք եղածին պէս նկատի չէ առնուած ցարդ:

Հայկական փոքր իշխանութիւններու եւ այս ոչ-հայ տէրութիւններուն պատմութիւնը, կեանքը եւ գրաւած վայրերը ի վեր հանելու համար գոյութիւն ունեցող դժուարութիւնները, աղբիւրներու սակաւութիւնը կամ ինծի համար անմատչելի ըլլալը, բացատրել աւելորդ կը համարեմ. Բոլոր անոնք որ այս նիւթերուն հետաքրքրութիւնը ունեցած են, իմ ըսածս պիտի հաստատեն:

Էջեր կան այս գործին մէջ, որոնց խմբագրութիւնը մեծ դժուարութիւններ պատճառած են:

Գուցէ իմ կարողութենէս վեր գործի մըն էր որ ձեռնարկած էի, սակայն անվհատ շարունակեցի, քննութիւնը թողլով հմուտներուն եւ ուսումնասիրողներուն:

Կը խորհիմ թէ յառաջիկային պէտք է գտնուին ուրիշներ, որ յատուկ ուսումնասիրութեան առարկայ ընեն կարգ մը Հայ եւ Իսլամ պետութիւններու պատմութիւնը, մանաւանդ հատորներով:

Ես կը մտածեմ թէ այս գործը իր այս — գուցէ պակասաւոր — ձեւին մէջ, առաջնորդ մը կրնայ ըլլալ ամէն հայու որ հետաքրքրութիւններ ունի իր ազգին անցեալին մասին եւ կ'ուզէ վերլուծել Հայոց Պատմութիւնը կամ գաղափար մը կազմել թէ յաջորդական դարերու մէջ ինչ փոփոխութեանց ենթարկուած էր հայ երկիրը եւ հոն բնակող հայոց կեանքը եւ լուսաբանել շատ բաներ որոնք պէտք եղածին պէս լուսաբանուած չեն:

Մենք յաճախ կը կարդանք մեր պատմութեան մէջ անուններ, որոնց ո՞վ եւ ի՞նչ ըլլալը անծանօթ կը մնայ, նոյնպէս կը հանդիպինք յիշատակութեանը իշխանութիւններու, որոնք ե՞րբ հիմնուած եւ ե՞րբ վերջացած ըլլալը անյայտ է:

Եթէ մէկը քիչ մը աւելի խորաթափանց միտքով մօտենալ փորձէ մեր պատմութեան, եւ ուզէ գիտնալ թէ ո՞վ էր այնինչ քաղաքին էմիրը եւ ի՞նչ դեր կատարած էր այնինչ գաւառին իշխողը, պիտի պարտաւորուէր պրպտումներ կատարել եւ երկար ժամանակ կորսնցնել իր հետաքրքրութեան գոհացում գտնելու համար եւ թերեւս ալ պիտի չկարենար պէտք եղածին պէս լուսաբանուիլ:

Այս գիրքը մանաւորապէս պիտի ծառայէ հայ հետաքրքիրներու, զանազան դարերու մէջ Հայաստանի աշխարհագրական եւ քաղաքական միջավայրը աչքի առջեւ ունենալու եւ ըստ այնմ ըմբռնելու Հայոց կեանքը, տրուած ժամանակագրական պայմաններուն մէջ:

Ասոր համար կը խորհիմ թէ այս գիրքը Հայ տուներու մէջ Աստուածաշունչին եւ Հայոց Պատմութեան գիրքին քով իր տեղը ունենալու իրաւունքը պիտի ունենայ։

Կը ցաւիմ որ զանազան պատճառներով կարելի չեղաւ աւելի շքեղ եւ աւելի խնամեալ տպագրութեամբ մը հրապարակ հանել այս գործը։

Նոյնպէս դժբախտաբար չկրցայ արհեստագիտական պատճառով գիրքին մէջ յատուկ անուններու բառարան մը զետեղել, որուն պէտքը կ'ընդունիմ, բայց հնար չեղաւ: Թերեւս յառաջիկային այս պակասը լրացնելու առիթը ունենամ տարբեր կերպով:

* * *

*Հոս, այս յառաջաբանին մէջ պարտք կը համարեմ շնորհակալութիւններս յայտնել այն նիւթական եւ բարոյական աջակցութիւններուն համար որ ինծի ընծայեցին մի քանի բարեկամներ: Նախ մեծապէս երախտապարտ եմ մասնաւորապէս Ազգ. Հիմնադրամի Վարչութեան, որ որդեգրեց այս գործը իր հովանաւորութեան եւ պաշտպանութեան տակ առնելով, եւ անհրաժեշտ դիւրութիւնները ընծայելով:*

*Նաեւ շնորհակալութիւններս, Պր. Գէորգ Մըսըրլեանի, որուն հրատարակած գործերէն, մասնաւորապէս Իպն Խալլիգան-ի թարգմանութենէն, մեծ չափով օգտուելէ զատ, օգտուած եմ իր բարեյօժարութեամբ յատկապէս ինծի համար կատարած Մուհամմէտ Պէյ Ֆէրիտ Վէճտիի Համայնագիտարանի ինչ ինչ հատուածներուն թարգմանութիւններէն, որոնց համար շնորհապարտ եմ իրեն:*

*Նոյնպէս շնորհակալութիւն Պր. Պետրոս Տէփոյեանի, որ վերընթերցումով, սպրդած վրիպակներու ցուցակին կազմութեան իր օժանդակութիւնը բերաւ:*

*Նոյնպէս շնորհակալ եմ Պր. Հայկ Ժամկոչեանի, որ առաջին մասին փորձերու սրբագրութիւնը կատարեց սիրայօժար։*

*Շնորհակալութիւն նաեւ Պր. Յակոբ Թիւֆէնկճեանի, որ գործին տպագրութեան խրախոյս տուաւ 50 եգ. ոսկի տրամադրելով, իբր բաժանորդագրութիւն:*

*Պարտիմ շնորհակալութիւն յայտնել նաեւ վիմագրող Պր. Խաչիկ Էմճեանի, որ քարտէզներու տպագրութեան համար իր կարելի խնամքը չզլացաւ։*

* * *

*Հոս աւարտելով այս քանի մը բացատրական տողերը, հարկ կը դատեմ ըսելու թէ Հայագիտութեան պատմութեան ճիւղին նպաստ մը բերելու տեսակէտով, ծրագրած եմ իբր Հայ ազգին պատմութեան լրացուցիչներ եւ վերլուծումներ, Հայ Գաղթականութեան Պատմութեան Բ. հատորին հրատարակութենէն վերջ, եթէ տակաւին կեանք շնորհուի ինծի, պատրաստել նաեւ Հայ նախարարութեանց եւ Հայ եպիսկոպոսութեանց պատմութիւնները, ինչպէս նաեւ հայկական ընդհանուր ժամանակագրութիւն մը։*

*Այն ատեն իմ տարիներու իղձս լրացուցած պիտի ըլլամ։*
*Չեմ գիտեր թէ պիտի կարենա՞մ լրացնել այս առաջադրութիւններս:*

16 Մարտ 1950 — *ԱՐՇԱԿ ԱԼՊՕՅԱՃԵԱՆ*

Մաքարիա - Գահիրէ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ.—

Հարկ կը դատեմ ընթերցողներու ուշադրութեան ներկայացնել թէ աշխարհագրական քարտէզներու իւրաքանչիւրին կռնակը գրուած են բացատրական լուսաբանութիւններ, որոնք պէտք է նկատի ունենալ:

## ՀԵՂԻՆԱԿԻՆ ՏՊԱԳՐԵԱԼ ԳՈՐԾԵՐԸ

| | |
|---|---|
| 1. *ՍՐԲՈՒՀԻ ՏԻՒՍԱԲ*, տպ. Վենետիկ, 1901, | գին՝ 0.50 Զց. Ֆր. |
| 2. *ԸՆԴԱՐՁԱԿ ՕՐԱՑՈՅՑ Ս. ՓՐԿՉԵԱՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻՆ ՀԱՅՈՑ*, 1908 տարի. տպ. Կ. Պոլիս | |
| 3. *Նոյն*, 1909 տարի, տպ. Կ. Պոլիս | |
| 4. » 1910 » » » » | Ե. Դ. |
| 5. *ՊՈՒԼԿԱՐԱՑ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ*, տպ. Վառնա, 1910 | 2 |
| 6. *ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊ*, իր կեանքը եւ իր գործը, տպ. Կ. Պոլիս 1919 | 10 |
| 7. *ՄԻՆԱՍ ՉԵՐԱԶ*, իր կեանքը եւ իր գործը, տպ. Գահիրէ 1927 | 20 |
| 8. *ԱԶԱՏ ՄԻՏՔ*, շաբաթաթերթ, քաղաքական, գրական եւ տնտեսական, մէկ տարուան 52 թիւ, տպ. Գահիրէ 1936-7 | 50 |
| 9. *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԿԵՍԱՐԻՈՅ*, Ա. եւ Բ. հատոր, տպ. Գահիրէ, 1937 | 120 |
| 10. *ԳՐԻԳՈՐ ԿԵՍԱՐԱՑԻ ՊԱՏՐԻԱՐՔ ԵՒ ԻՐ ԺԱՄԱՆԱԿԸ* տպ. Երուսաղէմ 1936 | 5 |
| 11. *ԹՈՐԳՈՄ ՊԱՏՐԻԱՐՔ ԳՈՒՇԱԿԵԱՆ*, տպ. Գահիրէ, 1940 | 30 |
| 12. *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԵԱՆ*, տպ. Գահիրէ, 1941 | 25 |
| 13. *ՀԱՅ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԸ*, տպ. Գահիրէ, 1945 | 15 |
| 14. *ՀԱՅ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ՄԸ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ Ի ՀԱՊԷՇԻՍՏԱՆ ԺԷ. ԴԱՐՈՒՆ*, տպ. Գահիրէ, 1946 | 30 |
| 15. *ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅ ԴՊՐՈՑԻ*, Ա. հատոր, տպ. Գահիրէ, 1947 | 100 |
| 16. *ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՔԻՆ ԵՒ ՆԵՐՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ*, տպ. Գահիրէ, 1950 | 200 |



# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

## Ա. ԱՐՏԱՔԻՆ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

ՀԱՅԱՍՏԱՆ ո՞ւր կը գտնուի:

Որո՞նք են իր սահմանները. մինչեւ ո՞ւր կը տարածուի Հայոց երկիրը. ո՞ւրկէ անդին այլեւս հայ երկիր չէ. ո՞ւր Հայերը բնիկ են եւ ո՞ւր գաղթական:

Ահա հարցումներ որոնց պատասխանել շատ դիւրին պիտի ըլլար, եթէ Հայաստանի սահմանները գէթ մօտաւորապէս ճշդուած ըլլային:

Դժբախտաբար Հայաստան որոշ սահմաններ ունեցող երկիր մը չէ, եւ այդ սահմանները գծելու փորձը զերծ չէ դժուարութիւններէ, քանի որ ասիկա կապ ունի շատ մը աշխարհագրական, ցեղագրական, հնախօսական, պատմական առաւել կամ նուազ վիճելի հարցերու հետ:

Նախ պէտք է գիտնալ, թէ Հայաստան բառը աշխարհագրական բացատրութիւն մը չէ միայն, ան ունի մէկէ աւելի այլ առումներ:

«Հայաստան» կոչումը մեր միտքին մէջ կ'արթնցնէ գաղափարը

Ա. *Երկրի մը կամ աշխարհամասի մը*,

Բ. *Ազգի օրրանի կամ բնակավայրի մը*,

Գ. *Հայալեզու կամ հայախօս տարածութեան մը*,

Դ. *Հայադաւան կամ հայակրօն աշխարհամասի մը*,

Ե. *Պատմական երկիրի մը*՝

Զ. *Պետութեան մը* կամ *քաղաքական կառոյցի* մը:

Յայտնի է, որ այս բոլորը իրարմէ տարբեր բաներ են վասնզի Հայաստան ըսելով՝ թէեւ կը հասկնանք երկրամաս մը, սակայն անիկա աշխարհագրապէս իր շրջապատէն բոլորովին անջատուած չէ, ինչպէս անոր ամբողջ տարածութեան վրայ, իբրեւ ազգի մը բնակավայրը, անխտրաբար Հայեր չեն բնակած երկար դարեր, հայ լեզուն անոր բոլոր սահմաններուն մէջ տիրող լեզու չէ եղած, հայ կրօնքը անոր ամէն սահմաններուն մէջ չէ տարածուած, երկիրը պատմականօրէն հայ ցեղէն կախում չէ ունեցած եւ հայ պետութիւն մը հինէն ի վեր անընդմիջաբար զայն չէ կառավարած: Ասկէ զատ Հայաստանի աշխարհագրական, ցեղագրական, լեզուական, պատմական եւ պետական սահմանները ներդաշնակ միութեամբ չեն համապատասխանած իրարու, գրեթէ հայ ազգին գոյութեան ամբողջ տեւողութեան, վասնզի Հայաստանի պատմական, ցեղագրական, լեզուական եւ պետական սահմանները, դարերու ընթացքին հաստատուն վիճակ մը չեն ունեցած, այլ եղած են յարափոփոխ:

Այս պատճառով ալ դժուար է յստակ գիծերով, ներկայացնել Հայաստանի սահմանները, իր այլազան իմաստներով: Սակայն եւ այնպէս հարցը այնքան մեծ կարեւորութիւն ունի, գաղթականութեան պատմութեան տեսակէտով, որ կ'արժէ փորձել ներկայացնել այդ սահմանները, գէթ մօտաւորապէս կարենալ ճշդելու համար, թէ Հայերը ո՛ւր բնիկ են եւ ո՛ւր գաղթական:

# Ա.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ԱՇԽԱՐՀԱՄԱՍ

Երբ Կովկաս կ'ըսենք, սոսկ աշխարհագրական տարածութիւն մը ունինք աչքի առջեւ: Մինչ Ունկո-Սլաւիա, Չեխօսլովաքիա, Պելճիգա, Հոլանտա, Տանիմարքա, Շուէտ, Նորվեկիա, Սպանիա Փորթուկալ եւայլն պետութիւններ են, որոնց անունը աշխարհագրական չէ, այլ ցեղագրական կամ պատմական:

Ունկո-Սլաւիա Պալքանեան թերակղզիին մէջ պետութիւն մըն է, որ իր անունը տուած է իր գրաւած աշխարհամասին, իսկ Տանիմարքա, Շուէտ, Նորվեկիա, որոնք կը գտնուին Ուրբլանտի եւ Սքանտինաւիայի մէջ, պատմական անուններ են եւ աշխարհագրական նշանակութիւն մը չունին:

Շատ քիչ են այն երկրանունները — ինչպէս են Ֆրանսա եւ Գերմանիա— որոնք միեւնոյն ատեն իրենց կը միացնեն գաղափարը թէ՛ երկրի մը եւ թէ՛ ցեղի մը պատմական բնակավայրին, ուր ազգին լեզուն կը խօսուի մէկ ծայրէն միւսը եւ ուր ան կ'իշխէ իր ըստեղծած պետական կառոյցով:

«Հայաստան» այդ քիչերէն մէկն է, վասնզի այս բառը, մեր միտքին մէջ կ'արթնցնէ գաղափարը աշխարհամասի մը, որ կը գտնուի Մերձաւոր Ասիոյ մէջ, Սեւ, Կասպից եւ Միջերկրական ծովերու միջեւ եւ կը տարածուի արեւմուտքէն արեւելք, Եփրատի ձախ եզերքէն՝ Մելիտինէի առջեւէն մինչեւ Արաքսի եւ Կուրի խառնարանը, ո՛չ հեռու Կասպից ծովէն, իսկ հարաւէն հիւսիս՝ Տիգրիս գետէն, Ճեզիրէ Իպն Օմարի մօտերէն մինչեւ Կուր գետը՝ դէպի Թիֆլիս:

Այս ծայրագոյն կէտերուն մէջ Մեծ Հայքի սահմանը կը նշանակուէր արեւմուտքէն Եփրատի աւազանը Երզնկայէն սկսեալ մինչեւ այն կէտը, ուր յիշեալ գետը Սամոսատէն վեր կը կտրէ Տաւրոսը՝ նախ քան Միջագետքի հարթութիւնը, ուր ան բոլորովին կը մօտենայ Տիգրիսի ակունքներուն: Հարաւէն՝ Տիգրիսի աւազանէն մինչեւ Ճեզիրէ Իպն Օմար, ապա Քիւրտիստանի լեռները եւ Մեծ Զաբը, որ կը տանէր Հայաստանը դէպի Ուրմիա, համանուն լիճին վրայ: Արեւելքէն գիծով մը որ կ'երթայ Մանանդէն Ուրմիա մինչեւ Արաքս, ապա Արաքսով մինչեւ Կուրի խառնարանը, հիւսիսէն Կուր գետ մինչեւ Թիֆլիսի շրջակայքը, դուրս ձգելով Թիֆլիսը, ուր Վրաստանը, կը մտնէր որոշ տարածութեան մը վրայ, գետին աջակողմը, ապա Երզնկայէն սկսեալ Հայաստանի սահմանագիծը, կ'անցնէր Եփրատի եւ Ճորոխի աւազաններէն (J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam էջ 299—300):

> «Մեծն Հայաստանի այս ընդհանուր սահմանագիծը մնացած է նոյնը հին դարերէն մինչեւ մեր օրերը: Ասիկա մօտաւորապէս Հերոդոտոսին սահմանումն է. ասիկա նշգրտօրէն Պլինիոսի, Պտղոմէոսի, Ստրաբոնի, Պրոկոպիոսի սահմանագծումն է. սահմանումը միջնադարեան հեղինակներու եւ արդի պատմաբաններու եւ աշխարհագէտներու, ըլլան արեւելքցի կամ արեւմուտքցի, Հայ թէ ուրիշ ազգութիւններէ»:

Այսպէս հին պատմագիրներէն Հերոդոտոս (Ե. 52), Պլինիոս (*Բնական Պատմ. Զ. Թ.*) Պտղոմէոս (Ե. Գլ. 12), Ստրաբոն (էջ 527), Պրոկոպիոս (*Յաղագս պատերազմաց Պարսից* Ա. ժէ. եւ *յաղագս շինուածոց* Գ. ա. 1), ինչպէս նաեւ Միջին Դարերու պատմիչներէն Մովսէս Խորենացի (Ա. դպ. գլ. ը.), Ագաթանգեղոս (*ՃԺԲ*), Անանուն (*Սեբէոս*, տպ. Թիֆլիս, 1912 էջ 13) եւ Իտրիսի (*Աշխարհագրութիւն*, Amedée Jauberth Ֆրն. թրգ. 1836, 1840, Բ. հտ. էջ 236) եւ այլ, եւ ժամանակակից հեղինակներէն Հիւպշման (*Հին Հայոց տեղւոյ անունները*), Գէորգ Ասլան (Etudes Historiques sur le peuple arménien. Paris, 1909 էջ 153—156) Տոք. Յակոբ Թօփճեան (Politische und Kirchengeschicte unter Achot I. und Sembat I. Westasiat Studien VIII. 1905, էջ 137) Tournebize, (Histoire politique et religieuse de l'Arménie, Paris. 1910 էջ 6), J. de Morgan (Histoire du peuple arménien, Paris—Nancy, 1914 էջ 27 եւ յաջորդներ), միաձայնութեամբ կը հաստատեն նոյնը:

Արդ, յայտնի է թէ Հերոդոտոս կ'ապրէր Քրիստոսէ հինգ դար առաջ, Ստրաբոն Ա. դարուն Քրիստոսէ առաջ եւ միւսները մինչեւ Ե. դար մեր թուականին:

Իսկ աւելի ուշ ժամանակներու կը վերաբերին մեր պատմագիրները եւ Խորենացիին վերագրուած Աշխարհագրութիւնը (1) որոնք այս շրջանակը կը ճանչնան

(1) Մի անգամ ընդ միշտ պէտք է ճշդել, թէ այս Աշխարհագրութիւնը կը ներկայացնէ ներքին փաստեր, որոնք առաւելին անոր խմբագրութիւնը կատարուած ցոյց կու տան Է. դարուն:

Այս փաստերուն վրայ հիմնուած՝ Ք. Պատկանեան, Բրօֆ. Աշոտ Աբրահամեան եւ Ստեփանոս Մալխասեան անոր հեղինակը կը համարեն Անանիա Շիրակացին, որ արդարեւ է. դարու հեղինակ է: Մանաւանդ Փրոֆ. Աշոտ Աբրահամեան «Խորանացու վերագրուող Աշխարհացոյցի հեղինակի հարցի շուրջ» գործը, հրատարակուած, իբր արդիւնք այն հետազօտութեանց, որոնք կատարուած են իր կողմէ այս աշխարհագրութեան բազմաթիւ ձեռագիրներուն վրայ, բաւական զօրաւոր փաստեր ունի՝ այդ աշխարհագրութեան հաւանական հեղինակը համարելու Անանիա Շիրակացին: Հ. Ներսէս Ակինեան, սակայն, համաձայն չէ (տես Ազդարար թ. 84): Իր տեսութեամբ այս աշխարհագրութիւնը Պապոսի մէկ քաղուածքն է, հանուած Պտղոմէոսի Աշխարհագրութենէն, թարգմանուած յոյն բնագիրէն Ե. դարու երկրորդ կէսին, շատ հաւանօրէն այն թարգմանիչին ձեռքով, որ հայերէնի վերածած է Պսեւդո-Կալիսթենէսի «Պատմութիւն վարուց եւ գործոց Մեծին Աղեքսանդրի»: Հայերէն այս թարգմանութիւնը դարերու ընթացքին կրած է նոր յաւելուածներ, թերեւս նաեւ յապաւումներ: Աշխարհացոյցը այժմեան ձեւին մէջ 902էն առաջ միայն կրնայ գրուած ըլլալ: Թարգմանութիւնը, ըստ Ակինեանի ազատ է հելլենաբան դպրոցի նորաբանութիւններէն.

Յ. Մանանդեան նկատի առնելով այն տեղերը, որոնք կը տեսնուին Աշխարհացոյցին եւ Խորենացիի պատմութեան մէջ, փոխանակ հաստատելու թէ Խորենացին օգտուած էր Աշխարհացոյցէն, կը համարէ թէ Մովսէսն է աշխարհացոյցին հեղինակը:



ԵՒՔՍԻՆԵԱՆ ՊՈՆՏՈՍ
(ՍԵՒ ԾՈՎ)
ՍԱՐՄԱՏԻԱ կամ ՍԱՐՄԱՏԱՑՒՈՑ ԱՇԽԱՐՀ
ԱԼԱՆՔ
ՎԻՐՔ կամ ՎՐԱՍՏԱՆ
ԱՂՈՒԱՆՔ
ԾՈՎ ԿԱՍՊԻՑ
ՄԻՋԱԳԵՏՔ
ԱՍՈՐԻՔ
ԱՐՈՒԱՍՏԱՆ
Պիտիոս կամ Պիթիոս
Դիոսկուրիաս կամ Սեբաստուպոլիս
Փասիս (Փոթի)
Բաթիս նաւահանգիստ
Տրապիզոն
ՍԵԲԱՍՏԻԱ կամ ԿԱԲԻՐԱ
ԱՄԱՍԻԱ
Սինոպ
Տարսոն
Անտիոք
Եփրատ գ.
Տփխիս
Պարտաւ
Պղնձանք
Ղլար
Դարբանդ կամ Դուռն Ճորայ
Մծբին
Նինուէ
Նորշիրական
(Սուլթանիէ)

Թիւ 1 Բնագիր էջ 2 եւ գվերջ

# ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ՄԵԾ ԵՒ ՓՈՔՐ ՀԱՅՔ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

*(Սա տառերով նշանակուած են Հայաստանի նահանգները)*

Ա. *Բարձր Հայք*
Բ. *Չորրորդ Հայք*
Գ. *Աղձնիք*
Դ. *Տուրուբերան*
Ե. *Մոկք*
Զ. *Կորճէք*
Է. *Պարսկահայք*
Ը. *Վասպուրական*
Թ. *Սիւնիք*
Ժ. *Արցախ*
ԺԱ. *Փայտակարան*
ԺԲ. *Ուտի*
ԺԳ. *Գուգարք*
ԺԴ. *Տայք*
ԺԵ. *Այրարատ*

*Չափ* 1.450.000.

իբր «Մեծ Հայք»:

Հետեւաբար հնագոյն ժամանակներէն ի վեր, այսինքն այն օրերէն իսկ, երբ հայ ցեղը իբրեւ կազմակերպուած ազգ իր իշխանութիւնը կը հաստատէր Հայկական Բարձրաւանդակին վրայ, մինչեւ մեր ժամանակները Հայաստան անունով կը ճանչցուէր այդ երկիրը, որուն քով, Եփրատէն մինչեւ Ալիսի (Գըզըլ Ըրմաք) հովիտը կը տարածուէր «Փոքր Հայք»ը, զոր ոմանք անբաժան մասը կը համարեն Հայաստանի, մինչ ուրիշներ զայն դուրս կը թողուն Հայաստանի սահմաններէն: Լէօ, Արեւմուտքէն՝ Եփրատ գետը, հիւսիսէն՝ Փոքր կամ Ստորին Կովկասի լեռնաշղթան, արեւելքէն՝ Մերձ-կասպիական դաշտը եւ Իրանը, հարաւէն՝ Միջագետքի սահմաններուն վրայ բարձրացած Հայկական Տաւրոսի լեռնաշղթան կը համարէ Հայաստանի բնական սահմանները, անկէ զատելով Փոքր Հայքը՝ Եփրատէն դէպի Արեւմուտք տարածուած (տես Լէօ *Հայոց պատմութիւն* Ա. էջ 131):

Ըստ Լէօի ընդհանուր կերպով Հայաստան ունէր 357,900 քառ. քիլ. տարածութիւն, որուն 220,000 քառ. քիլ.ը Մեծ Հայքն էր: Իսկ Փոքր Հայքի տարածութիւնը նախ 28,0000 էր, յետոյ 88,000, եւ վերջապէս Յուստինիանոս կայսեր ատեն (Զ. դար Քր.է վերջ) 138,000 քառ. քիլոմէթր (համտ. նոյն):

Նոյնպէս՝ ոմանք Հայաստանի սահմանները կ'ընդարձակեն տարապայմանօրէն եւ կ'ուզեն անոր մաս նկատել շրջակայ կարգ մը երկիրներ, որոնք պատահական կերպով միայն հայ տիրապետութեան ենթարկըւած կամ հայ ստուարաթիւ բնակչութիւն ունեցած են անցեալին մէջ: Աւելի պարզ բացատրութեամբ մը՝ կարելի է ըսել, թէ Հայաստան կ'ընդգրկէ գրեթէ ընդարձակ տարածութիւնը *Հայկական Բարձրաւանդակին* (Plateau Arménien), որ մեծ լեռնադաշտ մըն է 1600է 1800 մէթր միջին բարձրութիւնով: Բայց այս սահմանումը խիստ տարտամ է, վասնզի այդ լեռնադաշտին սահմանները շատ որոշ չեն:

Հայաստան իբր երկիր, իբր աշխարհագրական միութիւն, չունէր որոշ պատուարներ, գետ, լեռնաշըղթայ եւայլն, որ զայն բաժնած ըլլային շրջակայ երկիրներէն: Ոչ հայ ազգը ցեղային ծաւալականութեամբ եւ ոչ հայ պետութիւնը իր նուաճումներով, բնաւ չեն կրցած բնական այնպիսի պատուարներ գտնել, որոնք բաժնեն Հայաստանը դրացի երկիրներէ, ինչպէս օրինակի համար Հռենոս գետը եւ Պիրենեան լեռները դարերէ ի վեր Ֆրանսան կը բաժնեն Գերմանիայէն եւ Սպանիայէն: Ընդհակառակը հայ պետութիւնները երբեմն ընդարձակուեր եւ երբեմն սեղմուեր են առանց տեւականութեան, այնպէս որ չեն կրցած ոեւէ բնական սահմանագծումի հետ իրենց գոյութիւնը պատշաճեցնել, որպէսզի կարելի ըլլար աշխարհագրական սահմանները իբր հիմ ընդունիլ:

Սակայն եւ այնպէս Հայաստան ունի առաւել կամ նուազ հաստատուն բնական սահմաններ, եւ բաժանուած է շրջապատի երկիրներէն, իր սեփական հողագրական, ջրագրական, կլիմայական եւ այլ յատկանիշներով: Ան թէեւ տիրակալուած՝ մէկ կամ աւելի պետութիւններէ միաժամանակ, բայց իբրեւ աշխարհագրական միութիւն կայ եւ կը մնայ: Ասիկա անժխտելի իրողութիւն մըն է, բոլոր գիտուններէն եւ ճանապարհորդներէն ընդունուած:

*Հայկական Բարձրաւանդակը* կամ աշխարհագրական Հայաստանը, կը ներկայանայ իբր անհուն բերդաքաղաք մը, որ ունի իր հսկայ միջնաբերդը՝ —այն վիթխարի բարձրութիւնը, որ կը նետուի դէպի երկինք, Մասիսի կամ Արարատի գագաթներով ու Հայկական Պարի շղթայով եւ շրջապատուած է առաւել կամ նուազ բարձրութեամբ պարիսպներով,— զորս կը ձեւացնեն իր շրջապատի լեռները (տես Լինչի Armenia Travels and Studies Գլ. ԻԱ. հայերէն թրգ. Ա: հտ. 392—418: Իր տեսութիւնը կ'իւրացնեն J. Morgan. Histoire du Peuple Arménien էջ 21 եւ Գէորգ Մեսրոպ, *Հայաստան* աշխարհագրական, պատմական, ցեղագրական, վիճակագրական եւ մշակութային տեսակէտով, Կ. Պոլիս 1919. 1—9 եւայլն): Սակայն Հայաստանի հարաւ-արեւելեան եւ հիւսիս-արեւմտեան կողմերէն, այսինքն Ատրպատականէն եւ Ալիսի հովիտներէն, կապուած՝ Իրանի եւ Անատոլուի բարձրաւանդակներուն, այս մասերուն մէջ չունի բնական պատուարներ: Նոյնպէս սահմանային լեռները —մասնաւորապէս անոնց հարաւայիններն եւ հիւսիս-արեւելեաններն անանցանելի չեն, վասնզի հետզհետէ կը խոնարհին դէպի շրջակայ դաշտերը, այնպէս որ ոմանք կը միտին աւելի տարածուն երկիր մը նկատել Հայաստանը (Դոլենս եւ Ա. Խաչ. Histoire des anciens Arméniens. թրգ. Բ. 5 եւայլն), Մեծ եւ Փոքր Հայաստանները իրարու միացնելով: Այս տեսութիւնը իւրացնողները իբր հիւսիսային յենակէտ կը նկատեն Սեւ Ծովի եզերքի կամ Պարխար (Հայերու Խաղդեաց եւ հիներու Պարիադիս = Paryadres) կոչուած լեռնաշղթան կրող զանգուածը (massif), եւ արեւմտեան սահմանը այս լեռնաշըղթային արեւմտեան ճիւղէն բաժնուող այն կոր եւ անորոշ գիծը, որ Ամասիայի հարաւային կողմէն անցնելով կը միանայ Ալիսի միջին հոսանքին, պահ մը կը հետեւի անոր եւ ապա նոյն հոսանքին հետ քիչ մը տեղ դէպի վեր բարձրանալէ յետոյ կը կտրէ կ'անցնի միւս կողմը, ուր Արգէոս լերան զանգուածէն ետ կը մղուի այդ գետը դէպի հիւսիս (1): Նոյնիսկ Հայաստանի սահմանը անոնք կը մղեն Տաւրոսէն անդին՝ Ասորիքի կողմերը եւ Եփրատի արեւմտեան եզերքը, այն դաշտերը՝ ուր այս գետը կը շրջի Միջագետք մտնելէ առաջ:

Իսկ Միջագետքէն՝ Եդեսիան եւ Նինուէի աւերակները (Մուսուլի շրջանակը) դուրս կը թողուն՝ հակառակ որ այս երկու վայրերը իրենց աջ ու ձախ կողմերով, մօտաւորապէս լայնութեան միեւնոյն աստիճանին վրայ կը գտնուին Մեծն Տիգրանի մայրաքաղաքին՝

(1) *Այս տեսութեամբ Սեբաստիա, Զիլէ, Մասական եւ Կամանան կը մտնէին Հայաստանի մէջ բաւական ընդարձակ երպով, մինչ Տաշեան* (ՀԱ. 1937 — 1946) Հին Հայաստանի արեւմտեան սահմանը, Փոքր Հայք եւ Կողոփենէ (Սեբաստիա) *յօդուածաշարքով ի սպառ կը մերժէ այս տեսութիւնը:*

Տիգրանակերտի եւ անոր երկրորդ մայրաքաղաքին Մծբինի հետ (*նոյն*, 6): Նոյնպէս ըստ Դոլենսի եւ Խաչի Հայաստան պարփակելով իր մէջ Տիգրիսի ամբողջ վերին հոսանքը՝ արեւելեան կողմէն կ'ընդգրկէր Տիգրիսի արեւելեան ճիւղին՝ Մեծ Զաբի (1) հովիտը, ապա՝ Վանի եւ Ուրմիոյ լիճերը բաժնող լեռնագագաթը՝ Սահանդէն անցնելով իր մէջ կ'առնէ Արաքսի ամբողջ հովիտը, որ Մեծն Տիգրանէն յետոյ թագաւորութեան կեդրոնը դարձաւ:

Արեւելքի մէջ Հայաստանը կը բաժնուէր Կասպից ծովէն Պարախոադրես լեռներով (*նոյն*, 6): Իսկ հիւսիսային սահմանը ցոյց կու տան երբեմն Կուրի հովիտը եւ երբեմն ալ այն լեռնակատարները, որոնք Կուրի հովիտը կը բաժնէին Արաքսի հովիտէն (*նոյն*), եւ վերջապէս հիւսիս-արեւմտեան սահմանը կը նշանակեն (*նոյն*, 7)Կողքիսը եւ Ճորոխ (Ագամասիզ) գետը, որուն բերանին երբեք չկրցան հասնիլ Հայերը: Այն լեռները որոնք կ'եզերէին Կողքիսը եւ Հայաստանը կը բաժնէին Սեւ Ծովէն, կը կոչուէին Աճարա (վրացերէն՝ Իմերէ-վի): Ասոնք անցք տալէ յետոյ Ճորոխի, կ'երկարին դէպի հարաւ-արեւմուտք եւ կ'առնեն Պարխար (=Պարիադրես) անունը եւ կը գծեն, ինչպէս տեսնուեցաւ՝ Հայաստանի հիւսիսային սահմանը:

Այս սահմանագծումը, արուեստական բան մը ունի իր մէջ: Հոն ջանք մը կայ Հայաստանի մէջ պարփակելու բոլոր այն երկիրները որոնք ոեւէ ատեն հայկական տիրապետութեան ենթարկուած են եւ երբեք չեն յենուր աշխարհագրական հաստատուն պատուարներու վրայ:

Ինչ որ սակայն անհերքելի է, գոնէ Հայերը իրենց միտքին մէջ, Հայաստան կը նկատէին այդ երկիրը, առանց նկատի առնելու անոնց ո՛չ պատկանելիութիւնը, ո չ բնակչութիւնը, ո չ պատմական յարաբերութիւնները եւ ոչ ալ անոնց մէջ խօսուած լեզուն:

Երբ գիտական ճշգրտութեան անունով մերժելի համարուի ոմանց Հայաստանի տուած տարապայման ընդարձակութիւնը, եւ ծայրագաւառներէն ոմանք կցուին ուրիշ միութիւններու եւ անոնց մասը համարուին, սակայն մաս մը, *Հայկական Բարձրաւանդակ* անունով ճանչցուած երկիրին միջնաբերդը, առանձին կը ներկայացնէ միութիւն մը որ ոչ մէկ ուրիշ երկրամասի կրնայ կցուիլ եւ աշխարհագրական Հայաստանն է, որ կայ եւ պիտի մնայ միշտ Հայերուն անունով:

## Բ.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԵՍ ՀԱՅԵՐՈՒ ԲՆԱԿԱՎԱՅՐ

Հայաստան աշխարհագրական բացատրութիւն մը ըլլալէ առաջ եւ անկէ աւելի՝ ցեղագրական բացատրութիւն մըն է, նոյնիսկ իր բառակազմութեամբ, քանի որ կը բաղկանայ *Հայ* ազգանունէն եւ *ստան* իրանեան մասնիկէն որ համազօր է *իա* (Արաբիա), *նոց* (հաւնոց), *ոց* (վարժոց) *րան* (աղօթարան) մասնիկներուն եւ տեղի գաղափար կու տայ: Հիւպշման (*Հին Հայ տեղւոյ անունները*, 274 *Հայկական Քերականութիւն*, 241) *ստանը* կը համեմատէ հին պրս. աւեստ. stana=տեղ, նոր պարս. stan մասնիկներուն հետ որոնք գործածուած են երկրանուններու մէջ: Այսպէս, պահլաւերէն կը յիշուին Taparastan, Hindustan, Xazastan, Sakastan, Surastan (=Ասորիք) եւայլն եւ հայ մատենագրութեան մէջ, *Հայաստանէն* զատ, *Մարաստան*, *Գողթնաստան* (Թովմա Արծրունի, 337), *Աստրեստան*, *Արուաստան*, *Թուրքաստան* (Կաղանկ, 147), *Հնդկաստան*, *Պարսկաստան*, եւայլն բառերը: Հայ լեզուն այս մասնիկով կազմուած ունի նաեւ *բուրաստան*, *ծաղկաստան*, *ծառաստան*, *վարդաստան*, *անդաստան* եւայլ բառերը, որոնք չեն հակասեր Հիւպշմանի մեկնութեան, որով *Հայաստան* կը նշանակէր *Հայերու տեղ*: Թուցէ զարմանալի թուի, սակայն նոր բանասէր մը՝ Ա. Ղարիբեան (տես *Նիւթեր Հին Հայաստանի պատմութեան*, ՀՍԽՀ Կուլտուրայի պատմութեան ինստիտուտի աշխատութիւններ I. հատորի մէջ Պետհրատ. 1935, Երեւան, *Հայերէնի յոգնակի նշանակող մասնիկները եւ նրանց լեզուաբանական արժէքը* յօդուածը, էջ 87—104 եւ յատկապէս էջ 95) կը համարէ *ստան* մասնիկը յոգնակի շինող եւ *Հայաստանը*=*Հայք*, ինչպէս *այգեստան*=*այգիներ* եւ *բաղնեստան*=*բաղնիքներ* (ինչպէս կայ եղեր Կարնոյ բարբառին մէջ), կը մեկնէ: Նկատելի է որ *Հայք* ձեւը աւելի հին է եւ աւելի յաճախ գործածուած քան *Հայաստան* բառը:

Հայերէն խօսուած լեզուին մէջ ալ Հայաստան բառը կը գործածուի հայաբնակութիւն կամ Հայոց տեղ նշանակութեամբ: Մինչիւ հիմա, ժողովուրդը սովորաբար քաղաքի մը հայաբնակ կամ հայաշատ մէկ մասին համար «Հայաստան» բացատրութիւնը կը գործածէ Ուրեմն Հայաստան, իբրեւ բնակավայր, անջատ իր աշխարհագրական իմաստէն ունի նաեւ *Հնդկաստան* բառին պէս ցեղագրական իմաստ մը, նշանակելով երկիր մը կամ աշխարհամաս մը՝ բնակավայրն հայ ցեղին, որ տուած է իր անունը անոր: Արդարեւ Հայերը գոնէ տեսականապէս իրենց Մայր հայրենիքը եւ ցեղին բնակավայրը կը նկատեն այն ընդարձակ երկիրը որ Հայաստան կը կոչուի այսօր եւ ուր Հայերը ունեցած են երկարատեւ բնակութիւն: Հոն այդ աշխարհամասին մէջ կատարուած են բազմաթիւ ցեղերու իրարու հետ ձուլումը, մինչեւ որ ծնունդ առած է այսօրուան Հայ ազգը, որ յաջողած է կեդրոնական շըր-

(1) *Այս գետը կը գտնուի Պոհթան Սուի (հիներու Կեդրիտէսը) հարաւ-արեւելեան կողմը: Այն լեռները որոնց մէջէն կը հոսի այս գետը, հին ատեն կը կոչուէին Զակաօչ:*

շանակէ մը տարածուելով ցեղագրապէս նուաճել եւ իր մէջ ձուլել բազմաթիւ ժողովուրդներ, մինչեւ որ իր խարիսխէն հեռացած, ուժասպառ եղած կամ աւելի հզօր ցեղերու բախելով ետ մղուած կամ կանգ առած է իր յառաջխաղացութիւնը: Այսպէս, ցեղը ունեցած է մակընթացութեան եւ տեղատուութեան ժամանակներ, եւ երբեմն իր նուաճած կամ հայացուցած շրջանները ենթարկուած են աւելի բարձր մշակոյթ ունեցող ազգերու տիրապետութեան եւ քաղաքակրթապէս ալ նուաճուած ու օտարանալով բաժնուած են Հայութենէ:

Դիտելի է նաեւ որ կան երկրամասեր, որոնք Հայաստանի մաս երբեք համարուած չեն, սակայն այնքան հին ժամանակներէ սկսեալ Հայ բնակիչ ունեցած են, որ զանոնք գաղութներ նկատել բաւական դժուար է եւ նոյնիսկ կրնանք ըսել թէ՝ վիճելի: Այսպէս է Փոքր Հայքի պարագան, որ ինչպէս տեսանք, ոմանք Հայաստանի մաս կը նկատեն, անշուշտ անոր հայ բնակչութեան անտարակուսելի հնութեան վրայ հիմնուած, թէեւ Հայաստանի պետութեան երբեք մաս կազմած չըլլայ: Եթէ ըլլար իսկ՝ տարբերութիւն չէր ըներ, վասնզի զէնքով նուաճուած շատ գաւառներ եւս կան, որոնք Հայաստան չեն նկատուած: Արդէն պետական սահմանները եւ բաժանումները չեն կրնար ցեղին գրաւած աշխարհամասին վրայ ազդեցութիւն ունենալ, եւ շատ հազուագիւտ է որ ժողովուրդի մը ազգային եւ պետական սահմանները իրարու համապատասխան ըլլան:

Անոր օրինակներն են Իտալիա եւ Գերմանիա, որոնցմէ առաջինը՝ 1914—1918ի Ընդհ. Պատերազմին ազգային սահմաններուն մէջ գտնուող Տալմացիան եւ Թիրոլը պետականապէս գրաւելէն ետքն ալ Զուիցերիոյ հարաւային մասը, Նիսի շրջակայքը եւ Գորսիքան իտալական հայրենիքին մէջ կը համարէր. եւ երկրորդը՝ հակառակ Աւստրիոյ եւ Չեխոսլովաքիայի գրաւումներուն, Զուիցերիոյ, Լեհաստանի, Պալթեան երկիրներու եւայլնի Գերմանները Ռայխին կցել կ'ուզէր, իբրեւ ազգային երկրամասեր:

Նոյնիսկ իր քաղաքական անկախութիւնը կորած ազգի մը բնակավայրը չի դադրիր իր հայրենիքը ըլլալէ: Չեխերը որ կորուսած էին 500 տարիներ իրենց անկախութիւնը՝ գերութեան հինգ դարերուն ընթացքին հայրենիքի գաղափարը անմեռ պահած են եւ որոշ հողամաս մը իրենց ազգային բնակավայրը նկատած՝ միշտ:

Սակայն ազգերու ցեղագրական սահմանները շատ յստակօրէն գծել գրեթէ կարելի չէ, վասնզի առհասարակ անոնք իրարու խառնուած են ազգային միջնաբերդը նկատուած հողամասերէն դուրս իրենց բնակավայրին կամ Մայր-Հայրենիքին ծայրագաւառներուն մէջ, ուր անոնք կ'ապրին յաճախ, խառնուած ուրիշ դրացի ժողովուրդներու: Անոր գերազանց օրինակն է կեդրոնական Եւրոպան եւ Պալքանեան թերակղզին, ուր կը տեսնուին Տեւտոն զանգուածներու մէջ խառնուած Չեխեր, Սլաւոններ, Իտալացիներ, Լեհ զանգուածին մէջ՝ Գերման փոքրամասնութիւններ, հողեր՝ որոնք իրենց ազգային սահմաններուն մէջ կը նկատեն լատին ծագումով Ռումանները եւ թուրանեան ծագումով Մաճառները եւ բազմաթիւ շրջանակներ՝ որոնց շուրջ երկար ատենէ ի վեր կը վիճին Սերպերը, Պուլկարները, Հելլէնները եւ Ալպանացիները:

Երբ Եւրոպայի մէջ՝ համեմատաբար նոր եւ պատմական ժամանակներու մէջ երեւան եկած ազգերը այս վիճակը կը ներկայացնեն, շատ դիւրին է երեւակայել՝ թէ որքան դժուար է Հայ ազգին պէս պատկառելի հնութիւն ունեցող ազգի մը բնակավայրին ցեղագրական սահմանները ճշդել, քանի որ Հայոց ծագումը մինչեւ անյիշատակ ժամանակներ եւ նախապատմական դարեր լռուած շրջաններուն կը հասնի, եւ Հայ ազգը իր պատմութեան ընթացքին ենթարկուած է ցեղային նկարագրի հիմնական փոփոխութիւններու՝ հետեւանք երբեմն ազգերու գաղթաշարժերու եւ երբեմն օտար տիրակալութիւններու: Թէեւ դժուար՝ սակայն անհրաժեշտ է այս աշխատանքը փորձել, որպէսզի կարելի ըլլայ վեր առնել հայ ցեղին քաղաքակրթական արժէքը:

Ուստի պիտի ջանամ ներկայացնել կարգով:

ա.— Հայ ազգին ցեղային կերտուածքը.

բ.— Հայ-Արմէն ազգին գրաւած տարածութիւնը իրանեան տիրապետութեան շրջանին:

գ.— Բնիկ Հայ թագաւորներու շրջանին Հայերու ցեղագրական նուաճումները,

դ.— Արաբական արշաւանքներէն մինչեւ թրքական տիրակալութիւն հայ ցեղին գրաւած տարածութիւնը:

Ա.

## ՀԱՅ ԱԶԳԻՆ ՑԵՂԱԳՐԱԿԱՆ ԿԵՐՏՈՒԱԾՔԸ

Անուրանալի իրողութիւն է որ Մերձաւոր Ասիան եղած է վայր մը՝ ուր այլազան ժողովուրդներ դարերով շարունակ իրարու բախած եւ մասամբ իրարու հետ խառնուելով՝ նոր ազգերու ծնունդ տուած են:

Հայաստան, իբրեւ մաս Մերձաւոր Ասիոյ, ազատ չէր կրնար մնալ՝ դաշտն ըլլալէ այդ բախումներուն եւ ցեղախառնումներուն, մանաւորապէս իր աշխարհագրական դիրքին պատճառով, ըլլալով ազգերու եւ ցեղերու անցքի ճամբան:

Մինչեւ հիմա կատարուած գիտական հետազօտութիւններով հազիւ կարելի եղած է մինչեւ Քր.է առաջ Դ. հազարամեակի վրայ աղօտ ծանօթութիւններ ձեռք բերել: Արդ, այդ շրջանին ո՛չ միայն Հայաստանի, այլ գրեթէ Մերձաւոր Ասիոյ բոլոր երկիրներուն մէջ կը գտնենք միակ ցեղ մը, տիրապետող կամ աւելի ճիշդ բնակչութեան մեծամասնութիւնը կազմող (Փրոֆ. Ա. Խաչատրեան. *Հայաստանի սեպագրական շրջանի բնական պատմութիւն*, 72—3. 441): Այս ցեղը, որմէ աւելի հինը մեզի ծանօթ չըլլալուն համար կրնայ նկատուիլ Հայաստանի բնակչութեան հիմնախաւը, յայտնի չէ թէ նախնական եւ սկզբնական ուրիշ հայրենիք մը ունեցա՞ծ է թէ այդրէնածին (Autochtone) է Հայկ. Բարձրաւանդակին վրայ. սակայն գիտենք թէ առաջ քան նոյն իսկ Դ. հազարամեակը Քր.է առաջ՝ հո՛ն կը գտնուէր եւ անկէ տարածուած է զանազան կողմեր: Իր ծագումը հնութեան մէջ կորսուած այս կարճագլուխ (brachéycéphale) ցեղին գիտուններէն ոմանք՝ իր գրաւած երկիրները նկատի առնելով՝ *համափոքրասիական* կամ *տաւրոսեան* կո-

չումը տուած են եւ այլք՝ իր ֆիզիքական տիպը հիմ առնելով *հայատիպ* (armenoïd) անունը, որ կրկնապէս կ՚արդարանայ. վասնզի ո՛չ միայն իր ֆիզիքական տիպարով Հայոց կը նմանէր, այլ եւ ծագումով Հայկ. Բարձրաւանդակին բնիկ կամ գէթ ամենէն առաջ հոն հաստատուած ժողովուրդն էր:

Հայկ. Բարձրաւանդակին այս հնագոյն բնակիչները, որոնք թերեւս շատ աւելի ընդարձակ տարածութիւն մը գրաւած էին աւելի հին ժամանակներու մէջ, Գ. հազարամեակին սկիզբէն՝ Սումերեան արձանագրութիւններու մէջ, կը կոչուէին *Սուբարու* կամ *Սուբարտու* եւ իրենց գրաւած երկիրը՝ *Սուբրիա*, որ կը համապատասխանէր Մեծ-Ծոփաց (1) աշխարհին՝ ընդարձակ առումով, այսինքն Ելամէն մինչեւ Ամանոս եւ Անտիտաւրոս տարածուող հողամասերը, իր մէջն ունենալով նաեւ Միջագետքը, ինչպէս նաեւ Սուրիան եւ Հայկ. Բարձրաւանդակին հարաւային մասերը (2): Իսկ Հայկ. Բարձրաւանդակին հիւսիսային մասերուն մէջ իրենց բնակութիւնը անծանօթ է: Միայն գիտենք որ Քր.է առաջ Գ. հազարամեակին վերջերը եւ Բ. հազարամեակին սկիզբները, այդ մասերուն մէջ հաստատուած էին երկայնագլուխ (delichocéphale) Արիները, որոնք եկած էին Կուրի եւ Արաքսի հովիտները, հաւանօրէն Կովկասեան շրջաններէն:

Ուրեմն՝ եղաւ ատեն մը որ Հայկ. Բարձրաւանդակին վրայ ապրեցան երկու տարբեր ցեղեր, որոնք յետոյ իրարու հետ խառնուեցան, վասնզի Արիները՝ հիւսիսային Հայաստանէն, Քր.է առաջ շուրջ 2000 թուականներուն զանգուածով հետզհետէ ծաւալեցան, զանազան ուղղութեամբ եւ ոտքի կռուաններ ստեղծելէն եւ ի մէջ այլոց նուաճեցին հարաւային Հայաստանի տիրող Սուբարուները եւ անոնց հողերուն վրայ կազմեցին *Խուրրի-Միտաննեան* պետութիւնը (3). Այս ներխուժումը առիթ տուաւ ցեղախառնումի մը բնիկ հայատիպ հիմնախաւին եւ նորեկ Արիներուն միջեւ: Հայատիպները թէեւ նուաճուած՝ իրենց մշակոյթով յաղթեցին եկուորներուն, եւ թէեւ այլափոխուած՝ բոլորովին չկորսուեցան եւ չանհետացան Խուրրի-Միտաննեան ընդարձակ պետութեան մէջ, որ Հայաստանի եւ հիւսիսային Միջագետքի մէջ, մօտաւորապէս Քր.է առաջ 1800ական թուականներէն ի վեր գոյութիւն առած, դէպի հարաւ-արեւելք կը տարածուէր՝ մինչեւ Զագրոս լեռնաշղթան, պարփակելով իր մէջ Քերքուկն ու Նինուէն (Մուսուլ), դէպի հարաւ-արեւմուտք՝ մինչեւ Դամասկոս եւ Լիբանան, մէջն ունենալով Հալէպը եւ միջին Եփրատի աւազանը եւ դէպի հիւսիս՝ Կիզվատնայի (=Պոնտոս) ուղղութեամբ՝ մինչեւ Սեւ Ծով: Միայն անծանօթ է թէ իրենց իշխանութիւնը դէպի հիւսիս-արեւելք մինչեւ ուր կը տարածուէր: A. Gotze, որ կը հակի ընդունելու՝ թէ անձուկ մտքով երկու երկիրներ գոյութիւն ունէին՝ *Միտաննի* եւ *Խուրրի* անունով, հին արեւելեան աշխարհի սահմանածայրը կը դնէ Խուրրի երկիրը (Hithiter Chursiter and Assyrer. 1936. 102—103) որ «նշանակելի զօրութիւն ունեցող երկիր մըն էր, միաժամանակ նաեւ կեդրոնը սկզբնագոյն Խուրրիի երկիրին» եւ աշխարհագրական ընդհանուր նկատողութիւններու հիման վրայ անոր կեդրոնական կէտը կը պնդէր՝ թէ կարելի չէր որոնել այլուր քան Վանի լիճին մարզին մէջ: Իսկ Միտանի երկրին արեւելեան սահմանը կը կարծէր՝ թէ Պիթլիս-Զայի կամ անոր զուգահեռական վտակներէն մէկն էր, սակայն ոչ մէկ փաստ կայ՝ թէ անոնք հասած էին Արաքսի հովիտը:

Հաւանական է որ Հայկական Բարձրաւանդակին այն մասին մէջ, որ Խուրրի-Միտանի նուաճումէն ազատ մնացած էր եւ որ սակայն աւելի կանուխ նուաճուած էր Արիներէն քան Սուբարուն, գոյութիւն ունէին զանազան մանր իշխանութիւններ, որոնք թերեւս ցեղակցական կամ դաշնակցական կապեր ունէին Խուրրի-Միտանի երկիրներուն հետ եւ կամ անոնց մաս կը կազմէին, կամ անջատ անկէ՝ ունէին ուրոյն կեանք եւ թերեւս սեփական քաղաքակրթութիւն եւ մեծամասնութեամբ երկայնագլուխ էին:

Շարուկկին Բ.ի (1980—1948 Քր.է առաջ) Համուրաբիի (1955—1913 Քր.է առաջ) եւ Շամշիադ Ա.ի (1879—1847 Քր.է առաջ) ասորեստանեան արձանագրութիւնները կը յիշեն *Տիգրիշ* անուն երկիր մը, եօթը լեռնային երկիրներու շարքին, իբր խառնաշփոթ եւ բազմատեսակ լեզուներ ունեցող երկիր մը, որուն լեռնաշղթաները հեռակայ էին: Այս *«բազմատեսակ»* կամ *«խառնաշփոթ»* լեզուներ ունեցող լեռնային երկիրը, կը թուի ըլլալ ազգերու կամ ժողովուրդներու խառնարան մը, եւ ո՞ւր էր որ աւելի պատշաճօրէն կրնար ըլլալ այդ վայրը քան Հայկ. Բարձրաւանդակը, մանաւանդ անոր հիւսիսային մասը: Ժամանակով աւելի ուշ (Քր.է առաջ ԺԵ.—ԺԲ դար) կը յիշուի հոն ուրիշ երկիր մը *Հայասա* կամ *Հայաշա* (= Խայասա) որ ըստ ոմանց կը թուի ըլլալ մեր ազգին նախնական կորիզը: Առաջին անգամ 1922ին այս նոյնացումը գիտական աշխարհին ներկայացուած է Տոքթ. Նշան Մարտիրոսեան, որուն տեսութիւնը ընդունուած է յետոյ՝ Բ. Հրոզնի: Նոյնիսկ Քրիչմեր ընդունած է՝ որ Հայասաները նախապատմական Հայերն են (տես Փրոֆ. Ա. Խաչատրեան, *Հայ Սեպ. Ծրջ. Քնն. Պատմ.* 548 կամ ՀԱ. 1933, 429—433)

Այս տեսութեամբ *Հայասա* կը կարծուէր ըլլալ ազգին անունը եւ ոչ թէ երկրին եւ *Հայազն* բառին համապատասխան, Hajasa բառին a ձայնաւորը ինկած նկատելով, հին հայերէնի բառաշեշտը վերջընթեր վանկին վրայ ըլլալուն համար (Փրոֆ. Հռոզնի): Հ. Յ. Տաշեան (ՀԱ. 1934, 28) եւ Փրոֆ. Խաչատրեան (*Հայ Սեպ. Ծրջ. Պատմ.* 548—9) կը կարծեն թէ Հայաշա (Hayasa) բառին (a)sa մասնիկը աւարտ մըն է որ կայ ուրիշ անուններու մէջ ալ: Այս պարագային բառը մէկ ածանցումը կ'ըլլայ *Հայ* անունին, որ իր

(1) *Ծոփք բառին եւ Սուբարու կամ Սուբարտու անունին միջեւ աղերս մը գոյութիւն ունենալ կը կարծուի,* (Փրոֆ. Ա. *Խաչատրեան,* Հայաստանի Սեպ. Ծրջ. Պատմ. 75 - 76).

(2) *Այս մասին ընդհանուր համաձայնութիւն չկայ.* Smith *կը կարծէ՝ թէ Սուբարտուն Սումէր-Աքքատեան շրջանին կը տարածուէր Արբելայէն եւ Քերքուկէն մինչեւ Սինջարի բլուրները եւ Խաբուրի հովիտը, մէջն առնելով ամբողջ Ասորեստանը եւ հիւսիսային Միջագետքը* (Հայրենիք, *ԺԶ. տարի Թ.* 4 էջ 147). *իսկ ուրիշ գիտուններու կարծիքով՝ անոր մէջ կը մտնէր նաեւ ամբողջ Հայկական Բարձրաւանդակը* (նոյն).

(3) *Այս զոյգ անունները ոմանք փաստ կը համարեն երկու արշաւներու, որոնցմէ առաջինը կատարողները* Խուրրի *եւ երկրորդը՝* Միտանի *անունով ճանչցուած են, թէեւ ցեղով միեւնոյն Արիները ըլլան.*



ԿԱՍԿԱ
ԿԻԶՈՒՎԱՏՆԱ
ՀԱՏԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ
ՊԱԼԱ
ՀԱՅԱՍԱ
ԲԻԴԱՍԱ
ԱՐԶԱՎԱ
ՆԱՀԱՐԻՆԱ
ՄԻՏԱՆԻ
ԽՈՒՐԻ
ԿԱՏՄՈՒԽ
ԱՍՈՒՐ
ՄԱՆՏԱՆՆԵՐ
ԱՄՈՒՌՈՒ
Եփրատ գ.
Արածանի
Ճորոխ գ.
Կուր գետ
Երասխ գ.
Տիգրիս գ.

Թիւ 2 Տես բնագիր էջ 5 — 9

# ՀՆԱԳՈՅՆ ՀԱՅԱՍՏԱՆ

1. Կանանչ սահմանագծեալ է Սուբրիայի ենթադրեալ սահմանները
2. Սեւ » է Խուրի - Միտանիի » »
3. Կարմիր » է Հայաստայի սահմանները։

կարգին մէկ այլափոխութիւնն էր Hatt ին (Տաշեան, ՀԱ.1934, 28), այսինքն այն անունին որ կը տրուէր Հայատիպ խեթերուն կամ Նախահայերուն: Տաշեան (ՀԱ. 1934, 28—29) կը հաւաստայ Հայասա եւ Խեթի (=Նախահայ) ցեղակցութեան վրայ եւ ասոր համար փաստեր կը ներկայացնէ: Այս պարագային Հայասա՝ իբրեւ հայատիպ հիմնախաւին պատկանող ժողովուրդ մը, կը դառնայ Հայութեան կորիզը, վասնզի այս ժողովուրդը հետագային խառնուելով արիական ցեղերու՝ ծնունդ տուաւ Հայ ցեղին: Այս տեսութեամբ Հայասայի բնակիչները՝ այսինքն *Հայք*, ինչպէս Ծուվէ (=Ծոփք) եւ Ալշէ (=Աղձնիք) կազմած են Հայ ազգին գլխաւոր զանգուածը (Տաշեան, ՀԱ. 1934, 29), որուն յետոյ եկած են խառնուիլ ուրիշ տարրեր, մասնաւորապէս Արարատեանները (=Ալարոդեանները) կամ Ուրարտեանները, որոնք տիրած են Հայասայի: Բայց ինչպէս Խուրրի-Միտանի պետութեան մէջ բոլորովին անհետ չէր եղած Սուբարու Հայատիպ բնակչութիւնը, Ուրարտուի մէջ ալ անհետ չեղաւ Հայասայի բնակչութիւնը, այլ խառնուեցաւ նորեկներուն եւ իր մեծամասնութեամբ յաջողեցաւ թերեւս նոյնիսկ զանոնք իր մէջ ձուլել եւ անոնց տալ իր *հայ* անունը: Բայց Արշակ Սաֆրաստեան կը հաւաստէ՝ թէ այս տեսութիւնը քանդուած է, վասնզի Պրոֆ. Եոհաննէս Ֆրեդրիխ, ինչպէս նաեւ Ե. Ֆոռէր կը մերժեն այս նոյնացումը եւ իր հետազօտութեանց համաձայն *Հայասա* բուն իսկ մեր *Բասեանքն* է (*Կեանք եւ Գիր Բ*. հտ. էջ 29—31):

Հետեւաբար Հայասա չէր կրնար ըլլալ այսօրուան Հայ ազգին կորիզը եւ երկիրին իր անունը տուող ազգը:

Ամէն պարագայի մէջ տարակուսելի է՝ որ *Հայասա* բովանդակ Հայկական Բարձրաւանդակին տիրապետած ըլլայ:

Հայասայի աշխարհագրական դիրքին մասին գիտուններու կարծիքները կը տարբերին իրարմէ: Ոմանք զայն կը զետեղեն Տայոց, ուրիշներ՝ Կարնոյ մէջ, ուրիշներ ալ Վանայ լիճին շուրջ: E. Cavaignacի կարծիքով (Revue Hittite et Asianique թ. 1, 25) Հայասա կը գտնուէր արեւմտեան Հայաստանի մէջ: Ըստ Forrer-Ungnodի (Rev. Hit. et As. թ. 17, 14 եւ Reall. I. 89) Հայասա կը գրաւէր Բարձր Հայքը (Կարինի շուրջ), Վանի լիճին արեւմուտքէն մինչեւ Եկեղեաց գաւառը (Երզնկա) եւ Փոքր Հայքէն մաս մը, ինչպէս նաեւ Եփրատի վերնաբազուկը (Արածանի), այսինքն արեւմտեան Հայաստանը, մինչեւ Ծոփք տարածուած (Գ. Գըլըճեան, *Արեւագալ*, Զ. 1938 Մայիս): Հատեան կայսրութեան եւ Հայասայի միջեւ սահմանը Էնգալավա քաղաքն էր (Հռոմ. Ինգալա, այսօր Էգիլ), Տիգրանակերտի հիւսիսակողմը եւ ասկէ կը տարածուէր մինչեւ Վան (Վարդուհի-Քալանդար Նալբանդեան, *Հայրենիք*, ԺԶ. տարի, թ. 5. 134): Հայասա, եթէ չէր հասներ դէպի արեւմուտք մինչեւ Իրիս (Շապին-Գարա-Հիսար) սակայն կը մօտենար անոր: Արշակ Սաֆրաստեանի համաձայն Հայասա կը տիրէր Երասխի ակնաղբիւր հանդիսացող, մեծ ու արգասաբեր հովիտին, որ կ'սկսի Կարնոյ անմիջական արեւելքէն եւ կը տարածուի գրեթէ մինչեւ Վանանդ ու Շիրակ, Կարսի մօտերը (*Կեանք եւ Գիր Բ*, հտ. էջ 30), իսկ Կաշկաները կամ Գաշգաշները (1) կ'ապրէին Հաթ պետութեան հիւսիսակողմը, ըստ Տաշեանի (ՀԱ. 1931. 627) վերջէն Պափլագոնիա կոչուած երկիրին մէջ, իսկ ըստ Սաֆրաստեանի (*Բազմ*. 1933, 207) անոնց երկիրը մաս կը կազմէր Հայասայի եւ կը գրաւէր այն տարածութիւնը որ Պափլագոնիայէն մինչեւ Մեծ Հայք կը տարածուէր:

Այս ժամանակամիջոցին արեւելեան Հայաստանի մէջ կ'ապրէին Մանտաները որոնք արիական էին: Հայաստանի զանազան մասերուն մէջ իշխող այս ցեղերուն զօրաւորագոյնն էին Խուրի-Միտանիները, որոնք թերեւս ժամանակի ընթացքին կարենային իրենց միացնել դրացի իշխանութիւնները եւ զօրաւոր կայսրութիւն մը դառնալ: Բայց Սեմական հզօր պետութիւնը՝ Ասորեստան դէպի հիւսիս իր ձգտումին մէջ բախեցաւ անոնց եւ զանոնք ընկճեց նախ քան Քր. ԺԳ. դարուն եւ վանեց Խուրրի-Միտանիները Միջագետքի դաշտերէն դէպի Հայկ. Բարձրաւանդակին լեռները, ուր շարունակեցին անոնք պայքարը հարաւէն եկող Ասորեստանեայց դէմ, այս անգամ նոր ցեղախառնումով մը մը *Նաիրի* (1) կամ *Ուրարտու* նոր անունը առած: ԺԲ. դարուն բոլորովին ընկճուեցան եւ նուաճուեցան: Միեւնոյն ատեն Հայասա պատմութեան ասպարէզէն անհետացաւ անծանօթ պայմաններու մէջ: Ասորեստան՝ իր դէպի հիւսիս արշաւանքին միջոցին, կը յաջողի կասեցնել նաեւ առաջխաղացութիւնը «*ազգերու սարսափ*» կոչուած Մոսք-Փռիւգ հրոսներու (Պրոֆ. Խաչատրեան, *Հայ. Սեպ. Շրջ. Պատմ*. 276) որոնք կը տեղաւորուին արեւմտեան եւ հարաւային Հայաստանի ինչ ինչ մասերը պարունակող Ալիսի եւ վերին Տիգրիսի միջեւ տարածուող ընդարձակ երկիրներուն մէջ: Ասոնք Քր.է առաջ շուրջ 1200ին դէպի Փոքր Ասիա խուժող մարդկային ալիքներու վերջին խումբերն էին որոնք Փոքր Ասիան ողողելէ յետոյ թափանցած էին մինչեւ Մերձաւոր Ասիոյ խորերը եւ եկած կանգնած ԺԳ. դարուն (Քր.է առաջ) Հայկ. Բարձրաւանդակին արեւմտեան սահմանագլուխին վրայ՝ Փոքր Հայքի մէջ: Իրենցմէ գոնէ մաս մը Քր.է առաջ 1176ին մտած է առաջին անգամ՝ Հայկ. Բարձրաւանդակ եւ տիրած Ալզիի (=Աղձնիք) եւ Պուրուկուզզիի տէրութիւններուն՝ Եփրատի արեւելեան կողմը եւ յետոյ փորձած իջնել դէպի Կատմուխի (=Նիզիպ) շրջանը: Այսպէս, ԺԲ. դարուն վերջին քառորդէն սկսեալ այս շրջաններուն տիրելէ ետք, իրենցմէ խումբեր հաւանօրէն կը շարունակեն իրենց գաղթը եւ կը հասնին աւելի հեռուն եւ կը տարածուին այն շրջանները, որոնք իրենց անունովը կը կոչուին Մոկաց (=Մոսքաց) աշխարհ: Նոյնիսկ անոնք կը յաջողին իրենց երկարատեւ պայքարին մէջ Քր.է առաջ Թ. դարուն գրաւել նաեւ Տիգրիսէն հարաւ տարածուած երկիրները (Նայիրին)՝ օգտուելով Ասորեստանի ժամանակաւոր տկարութենէն: Սակայն ի վերջոյ կ'ընկճուին եւ կ'ստիպուին լքել Հայկ. Բարձրաւանդակին մէկ մասը:

(1) *W. F. Albright կը կարծէ թէ անոնց բնակավայրը կը համապատասխանէր վերջէն Փոքր Հայք կոչուած երկիրին. Phiological method in the identification of Anatoliau Place-names. 21).*

(2) Նաիրի *կը նշանակէ* Միջագետք.

Արիական այս ժողովուրդներուն մինչեւ Հայկ. Բարձրաւանդակ առաջանալէն բաւական ետք հոն կը գտնենք ժողովուրդ մը, որ դրացիներէն կը կոչուի իբրեւ Խալդի Ասուածոյն հետեւող՝ Խալդիացի կամ իբրեւ Ուրարտու երկիրին բնակիչ՝ Ուրարտացի: Ասոնք հայատիպ ցեղին պատկանելով հանդերձ զտարիւն չէին, վասնզի խառնուած պէտք է ըլլան, աւելի կամ նուազ չափով, արիական ժողովուրդներու հետ, որոնք Հայկ. Բարձրաւանդակին տիրած էին:

Այս տեսակ ցեղախառնումի մը ապացոյցն էր՝ օրինակ՝ Ուրարտացիներու երկու տիպարի — մէկը բարձրահասակ եւ միւսը կարճահասակ — բաժնուիլը, եւ իրենց ոչ հնդեւրոպական ծագում ունենալը եւ ցեղակից ըլլալը Սուբարուներուն կամ Հայասայի բնակիչներուն: Ասոնք Բարձրաւանդակին արեւմըտեան մասին մէջ՝ ճիշդ Սուբարուներու եւ Խուրրի-Միտանիներու գրաւած երկիրներուն մէջ, Թ. դարէն սկսեալ կացութեան տէր կը դառնան եւ գերիշխող դիրք կը գրաւեն, եւ Ասորեստանի հետ կը պայքարին եւ իրենց իշխանութիւնը կը տարածեն ոչ միայն Հայաստանի մեծագոյն մասին վրայ, այլ նաեւ անկէ դուրս: Անոնք Արածանիի գիծով հասան Եփրատ, արեւմտեան սահմանը, եւ Ուրարտու անունը տարածուեցաւ Նաիրիի (Հիւսիսային Միջագետք) վրայ: Աւելի ուշ ժամանակներու մէջ անոնք կեդրոնացան Այրարատի շրջանին մէջ, բայց չանցան Արարատեան դաշտէն անդին դէպի արեւելք, այլ դէպի հիւսիս՝ Սեւանայ եւ Չարիշատի (Կարսի հիւսիսը) լիճերը, դէպի հիւսիս-արեւմուտք մինչեւ Բասէն միայն հասան: Ուրարտուները միշտ կը նկատուէին իբրեւ հարաւէն եկող նուաճողներ, որոնք կու գային իրենց իշխանութիւնը հարկադրելու օտարացեղ ազգաբնակութեան մը, ինչպէս էին Խուրրի-Միտանիները, Հայասաները, Մանտաները, որոնք անշուշտ անհետ կորսուած չեն: Ինչպէս կը հասկցուի Ուրարտեան արձանագրութիւններէ, որոնք շարունակ կը խօսին ապստամբութիւններէ: Բարձրաւանդակը ուրեմն այդ շրջանին, ինչպէս նախորդներուն, չունէր միաձոյլ ժողովուրդ մը, եւ տիրապետող Ուրարտուները պարտաւորուած էին մաքառիլ թէ՛ ներքին ճակատի վրայ՝ նուաճուած ցեղերու եւ թէ՛ արտաքին ճակատի վրայ հարաւէն զիրենք անհանգիստ ընող Ասորեստանցիներու եւ արեւմուտքէն արշաւող զանազան ժողովուրդներու՝ ինչպէս Մոսքերու եւ Հաթերու (1) դէմ եւ արգիլել անոնց ներխուժումը դէպի Հայկ. Բարձրաւանդակին կեդրոնը. սակայն եկաւ տեն մը՝ որ չափազանց պարտասած՝ ընկնուեցան եւ տեղի տուին հիւսիսէն եւս խուժող Հնդեւրոպական Կիմմերներու (2) առջեւ: Ասոնք Կովկասի ուղեգիծով մտան Հայկ. Բարձրաւանդակ եւ հոն հատուածներ թողլով իջան Իրան եւ Փոքր Հայք ու Կապադովկիա:

Կովկասէն խուժող այս ժողովուրդներուն գրոհին առջեւ՝ Ուրարտեանց ընկճումը առիթ մը եղաւ որ արեւմտեան սահմաններուն վրայ կասեցուցուած Մոսք Փռիւգ ցեղերը եւ Հաթերը, Է. դարուն (իբր 650 Ք.Ե առաջ) յաջողին ներխուժել Հայկական լեռնադաշտը եւ անոր արեւմտեան մասին տիրել եւ հոն տեղաւորուիլ: Այս առթիւ արեւելքի կողմը կը խլրտին Արիական ցեղերը եւ կ'զբաղեցնեն նոյնիսկ Ասորեստանը, եւ հետզհետէ աւելի զօրանալով, հաստատուն բնակութիւն եւ կարգաւորեալ պետութիւններ կ'ունենան եւ իրենց արշաւած ու ներխուժած երկիրներու բնակչութեան հետ կը խառնուին: Ասոնք Հայկական Բարձրաւանդակին ալ կը տիրապետեն եւ կը տարածուին մինչեւ Եփրատ եւ նոյնիսկ մինչեւ Ալիս գետերուն արեւմտեան երկիրները,

Դժբախտաբար Հայկ. Բարձրաւանդակի անցքերը մութին մէջ կը մնան Նինուէի կործանումին թուականը (605) կանխող եւ մասնաւորապէս անոր յաջորդող մօտաւորապէս դարու մը (606—538 Ք.Ե առաջ) ժամանակամիջոցին, զի արձանագրութիւնք կը լռեն: Որոշ է որ Ուրարտու այդ միջոցին (585էն յետոյ) կ'անհետանայ եւ յաջորդող դարու մը ընթացքին Հայաստանի բնակչութիւնը իր դիմագծութիւնը կը փոխէ, ցեղային բաղկացութեան տեսակէտով, որովհետեւ հոն գերիշխան կը դառնան Հնդեւրոպական ցեղեր, տիրող ընդհանուր խառնակութեան միջոցին Հայաստան ալ խուժած ըլլալով՝ երկիրին գէթ երեք կողմերէն՝ արեւմուտքէն, հիւսիսէն եւ արեւելքէն Հնդեւրոպական զանազան ժողովուրդներ: Այս խառնակ ժամանակամիջոցին, Ուրարտուի հզօր պետութեան անհետացումէն մինչեւ հաստատուն կացութեան մը ստեղծուիլը Փոքր Ասիոյ եւ Հայկ. Բարձրաւանդակին վրայ, շատ մը ազգեր գէթ մասամբ բռնադատուած են փոխել իրենց բնակավայրերը եւ այլուր հաստատուիլ: Այսպէս՝ Ուրարտուները կամ Խալդիները, քշուած են դէպի Պոնտոսի ծովեզերքը եւ հոն հաստատուած՝ ու իրենց անունը (Խալդիք=Խաղդիք=Ճորոխի շուրջը) տուած են իրենց նոր բնակավայրին:

Մոսքերը վանուած են Բարձրաւանդակին վրայ իրենց գրաւած երկիրներէն եւ քշուած՝ դէպի հիւսիս, տեղաւորուած են Կողքիսի սահմանակից Փասիս (Ռիոն) գետին վերին հոսանքին վրայ, տալով Վրաց պատմութեան նախնական շրջանին Մոսխէթի կամ Մոսքեդք անունը իբրեւ *Մոսխ* կամ *Մեսխ* ժողովուրդի բնակավայր: Այս Մեսխ ժողովուրդը վրացի ազգը կազմող ամենահին ծանօթ տարրն եղած է: Յոյն եւ Լատին աշխարհագիրները շատ լաւ կը ճանչնային այս նահանգը, մանաւանդ անոր արեւմտեան մասը, որուն բնիկները Յոյները *Տայ* (յոգնակի *Տաօքի*) կը կոչէին, իսկ Հայերը՝ *Տայք* եւ Վրացիք *Տաօ*: Յոյն պատմիչները զանոնք կը ներկայացնեն իբրեւ կիսավայրենի, որոնք իրենց բարձր բլուրներէն խոշոր քարեր կը գլորէին թշնամիներուն վրայ, ինչպէս ըրած են, Քսենոփոնի (տես ՀԱ. 1938 էջ 376): Հաթերը, որոնք ստացած էին Կատուռնացի անունը (մէկ այլափոխութիւնը Խաթ=Խաղ=Կատ անունին), մեծ զանգուածներով

(1) *Հաթերը 714ին Կարկամիշի կործանումէն վերջ տարածուած են Հայկ. Բարձրաւանդակ։*

(2) *Յոյն մատենագիրներ զանոնք կը ճանչնային* Կիմմեր *կամ* Սկիւթացի *եւ Հայ պատմիչները՝* Գամիրք *եւ* Շակեր *անունով։ Ասորեստանեան արձանագրութիւններու մէջ յիշուած* ժողովուրդներու բազմութիւն, խաժամուժ, վայրենի մարդիկ *իմաստով* Ումման—Մանտա (*Umman-Manda*) *ցեղերը եւ Հաթեան արձանագրութեանց Մանտա ռազմիկները նոյն Կիմմերներն են։*


ՈՒՐԱՐՏՈՒ
ԱԼԶԻ
ԴԻԱՈՒԽԻ
ԷՐԻԱԽ
ԽԱԼԴԻ
ՏԱՐՍԼ
ՄԵլիտա
ԿՈՒՄՈՒԽ
ԾՈՓՔ
ՆԱԻՐԻ
ՈՒԿՈՒՄ
ՄՈՒՍԱՍԻՐ
ԳԻԼԶԱՆ
ՄԱՆԱ
ԱՍՈՐԵՍՏԱՆ
վանի ծով
Սևանա լիճ
Ուրմիո լիճ
Ճլդըր լիճ
Թեյշեբայնի
Մենուախինիլի
Արգիշտի
Մենուաշէ
Տուշպա
Ուլխու
Մուսասիր
Մեղտա
Եփրատ գ.
Ճորոխ գ.
Կուր գետ
Երասխ գ.
Արաքս
Սիրիս գ.
Մեծ Զաբ
փոքր Զաբ
32
34
36
38
40
42
44
46
48

Թիւ 3 | Տես բնագիր էջ 7—8

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ՇՐՋԱՆԻՆ

(ԺԱ. — Զ. դար Քր. Է առաջ)

*ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ*

1. *Կարմիր կէտանիշ, Ուրարտեան պետութեան սահմանները.*
2. • *Ուրարտեան սեպագիր արձանագրութիւններ գտնուած վայրերը.*

ապաստանած են Հայաստանի ամուր լեռնամասերը եւ հոն իրենց գոյութիւնը պահած են մինչեւ Ք.ի Ա. դար, ինչպէս կը յիշատակէ Ստրաբոն (ԺԱ. 14, 5), որ Կատաւոնացիքը հաստատուած ցոյց կու տայ Եկեղեաց գաւառին (Երզնկա) եւ նոյն իսկ Կարինի եւ Դերջանի մէջ: Իսկ Հայկ. Բարձրաւանդակ կը տեղափոխուէին «Արման աշխարհի մարդիկը», որոնք կը գտնուէին Ուրմիոյ լիճին շուրջը (Տաշեան, ՀԱ. 1934, 30): Ասոնք Ը. դարուն գաղթաւորմամբ կը մտնեն Հայաստան, ըստ J. Markwartի իբրեւ իրանեան զինուորական գաղութներ եւ հոն կը տեղաւորուին եւ իրենց մշակութային ազդեցութեան կ'ենթարկեն երկիրը:

Արմէններ՝ հաւանօրէն շատ հին ժողովուրդ մը էին, վասնզի նախ քան Քր. 3000ական թուականներէն սկսեալ՝ Մերձաւոր Արեւելքի զանազան ազգութեանց, ինչպէս Աքքատեան, Եգիպտական, Հաթեան, Բաբելական Ասորեստանեան, Ելամական, Խալդեան արձանագրութիւններու մէջ յիշուած են *Երկիր Արմանի* մը կամ աւելի ճիշդ *Արման* ազգանունը կրող բազմաթիւ նախապատմական ժողովուրդներ, տարածուած հայկական բարձրին երկու կողերուն, շատ հաւանաբար նաեւ կեդրոնական մասին վրայ, (տես Տիկ. Վարդուհի Քալանթար-Նալբանդեանի *Նախապատմական Արմէնները (Հարմէնիյապ)* խորագիրով յօդուածաշարքը. *Հայրենիք* ամսաթերթ ԺԶ. տարի 1938, թ. 3, 4, 5, 6, ինչպէս նաեւ նոյնին՝ *Արմէն ժողովուրդը, անոր ծագումը եւ հնութիւնը Արեւմտեան Ասիոյ մէջ* դասախօսութիւնը, հրատարակուած *Հայրենիք* օրաթերթի 1943 Դեկտ. 31ի եւ *Յուսաբերի* 1944 Ապրիլի առաջին տասնեակի թիւերուն մէջ):

Ինչպէս կը տեսնուի՝ *Արման* մը կար, Զաղրոսեան շրջանին մէջ Աքքատի Սարգոնին ատեն (27 դար առաջ Քրիստոսէ), ուրիշ մը Ամանոսեան շրջանին մէջ Նարամ Սինի (մօտ 2600—2500 Քր.է առաջ) ժամանակ, Փոքր Հայքի մէջ Սեբաստիոյ շուրջը՝ Տուպիլուլիումաշի ատեն, Տարոնի սահմանակից՝ Միհնուասի ատեն, Հայաստանի (Բագրեւանդ ?) մէջ Մուրշիլիշի ատեն եւ վերջապէս Վասպուրականի մէջ՝ Մենուասի ատեն (տես. *նոյն*): Աւելցնենք նաեւ թէ Անիտաշ Կուշարացի (1950—1920 Քր.է առաջ) խեթացի հնագոյն ծանօթ թագաւորը կը յիշէ *Արմինա* երկիր մը Բաբելոնի շուրջը, որուն տիրող թագաւորին յաղթած էր եւ զայն գերելով Բաբելոնէն իր երկիրը բերած էր:

Տիկ. Վարդուհի Քալանթար-Նալբանդեան, որ խորապէս ուսումնասիրած է Արմէններու ծագումը, կ'ենթադրէ որ՝

> «թէ Հայաստանը եւ թէ Միջագետքը ծածկող միատարր ցեղ մը կար ոչ հնդեւրոպական եւ ոչ ալ սեմական, որուն բնիկ անունը Արամ, Արմանի էր: Ասոր հարաւային մասը դարձաւ սեմախօս, սեմացած Արաբիայէն եկող սեմական ալիքներու ազդեցութեան տակ, իսկ հիւսիսայինը, վերջ ի վերջոյ հնդեւրոպականացաւ, ինքզինքն կոչեց տարբեր անունով, բայց օտարները շարունակեցին զինքը իր հին անունով, Արմանի, Արմէնի կոչել»:

Արդեօք այս կերպով կարելի՞ է զայն նոյնացնել հայատիպ հիմնախաւին հետ: Հանելուկ մը՝ զոր լուծել դիւրին չէ:

Սակայն ինչ որ բաւական վաւերական կը թուի, այն է որ Արմէնները գաղթաշարժերով քշուած էին հարաւէն դէպի հիւսիս, եւ Իրանի Բարձրաւանդակին վրայ տեղ բռնած: Աւելի վերջը՝ ասոնք էին թերեւս *Արման աշխարհին մարդիկ* կամ *Արմէններ* կոչուած գաղթականները, որոնք Հայաստան մտան Արեւելքէն Ը. դարուն եւ յաջորդ դարերու ընթացքին բնիկ դառնալով՝ տուին իրենց անունը երկիրին որ մասնաւորապէս օտարներէն *Արմանիա* կամ *Արմենիա* կոչուեցաւ, իսկ բնակչութիւնը *Արմէններ*, մինչ նախկին բնիկ ժողովուրդը պահեց իր հին անունը՝ *հայ*, միայն երկիրին անունը իրանեան մասնիկով մը փոփոխութեան ենթարկելով՝ փոխանակ *Հայասայի Հայաստան* կոչելով, ինչպէս կը կարծեն ոմանք, առանց շատ դրական եւ վաւերական փաստեր ունենալու այս մասին:

*Արմենիա* եւ *Արմին* կոչումները նկատելի է որ բաւական ուշ ժամանակ երեւան կու գան, վասնզի Դարեհի (521—485) երեքլեզուեայ Պեհիստունի արձանագրութեան բաբելական խմբագրութեան մէջ տակաւին պահուած էր *Ուրաշտու* (=Ուրարտու) բառը՝ Հայաստան երկիրին համար (Տաշեան, ՀԱ. 1934 էջ 30):

## Բ.

## ՀԱՅ-ԱՐՄԷՆՆԵՐՈՒ ԳՐԱՒԱԾ ՏԱՐԱԾՈՒԹԻՒՆԸ ԻՐԱՆԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ

Անհաւանական չէ որ Արմէններուն հետ կամ յետոյ Հայաստան մտած ըլլան ուրիշ Իրանեան ժողովուրդներ, որոնք տեղացիներու հետ խառնուած եւ տիրապետող դարձած ըլլան ամբողջ երկիրին մէջ:

Այս շրջանին է որ հաւանօրէն երեւան կու գան լեռնային դիրքերու կամ ձորերու մէջ ցեղապետութիւններ կամ գլխաւոր իշխանութիւն մը՝ շրջապատուած մանր մունր տոհմապետութիւններով: Այս իշխանութիւնները —որոնց դիրքը շատ համեստ եւ երկրորդական ըլլալ կը թուի — կրցած են պահել իրենց գոյութիւնը եւ թերեւս շատ քիչ չափով մըն ալ զարգանալ, սակայն այդ շրջանին Հայաստանի բնակչութիւնը չունէր ո՛չ ազգային եւ ո՛չ ալ պետական միութիւն, այլ ընդհակառակը ցեղագրութեամբ եւ պետական կազմով բաժան բաժան վիճակ մը: Ո՛չ միակ ազգ մը եւ ո՛չ ալ միակ պետութիւն մը կամ պետութիւններու միութիւն մը կար Հայկ. լեռնադաշտին վրայ, այլ լեռնական խումբեր՝ որոնք հազիւ թէ հեղինակութիւն մը կը ներկայացնէին. սակայն իրենց ըմբոստութիւններով եւ ապստամբութիւններով նեղութիւն կը պատճառէին շրջակայ երկիրներուն՝ ամէն անգամ որ առիթ գտնէին: Ասոնք կէս քաղաքակիրթ իշխանութիւններ էին, որոնք հաւանօրէն իրենց անկախութեան համար կը մաքառէին, թէեւ դժբախտաբար այս շփոթ շրջանէն շատ քիչ տեղեկութիւններ ունինք: Հոն կային անկախ առաւել կամ նուազ ընդարձակ իշխանութիւններ, որոնք երբ հին Ելամական թագաւորութեան մէկ մասին՝ Անշանի (=Էշերու երկիր) թագաւորը Կիւրոս (558—550—524), հիմնադիրը Աքեմեն-

եան հարստութեան, արիական ժողովուրդներու դրօշակիրը դառնալով. հիմնեց մեծ կայսրութիւն մը, հաւանօրէն ինքնակամ հնազանդեցան անոր, եւ անոր բանակներուն ընկերացան դէպի Սարդիկէ եւ Բաբելոն, ինչպէս կը հաւաստէ Քսենեփոն: Հայկ. Բարձրաւանդակը սակայն հուսկ յետոյ ենթարկուեցաւ պարսիկ լուծին՝ Կամբիւսի (529—522) ատեն, իսկ անոր մահէն վերջ ապստամբեցաւ, երբ Գաւմատա իբրեւ Սմերտ գահը յափշտակել փորձեց: Դարեհ Ա. (512—486) այս առթիւ 519ին եւ 518ին կ'արշաւէ Արմենիա, զայն հնազանդեցնելու համար:

Արմենիայի այդ ժամանակամիջոցին տարածութեան եւ սահմաններուն վրայ որոշ տեղեկութիւններ կը պակսին: Դարեհի արձանագրութիւնները զայն անգամ մը Մարաստանի եւ Կապադովկիոյ, եւ ուրիշ տեղ մըն ալ, Եգիպտոսի եւ Կապադովկիոյ մէջտեղը կը յիշեն (տես. Հ. Հիւպշման, *Հին Հայոց տեղւոյ անունները՝ Հայոց աշխարհի հին պատմական տեղագրութեան մասին ուսումնասիրութիւններով*, թրգ. Հ. Բ. Պիլէզիկճեան, Վիեննա՝ 1907 էջ 10), մինչդեռ Հերոդոտոս (Ե. 52) կ'ըսէ թէ՝

«Կիլիկիայի եւ Արմենիայի սահմանը կը կազմէ նաւարկելի գետ մը, որուն անունն է Եփրատ: Արմենիայի մէջ կը գտնուին 15 կայարան հանգստեան տեղերով, 56 ու կէս փարսախ տարածութեան վրայ: Այնտեղ կայ նաեւ բերդ մը: Արմենիայէն Մատիենէ անցնելէն յետոյ այստեղ եւս կը գտնուին 31՝ կայարաններ 137 փարսախ տարածութեան վրայ»:

Ուրեմն Արմենիա Մատիենէի եւ Կիլիկիոյ միջեւ կը գտնուէր, Եփրատի արեւելեան կողմը:

Հերոդոտոս՝ հին Կապադովկիոյ արեւելեան մասը՝ այսինքն արդի Մալաթիոյ շրջանը կը համարէր Կիլիկիոյ մաս: Արդ, որովհետեւ Կիլիկիոյ եւ հարաւ-արեւմտեան Արմենիայի միջեւ իբրեւ սահման ցոյց տուած է Եփրատը, ուրեմն անոր մօտէն 56 ու կէս փարսախ (մօտ 300—350 քիլոմէթր) տարածութիւն մը ունէր երկիրը:

Մանանդեանի տեսութեամբ, այս տարածութեան մէջէն կ'անցնէր Սարդիկէէն Շօշ գացող Պարսից «Արքայական» կոչուած մեծ ճանապարհը, որուն ուղղութիւնը կ'ենթադրուի թէ արդի Մալաթիայէն սկսելով Խարբերդի դաշտին մէջէն կը դիմէր դէպի Տիգրիս գետը Ամիթ=Տիարպէքիրի մօտ եւ այն տեղէն ալ կ'երթար դէպի արդի Ճէզիրէ, որ հաւանօրէն կը գտնուէր Մատիեններու երկիրին մէջ (Յ. Մանանդեան, *Քննական տեսութիւն հայ ժողովրդի պատմութեան*, Ա. Հատոր. 58):

Ուրեմն Հերոդոտոս Արմենիա ըսելով կը հասկնար այն աշխարհամասը, որ Եփրատէն մինչեւ Կորճայք կը տարածուէր՝ Վերին Տիգրիսի շրջակայքը, իր մէջ ունենալով, ինչ որ լոկ արդի հարաւային Հայաստանն է, կամ ուրիշ խօսքով Ստորին Արածանիի եւ Վերին Տիգրիսի շրջաններուն մէջ՝ հին Ծոփքը եւ Աղձնիքը կը ներկայացնէին Արմենիան:

Սակայն պէտք է ընդունիլ որ շատ յստակ չեն Հերոդոտոսի հաւաստումները, վասնզի բաւական խառնակ են իր ըսածները, քանի որ Աքեմենեանց տիրապետութեան տակ Սատրապութեանց բաժանումները միօրինակ չեն եղած եւ փոփոխութեանց ենթարկուած:

Դարեհ (522—486) իր կայսրութիւնը նախ բաժնած էր 24 սատրապութիւններու, որոնց 7րդն էր Արմենիա, ինչպէս կը տեսնուի Պերսեպոլիսի արձանագրութեան մէջ:

Նաղշ Ռուստամի արձանագրութեան մէջ սատրապութիւններու թիւը կը բարձրանայ 28ի, որոնց մէջ 19րդ տեղը կը գրաւէ Արմենիա, իսկ Պեհիստունի արձանագրութեան մէջ կը յիշուին 23 նահանգներ, որոնց մէջ 11րդ տեղը կը գրաւէ Արմենիա,

Արտաշէս Երկայնաբազուկի կամ Արտաքսերքսէս Ա.ի (464—425) ատեն, սատրապութիւններու թիւը եւ սահմանները փոփոխութեան ենթարկուեցան:

Հերոդոտոս յոյն պատմագիրը (484—425 Քր.է առաջ) որ ապրած է այդ օրերուն՝ հաւանօրէն այս վերջին փոփոխութեան վրայ հիմնուած սատրապութիւններուն թիւը կը նշանակէ 20, որոնցմէ 18րդին մէջ կը բնակէին՝ կ'ըսէ՝ *Մատիենացիք*, *Սասպիրացիք* եւ *Ալարոտեանք*, 13րդին մէջ *Արմէնները*, *Պակտիացի*ները եւ այլ ժողովուրդներ եւ 19րդին մէջ *Մոսք*երը՝ *Տեբարինացիք* եւ այլ պոնտոսեան բնակչութիւններ (հմմտ. Գ. 92): Բայց որովհետեւ Մատիացիք Վանայ եւ Ուրմիոյ լիճերուն մէջտեղը կը բնակէին, Սասպիացիք՝ Վերին Երասխի վրայ՝ ոչ շատ հեռու Հայոց Սպեր գաւառէն, ուստի կարելի է ընդունիլ՝ որ իրենց հետ մէկտեղ 18րդ շրջանակին վերաբերող Ալարոտեանք, —որոնց անունը Ասորեստանցւոց *Ուրարտու* եւ Հայոց *Այրարատ* բառերուն միջեւ միջին մը կը համարուի— Միջին Երասխի վրայ գտնուած երկիրները բռնած էին. ուստի Դարեհի ժամանակները Երասխի հովիտը եւ Վանայ լիճին արեւելակողմը Սասպիացիք, Ալարոտեանք եւ Մատիացիք կը բնակէին, իսկ Արմէնները դեռ հոն չէին հաստատուած (Հիւպշման, *նոյն*, 11):

Ասոնք կը պատկանէին այն նահանգին, զոր Դարեհ իր արձանագրութիւններուն մէջ՝ բնակող գլխաւոր ժողովուրդէն առնելով «Արմենիա» կոչած էր: Այս նահանգն ըստ Հերոդոտոսի, դէպի հիւսիս մինչեւ Սեւ Ծով, դէպի արեւմուտք մինչեւ Եփրատ, դէպի հարաւ՝ մինչեւ Վերին Տիգրիս եւ դէպի արեւելք մինչեւ Սասպիացւոց, Ալարոտեանց եւ Մատիացւոց երկիրը (18րդ շրջանակը) կը տարածուէր: Հայերը առանձին այս նահանգը չէին բռնած, անոնք իրենց բնակակից ունէին Քր. է վեց դար առաջ նաեւ Խալդերը (տես Յ. Մանանդեան, *Քննական տեսութիւն հայ ժողովրդի պատմութեան*, Հտ. Ա. էջ 42): Ինչպէս նաեւ Մետացիները, թէեւ իրենք է որ կարեւոր դեր կը կատարէին իբրեւ Մարական թագաւորութեան դաշնակիցները (*Նոյն* էջ 43): Նոյն նահանգին հարաւակողմը կը բնակէին Պակտիացիները եւ հիւսիսակողմը՝ Պոնտական ազգերը (Խաղտիք, Խաղիբացիք եւ այլն) եւ իրենց բուն բնակավայրը կը սահմանափակուէր Եփրատի (Մելիտինէի քովէն առնելով) Վանայ լիճին, Վերին Տիգրիսի եւ Արեւմտեան Եփրատի (Գարա-Սու) գծած շրջագիծին մէջ, եւ բնաւ չէր հասնէր մինչեւ Երասխի դաշտը (Հիւպշման, *նոյն*, 12): Դարեհի եւ Քսերքսեսի արձանագրութիւնները կը հաստատեն ինչ որ Հերոդոտոս կ'ըսէ: Հայք՝ *Արմէն* անունով կը յիշուին իբրեւ արեւմտեան եօթներորդ նահանգը, զանգիկ կրօնքով հարկատու ազգերու շարքին (Lassen, Րիտտէր նաեւ Գաբրն-


ԿՈՂՔԻՍԱՑԻՔ
ՎԻՐՔ
ԱՂՈՒԱՆՔ
ԽԱՂՏԻՔ
ՍԱՍՊԻՐԱՑԻՔ
ԽԱԼԻԲԱՑԻՔ
(ԺԹ. ՍԱՏ.)
ՏԻԲԱՐԵՆԱՑԻՔ
Գ. ՍԱՏՐԱՊՈՒԹԻՒՆ
ԱԼ'ԱՐՈԴԵԱՆՔ
(ԺԸ. ՍԱՏ.)
ԱՐՄԵՆԻԱ
(ԺԳ. ՍԱՏՐԱՊՈՒԹԻՒՆ)
ՄԱՏԻԱՑԻՔ
ՊԱԿՏԻԱՑԻՔ
ԿԻԼԻԿԻԱ
(Դ. ՍԱՏ.)
ԿՈՐԴՈՒՔ
ԱՍՈՐԻՔ
(Ե. ՍԱՏ.)
ԱՍՈՐԵՍՏԱՆ
(Թ. ՍԱՏ.)
ԺԱ. ՍԱՏ.
Սինոպ
Բաթում
Կիրասոն
Տրապիզոն
Կարին
Արզրում
Վան լիճ
Կուր գետ
Երասխ գ.
Եփրատ գ.
Տիգրիս
32
34
36
38
40
42
44
46
48

Թիւ 4 — Տես բնագիր էջ 9

# ՀԱՅԱՍՏԱՆ ԻՐԱՆԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Սեւ գիծերով սահմանագծուած են Պարսիկ Սատրապութեանց սահմանները Հերոդոտոսի տուած տեղեկութեանց համաձայն.
2. Կարմիր գիծը ցոյց կու տայ Քսենոփոնի ուղեգիծը Հայաստանի մէջ (401 — 400 Քր. Է առաջ)
3. Մարե-Պարսիկ տիրապետութեան տակ Հայոց ապրած շրջանակը կարմիր գիծիկներով նշանակուած է։

Չափ 1.450.000

նան, *Տիեզ. պատմ.* Ա. 341 եւ 351, Գարագաշեան, *Քնն. պատմ,* Ա. 66):

Արդ, նկատելով թէ Հերոդոտոս այլուր (Ա. 72) կը հաւաստէ որ Ալիս գետը կը բխի Արմենիայի լեռներէն (Ա. 72) կարելի է հետեւցնել որ Դարեհի ժամանակ (522—486) եւ Հերոդոտոսի ատեն (484—425 Քր.է առաջ) Հայոց բնակութեան արեւմտեան սահմանները կը կազմէին Մելիտինէի երկիրը՝ հարաւէն, եւ Փոքր Հայքը՝ հիւսիսէն, Ալիսի վերին հովիտներուն մէջ:

Այս կերպով հաստատուած կ'ըլլայ, որ ամենահին ժամանակներէն սկսեալ Փոքր Հայք հայաբնակ էր, քանի որ Դարեհի արձանագրութիւնը հայկական երկիրներու շրջանակին մէջ ցոյց կու տայ նաեւ Փոքր Հայքը, որ Մեծ Հայքի հետ կը կազմէր *սատրապութիւն* մը եւ Հերոդոտոս կ'ըսէ՝ թէ Ալիս գետը Հայաստանէն կ'անցնի:

Երբ Քսենոփոն 400—401 թուականին Հայաստանէն կ'անցնէր, տեսաւ որ Կենտրիտես գետը (հիմա Պոհտան-Սու՝ Վանի լիճին հարաւակողմը Տիգրիսի ճիւղերէն մին) սահմանն է Կորդուաց —որոնք այլեւս պարսիկ արքային չէին հնազանդեր – եւ Հայաստանի միջեւ, որ տակաւին Պարսիկ իշխանութեան տակ մնացած էր:

Բոլոր այն նկարագրութիւններէն, զոր Քսենոփոն կ'ընէ այս սահմանէն մինչեւ Տրապիզոն հասնիլը, միայն սա չափ լուսաբանութիւն կարելի է քաղել՝ թէ Հայաստանի հարաւային սահմանն էր Պոհտան-Սու եւ հիւսիսայինը՝ կրնայ ենթադրուիլ թէ՝ էր Վերին Երասխը (Փասիս, Բասենի գետ): Իսկ արեւելեան եւ արեւմտեան սահմաններուն վրայ ոեւէ լուսաբանութիւն չկայ իր գործին մէջ:

Պատմական բոլոր երկերու մէջ ըսուած է՝ թէ Քսենոփոնի անցքի ատեն (401/400ին նախ քան Քր.) Հայաստան բաժնուած էր երկու սատրապութեանց, որոնց արեւմտեանին վրայ կ'իշխէր Տիրիբազ, զոր Քսենոփոն իր վերջաբանին մէջ կուսակալ Փասիանցւոց եւ Սպերացւոց կը կոչէ եւ արեւելեանի վրայ՝ Որոնդաս (=Երուանդ): Սակայն Յ. Մանանդեան (*Քննական տեսութիւն Հայ ժողովրդի պատմութեան.* Հատոր Ա. էջ 65) այս ընդունուած տեսութեան համաձայն չէ: Ան կ'ըսէ՝ թէ Տիրիբազը Քսենոփոն կը ներկայացնէ Արեւմտեան Արմենիայի «հիպարքոս», այսինքն փոխ-կառավարիչ, որով կը խորհի թէ Արմենիա մէկ էր (1), միայն անոր արեւմտեան մասին կառավարութիւնը վստահուած կրնար ըլլալ փոխ-կառավարիչի մը:

Ընդունելով թէ այս տեսակ բաժանում մը գոյութիւն ունեցած ըլլար, Հիւպշման (*Նոյն*, 15) երկու սատրապութեանց առաջինը կ'ենթադրէ թէ Հերոդոտոսի 13րդ սատրապութեան (Պակտրիկէ, Հայք եւ դրացիք մինչեւ Պոնտոս) միջին մասէն, եւ վերջինը՝ 18րդ սատրապութեան (Մատիացիք, Սասպիացիք, Ալարոդեանք) հիւսիսային մասէն կազմուած ըլլայ, որով հարկ կ'ըլլայ հետեւցնել՝ որ Արեւմտեան Հայաստանը, որ մէջը կը բովանդակէր Արածանիի (=Մուրատ Սու) դրացի երկիրները, իսկ Արեւելեան Հայաստանը՝ Կենտրիտեսէն (Պոհտան Սու) մինչեւ Երասխ տարածուող երկիրը: Հետեւաբար Հայերը տարածուած էին դէպի հիւսիս եւ արեւելք, Ալարոդեանք անհետացած, Փասիանցիք տեղաւորուած Վերին Երասխի կողմերը եւ Սասպիացիք քաշուած հիւսիս-արեւմուտք (Հիւպշման, *Նոյն*, 15):

Յ. Մանանդեան (*Քննական տեսութիւն*, էջ 66) իր սեփական տեսութեամբ, *Արեւելեան Արմէնիան* կը խորհի թէ կը գրաւէր Տաւրոս լեռներու եւ Վանայ լիճին հարաւակողմը գտնուող արմենական երկիրը, իսկ *Արեւմտեան Արմէնիա* կը գրաւէր նոյն լեռներուն հիւսիսակողմը գտնուող Արածանիի հովիտները եւ Մշոյ դաշտը մինչեւ Փոքր Հայք եւ Սեւ Ծով, եւ երկիրը ունէր խառն բնակչութիւն մը, զի դեռ Արարատեան դաշտը կը գրաւէին՝ Սասպիացիները, Ալարոդեանները եւ այլ հին բնիկ ցեղեր:

Արմէնները հազիւ հասած ըլլալ կը թուին մինչեւ Բագրեւանդ ու Ծաղկոտն: Արմէնիայի մէջ կ'ապրէին խառն Արմէններ եւ բազմաթիւ ուրիշ ցեղեր, ինչպէս Կարդուխներ, Մարդեր, Խալտայներ, Խարտուխներ, Տաօխներ, Խալիբներ եւ Մակրոններ, իսկ բարձրաւանդակէն դուրս ուրիշ շատ մը ժողովուրդներ, որոնք ժամանակի ընթացքին ձուլուած են Արմէններու հետ:

Արդարեւ 401—400 թուականներուն (Քր.է առաջ)՝ երբ Քսենեփոն կ'անցնէր Հայաստանէն, կը յիշէ այս ժողովուրդներէն մէկ մասը: Այսպէս՝ ան կը յիշէ Կարդուխները (հաւանօրէն յետոյ Կորտուք) որոնք կը գրաւէին Կենտրիտես գետին հարաւակողմը եւ այն ատեն անկախ էին, իսկ հիւսիս-արեւմտեան կողմէն Արմէններուն դրացի էին Խալիբները, որոնց երկիրին մէջէն Յոյները անցած են եօթը օրէն կտրելով մօտաւորապէս 50 փարսախ (250 քլօմէթր) ճամբայ մը:

Գալով Տաօխներու (յետոյ Տայք) ասոնց երկիրէն Քսենոփոնի եւ իրեններուն անցքը հինգ օր տեւած էր, մօտ 30 փարսախ (150 քիլօմէթր) երկարութեամբ ճամբով մը: Ասոնք հաւանօրէն դրացի էին Խալիբներուն եւ Բասիաններուն (Բասեանք), որոնք անկախ էին եւ պարսիկ իշխանութեան տակ չէին: Ասոնցմէ զատ կը յիշուին Քսենոփոնէն Հայկական Բարձրաւանդակին հիւսիս-արեւմտեան կողմերը՝ Արաքս, Արփա-Չայ եւ Ճորոխ գետերուն ուղղութեամբ եւ աւելի արեւմուտք՝ դէպի Տրապիզոն, Սկիւթներ, Մոկրոններ, Կոլխեր, Տեբարինացիներ, Մոսքեր, որոնք բոլորն ալ ազատ էին եւ անկախ պարսիկ թագաւորութենէն:

Նոյն կողմերը կ'ապրէին Սպերինացիք (յետոյ Սպերք) եւ Բասիանցիք (յետոյ Բասեանք), որոնք կը գտնուէին Տիրիբազի իշխանութեան տակ:

Քր.է առաջ Ը. դարուն դեռ Հայկական Լեռնադաշտին հիւսիսը հաստատուած էին հարաւային Ռուսիայէն գաղթած Կիմմերական-Սկիւթական ցեղեր, զորս յոյն եւ հռոմէացի մատենագիրներ կ'անուանեն *Սատապարաներ*, *Սակասաններ* եւ *Այնիաններ* (Յ. Մանանդեան *Քննական տեսութիւն*, Ա. էջ 73):

Հերոդոտոսի ժամանակ (484–425) Կողքիսէն մինչեւ Մեսական երկիրը (հաւանօրէն այժմեան Նախիջեւանի կողմերը) ապրած են Սկիւթական ցեղեր, զորս ինքը կ'անուանէ Սասպիացիք: Նոյն այս ցեղերը, որոնք Նահանջ Բիւրուի ժամանակ (401—400) կը գտնուէին Կարս-Լենինականի շրջանները եւ Արարատեան դաշտին մէջ: Քսենոփոն զանոնք կ'անուանէ Սկիւթներ:

(1) Լէօ (Հայոց պատմութիւն, *Հատ.* Ա. 1917, *Թիֆլիս* էջ 331) *եւս կը մերժէ Հայաստանի երկու սատրապութեանց բաժանումը:*

Իսկ Նահանջ Բիւրիւէն յետոյ Հայաստանի ուղղութեամբ ճամբայ արշաւած են եւ Արմէնիայի հիւսիսը հաստատուած են՝ Սարմատական ցեղեր, գլխաւորապէս Սիրակներ եւ հաւանօրէն նաեւ Գոթեր, որոնց անունը կը կրեն Հին Հայաստանի Շիրակ գաւառը եւ Գուգարք նահանգը (Յ. Մանանդեան, *նոյն* էջ 73)։ Կը յիշուին նաեւ *Մոսք*, *Ուտիք*, *Պակտիք* եւ ուրիշ ցեղեր (*նոյն*)։

Սոյնք ամէնը հետագային ձուլուեցան Արմէններու հետ, բայց Աքեմենեանց տիրապետութեան շրջանին տակաւին կը պահէին իրենց առանձին ազգային նկարագիրը՝ իւրաքանչիւրը իր յատուկ լեզուով կամ բարբառով, եւ կը գտնուէին մշակութային զարգացման զանազան աստիճաններու վրայ։

Սոյնք ամէնը ցոյց կու տան, որ Աքեմենեանց իշխանութեան տակ Հայ ազգը դեռ չէր կազմուած եւ ո՛չ երկիրը եւ ո՛չ հոն բնակող ժողովուրդը ընդհանուր կերպով Հայաստան եւ Հայ կրնային կոչուիլ։

## Գ.

## ԲՆԻԿ ՀԱՅ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ ՇՐՋԱՆԻՆ ՀԱՅԵՐՈՒ ՑԵՂԱԳՐԱԿԱՆ ՆՈՒԱՃՈՒՄՆԵՐԸ

Աղեքսանդր Մակեդոնացի վերջ տուաւ պարսիկ կայսրութեան Քր.է առաջ Դ. դարուն եւ երբ Հայաստան չենթարկուեցաւ իսկ Մակեդոնական լուծի, գոնէ որոշ է որ ձերբազատուեցաւ պարսիկ լուծէ եւ մասնաւորապէս օգտուելով Աղեքսանդրի զօրավարներուն իրարու դէմ մղած կռիւներէն՝ տիրացաւ իր անկախութեան բնիկ թագաւորի մը կամ թագաւորներու իշխանութեան տակ, որոնց տանուտիրական հեղինակութիւնը ճանչցան Սելեւկեանք՝ Իպսոսի ճակատամարտէն (301) յետոյ։

Արդարեւ Մեծն Աղեքսանդր չառաջացաւ մինչեւ Հայաստան, հակառակ անոր որ Փոքր Հայքի եւ Մեծ Հայքի Հայերը պարսիկ բանակներու մէջ իրեն դէմ կռուեցան։

Աղեքսանդրի ժամանակ Հայաստանի վեհապետն էր Որոնդէս, որ Արբելայի ճակատամարտին (331 Քր.է առաջ) մէջ, պարսիկ բանակին մէջ Հայ հեծելազօրքին հրամանատարն էր (1)։

Հակառակ անոր որ Մեծ եւ Փոքր Հայք՝ Աղեքսանդրէն չնուաճուեցան, եւ անոր մահէն յետոյ 323ի, 324ի եւ 315ի բաժանումներուն մէջ Հայաստանի յիշատակութիւնը չկայ, սակայն 300—301ին Արմէնիա ենթարկուեցաւ՝ գէթ անուանապէս՝ Սելեւկեանց գերիշխանութեան, պահելով իր ինքնավարութիւնը։ Հայք ի վերջոյ առիթը օգտագործեցին եւ թօթափեցին Սելեւկեան լուծը, եւ Հայաստանի հողին վրայ կազմեցին փոքր թագաւորութիւններ։

Այսպէս, Հայերէ բնակուած հողերու վրայ ծագում կ՚առնեն սա իշխանութիւնները՝

1. ՄԵԾ ՀԱՅՔԻ թագաւորութիւնը, որ Քր.է առաջ 315էն իսկ լիակատար անկախութիւն ունէր։

Որոնդէս կամ Արտուաս (=Երուանդ) սատրապը որ 323էն առաջ արդէն անգամ մը ապստամբած էր, 315էն կը հռչակէ ինքզինք թագաւոր եւ կը դառնայ բոլորովին ինքնիշխան։ Կ՚իշխէ 13—14 տարի (315—302)։

Երկիրը Սելեւկեան գերիշխանութեան ենթարկուելէ յետոյ կը յիշուի դարձեալ բնիկ իշխողներ, մինչեւ 193, երբ Անտիոքոս Մեծ Հայաստանի կուսակալ կը նշանակէ Արտաքսիաս=Արտաշէսը, որ իր զօրավարն էր։

2. ԾՈՓՔ կամ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ որ Մեծ Հայքի հետ 301/300էն Սելեւկեան գերիշխանութեան ենթարկուած էր, հաւանօրէն վաղուց ունէր իր բնիկ իշխանները, որոնք անծանօթ կը մնան։

Ժամանակով հաւանօրէն աւելի ուշ ստացաւ իր անկախութիւնը։ Իր առաջին թագաւորն էր Արշամէս =Արշամ (230—210) որուն դրամը գտնուած է։ Իրեն յաջորդած է իր որդին Քսերքսէս=Շաւարշ (210—200) որ նախապէս ապստամբած է Մեծն Անտիոքոսի (222—186) դէմ եւ ապա հաշտուած եւ անոր փեսայացած է՝ ամուսնանալով Սելեւկեան վեհապետին Անտիոքիա քրոջը հետ, իբրեւ օժիտ ստանալով Արեւելեան Հայաստանը։ Երբ անգամ մըն ալ ըմբոստացաւ՝ սպանուեցաւ իր կնոջ ձեռքով։

Ծոփաց թագաւորութիւնը յետոյ Անտիոքոսէն տրուեցաւ Զարեհի (193—158) եւ իր գոյութիւնը պահեց մինչեւ Տիգրան Մեծ։

3. ՓՈՔՐ ՀԱՅՔ՝ որ Եփրատէն արեւմուտք կը գտնուէր եւ երբեմն մաս էր Կապադովկիոյ։ Աղեքսանդրի յաջորդները փորձած են զայն նուաճել։ Հոն ղրկուած է Նէոպտոլեմոս զօրավարը 322ին, որ չէ կրցած տիրակալել երկիրին։ Եւմենես յաջողած է խաղաղեցնել եւ Մակեդոնական իշխանութեան ենթարկել 321ին։ 301/300ին Սելեւկեանց իշխանութեան հնազանդեցաւ նաեւ Փոքր Հայք։ 270/260ին անկախ պէտք է դարձած ըլլայ, իր յատուկ թագաւորով մը։

Մեծն Անտիոքոս (227—183) այս հողամասը տուած է ոչ-հայազգի Միհրդատ անուն սատրապի մը (180ին)։

Բ. դարուն (Քր.է առաջ) ընդարձակուած է նաեւ Փոքր Հայքը որ նուաճած է արեւմտեան Պարիադրիսի եւ հիւսիս-արեւելեան Պոնտոսի ծովափնեայ շրջանները եւ հասցուցեր էր իր սահմանները մինչեւ Սեւ Ծով։ Ստրաբոն (ԺԲ. 3. 28 555) կ՚ըսէ թէ՝

«Փոքր Հայք իրեն հպատակեցուցած էր Խաղդաեանները եւ Տիբարինացիները, այնպէս որ անոր իշխանութիւնը կը տարածուէր մինչեւ Տրապիզոն եւ Փառնակիա»

Բնակչութեան նշող մեծամասնութեան համար երկիրը այս կոչումը պէտք է ստացած ըլլայ։

Թէոտոր Րէյնախ կ՚ըսէ, թէ Մեծ Հայոց եւ Ծոփաց «տէրութիւնները թէպէտեւ կրեցին հակառակութիւն Սելեւկեանց Անտիոքոս Եպիփանի ատեն (Դիոս. Սիկ.), սակայն ամուր բռնեցին իրենց ազատութիւնը, առին շրջանակի գաւառները

(1) *Որոնդէս որդին կամ թոռն էր, ըստ Ե. Քասունիի, այն Որոնդէսին որ Հայաստանի Սատրապն էր Քսենոփոնի Նահանջին ատեն եւ Արտաշէս Ուշէղ արքային փեսան։ Համաձայն պատմիչներու եւ Պէրկամայի մէջ գտնուած արձանագրութիւններու՝ գոնէ մինչեւ 345 ապրած եւ մեծ գործունէութիւն ունեցած է։*



32
34
36
38
40
42
44
46
48
ՄՈՍԻՆԱՑԻՔ
Կողքիս
Իրիս գ. կամ Թաւ
Գերրոս գ.
Կուր գետ
Եգերացիք
Խաղտիք
Տրապիզոն
Պոնտոս
Տիբարինացիք
Խալիբացիք
Կատաոնացիք
ՓՈՔՐ ՀԱՅՔ
Նիկոպոլիս
ԿԱՊԱԴՈՎԿԻԱ
Ալիս գ. կամ Գզըլ Իրմաք
Իրիս գ. կամ Եէշիլ Իրմաք
Ճորոխ գ.
Գուգարենէ
(Գուգարք)
Խորջեան
Սոմխեթի
Պարիսատէս
(Տայք)
Դերքսենէ
(Դերջան)
Կարինիտիս
(Կարին)
Ակիլիսենէ
(Եկեղյաց)
ՄԵԾ ՀԱՅՔ
Փաունիտիս
(Սյունիք)
Ուտայք
Աղուանք
Երասխ գ.
Կասպիանէն
(Փայտակարան)
Բասորոպեդա
(Վասպուրական)
Ծ Ա Ր Ք
ԾՈՓՔ
Արածանի
Սասունցիք
Աղձնիք
ԿՈՐԴՈՒՔ
ՆՈՐՇԻՐԱԿԱՆ
Նիփրական
Տամորիտիս
(Տմորիք)
ԱՍՈՐԻՔ
ԿՈՄԱԳԵՆ
ՈՍՐՈՍԵՆ
(Ուռհայաստան)
ԿԻԼԻԿԻԱ
ՄԻՋԱԳԵՏՔ
Եփրատ գ.
Փոքր Զաբ
Ռաան

Թիւ 5 — Տես բնագիր էջ 12, 48 եւ 57

# ՀԱՅԱՍՏԱՆ ԲՆԻԿ ՀԱՅ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՇՐՋԱՆԻՆ

## ՀԱՅԵՐՈՒ ՑԵՂԱԳՐԱԿԱՆ ՆՈՒԱՃՈՒՄՆԵՐԸ

(190 Քր.Ե առաջ)

1. *Կանանչ գոյնով սահմանագծուած է 190 թուականին (Քր.Ե առաջ) Արտաշէսի և Զարեհի շրջանին Հայաստանի տարածութիւնը։*
2. *Կարմիր գոյնով նշանակուած են շրջակայ ազգերէն գրաւուած վայրերը։*

ամէն կողմերէն եւ կապուեցան ժամանակ մը նիզակակցութեան կապով Փոքր Հայոց հետ: Բայց շուտով Մեծ Հայք, Արտաքսիասի թագաւորութիւնը, աւելի առաջադէմ եղաւ քան միւս երկուքը (Ծոփք եւ Փոքր Հայք) եւ անոր աշխարհակալութեան երկիւղը ստիպեց միւսները խնդրել օտարներու պաշտպանութիւնը:

Ցայտնի է, թէ ինչու Փոքր Հայք յարեցաւ, սերտիւ Պոնտոսի, Փառնակի ատեն եւ անոր մէջ ձուլուեցաւ Միհրդատ Եւպատորի թագաւորութեան առաջին տարիներուն» (Գարագաշեան, *Քննական պատմութիւն*, Ա. 130—131):

Դրացի Պոնտոսի թագաւորութեան անող զօրութիւնը ուրեմն գլխաւոր պատճառը եղաւ, որ Փոքր Հայք բաժնուի Հայկական Միութենէն եւ դադրի Հայաստանի մաս կազմելէ, եւ յարի Պոնտոսի ազդեցութեամբ՝ հելլենական մշակոյթին՝ ենթարկուելով անոր խոշոր ազդեցութեան:

Սակայն, երբ Փոքր Հայք հայկական միութենէն կորզուեցաւ, ինչպէս Թ. Ռէյնախ դիտել տուած է, Մեծ Հայոց եւ Ծոփաց երկու թագաւորութիւնները,— որոնց գլուխը Անտիոքոս Մեծի (223—187) ատեն գտնուող Արտաքսիաս եւ Զարիադրիս թագաւորները Ստրաբոն անոր զօրավարները կը կոչէր— գոնէ որոշ է որ Սելեւկեան վեհապետին պարտութենէն (190 Քր.Է առաջ) ետք յաղթող Հռոմայեցւոց կողմը անցան եւ թագաւոր տիտղոսը ստացան եւ բոլորովին անկախ եղան (Ստրաբոն Գ. 528, 531) եւ իրենք *«առին շրջանակի գաւառները»* եւ զանոնք միացուցին Հայաստանի, ինչպէս կը հաւաստէ Ստրաբոն (Գ. 528):

Ան կ'ըսէ, որ Արտաշէս՝ Արտաշատի (Այրարատ նահանգին մէջ, Արաքսի վրայ) կողմերը եւ Զարեհ՝ Ծոփաց, Ակիսինիսի, Ոտոմանտիսի ու ուրիշ քանի մը գաւառներու կը տիրէին:

Այս Հայաստանը, ինչպէս Ստրաբոն կ'ըսէ, փոքր էր, վասնզի հազիւ վերջէն Դ. Հայք, Աղձնիք, Տուրուբերան, եւ Այրարատ կոչուած չորս նահանգները իր մէջ կը բովանդակէր, բայց շուտով մեծցաւ Արտաշէսի եւ Զարիադրիսի ձեռքով, որոնք շրջաբնակ ազգերէն տաս մը երկիրներ յափշտակեցին:

Ստրաբոն կը յիշէ մի առ մի այդ երկիրները, զորս կը ներկայացնենք օգտուելով հին անուններու համար եւրոպացի գիտուններու լուսաբանութիւններէն: Այսպէս կը գրուեն *Մարերէն* Ա. Կասպեան երկիրը (Փայտակարան), Բ. Սիւնիք (1), Գ. Վասպուրական:

*Վրացիներէն*՝ Ա. Տայք, Բ. Կղարջք (կամ Կաղարջք) եւ Գ. Գուգարք (2):

*Խալիբացիներէն* եւ *Մոսինացիներէն*՝ Ա. Կարին գաւառը եւ Բ. Դերջան, որոնք Փոքր Հայոց սահմանակից կամ անոր մասերն են:

*Կատաւոնացիներէն*՝ Ա. Եկեղեաց գաւառը եւ Բ. Տաւրոսի կողմերը գտնուող երկիրը:

*Ասորիներէն*՝ Ա. Տմորիք (այժմեան Պոհտանի մէջ) (Հիւպշման, **նոյն,** էջ 16):

Ստրաբոնի այս տեղեկութիւններէն կրնանք Արտաշէսի եւ Զարիադրիսի ատենուան (190էն ետքը Քր.Է առաջ) Հայաստանի ընդարձակութիւնը մերձաւորապէս որոշել:

Նահանգներու Խորենացիի վերագրեալ Աշխարհագրութեան անուններովը այն ատենուան Հայաստանը իր մէջ կը բովանդակէր՝ 1. Փայտակարանը, 2. Սիւնիքը, 3. Վասպուրականը, 4. Այրարատը, 5. Գուգարքը, 6. Տայքը, 7. Բարձր Հայքը, 8. Տուրուբերանը, 9. Դ. Հայքը, 10. Աղձնիքը, 11. Մոկքը, 12. Կորճայքին մէկ մասը եւ թերեւս նաեւ 13. Ուտին եւ 14. Արցախը, որով յետագոյն Հայաստանի 15 նահանգներէն 13ը եւ քիչ մըն ալ աւելի (Կորճայքի մասը):

Արտաշէսեան հարստութեան սկիզբը ուրեմն, Արմէնները հաւանօրէն ոչ միայն տարածուեր եւ հաստատուեր էին հայկական լեռնաշխարհի բազմաթիւ շրջանները, այլ զգալի չափով արդէն հայացուցեր էին այդ երկիրները:

Հնդեւրոպական Արմէններու միաձուլումը տեղական ժողովուրդներու հետ եւ հայ ժողովուրդին ցեղագրական կազմաւորումը ըստ Յ. Մանանդեանի (*Քննական տեսութիւն*, էջ 118), մօտ էր իր վախճանին արդէն Արտաշէսեան թագաւորութեան հիմնադրութեան ժամանակ:

Երկիրին ընդարձակութիւնը համապատասխան չէր իր զօրութեանը. վասնզի երկիրը երկուքի բաժնուած էր, Հարաւ-Արեւմտեան եւ Հիւսիս-Արեւելեան, որոնցմէ ամէն մէկը իր զատ իշխանը ունէր:

Քիչ ետք այս երկու պետութիւնները միացան մէկ մականի տակ եւ կազմուեցաւ Հայ միակ թագաւորութիւն մը, որ կը յենուր հայ տիրապետող ցեղին վրայ: Սակայն նուաճուած երկիրներու բնիկները անշուշտ չէին վանուած, եւ կ'ապրէին պետութեան մէջ, եւ հաւանօրէն ամէնքն ալ համացեղ չէին Հայոց հետ:

Ուրեմն Հայաստանի բնակչութիւնը միապաղաղ միութիւն մը չէր ներկայացներ հին դարերու մէջ եւ Հայ ազգը միակ տիրապետող ցեղը չէր Հայկ. Բարձրաւանդակին վրայ, ուր իրեն հետ իբրեւ բնակակից կ'ապրէին կիսովին հայացած կամ բնաւ չհայացած ուրիշ ժողովուրդներ, մանաւանդ ծայրագաւառներուն մէջ:

Դժբախտաբար, ինչպէս տեսնուեցաւ մատենագրական վկայութիւններով Հայաստանի բնակչութեան ցեղագրական պատկերը, հին դարերու մէջ, եւ կրնանք ըսել մինչեւ մեր օրերը, ստոյգ եւ վաւերական կերպով ներկայացնել, հնար չէ: Նոյնպէս կարելի չէ նաեւ եզրակացութիւն մը հանել վերջին ժամանակներու մեծապէս փոփոխեալ յարաբերութիւններէն:

Հետեւաբար՝ Փրոֆ. Հիւպշման կը դիմէ ենթադրութեանց, տրուած վաւերական տեղեկութիւնները հիմ ունենալով: Իր կարծիքով Արտաշէսի եւ Զարիադրիսի ատեն հին Հայութիւն մը կար Այրարատի եւ Տուրուբերանի մէջ, օտար տարրերով խառն հայութիւն մը կար

(1) *Ըստ Մարքուարտի Ապահունիք՝ սակայն աւելի տրամաբանական է ընդունիլ Հիւպշմանի կարծիքը* (*Հիւպշման*, նոյն *էջ* 7) *որուն համաձայն չէ նաեւ Յ. Մանանդեան որ Ստրաբոնի* Փաւնետիսը *անճանաչելի կը նկատէ։*

(2) Կղարջք՝ *Գուգարաց աշխարհին մէկ մասն է Խորենա-ցիի աշխարհագրութեան համաձայն, կ'երեւի թէ Ստրաբոնի ատեն անջատ էր, վասնզի վերջինին համար յատկապէս կը շեշտէ, թէ յայնկոյս Կուրի է, մինչ Կաղարջք յայսկոյս Կուրէ կը գտնուի եւ Գուգարքի միակ մեծ մասը կը կազմէ գետէն անդին։ Յ. Մանանդեան* (Քննական տեսութիւն *էջ* 117) *համաձայն չէ Հիւպշմանի եւ* Կղարջքի *տեղ* Խորձեան *կը դնէ։*

Դ. Հայոց եւ Աղձնիքի մէջ, իսկ ոչ-հայկական էր բնակչութիւնը Բարձր Հայոց (Սպեր, Կարին, Դերջան, Եկեղեաց, եւ Անտիտաւրոսեան երկիր), Տայոց, Գուգարաց, Սիւնեաց, Արցախի, Ուտիի, Վասպուրականի, Փայտակարանի, Պարսկահայոց եւ Կորտուաց (Տմորիքն եւայլն ալ հետ):

Կանուխ հայացան Սիւնիք, Վասպուրական, Մոկք, եւ Բարձր Հայք, մասամբ եւ մակերեւութաբար Կորտուք, Արցախ, Ուտի, Գուգարք (հարաւակողմը) եւ Տայք, իսկ ամենեւին չհայացան Պարսկահայք եւ Փայտակարան: Մինչեւ Զ. դար Ուտացիք ինքզինքնին պահեցին Դ. Հայոց մէջ, մինչեւ Ժ. դար՝ Ասորիք Մեծ Ծոփաց մէջ, Խութեցիք եւ Սասունցիք՝ Խոյթի եւ Սասունի մէջ, Առանցիք (=Աղուանք) Պարտաւի կողմերը Ուտիի մէջ: Այսօր անոնց սերունդները ձուլուած են Հայ ցեղին մէջ, ինչպէս ուրիշ ժողովուրդներ:

Այսպէս, Հայաստան, նման Գերմանիոյ, ընդունարանն ու խառնարանը եղած է ծագումով եւ լեզուով իրարմէ տարբեր զանազան ժողովուրդներու, որոնք, մշտատեւ շարժման մէջ եղած են եւ ենթակայ բարձրաւանդակ ներխուժող ժողովուրդներու յաւիտենական յորձանքներէն օրօրուելու, եւ այսպէս, մարդկային բազմութեանց մակընթացութեան եւ տեղատուութեան մշտածուփ շարժում մը ստեղծելու (Ա. Մօրէ եւ Կ. Տավի, տես *Արեւ*, թ. 6306):

Հայաստան, մինչեւ Քր.է Զ. դար առաջ, հակառակ անոր որ ոեւէ ատեն չէ եղած բնակավայրը միակ ցեղի մը, ատկէ ետքը եղած է բնակավայրը Հայ-Արմէն ազգին, որ զանազան ցեղերէ կազմուած *բազմատարր* եւ *այլատոհմ* խառնուրդ մըն էր (Հէնրի Պէրր եւ Ա. Խաչատրեան. *տես Արեւ* թ. 6303) եւ որ իբրեւ միջնաբերդէ մը՝ հետզհետէ իր շուրջ բոլորը ցանուած պզտիկ այլացեղ եւ այլալեզու ժողովուրդները իր մէջ ձուլելու քաղաքակրթական աշխատանքը կատարած է եւ իր ցեղային սահմանները ընդարձակած է, հայ դարձնելով գրեթէ ամբողջութեամբ Խորենացիի վերագրուած Աշխարհագրութեան հայկական 15 նահանգները:

Այս հայացնելու ոյժը կերպով մը հաւաստիք է որ հայ ցեղը ընդունակ էր քաղաքակրթական այն մեծ ճիգին, զոր շատ քիչ ազգեր կրցած են ցոյց տալ, իրենց մէջ ձուլելու համար ուրիշ ցեղեր:

Դժբախտաբար այս աշխատանքը որ Հայ-Արմէն ցեղը կատարած է այս ուղղութեամբ, որոշ տուեալներով եւ վաւերագրեալ կերպով ներկայացնել, շատ դժուար է, վասնզի Հայաստանի հին բնակիչներու ցեղագրութեան վրայ շատ քիչ տեղեկութիւններ հասած են մեզի:

Հազիւ թէ յոյն եւ ասորի պատմիչներ քանի մը շատ անցողակի տեղեկութիւններ կու տան Հարաւ-Արեւմտեան Հայաստանի բնակչութեան վրայ, որոնք իրենց դրացիներն էին. իսկ Արեւելեան Հայաստանի վրայ ասորի եւ յոյն մատենագիրներու տեղեկութիւնները շատ աւելի նուազ եւ անստոյգ են, քանի որ Հայաստանի այս մասը շատ հեռու էր Ասորիներէն եւ Յոյներէն:

Գալով մեր պատմագիրներուն՝ անոնք առանց որոշապէս հայ ցեղին գրաւած տարածութեան վրայ ոեւէ տեղեկութիւն տալու, քանի մը անուղղակի ապացոյցներ կը հայթայթեն ցոյց տալու գոյութիւնը ցեղերու, որոնք հայ ցեղին բնակավայրին սահմանակից գաւառներուն մէջ հնագոյն շրջաններէ կը մնային, եւ որոնք մինչեւ Սասանեանց ժամանակը տակաւին ձուլուած չէին Հայ ազգին մէջ: Այսպէս Հայոց երկիրն ու Հայ ժողովուրդը՝ Վրաց, Աղուանից եւ Լփնաց երկիրին ու Կորդուաց, Աղձնեաց եւայլնի հետ կը յիշուի եւ առնցմէ կը զանազանուի, այնպէս որ մարդ կը միտի ընդունելու՝ թէ Կորդուացիք ու Աղձնիք այնքան տարբեր են Հայոցմէ՝ որքան տարբեր էին Վիրք ու Աղուանք: Բայց նկատելով որ մասնաւորապէս Եղիշէ կը ծանրանայ այս բաժանումներուն վրայ եւ իր գրածները կը պատկանին այնպիսի շրջանի մը ուր երկիրը բաժնուած եւ կտոր կտոր եղած էր եւ պարսիկ կուսակալին իշխանութեան տակ գտնուող բաժինը — որ կ'ապըստամբէր — իր մէջ կ'ամփոփէր Տուրուբերան, Մոկք, Այրարատ, Տայք, Վասպուրական եւ Սիւնիք նահանգները, կրնայ առարկուիլ՝ թէ Պարսկական Հայաստանի եւ Կորդուաց, Աղձնեաց եւ Հայաստանի մասը համարուող միւս նահանգներուն մէջ տրուած տարբերութիւնը ասկէ առաջ եկած է եւ ցեղային բաժանման մը ապացոյց չի կրնար ըլլալ: Սակայն, հակառակին համար ալ հին եւ օտար պատմիչներ փաստեր կը հայթայթեն մասնաւորապէս Սիւնիքը առանձին լեզուով ժողովուրդ մը ներկայացնելով, ինչպէս վարը պիտի տեսնուի:

Այս հազիւ շօշափելի փաստերը անբաւական են անշուշտ պայծառօրէն եւ ժամանակագրական կարգով պատկերացնելու Հայ ցեղին իւրացնելու կարողութիւնը եւ ծաւալականութիւնը. սակայն եւ այնպէս՝ կարելի է քիչ շատ յստակ կերպով տեսնել, թէ Հայ ցեղը ինչպէս նուաճած է ցեղագրապէս իբրեւ կեդրոնէ մը, իր նախնական որորանին չորս կողմերը, հիւսիս, հարաւ, արեւմուտք եւ արեւելք գտնուած օտարալեզու շատ մը ժողովուրդներ:

Նախ դէպի հիւսիս, Հայաստան եզերուած էր արեւմուտքէն դէպի արեւելք, Պոնտոսի, Խաղդեաց, Եգերացւոց, Վրաց եւ Աղուանից աշխարհներով, որոնց հանդէպ նաեւ Հայ ցեղը նուաճողական ձգտումներ ցոյց տուած է:

Պոնտոս, իսկապէս հայկական ոչինչ ունի, թէեւ Խորենացին աւանդական Վաղարշակին կու տայ Պոնտոսի տիրած ըլլալու փառքը եւ այս երկիրը մինչեւ Մեծն Տիգրան կը հաւաստէ՝ որ Հայերու կը պատկանէր: Սակայն, կը կարծուի թէ Հայերը չեն կրցած իրենց տիրապետութիւնը մինչեւ ծով հասցնել եւ ոչ մէկ ատեն, հակառակ նոյն իսկ Ստրաբոնի վկայութեան՝ որ Փոքր Հայքը մինչեւ Սեւ Ծով տարածուած ցոյց կու տար (*Ստրաբոն*, ԺԲ. 3. 28. 555 եւ տես. վերը էջ 12բ):

Հայերը, որոնք միշտ դէպի հիւսիս կը ձգտէին Քր.է առաջ 190էն ետք, ըստ Ստրաբոնի (տես վերը էջ 13ա) Խաղիբացիներէն եւ Մոսինացիներէն առած են Կարինը եւ Դերջանը եւ Կատաւոնացիներէն՝ Եկեղեաց գաւառը եւ Տաւրոսի կողմերը գտնուող երկիրը, ինչպէս նաեւ նուաճած են արեւմտեան Պարխատրիսի եւ հիւսիս-արեւելեան Պոնտոսի ծովեզերեայ շրջանները (*Ստրաբոն, նոյն*), այսինքն Խաղդիքը եւ Եգերացիքը, որոնք յետոյ Պոնտոսի թագաւորութեան մաս կը կազմէին, հակա-

ռակ անոր որ մասամբ ցեղագրապէս հայացած էին:

Հայկական Տայք նահանգը որ Պոնտոսի սահմանին վրայ կը գտնուէր եւ ծայրագաւառ մըն էր, մինչեւ վերջը պահած է իր խառն բնակչութիւնը եւ զուտ հայ երկիր մը չէր եղած:

Խառն բնակչութեամբ հայկական Տայք նահանգին մէկ մասն էր վերջը Խաղդեաց աշխարհը որ կը գտնուէր Ճորոխի աւազանը: Հայք իրենց տիրապետութեան տակ առած են երկար ատեն այս շրջանը եւ ցեղագրապէս ալ Հայաստանի կցած: Այսպէս Խաղդիք գաւառը, որ կը տարածուէր մինչեւ Սեւ Ծով, Հայերու բազմութիւն մը ընդունած է եւ Յոյները՝ երկիրին հայաշատ հանգամանքը նկատի առնելով *Արմենոգալիպ*ներ (= Հայախաղդիք) կը կոչէին այս կողմերը, զորս 830ին Թէոփիլոս կայսրը պարպեց իր հայ բնակչութենէն եւ աւելի ուշ, ԺԲ. դարուն՝ Թուրքերը բռնի իսլամացուցին:

Այս շրջանին մէջ Հայերը հաստատած էին Տամբուր կամ Համամաշէն (Համշէն) քաղաքը որ Հայաստանէն դուրս էր: Նոյնպէս այդ շրջանակին մէջ Հայերը շինած էին Եղիովլիս, Խեւակ Բալովլիս, Տափ գիւղերը, որոնց անուններն իսկ կը մատնանշեն իրենց Հայ ծագումը: Սակայն բնաւ երկիրը ամբողջ հայաբնակ չէ եղած, ինչպէս հայաբնակ չէ եղած ամբողջովին Եգերացւոց երկիրը (յետոյ Լազիկիա եւ հիմա Լազիսթան կոչուած):

Պոնտոսէն ետք, դէպի արեւելք, կը գտնուի Վրաստան, որուն հետ գրեթէ վիճակակից եղած է միշտ մեր երկիրը եւ միշտ ալ պայքարի մէջ:

Տեսանք, որ Ստրաբոն կը յիշէր Գուգարքը իբրեւ յայնկոյս Կուրի գտնուող արգաւանդ երկիր մը, զոր Արտաշէս եւ Զարիադրիս Կղարջքի եւ Տայքի հետ Վրաց ձեռքէն առած էին: Մեծն Տիգրան անոնցմէ կազմեց սահմանակալութիւն մը իր տէրութեան հիւսիսային սահմանը պաշտպանելու համար եւ դրաւ զայն բդեաշխի մը իշխանութեան տակ, զոր Ագաթանգեղոս բդեաշխ «*ի Մասքթաց կողմանէ*» իսկ Խորենացի «*առաջնորդ Վրաց եւ բդեաշխ Գուգարացւոց*» (1) կը կոչեն: Իսկ Փաւստոս անոր կու տայ «*բդեշխ Գուգարաց*» կամ «*Վրաց*» շատ նշանակելի տիտղոսը: Արշակ Բ.ի ժամանակ (381ին) ապստամբեցան գաւառին իշխանները, որոնցմէ Փաւստոս կը յիշէ Գուգարաց բդեաշխը եւ ասոր հետ Ջոր եւ Կողբ գաւառներու տէրերը, եւ անցան Վրաց, բայց քիչ ետքը Մուշեղ սպարապետ զանոնք նորէն ետ առնելով՝ Պապին հպատակեցուց՝ առաջուան պէս Կուրը՝ Հայոց սահման որոշելով:

Բայց Հայաստանի բաժանման ատեն 387ին, Գուգարք Վրաց անցաւ եւ Վրաց աշխարհին հետ Պարսից գերիշխանութեան տակ մնաց մինչեւ 591 (Հիւպշման, *նոյն*, 114): Հետեւաբար Հայերը իրենց կարճ տիրապետութեան պատճառով չկրցան ցեղային ձուլմամբ հայացնել Գուգարքը:

Փաւստոս (Ե. դ.) որ Կուր գետը Հայաստանի եւ Վրաստանի սահման կը ներկայացնէ, Կղարջքը, որ յայնկոյս Կուրի է, Հայաստանի կը կցէ:

Որոշ է, որ Վրաստանի եւ Հայաստանի միջեւ կայ հողամաս մը, որ իրապէս կռուախնձոր մը եղած էր երկու ազգերուն միջեւ, որոնք հոն ո՛չ քաղաքական տեւական տիրապետութիւն մը կրցած էին հաստատել եւ ոչ ալ ցեղային որոշ դիմագիծութիւն մը տալ երկիրին: Հոն Հայ եւ Վրացի ցեղերը իրարու խառնուած էին: Մասնաւորապէս Հայ սահմանագլուխին վրայ գտնուող շրջաններէն որոշ շրջանակ մը ամէնէն ուշագրաւն է այս տեսակէտով:

Վրաստանի հարաւային այն մասը, որ *Մէսխէթի* կը կոչուէր՝ *Մոսխ* կամ *Մեսխ* ժողովուրդին անունով (տես վերը էջ 11ա), հետաքրքրական երեւոյթի մը հանդիսավայր եղած է: Ըստ Վրաց մեծ ժամանակագրութեան՝ Քր.է առաջ Գ դարուն, Վրաստանի առաջին անկախ թագաւորը, երբ իր երկիրը վարչական բաժանումներու կ'ենթարկէ, այս նահանգը երկու մասի կը բաժնէ եւ մէկը՝ Սամշվիլտէ եւ միւսը՝ Խունան կը կոչէ (ՀԱ. 1938 էջ 376):

190ին (Քր.է առաջ) Հայերը, ինչպէս տեսնուեցաւ, կորզեցին այս նահանգները Վրացիներէն եւ զանոնք վանեցին դէպի հիւսիս: Հայ տիրապետութեան տակ Հայ տարրը բնակչութեան մեծամասնութիւնը կազմեց եւ ասոր համար Վրացիք այս շրջանը կոչել սկսան *Սոմխէթի*, որ վրացերէն կը նշանակէ *Հայք*: Ասով հանդերձ՝ կ'երեւի թէ այս նահանգները կատարելապէս չհայացան, վասնզի երբ երկիրը վերստին Վրաց ձեռքը անցաւ՝ այս անգամ ալ Հայերը այս շրջանը կոչեցին *Վիրք* կամ *Վիրահայք*:

Ըստ Ա. Սարուխանի (ՀԱ. 1938 էջ 377)

«շատ դժուար է Վիրահայքի աշխարհագրական սահմանները որոշել: Ընդհանրապէս Վիրահայք —կամ ըստ Վրաց Սոմխեթի՝ համարւում է այն երկրամասն, որ ընդգրկում է Ճորոխի աւազանն եւ Կուր գետի վերին հոսանքը մինչեւ Բորժոմի ձորը: Այս կէտը Ստրաբոնին էլ ծանօթ էր, երբ նա գրում էր Մեսխեթի (=Սոմխեթի) համար՝ թէ «Կուր գետը հոսում է նրա միջով արեւմուտքից դէպի արեւելք»:

Վիրահայքի գաւառները կամ մասերն են՝ Ջաւախք, Տայք եւ Կղարջք, որոնք միեւնոյն ձեւով կը կոչուէին վրացերէն՝ Ջավախեթի, Տաո եւ Կլարջեթի: Բնիկներու Վրացի ծագումը եւ Վրաստանի հետ սահմանակցութիւնը, ինչպէս նաեւ երկիրին քաղաքական յարափոփոխ վիճակը (1), պատճառ եղած են՝ որ կատարելապէս չձուլուին Հայութեան մէջ: Ասով հանդերձ մեծ մասամբ անոնք հայացած էին (Ա. Սարուխան, ՀԱ. 1938, էջ 379):

Վիրահայք երկու կեդրոն ունէր. արեւելեան մասին մէջ *Ծուրտաւ*, իսկ Արեւմտեանին՝ այսինքն Կղարջքի մէջ՝ *Արտանուջ*:

Ցուրտաւ Գուգարքի բդեշխին նստոցն էր իսկ Ար-

(1) *Խորենացի այս տիտղոսը կու տայ իբրեւ 330ին, այս շրջաններուն տիրող Միհրանի մը:*

(2) *Արշակունեաց կործանումէն վերջն ալ այս շրջանակը կռուախնձոր եղած է Բիւզանդական կայսրութեան եւ Պարսկաստանի միջեւ, 591ին առին Բիւզանդացիք, իսկ 602ին Խոսրով դարձեալ տիրեց բայց ոչ երկար, վասնզի Արաբները հազիւ կէս դար ետքը տիրեցին երկիրին:*

տանուջ՝ վրացական Բագրատունեաց։

Ծուրտաւ կը գտնուէր Վիրահայքի ամէնէն աւելի հայացած Տաշիրք գաւառին (այժմ Լոռի) մէջ եւ մինչեւ Ե. դարուն առաջին քառորդը նաեւ եպիսկոպոսական աթոռ մըն էր, ենթարկուած Վրաստանի կաթողիկոսին, եւ կը յիշուէր հայ-վրացական գրականութեան մէջ իբրեւ անջատ եկեղեցի մը «Ծուրտաւի եկեղեցին»։ Ծուրտաւ իր հայ եւ վրացի խառն բնակչութեան պատճառով ունեցած է թէ՛ Հայ եւ թէ՛ Վրացի ծագումով եպիսկոպոսներ, որոնք թէ՛ հայագէտ եւ թէ վրացագէտ եղած են (Ա. Սարուխան, *Նոյն* էջ 381)։

Ծուրտաւ Հայոց համար ալ նուիրական վայր մըն էր Շուշանիկի գերեզմանին (Ուխտանէս Բ. 35) եւ Մծխեթայի խաչին եւ Մանգղեաց խաչին ուխտաւորութիւններուն համար (Գիրք Թղթոց 194)։ Ծուրտաւի վիճակին մէջ հայերէն եւ վրացերէն պաշտամունք անխտիր կը կատարուէր եւ Է. դարուն Մովսէս Ծուրտաւեցի բնիկ հայ եպիսկոպոսը, որ Տաշիրքի Մեհենկերտ գիւղէն էր, Վրաց բաժանումը Հայ եկեղեցիէն արգիլելու համար սաստիկ մաքառեցաւ Վրաց Կիւրիոն կաթողիկոսին հետ։

Մովսէս եպս.՝ ինչպէս կը տեսնուի՝ իր վիճակին մեծամասնութեամբ Հայ ըլլալուն համար գրած է «ի հայ լեզու զիշխանութիւն Ծուրտաւայ եկեղեցւոյն» (*Գիրք Թղթոց*, էջ 111)։ Ասոնք ցոյց կու տան՝ թէ Գուգարաց յարաբերութիւնը Հայոց հետ աւելի սերտ էր քան թէ Վրաց, թէեւ իբր երկու երկիրներու սահմանագլուխ, հաւասարապէս կարեւոր նշանակութիւն ունէր երկու ազգերու յարաբերութեան տեսակէտով։ Իսկ Ծուրտաւ հայ-վրական յարաբերութեանց օղակը կը կազմէր, անշուշտ նախ քան Արաբական նուաճումը։

Բայց Գուգարքի միւս մասերը պահած էին իրենց օտարացեղութիւնը՝ նոյն իսկ մինչեւ Յովհաննէս կաթողիկոսի ատենները, որ Գուգարացիները կը յիշատակէ յաճախ Եգերացւոց, Վրաց եւ Ուտեացւոց հետ, եւ զանոնք այսպէս որոշ կերպով կը զանազանէ Հայերէն (*Յովհաննէս կաթ.* էջ 140 ~~նաեւ 38. 78. 110 եւ 163~~)։

Գալով Հայաստանի հարաւային սահմանին՝ անիկա կը ներկայացնէ խառնակ ու ճշգրտութենէ զուրկ վիճակ մը, վասնզի Ուրմիոյ լիճէն մինչեւ Եփրատ երկարաձգուող հարաւային սահմանը ամենամեծ փոփոխութիւններ կրած է նաեւ 38. 78. 110 եւ 163)։

Առաջին անգամ Հայոց տիրապետութեան ենթարկուած են Տիգրիսի եւ Պոհտան Սուի հարաւակողման երկիրները Քր.է առաջ 190 թուականէն յետոյ։

Մեծն Տիգրան աւելի ընդարձակեց երկիրին սահմանները ինչպէս արեւելեան եւ արեւմտեան՝ նոյնպէս նաեւ հարաւային կողմէն, հիմնելով մեծ պետութիւն մը, որ իր իշխանութեան տակ ունէր Միջագետքը, Ոսրոէնի (Osroene) հարկատու իշխանութեան հետ միասին, որոնք սակայն շուտով լքել հարկադրուեցան Հայքը։

Ասկէ ետք Հայաստան միշտ հարաւային կողմէ կը գտնուէր վտանգի առջեւ, այնպէս որ չորս սահմանակալ բդեշխներէն երկուքը հարաւային սահմանին պաշտպանութեան կոչուած էին։

Ասոնք էին *«սահմանակալն Ասորեստանեայց կողմանէ»* եւ *«յԱրուաստական* (1) *կողմանէ»*, այսինքն Հայաստանի հարաւային արեւելեան եւ արեւմտեան պահնորդները։

Գիտուններէն ոմանք այն համոզումը ունին՝ որ Հայերը երբեք բնակչութեան մեծամասնութիւնը կազմած չեն Վերին Տիգրիսի վրայ գտնուող, եւ Ասորեստանցւոց Նախրի, իսկ Յունաց եւ Հռոմայեցւոց Ծոփք, Աղձնիք, եւ Կորդուք անուանուած երկիրներու մէջ. հետեւաբար հոն, ուր նորագոյն ժամանակներու մէջ Քիւրտերը կը բնակէին, հին ատեն ու միջին դարուն արեւմտակողմն Արամայեցիք կը բնակէին եւ արեւելակողմն՝ Կորդուացիք։ Հոս էր Տմորիք, որ Արտաշէսի եւ Զարիադրիսի ատեն *Ասորւոց* ձեռքէն առնուած էր (տես. վերը էջ 13ա)։

Հոն՝ Եփրատէն մինչեւ Կորդուաց սահմանը գտնուող երկիրներուն մէջ, որ «Ասորական» երկիր կը կոչուէր, կը բնակէին Ասորիք Քր.է ետք Դ. դարուն, ըստ Դիոնեսիոս պատրիարքին։ Դեռ Ժ. դարուն Ասողիկ (տպ. 1859ի էջ 118) կը վկայէ՝ թէ այն երկիրը որուն մէջ կը գտնուէին Նփրկերտ, Ամիթ եւ Ազրուն ամուր քաղաքները, «Դաշտն Ասորւոց» կը կոչուէր ինչ որ համաձայն է Ասսեմանիին (1.249) վկայութեան՝ որ Ազրունը, Նփրկերտը, Ամիթը, Անձիտը եւ Սամոսատը հաւասարապէս Ասորական կը համարէ տակաւին 375 թուականին։ Ասողիկ (էջ 182) կ'ըսէ՝ թէ Արաբներու Նփրկերտէն վռնտուելէն ետք Հայեր եւ Ասորիներ կը բնակէին հոն։ Այդ կողմերը Ասորիներէ զատ Հայերու ալ բնակիլը շատ բացայայտ է, երբ նկատողութեան առնենք Հայոց երկար ժամանակեայ տիրապետութիւնը։ Դիտելի է, որ Ղազար Փարպեցի կը խօսի յայտնապէս Անձիտ, Ծոփք եւ Հաշտեանք գաւառներու *«Հայ մարդիկ»*ներուն վրայ, ըսելով՝ *«առաքեալ... առ հայ մարդիկ գաւառին Անձիտայ եւ Ծոփաց եւ Հաշտենից եւ առեալ ինոցանէ օգնական որպէս յիւրոց ազգականաց* (էջ 469)։ Ասով որոշ է՝ որ Ե. դարուն այս մատենագիրը մատնանիշ կ'ընէ, թէ քաղաքականապէս Հռոմի վերաբերող այս գաւառներուն բնակչութեան մեծագոյն մասը Հայ էր ազգութեամբ, եւ թէ մեծ համակրութիւն ունէր այս տեղերու բնակչութիւնը՝ պարսիկ իշխանութեան տակ մնացած Հայերուն։ Կ'երեւայ թէ միայն Տիգրիսի հիւսիսային եւ հարաւային դաշտին մէջ կը բնակէին Ասորիք՝ հոծ բազմութեամբ իսկ հիւսիսային կողմէն այս դաշտը պատող լեռներուն մէջ Հայոց հետ խառն այնպիսի օտարացեալ ժողովուրդներ կը բնակէին, որ ոչ Հայ էին եւ ոչ Արամայեցի։ Ասորական տեղեկութեանց համաձայն Զ. դարուն Անձիտ գաւառին մէջ կը բնակէին Ուրտացիք, իսկ հայկական տեղեկութեանց համեմատ Ժ. դարուն, Աղձնեաց ամէնէն հիւսիսային գաւառին՝ Սասունի եւ անոր սահմանակից եւ Տուրուբերանի վերաբերող Խոյթ գաւառին մէջ կ'ապրէին լեռնականներ, որոնք կը թուի թէ օտար ծագում ունէին։

(1) *Աղաթանգեղոս*՝ Արուեստական *կը կարդայ որ պէտք է սրբագրել ըստ Մակուարդի եւ այլոց։* Արուեստան՝ *Մծբին մօտերը գտնուող արաբական սահմանագլուխը կը ներկայացնէ։*

Խութեցիք, եւ Սանասնեայք, երկու ազգակից ժողովուրդներ էին, որոնք հաւանօրէն Հայոց ո՛չ ցեղակից էին եւ ո՛չ ալ Հայոց քաղաքակրթական ազդեցութեան ենթարկուած:

Աւանդութիւն մը, որ շատ ժողովրդական եղած ըլլալ կը թուի, ո՛չ միայն Հայերու՝ այլ բովանդակ Արեւելքի մէջ անոնց նախնիքը Ասորեստանէն կը բերէ —Ադրամելիքի եւ Սանասարի աւանդավէպով, ինչ որ ներշնչած է Թովմա Արծրունին՝ Սասունցիները կոչելու *Դռեահք Ասորոց* (էջ 121):

Իսկ արեւելեան-հարաւային գաւառներուն, — ինն Կորտուքի, Կորտիքի եւ Տմորիքի. (այսպէս կը յիշէ Փաւստոս) որոնք Խորենացիի վերագրուած Աշխարհագրութեան Կորճէք նահանգը կը կազմեն— բնակչութիւնը օտար ծագում ունենալը այնքան բացորոշ է՝ որ բնաւ ապացոյցի չի կարօտիր: Ամենահին ժամանակներու մէջ, թերեւս նախ քան Հայ ցեղին այդ կողմերը հաստատուիլը, արդէն գոյութիւն ունէր Կորդուաց թագաւորութիւնը, որ առաջին անգամ Մեծն Տիգրանի տիրապետութեան ենթարկուեցաւ: Սակայն Կորդիք երկար ատեն պահեցին իրենց ոչ միայն ազգութիւնը, այլ նաեւ կրօնքը եւ չենթարկուեցան ո՛չ Հայոց, ո՛չ Պարսից եւ ո՛չ Հռոմայեցւոց քաղաքակրթական ազդեցութեանը, հակառակ յաջորդաբար անոնց տիրապետութեան ենթարկուած ըլլալուն:

Սեբէոս՝ Է. դարուն մէջ (էջ 95) Կորդիքը առանձին ազգ մը կը համարէ, որ անհաւատ (իմա՛ ոչ քրիստոնեայ) էր դեռ: Ասոր համար է որ շատեր հաւանական կը նկատեն այս առանձնայատուկ նկարագիրով ժողովուրդին սերունդները համարել Քիւրտերը, որոնց մեծամասնութիւնը յետոյ խտացած էր նախնեաց Կորճէքին մէջ, թէեւ Մարկուարդ՝ Քիւրտերու նախնիքը կը համարէ Մարդերը, որոնք Քսենոփոնի ժամանակ Որոնդասի բանակին մէջ վարձկան զօրք էին (տես. Հ. Մանանդեան, *Քննական տեսութիւն հայ ժողովուրդի պատմութեան*, էջ 70):

Աւելի ուշ ժամանակներու մէջ՝ Եփրատ եւ Տիգրիս գետերուն շուրջը մղուած սարսափելի պատերազմները այդ նահանգները շփոթ վիճակի մը մատնած են: Անոնք երկար ատեն հայկական տիրապետութեան տակ չեն մնացած: 297ին խաղաղութեամբ՝ Աղձնիք, Մոկք եւ Կորճէք Հռոմի անցած են եւ 363ին՝ Պարսիկներուն: Մոկք որոշապէս կը յիշուի՝ թէ կցուած է Պարսից Հայաստանի աւատ թագաւորութեան երկիրներուն, սակայն միւսներուն համար այս տեսակ յիշատակութիւն մը չկայ, ինչ որ կրնայ ենթադրել տալ՝ թէ անոնց բնակչութեան ոչ հայկական հանգամանքը կամ մեծամասնութեան Հայերու ոչ-ցեղակից ժողովուրդներ ըլլալը պատճառ եղած է որ անոնք Հայ թագաւորներու իշխանութեան չյանձնուին:

591ին գծուած սահմանով միայն Աղձնիք անցաւ Հռոմի, եւ Մեծ Ծոփքի ու Միջագետքի սահմանակից մէկ մասին կցուելով՝ կազմեց *Վերին Միջագետք* կամ *Առաջին Չորրորդ Հայք* գաւառը (Հիւպշման, *Հին տեղւոյ անունները*, էջ 43):

Այս ամէնը ցոյց կու տայ՝ թէ Հայերը ժամանակ չեն ունեցած իրենց տիրապետութեան ենթարկուած այս նահանգներուն օտար բնակիչները իրենց մէջ ձուլելու, սակայն, ինչպէս որ Տիգրանի ատեն նոյնիսկ այդ սահմաններէն դուրս՝ մինչեւ Միջերկրականի եզերքները առաջացած էին, նոյնպէս նաեւ այլազան առիթներով կամ զանազան շրջաններու մէջ, Աղձնիքէն, Մոկքէն եւ Կորճէքէն դուրս ալ աւելի հարաւային նահանգներու տիրապետած էին: Հետեւաբար Հայ ցեղը Ասորեստանի, Միջագետքի եւ Արուաստանի կողմերը բնակութիւն հաստատած էր, հին ժամանակներէ սկսեալ:

Մանաւորապէս Փաւստոս կը յիշատակէ՝ թէ Դ. դարուն մէջ Հայաստանի կը պատկանէին քաղաքականապէս քանի մը սահմանակից երկիրներ, զորս Աղձնեաց եւ Կորդուաց հարաւակողմը փնտռելու է (Հիւպշման, *Հին տեղւոյ անունները*. էջ 179):

Հայաստանի բաժանումէն առաջ կամ բաժանման ատեն՝ ասոնք Պարսիկներու անցան եւ Հայերը զանոնք երբեք Հայաստանի մաս չհամարեցին:

Այդ երկիրներն են.

1. *Նոշիրական* կամ *Նոր Շիրական երկիր*, որ նոյնիսկ բդեաշխի կայան եղած էր: (Տես *Փաւստոս*՝ էջ 159. 209. *Ագաթանգեղոս*՝ էջ 628. 650, եւ *Սեբէոս*՝ էջ 371): Սեբէոս յայտնապէս «*Ասորոց*» կողմերը կը համարէ Արուաստանը եւ *Նոր Շիրականը*, որոնք «*մինչեւ ցսահմանս Տաճկաց*» (=Արաբացւոց) կ'երկարէին. (հմմտ. Հիւպշման *նոյն*, էջ 180, Մարկուարդ, *Երանշահր*, 23):

2. *Նիհորական*, որ ըստ ոմանց՝ Ուրմիոյ լճին արեւելակողմը կ'իյնայ կը յիշէ Փաւստոս (էջ159):

3. *Մահկերտուն*, Մարաց եւ Ատրպատականի միջեւ կը գտնուէր, հաւանօրէն այժմեայ Ճեզիրէի շրջակայքը: Ասորեստանի Արբելա քաղաքին եպարքութեան թեմերէն մին էր 410ին, թէեւ քաղաքականապէս կը պատկանէր Նոշիրականի: Փաւստոս եւ Ագաթանգեղոս կը յիշեն զայն (հմմտ. Մարկուարդ *Երանշահ*, 24 նաեւ ZDMG. 394):

4. *Դասն*, կը յիշուի Փաւստոսի եւ Եղիշէի (էջ 39) մէջ եւ նախորդին պէս կը պատկանէր Արբելայի եպարքութեան, Զապ գետին արեւմտակողմը՝ Ամատիէի եւ Գարա լեռներու կողմերը, այժմեայ Մուսուլի շուրջը, (Hoffmann. Auszüge էջ 202—207).

5. *Ծաւդէք*, դարձեալ Ճեզիրէի մօտերը (հմմտ. Hoffmann *նոյն*, էջ 24 եւ Մարկուարդ, Երան, էջ 158) կը յիշեն Եղիշէ (էջ 10 եւ 39) եւ Ամմիանոս (25, 7, 9):

6. *Արզնարզիւն*, ծանօթ նոյնպէս Եղիշէով եւ Թովմա Արծրունիով (էջ 8):

7. *Ռէհիմինա*, ծանօթ միայն Ամմիանոսով: Վերջին երկուքին հաւանական վայրերն իսկ չեն յիշուած:

Այս եօթը շրջանակներէն ամէնէն ծանօթը Նոշիրական՝ մասնակից էր այն ապստամբութեան որ Արշակ Բ.ի ատեն տեղի ունեցաւ: Պապի ատենը՝ նուաճուեցաւ, սակայն տարակոյս չկայ որ Դ. դարուն վերջերը պարսկական էր (Հիւպշման, էջ 181): Երբեմնի տիրապետութիւնները որքան որ ալ կարճատեւ՝ անհետեւանք չէին կրնար մնալ բնակչութեան վրայ: Հայերը ուրեմն հին ատենէն սկսեալ՝ երկրին հարաւային սահմաններուն մերձաւոր շրջանակին մէջ հաստատուած էին, սակայն այդ երկիրները չէին նուաճած ցեղագրապէս, կամ չէին կրցած, վասնզի չէին հրապուրուած դէպի հարաւ գաղթելէն, քանի որ երկիրը, մանաւանդ



Տիգրիսի հովիտը, մշտապէս պատերազմներու թատերաբեմ մըն էր, իբրեւ պարսիկ-բիւզանդական սահման:

Սակայն, ամէն պարագայի մէջ, նկատի առնելով Տիգրանի աշխարհակալութեան սահմանը եւ Ծաւտէքի եւ Դասի նոր հետազօտութեանց համաձայն սահմանուած վայրերը, անկարելի է հաւատք չգոյացնել՝ թէ Տիգրիսի արեւելեան կողմը Հայերը երբեք շատ մեծ թիւ մը ներկայացուցած են:

Իսկ բուն Միջագետքի այն մասերը, որոնք Հայաստանի սահմանակից են Աղձնիքի հարաւակողմը, հին աշխարհագիրները երկու մասի կը բաժնէին որոշապէս:

Ա.— Միգդոնիա,

Բ.— Ուռհայաստան կամ Միջագետք Հայոց:

Ա.— ՄԻԳԴՈՆԻԱ՝ որ հաւանօրէն կը բաղկանար Փաւստոսի Նոշիրական եւ Մակերտուն անունով կոչուած վայրերէն, Միջագետքի հիւսիսային-արեւելեան մասը կը ներկայացնէ, այսինքն հիւսիսային Միջագետքի այն մասը՝ որ Տիգրիսի հովիտին կը պատկանի աւելի՝ քան թէ Եփրատի:

Այս շրջանակը՝ հակառակ Հայաստանի աշխարհագրական սահմաններէն դուրս ինկած ըլլալուն՝ կարգ մը հաւանականութեանց վրայ հիմնուած, կը կարծուի թէ բաւական երկար ատեն մասը կազմած է Հայ Արշակունեաց թագաւորութեան: Հ. Գարբիեան կը կարծէ՝ թէ՝ նոյնիսկ Տիգրանէն առաջ Միջագետքի այս մասը արդէն Հայոց կը պատկանէր, թէեւ Մծբինը զոր Խորենացին նոյնիսկ մայրաքաղաք կը շինէ Հայոց, զայն շփոթելով Մծուրքի հետ — որ Սանատրուկի կառուցած մայրաքաղաքն էր Եփրատի վրայ (*Փաւստոս* Դ. ժդ) — աշխարհագրապէս անկարելի էր Հայոց տիրապետութեան ենթարկուած կարծել, քանի որ տակաւին Ադրիաբենէ եւ Կորտուք կը պահէին իրենց անկախութիւնը եւ Պոհտա-Սու հարաւային սահմանը կը ներկայացնէր երկիրին:

Սակայն՝ իրապէս Տիգրան տիրեց Մծբինի, զոր Լուկուլլոս 68ին գրաւեց, սակայն յետոյ թողուց Տիգրանի (*Դիոն. Կաս.* ԼԵ. 7), որ չկրցաւ երկար պահել, վասնզի իր յաջորդին ատենը իսկ կը տեսնենք Հայաստանը ամփոփուած իր նախկին սահմանին մէջ: Յետոյ սակայն՝ Հայերը պարբերաբար, եթէ ոչ մինչեւ Մծբին, գէթ մինչեւ անոր մերձակայ վայրերը՝ զինուորականապէս գրաւած են, ինչպէս Մահկերտուն գաւառը՝ որ հաւանօրէն Ճէզիրէի շրջակայքը կը տարածուէր եւ այնքան մօտ էր Մծբինի:

Դ. Դարուն Հայոց սահմանը Աղձնիքէն անդին չէր անցներ (*Փաւստոս.* Դ.ի), որով Նոշիրական, Մակերտուն, Ծաւդէք, Դասն եւ այլ գաւառները արդէն բաժնուած էին Հայ պետութենէն:

Ե. դարուն Մեծն Սահակ Պարթեւ Հայրապետը 410-ին կը գումարէ Սիւնհոդոս մը, որուն կը մասնակցի Մծբինի արքեպիսկոպոսը: Անոր իրաւասութեան ներքեւ էին Աղձնիք, Մոկք, Ծաւտէք, Ռէհիմինա եւ Կորդուք եւ այլ ասորական վայրեր (Մարկուարդ, *Երանշահր*, 25) որոնց մէջ հաւանական է կարծել՝ թէ Հայերու բնակութիւնը աճած պէտք էր ըլլար Դ. դարուն, մանաւորապէս Պարսիկ բանակներուն տարած գերիներով (տես *Փաւստոս*, Դ. ծե. *Եղիշէ*՝ էջ 349—50 եւ 356—59): Սակայն բնաւ հաւանական չէ, որ այս շրջանակը հայացնելու չափ ստուար թիւ մը ունեցած ըլլան Հայք հոն:

Բ.— ՈՒՌՀԱՅԱՍՏԱՆ՝ այսինքն Միջագետքի հիւսիսային արեւմտեան մասը՝ վաղուց պէտք է հայաբնակ եղած ըլլայ:

Փաւստոս Բիւզանդացի տեղ մը (Ե. լբ) կը հաւաստէ՝ թէ Արշակունի թագաւոր մը շինած է Ուռհա քաղաքը, սակայն չի նշեր՝ թէ ո՞վ է այդ թագաւորը, որ միայն Տիգրանը կրնայ եղած ըլլալ:

Եդեսիա մայրաքաղաքն է Քր.է առաջ 137ին կազմուած Ուռհայաստանի (Osroene) Ասորի թագաւորութեան կամ իշխանապետութեան, որ մինչեւ Քր.է ետք 217 բաւականը տեւեց:

Տիգրան զայն իրեն հնազանդեցուց՝ երբ մինչեւ Անտիոք առաջացաւ, սակայն 64ին Եդեսիացիք Հայերէն բաժնուելով Հռոմի յարեցան (Դիոն. Կաս) եւ անոր գերիշխանութեան տակ կազմեցին իշխանապետութիւն մը, որ տեւեց մինչեւ 217:

Յետոյ երկիրը վերածուեցաւ Հռոմէական նահանգի մը, եւ Բիւզանդական պետութեան մաս կազմեց մինչեւ արաբական արշաւանքը:

Արաբներու առաջին գրաւած վայրերէն մէկը եղած է Եդեսիա, որ երկար մնացած է Արաբ լուծի տակ, բացի մի քանի կարճատեւ շրջաններէ, ուր բիւզանդական բանակները հայ յաղթական զօրավարներու, ինչպէս Զմշկիկի հրամանատարութեամբ մինչեւ Եդեսիա առաջացած են:

Հայերը այսպէս ընդարձակ յարաբերութիւններ ունեցած են ամբողջ շրջանին հետ եւ տարածուած են Միջագետքի մէջ: Հոն անոնք ունեցած են կարեւոր թիւ մը, սակայն չեն կրցած տիրող ըլլալ թիւի գերակշռութեամբ եւ հայացնել բնիկ ցեղերէն նոյնիսկ ամենադոյզն մաս մը:

Իսկ դէպի Արեւելք՝ Հայաստանի մի քանի ուշ հայացած նահանգներէն դուրս Հայ ցեղը չէ կրցած տարածուիլ, վասնզի գլխաւորապէս քրիստոնէութեան պատճառով իր աչքերը դէպի Արեւմուտք ուղղած եւ դէպի հոն ձգտած էր:

Սակայն նկատելի է որ Ատրպատական շատ հին ժամանակներէ ի վեր հայաբնակ էր: Այս երկիրը մաս կը կազմէր Մարաստանի՝ 190ին Քր.է առաջ, Փայտակարանի, Սիւնիքի եւ Վասպուրականի հետ, զորս Հայերը իրենց պետութեան սահմաններուն մէջ առին: Տիգրան Մեծ տիրեց Ատրպատականի, Ադաբինիոյ եւ Կորդուաց թագաւորութիւններուն, բայց շուտով զանոնք լքեց: Ատրպատականի թագաւորութիւնը Պարսիկ պետութեան կցուեցաւ:

Հայոց *Պարսկահայք* նահանգը Ատրպատականի մասն էր նախապէս, եւ իրականին մէջ այս անունով նահանգ մը չկար: Հիները բնաւ չեն յիշեր այս անունով նահանգ մը, այլ անբաժան կը յիշեն Հեր եւ Զարաւանդը, որոնք կ'երեւի Մարերէն գրաւուած երկիրներուն մէջ ամենէն աւելի հայացած երկիրներն էին:

Ինչպէս Փայտակարան, Սիւնիք, Վասպուրական, նոյնպէս նաեւ Պարսկահայք՝ Մարաց մասերն են եւ մինչեւ վերջը պահած են իրենց ոչ-հայ ցեղային նկարագիրը:

Մանաւորապէս Փայտակարան եւ Պարսկահայք բնաւ չեն հայացած: Սակայն զարմանալի է որ Փաւստոս



Ա. ՀԱՅՔ
Բ. ՀԱՅՔ
Գ. ՀԱՅՔ
Դ. ՀԱՅՔ
ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔ
ՄԵԾ ՀԱՅՔ
ԱՌԱՋԻՆ ՀԱՅՔ
ՉՈՐՐՈՐԴ ՀԱՅՔ
ԽՈՐԱԳՈՅՆ ՀԱՅՔ
ՆԵՐՔՍԱԳՈՅՆ ՀԱՅՔ
Եփրատ
Եփրատ գ.
Երասխ գ.
Կուր գետ
Ճորոխ գ.
Տիգրիս գ. Մեծ կամ
Փոքր Զաբ
Իրիս գ. կամ Եէշիլ Իրմաք
Ծիհուն գ.
32 34 36 38 40 42 44 46 48
36 38 40 42


6

Թիւ 6 Տես բնագիր էջ 18 – 20, եւ 60 – 61

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՒ ՓՈՔՐ ՀԱՅՔԻ ԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԸ

## ԲԻՒԶԱՆԴԱՑԻՈՑ ԵՒ ԱՐԱԲԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐՈՒՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կարմիր գիծ 528-ի Պարսիկ - Բիւզանդական սահման․
2. † † † † † Կանանչ գիծ 591ի Պարսիկ Բիւզանդական սահման
3. Կարմիր գիծով նշանակուած է 536-ի Բիւզանդական Հայաստանի չորս նահանգներու սահմանները։
4. Կանանչ գիծով նշանակուած է 591-ի Բիւզանդական Հայաստանի երեք նահանգներու սահմանները։
5. Սեւ կէտերով սահմանագծուած է Արաբական Հայաստանը, և սեւ գիծերով նշանակուած է Արաբական Հայաստանի չորս նահանգները։

Դաւրէժը հայ տիրապետութեան տակ ցոյց կու տայ, Խոսրովի ատեն: Մինչեւ Ե. դարուն սկիզբը Հայ Սահմանապահ զօրքը այդ քաղաքը կը նստէր: Արշակ թագաւորէն ապստամբ գաւառներու շարքին, 367էն առաջ Փաւստոս կը յիշէ Ատրպատականի մէջ այն տեղը, զոր թագաւորը նուէր ընդունած էր Պարսից արքայէն, ինչպէս նաեւ *ամուր աշխարհն Մարաց*», զոր Մուշեղ սպարապետ կը նուաճէ եւ ետ կ'առնէ: 387ին Ատրպատական, Պարսկահայք եւ Փայտակարան ուղղակի Պարսկաստանի կը միանան, սակայն նկատելի է՝ որ Ուրմիոյ լիճին արեւմուտքը, Արաքսի հարաւային ափերը, Մուղանէն մինչեւ Մակու եւ Մակուէն մինչեւ Սովուճ-Պուլաք հայաբնակ էին եւ Հայաստանի մաս կը համարուէին: Դաւրէժ, Մարանդ, Ուրմիա, Խոյ, Մարագա, Սալմաստ, արդարեւ հին ժամանակներէն ծանօթ են՝ իբրեւ հայ քաղաքներ, եւ ինչպէս նաեւ յայտնի քրիստոնէութեան կայաններ:

Սակայն յաջորդ տարիներուն պայմանները մեծապէս փոխուած են, եւ հետզհետէ Հայոց թիւը պակսած է, այնպէս որ Հայերը չեն կրցած խաղաղ զարգացում մը ունենալ եւ ոչ ալ թափանցել այդ երկիրներուն մէջ եւ իրենց գտնուած վայրերը հայացնել, այլ իրենք, ընդհակառակը, օտարացած եւ ազգութենէ հեռացած են:

Իսկ հակառակը պատահած է արեւմտեան կողմը, ուր հին Փոքր Հայք, որ շատ պզտիկ հողաշերտ մըն էր Եփրատի արեւմտեան կողմը, Պոնտոսի տիրապետութեան ենթարկուելէն ետք՝ իր հայկական նկարագիրը կորսնցուցած է եւ բիւզանդական երկիրներու մաս նկատուած է, խառն բնակչութեամբ մը:

Հայ ցեղը սակայն կրկին հոն կատարած է մեծ դեր եւ ոչ միայն հայացուցած է նախկին Փոքր Հայքի մէջ ապրող բազմաթիւ մանր ժողովուրդները, այլ ուրիշ սահմանամերձ երկիրներու բնակիչները, այնպէս որ Փոքր Հայք նկատուած է շատ ընդարձակ տարածութիւն մը, քան հին Փոքր Հայքը:

Ստրաբոն որ ծնած է Ամասիա՝ Քր.է առաջ 63ին, եւ մեռած է Քր.է ետք 19ին, կը հաստատէ՝ թէ իր ժամանակը երկու Հայաստաններ գոյութիւն ունէին: Փոքր Հայաստանի համար կ'ըսէ՝ թէ Արեւմուտքէն եզերուած էր Անդիտաւրոսով:

Ան կը հաւաստէ նաեւ՝ թէ

> «Փոքր Հայք ունէր, ինչպէս Ծոփաց աշխարհը՝ միշտ թագաւորներ կամ տոհմային իշխաններ, որոնք դաշնակից էին յաճախ բուն Հայոց կոչուած թագաւորներուն հետ, բայց առանձին եւս կը գործէին: Փոքր Հայոց իշխանները իրենց իշխանութեան տակ ունէին Խաղդիքը եւս» (Ստրաբոն ԺԲ. 3. 18):

Այս թագաւորութիւնը որ հաստատուած էր 190ին (Քր.է առաջ), ջնջուած է Միհրդատ Եւպատորէն եւ վերահաստատուած Պոմպէոսէն (հմմտ. *Հայ Կեսարիա*, էջ 197—198 եւ 267), եւ անկէ ետք Հռոմի տիրապետութեան տակ զանազան ձեւափոխութիւններ կրած է (հմմտ. *Նոյն* էջ 267—268):

Հետաքրքրական է որ Հայոց ցեղագրական ըն-ւանումին հետեւանօք հայացած Փոքր Հայքը, որ նախապէս շատ սահմանափակ շրջան մը կ'ընդգրկէր, հետզհետէ ընդարձակուած է: Հռոմէական տիրապետութեան սկիզբը Armenia Minorը կը բաղկանար Եկեղեաց գաւառին դրացի Եփրատի աղբերականներուն մերձակայ երկիրներէն՝ շուրջը Սատաղ, Կողոնիա, Նիկոպոլիս քաղաքներուն:

Պտղոմէոս, որ Ստրաբոնէն մօտաւորապէս 150 տարի յետոյ գրած է իր աշխարհագրութիւնը, Փոքր Հայքը այնքան ընդարձակուած ցոյց կու տայ որ Ստրաբոնի յիշած Կապադովկեան 10 նահանգներէն եօթը կցուած կը գտնենք Փոքր Հայքի (տես *Հայ Կեսարիա*, էջ 268—269 եւ Ramseyի The Historical Geography of Asia Mirnor էջ 71):

Դիոկղետիանոս կայսրը (284—304), որ բոլորովին վերակազմեց Հռոմէական կայսրութիւնը նոր վարչական բաժանումներով, առաջին անգամ Փոքր Հայքը Կապադովկիայէն անջատելով առանձին նահանգ ըրաւ, եւ վերածեց երկու փոքր նահանգներու՝ *Առաջին* եւ *Երկրորդ Հայք* անուններով: Ստրաբոնէն մօտաւորապէս երեք դար ետքը եղած այս փոփոխութիւնը ուրիշ բանի մը հետեւանք չէր կրնար ըլլալ՝ եթէ ոչ բնակչութեան ցեղային նկարագիրին փոփոխութիւնը: Որոշ է, որ այդ երկիրները լեցուած էին խիտ հայ բնակչութեամբ, ինչ որ կը ստիպէր Հռոմը այդ նահանգները նկատելու «*Հայկական*»:

Մեծն Կոստանդիանոս (306—337) աւելի ընդարձակեց Փոքր Հայքի սահմանները, միշտ պահելով անոր երկու բաժանումները (տես *Հայ-Կեսարիա* էջ 269—270), որոնք յետոյ աւելի ընդարձակուեցան (*Նոյն*. էջ 270) եւ հակառակ անոր որ կը գտնուէին Հռոմէական կայսրութեան ընդհանուր վարչական կազմին մէջ եւ դուրս էին Հայաստանէն, միշտ իրենց *Հայք* անունը պահեցին:

Երբեմն Փոքր Հայք կոչուած երկրին այս տարապայման ընդարձակումը եւ երբեմն Կապադովկիոյ մաս ընդարձակ երկիրներու Փոքր Հայքի կցուիլը, չէր կրնար ուրիշ իրողութեան մը արդիւնքը ըլլալ, եթէ ոչ բնակչութեան մեծ մասին ցեղային կազմին հիմնական փոփոխութեան:

Ուրեմն պէտք է ընդունինք՝ թէ Հայ ցեղը դէպի արեւմուտք իր բնակութեան սահմանները չափազանց ընդարձակած է եւ Հռոմէական Ասիոյ մանաւորապէս Հայաստանի սահմանամերձ Կապադովկեան գաւառները, նոյն իսկ հին ժամանակներէ սկսեալ, լեցուած էին Հայերով՝ կամ մէկ բառով հայացած էին, (տես *Պատմութիւն Հայ Կեսարիոյ*, ուր մանրամասն պատմական տուեալներով բացատրուած է այս իրողութիւնը):

Հայ պատմիչները ալ կը պահեն, աւանդութիւններ, որոնք կը միտին հաստատել այս հայացումը: Փաւստոս Բիւզանդ Ե. Դարուն գիտէ «*Կեսարիաւ հետ եւ տասն քաղաք մեր լեալ է*» (Դպ. Ե. գլ. ԼԲ), ինչ որ կը հաստատէ հայկական տիրապետութեան մը հաստատուն աւանդութիւնը, որուն արձագանգ կ'ըլլայ ժամանակով աւելի ուշ Խորենացի՝ Արամի աշխարհակալութիւններուն վրայ խօսելով (1): Եթէ

(2) *Յոյն պատմիչներէն Փիլոստորգիոս եւ Կոստանդին Ծիրանածին եւ Հրեայ Յովսեփոս երբեմն ալ արձագանգ կ'ըլլան*

*Մշակ=Մոշոք=Մաշակ կուռակալի մը կամ իշխանի մը անուանութեան.*

Փոքր Հայք Հայերով լեցուն չըլլար՝ Ս. Բարսեղ հայրապետ (370—379 +) Սատաղ ուղեւորած ատեն Փոքր Հայք եպիսկոպոսական աթոռներուն համար լեզու գիտցող մարդիկ պիտի չփնտռէր (Migne. Patrol. 32, 502): Ասիկա ցոյց կու տայ թէ Դ. դարուն վերջերը Փոքր Հայքի հայ ծագումով բնակչութիւնը ոչ միայն մեծամասնութիւն կը կազմէր, այլ նաեւ տակաւին կը պահէր իր լեզուն եւ ազգութիւնը:

Յաջորդ դարերուն պարսկական կրօնական հալածանքները պատճառ եղան որ բիւզանդական տիրապետութեան տակ գտնուող Փոքր Ասիոյ մէջ Հայոց թիւը ալ աւելի բազմանայ (տես, *Պատմութիւն Հայ գաղթականութեան* էջ 144—183), սակայն պետութիւն եւ եկեղեցի գործակցաբար, ինչպէս ասիական զանազան ազգերը՝ նոյնպէս նաեւ Փոքր Հայքի հայ բնակիչները այլասերեցին եւ բիւզանդական հալոցին մէջ ձուլեցին, թէեւ նշանակելի է որ *Հայկական Բանակաթեմը* որ աւելի ընդարձակ շրջանակ մը կ'ընդգրկէր՝ *Առաջին Հայք*, *Երկրորդ Հայք*, *Երրորդ Հայք*, եւ *Չորրորդ Հայք*, վարչական բաժանումներուն անուններուն հետ մնաց իբրեւ կարկառուն փաստ այդ շրջաններուն հայաբնակութեան:

Արդարեւ, Հայաստանի քաղաքական անհաստատ կացութեան պատճառով Հայերը մանաւորապէս Դ. դարէն ետքը Եփրատի արեւմտեան կողմը գտնուող երկիրները գաղթած են եւ Եփրատամերձ գաւառներու մէջ բնակչութիւնը հետզհետէ հայկական շեշտուած նկարագիր առած է եւ Փոքր Հայքի սահմաններէն աւելի անդին՝ դէպի Արեւմուտք՝ երկիրը առած է հայաբնակ շրջանի մը նմանութիւնը:

Պատմական տուեալներ ունինք՝ թէ Հայերով լի էին հին ատեն ո՛չ միայն Եփրատէն Ալիս տարածուող հողերը, այլ աւելի արեւմուտք՝ Ալիսէն մինչեւ Բիւզանդիոն, Փոքր Ասիոյ մէջ, աւելի կամ նուազ թուով Հայեր՝ գոյութիւն ունէին: Սակայն այսօր կարելի չէ Ալիսէն դէպի Արեւմուտք տարածուող երկիրներու Հայ բնակիչներուն վրայ խօսիլ աւելի որոշ եւ պատմական վաւերագիրներով, վասնզի քրիստոնէութիւնը անոնց մէջ ազգային նկարագիրը ջնջած եւ զանոնք Հայութենէ դուրս կորզած է այնպիսի ժամանակամիջոցի մը մէջ՝ երբ տակաւին հայերէն գիր ու դպրութիւն չկար. (Հայոց դէպի Արեւմուտք այս շարժումին մասին տես. *Պատմութիւն հայ գաղթականութեան*, էջ 101—131, եւ մանաւորապէս՝ դէպի Փոքր Հայք եւ Կապադովկիա շարժման մասին. *Պատմութիւն Հայ Կեսարիոյ* էջ 271—276):

Այսպէս, մեծ թուով Հայեր եւ հայացածներ օտարացած եւ հայ ազգութենէ հեռացած են, բիւզանդական տիրապետութեան տակ:

Դ.

## ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՒԱՆՔՆԵՐԸ
## ՄԻՆՉԵՒ ԹՐՔԱԿԱՆ ՏԻՐԱԿԱԼՈՒԹԻՒՆ

Արաբական գրաւումէն յետոյ Հայաստանի մէջ ազգութեանց պայքարը կամ ցեղերու զիրար իւրացնելու եւ ձուլելու աշխատանքը չէ դադրած:

Մանաւորապէս անոնց Հայաստանի համար սահմանած վարչական կարգերը աւելի նպաստած ըլլալ կը թուին այս պայքարին, յատկապէս Հայաստանի հիւսիսային սահմանին վրայ, ուրկէ կովկասեան բարբարոս ժողովուրդներուն դէպի հարաւ իջնելուն ձգտումը մշտակայ վտանգ մը կը ներկայացնէր, ոչ միայն Հայաստանի համար, այլ բովանդակ Արաբ աշխարհին համար: Հետեւաբար, Արաբները փորձած են Հայոց, Վրաց եւ Աղուանից միացեալ ուժերէն պատուար մը կազմել այդ բարբարոս ժողովուրդներուն դէմ:

Հետեւաբար, Հայաստան անունին տակ միակ կառավարութեան մը մէջ խմբած էին բոլոր այն երկիրները, որոնք կը գտնուէին կովկասեան լեռներու եւ Քիւրտերու երկիրին (Վանի Լիճին հարաւակողմը) միջեւ, սահման ունենալով արեւելքէն՝ Կասպից ծովը, Կուր գետը եւ Ուրմիոյ լիճը, արեւմուտքէն՝ Եփրատ եւ Ճորոխ գետերը եւ Սեւ Ծովը:

Արաբներն ալ Յոյներու օրինակին հետեւելով, երկիրը բաժնած էին Ա. Բ. Գ. եւ Դ. Հայք անուն գաւառներու:

Այսպէս՝ ըստ Թ. դարուն ապրող արաբ աշխարհագիր Իպն Խորտատպէհի (*Ճամբորդներու գիրքը*, Ֆր. թրգ. Goeje, էջ 93—94).

*Ա. Հայք*՝ կը կոչուէր այն աշխարհամասը՝ որ կը գտնուէր Թիֆլիսի եւ Կասպից ծովուն միջեւ.

*Բ. Հայք*՝ այն հողերը որոնք կը տարածուէին Թիֆլիսէն մինչեւ Սեւ ծով, պարփակելով իրենց մէջ Լազիքան (հիմա Լազիստան), կամ Կողքիսը.

*Գ. Հայք*՝ Արաքսի հովիտը եւ Վասպուրականը.

*Դ. Հայք*՝ Վանայ երկիրը եւ Եփրատի երկիրը:

Անուանապէս կամ ձեւականօրէն Հայաստանի կցուած էին Տերպենտը, Պալանճարը եւ կովկասեան անցքերը, որոնք կը բռնէին Խազարները: Արաբական Հայաստանի մաս կը համարուէին նաեւ Ծանարները, Աղուանից եւ Ափխազներու երկիրները. (J. Morgan L' rmenie entre Byzance et l'Islam depuis la conquête Arabe jusq'en 886. էջ 9):

Այս վարչական միութեան մէջ ապրող բազմացեղ ժողովուրդները, Արաբներէն կատարելապէս նըւաճուած չէին, վասնզի, Արաբները անոնց թող տուած էին պահելու իրենց ազգութիւնը եւ իրենց քաղաքական հիմնարկութիւնները: Զանոնք բոլորովին նուաճելու համար պէ՛տք էր ջնջել անոնց ոյժը, որուն պէտք ունէին խալիֆաները, Խազարները, Բիւզանդացիներու եւ ինչ ինչ խռովայոյզ շրջաններու բազմաթիւ իսլամ ապստամբներուն դէմ գործածելու համար զանոնք:

Խալիֆաները նախամեծար համարած էին այս ժողովուրդները սիրաշահիլ՝ անոնց ազատութիւն տալով, միայն հարկ տեսնելով երբեմն երբեմն զանոնք զգաստութեան եւ հնազանդութեան բերելու համար զսպողական միջոցներ ձեռք առնելու զոհողութիւնը, ինչ որ դժուար չէր՝ քանի որ անոնք մեծ թիւ մը չունէին եւ իրենց մէջ սերտ համերաշխութիւն մը չունէին:

Այս խառն բնակչութեամբ եւ բաւական ծաւալուն երկիրին մէջ Հայերը ամէնէն բազմաթիւ էին, եւ այս պատճառով երկիրը Հայաստան կը կոչուէր, թէեւ իր սահմանները Արաբներու գերիշխանութեան տակ գտնուող ինքնավար Հայաստանի, ինչպէս նաեւ

Թիւ 7 Բնագիր էջ 16 եւ 18

# ՀԱՅ ՑԵՂԻՆ ԾԱՒԱԼՈՒՄԸ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կարմիր քառակուսի գիծերով նշանակուած է հոծ հայութիւն պարունակող վայրերը։
2. Կարմիր հորիզոնական գիծերով նշանակուած է խառն բնակչութեամբ բնակուած վայրերը։
3. Կանանչ քառակուսի գիծերով նշանակուած է կանուխ հայացած վայրերը։
4. Կանանչ գիծերով նշանակուած է մակերեւոյթաբար հայացած վայրերը։
5. Կարմիր և կանանչ գիծերով քառակուսի կազմած, նշանակուած են այն վայրերը, որոնք բնաւ չեն հայացած։

Չափ. 1.460.000

Հայաստանի աշխարհագրական սահմաններէն անդին անցնէին:

Մասնաւորապէս անիկա շատ տարածուած էր դէպի հիւսիս, Կովկասի ուղղութեամբ, այն ժողովուրդներուն մէջ, զորս Արաբները կցած էին իրենց Հայաստան կոչած նահանգին:

Հայերը այս առթիւ ունեցան սերտ յարաբերութիւններ եւ ցեղային նուաճումի մարզին մէջ մասամբ յաջողութիւններ, իրենց անմիջական դրացի երկու ժողովուրդներէն՝ Վրաց եւ Աղուանից մէջ: Վրացիք եւ Աղուանք իրենց ազգութենէն մաս մը կորսնցուցին, բայց անիկա բնաւ ոյժի աղբիւր մը չդարձաւ Հայոց համար: Հայերը, Վրացիները եւ Աղուանները այնքան բարքերու եւ սովորութեանց նմանութիւններ ունէին, որ նոյն իսկ առօրեայ լեզուին մէջ անոնք մէկ բառով Հայ կը կոչուէին՝ իբրեւ թէ մէկ ժողովուրդ մը եղած ըլլային: Հետեւաբար, Արաբները կը կարծէին թէ դիւրին պիտի ըլլար զանոնք ենթարկել Հայաստանի ընդհանուր ինքնավար վարչաձեւին, մինչ իրականապէս այս ցեղերը հեռու էին զիրար հասկնալէ, վասնզի այս երեք ազգերուն, մանաւանդ Հայոց եւ Վրաց միջեւ տեւական անհամաձայնութիւն կար, ինչ որ երկու ցեղերն ալ կը տկարացնէր: Նոյնպէս Հայերու եւ Աղուանից, ինչպէս նաեւ Վրաց ու Աղուանից միջեւ խիստ հակառակութիւն կար: Այնպէս որ Հայերը հակառակ իրենց թուական գերազանցութեան եւ ոյժին, ինչպէս նաեւ քաղաքական վարչութիւնը իրենց ձեռքը ունենալուն, չկրցան երբեք միւս ժողովուրդներու ձուլումը իրականացնել՝ արաբական շրջանին: Հայերը միայն Վրաց եւ Աղուանից երկիրներուն՝ արաբ պաշտպանութեան տակ տիրապետեցին, բայց չկրցան զանոնք միացնել միակ ազգութեան մը մէջ: Այս պատճառով արաբ գերիշխանութեան տակ կազմուած ինքնավար Հայաստանը միութիւն մը չկրցաւ կազմել եւ մնաց ցնորք մը կամ խօսք մը: Այս երեք ցեղերու անընկճելի հակառակութիւնը ջլատեց իրենց պետերուն ոյժը եւ կտրատեց իրենց երկիրներուն տարածութիւնը եւ նուազեցուց իրենց բնակչութեան կարեւորութիւնը:

Ասկէ զատ, նոյնիսկ բուն Հայաստանը, տուժեց Արաբներու բարեացակամ վարմունքէն, վասնզի պայմանադրականօրէն պահպանուեցաւ եւ նպաստաւոր կերպով զարգացաւ իր աւատական կազմակերպութիւնը, բոլոր իր արատներով եւ իր բոլոր տկարութիւններով:

Արաբական տիրապետութեան շրջանին Վրացիք կը բնակէին Կուրի վերին հովիտը, մինչեւ քիչ մը վար Թիֆլիսէն, մասնաւորապէս ձախ եզերքը այս գետին, մինչեւ Ճորոխ դէպի Արտանուշ եւ մինչեւ Մոսքերու, Ափխազներու, Ալաններու եւ Ծանարներու երկիրները: Իսկ Կուրի ձախ եզերքին վրայ Վրացիք կը գրաւէին Խրամ գետին (1) հովիտը, յետոյ Կարսի եւ Օլթիի ուղղութեամբ բոլոր այն հողամասը՝ որուն ջուրերը կը թափին Կուրի մէջ: Գալով Աղուանից՝ անոնք ալ կը գրաւէին Կուրի հովիտը, Թիֆլիսէն վար, մինչեւ հոն ուր այս գետը կը միանար Արաքսի: Անոնք կը տարածուէին, այն երկու զառիթափերուն վրայ՝ որոնք կը յանգին Կուրի, հիւսիսային կողմէն մինչեւ Կովկաս եւ Կասպից ծովուն ուղղութեամբ, իսկ դէպի հարաւ մինչեւ Սեւանայ լիճ, մինչեւ Բարկուշատի եզերքը, որ կ'անցնի Տաթեւի մօտէն եւ Արաքսի վերեւէն, մինչեւ Ատրպատական:

Հայերը՝ Արաբներէն ստացած իրենց իշխանութեամբ տիրակալելով միւս երկու ժողովուրդներուն վրայ կ'ուզէին այս առիթը օգտագործել զանոնք ընկճելու համար: Այսպէս, իրենց երկիրին կցեցին Գուգարքէն կամ Վրաստանէն այն հողամասը՝ որ կը գտնըւէր Կուրի կամ անոր օժանդակ Խրամ գետին եւ Ճորոխէն դէպի Արտանուշ քաշուած գիծի մը միջեւ:

Այսպէս, Կուրը պաշտօնապէս կը ճանչցուէր ինքնավար Հայաստանի հիւսիսային սահմանը՝ առանց սակայն իրականապէս հաստատուն պատուար մը հանդիսանալու, վասնզի Թիֆլիսի արաբ էմիրները արգելք եղան գրեթէ միշտ Հայերուն՝ մտնելու իրենց տիրապետած հողերը:

Հայերը անցան նոյնիսկ Կուր գետը՝ Վերին Վրաստանի մէջ, բայց գետին միւս մասերուն վրայ, Վրացիք եւ Աղուանք յաղթական դիմադրեցին Հայոց ներխուժումին, օժանդակութեամբ իրենց թիկունքը կանգնած Կովկասի զառիթափերուն վրայ հաստատուած ժողովուրդներուն, որոնք Արաբները ինքնավար Հայաստանի իշխանին ենթարկուած կը նկատէին:

Հայերը, հակառակ իրենց ունեցած առաւելութիւններուն, Վրաց երկիրներէն միայն փոքր մասեր կրցան Հայացնել, վասնզի Վրացիք՝ որ բարքերով Հայոց շատ մօտ էին, բայց ցեղով եւ լեզուով բաժնուած էին՝ սաստիկ կը մաքառէին պահելու համար իրենց ազգային ինքնութիւնը եւ խոչընդոտ կը հանդիսանային Արաբներուն դէմ բնիկ ժողովուրդներու միութեան:

Վրացիք ոչ միայն կը մաքառէին իրենց ցեղին բնակավայրը նկատուած հողերուն վրայ Հայոց ունեցած յաւակնութեանց դէմ, այլ կը պահանջէին իբրեւ վրական, Ճորոխի եւ Եփրատի վերին հովիտները, այսինքն Սպերի եւ Էրզրումի շրջակայքը, որոնք հայկական էին:

Իրենց այս յաւակնութեանց իբր պատիժ՝ անոնք ենթարկուեցան Հայ իշխաններուն, Խրամ գետին աւազանին մէջ՝ Թիֆլիսի հարաւակողմն, սակայն այս իշխանական տոհմը, որ տիրեց Ճորոխի եւ Կուրի միջեւ, ուրիշ կերպով չկրցաւ ամրապնդել եւ տեւականացնել իր գոյութիւնը հոն, եթէ ոչ դառնալով ինքն ալ Վրացի՝ թէ՛ իր կրօնքով, թէ՛ իր տիտղոսով եւ թէ իր գործունէութեամբ, վասնզի Վրաստանի այս թագաւորները իրենց հպատակներուն պէս ընդունած էին բիւզանդական հովանաւորութիւնը եւ անոր պատուոյ տիտղոսները: Հակառակ անոր որ Վրացիք շատ բան կը պարտէին բիւզանդական կայսրութեան եւ անոր շնորհիւ կրցած էին ազատ մնալ մասամբ այն ապստամբութիւններէն եւ կոտորածներէն, զորս Արաբները պարբերաբար կը գործադրէին հայկական միւս շրջաններուն մէջ, ամբարտաւանութեամբ կը պարծէին թէ իրենք մեծ ծառայութիւններ մատուցած էին Յունաց, իբր թէ «եթէ Աստուած զիրենք դրած չըլլար իբրեւ պատուար սոսկալի թշնամիի մը ճամբուն վրայ, անոնք պիտի գային մինչեւ Կ. Պոլիս»: Մինչ Բիւզանդիոնն

(1) Ասիկա Վրաց պատմական Կցիա (Ktzia) գետն է,

էր որ պաշտպանած էր Թ. դարուն սկիզբը, իրենց նոր արքայական հարստութիւնը եւ կասեցուցած Արաբներու յառաջխաղացութիւնը Թիֆլիսէն դէպի վերին Կուր: Ան եղած էր միշտ Վրաց դաշնակիցը եւ զանոնք քաջալերողը՝ պայքարելու Հայոց հետ կրօնական միութեան դէմ, թէեւ Աբխազները թելադրած էր գրաւելու Կուրի հովիտին մէկ մասը, որպէսզի շատ չզօրանար Վրաստանի Հայ Բագրատունի հարստութիւնը:

Վրացիք որ նախապէս դաւանակից էին Հայերու, հաւանական էր որ կրօնական միութեան ուղիով կարենային ձուլուիլ մեզի հետ, սակայն անոնք վաղուց ձգտեցան պահել իրենց կրօնական անկախութիւնը, որդեգրելով մասնաւոր զատկական ժամանակագրութիւն մը եւ տոմար մը, որ կը կարծուէր թէ կ'սկսէր Քր.է առաջ 96 թուականին:

Բայց ասիկա բաւական չհամարելով, այնպիսի ատեն մը, երբ Պարսիկներուն կը յաջորդէին Արաբները իբրեւ Հայաստանի տիրապետողներ, եւ Վրաստան զոնէ մասամբ անվթար կը մնար շնորհիւ բիւզանդական հովանաւորութեան, ուզեցին բոլորովին ձերբազատել իրենց եկեղեցին: Այսպէս, Է. դարուն սկիզբը, Վրաց պատրիարքները դադրեցան հայ կաթողիկոսներու հնազանդելէ եւ միացան բիւզանդական եկեղեցիին, ապա հռչակելու համար ինքզինքնին ինքնագլուխ՝ ազատ Անտիոքի եւ Պոլսոյ պատրիարքներէն:

Հայերը չներեցին այս բաժանումը, զոր դաւաճանութիւն կը նկատէին կրօնական. սաստիկ ատելութեան մը սկսաւ երկու ժողովուրդներուն միջեւ: Հայերը զանոնք կը նզովէին եւ կը թշնամանէին, եւ Վրացիք փոխադարձաբար իսլամ մզկիթները եւ հայ եկեղեցիներ իրարու հաւասար կը նկատէին:

Ասոր համար, հակառակ անոր որ Հայերը գրաւած էին Վրաստանի մէկ մասը, Վրաց կրօնքը եղաւ խորհրդանշան մը եւ կապ մը իրենց ազգային գոյութիւնը պահպանելու եւ արգելք՝ Հայերու հետ ձուլուելու, հակառակ այն սերտ շփումներուն որ երկու ազգերը ունէին իբր դրացի եւ իբր բնակակից, քանի որ շատ շրջաններու մէջ խառն կը բնակէին:

Արաբական շրջանին, Է. եւ Ը. դարերուն, Հայերը եւ Վրացիները՝ խոյս տալու համար արաբ հարստահարութիւններէն՝ գաղթեցին դէպի Տաո-Կլարջէթի կամ Տայոց գաւառը, որ աւելի մեծ ապահովութիւն կ'ընծայէր ասպատակներուն դէմ եւ հաստատեցին սերտ յարաբերութիւններ, իմէջ այլոց նաեւ մշակութային: Այս յարաբերութիւնները զարգացան մասնաւորապէս Թ եւ Ժ. դարերուն մէջ, երբ իրական աշխատութեանց կեդրոններ —նոր մենաստաններ— շինուեցան, որոնց մէջ Հայ մատենագիրներու գործերը թարգմանուեցան վրացերէնի եւ փոխադարձաբար (Տես *«Հայաստանի եւ Վրաստանի գրական յարաբերութիւնները Թ. եւ Ժ. դարերուն մէջ»)*:

Ասկէ զատ՝ անուրանալի իրողութիւն է որ մեծ թիւով Հայեր միշտ բնակած են Վրաստանի բոլոր մասերուն մէջ խառն Վրացիներուն: Իրենց մայրաքաղաքին՝ Թիֆլիսի մէջ, որ ըստ աւանդութեան Վրաց Վախթանգ Գուրգասլան թագաւորին կողմէ (446—499) շինուած է, նոյնիսկ անոր հիմնարկութենէն անմիջապէս յետոյ՝ Հայեր հաստատուած պէտք է ըլլան, քանի որ նոյնիսկ Զ. դարուն վերջը, 600ին, ունէին եկեղեցի մը, եւ շատ հին ժամանակներէ սկսեալ Հայերը կը կազմէին քաղաքին բնակչութեան մեծամասնութիւնը:

Վրացիք միայն կը ներկայացնէին պաշտօնէութիւնը իրենց բազմաթիւ հետեւորդներովը շրջապատուած: Կային գիւղացի Վրացիք, որոնք իրենց տէրերուն եւ պաշտօնատէրերուն պարտէզները մշակելու համար միայն Թիֆլիս կու գային: Մէկ խօսքով Վրացիք պաշտօնական ու առժամեայ բնակիչներն էին քաղաքին, մինչ Հայերն էին անոր մշտնջենական բնակիչները. ասոր համար Վրացիք Հայերը կը կոչէին *Մոքալաքի* (=Քաղաքացի): Հայերը կը բնակէին նաեւ քաղաքին բերդին մէջ, եւ արուեստաւորներ ու վաճառականներ էին: Միեւնոյնն էր երեւոյթը Գորիի մէջ, որ Թիֆլիսէն զատ, Վրաստանի միակ քաղաքն էր: Վրացիք հոն ալ առհասարակ կը կազմեն գիւղական բնակչութիւնը, Այս երեւոյթը ինքնին շատ բան կը բացատրէ եւ ցոյց կու տայ Հայերու թափանցումը դէպի Վրաստան, ուր անոնք կը վայելէին կարգ մը բացառիկ առանձնաշնորհումներ՝ իբրեւ պիտանի տարր մը (1):

Իսկ Աղուանից երկիրը, որ Ե. դարէն մինչեւ Է. դար իր ընդարձակագոյն սահմանին մէջ էր եւ իր իշխանութեան տակ ունէր Ուտի, Արցախ եւ Փայտակարան նահանգները, բոլորովին այլացեղ եւ այլալեզու ժողովուրդով մը, հակառակ իր մաքառումներուն արաբական շրջանին տեւողութեան՝ հետզհետէ հայացաւ: Թ. դարուն սկիզբը, հայ իշխաններ գրաւեցին աղուան հողատէրներու ստացուածքները Կուրի աջ եզերքին վրայ, Արաքսի ափերէն մինչեւ Խրամի եզերքները, ինչպէս փորձած էին գրաւել վրացի հողատէրերու հողերը՝ Կուրի վերին աւազանին մէջ:

Հայերը օգտուելով Արաբներու Հայաստանի համար ըրած կարգադրութիւններէն, իրենց սեփական նահանգներուն թիւին մէջ կը համրէին աղուանական երկիրէն իրենց նուաճած հողերը, ինչպէս Սիւնիքը, որ լեռնախումբ մըն է Սեւանայ լիճին եւ Աքերայի (2) եզերքին միջեւ, Արցախը՝ որ Սիւնիքի արեւելքը կը գտնուէր, դէպի Կուր իջնող զառիթափին վրայ, Փայտակարանը, որ կը պարունակէր այն դաշտը ուր Արաքս

(1) *Այսպէս, քրէական յանցանքի համար Հայերը մահուան պատիժի չէին ենթարկուեր. այլ դրամական տուգանք միայն կու տային: Վախթանգ Թագաւորի օրէնքներուն համեմատ՝ Հայերու եւ Վրաց երկրորդ կարգի ազնուականներուն արեան գինը նոյնն էր: Իսկ այն ողբալի պահերուն ուր Վրաստան կը պարտաւորուէր Պարսից Շահերուն կոյսեր եւ պատանիներ տալ իբրեւ հարկ —ինչ որ* արբաբ *կը կոչուէր— Հայերը ազատ էին այս տուրքէն, երբ դրամական վճարում ընէին. Հայերը կը վճարէին որոշ տուրք մը,* (մախթու). *Կարող էին պետական պաշտօնի մտնել, եւ նոյն իսկ կարգ մը պաշտօններու համար իրենց նախապատուութիւն կը տրուէր: Հայերը ունէին իրենց սեփական ազգային պետերը որ* մէլիք *կը կոչուէր եւ պաշտօն ունէր կարգադրելու հայ վաճառականներու եւ արհեստաւորներու գործերը: Թիֆլիսի մէջ կային նաեւ ուրիշ ժողովրդական պաշտօնատարներ, ինչպէս* դարուղա *(ոստիկանապետ),* մամասախլիս, քէթխուտա *եւայլն, բայց քաղաքին գլխաւոր անձնաւորութիւնը* հայ մէլիքն *էր: Մէլիքի իշխանութիւնը գիւղերուն վրայ ալ կը տարածուէր:*

(2) *Աքերա* (Akera) *գետը Բարկուշատ գետի արեւելեան կողմը, անոր գրեթէ զուգահեռական գետ մըն է եւ անոր պէս Արաքսին կը միանայ:*

եւ Կուր իրարու կը միանային եւ վերջապէս Ուտին, որ կը տարածուէր Կուրի աջ եզերքին վրայ, Արցախի հիւսիսը, այդ գետին եզերքէն սկսեալ մինչեւ Սեւանի լիճը, Պարտաւ եւ Գանձակ քաղաքներով:

Հոս, այս վայրերուն՝ մասնաւորապէս Ուտիի եւ Արցախի Հայերը յաջողեցան կրօնքով եւ լեզուով, այսինքն մշակոյթով ձուլել Աղուանները, թէեւ անոնք ցեղագրապէս հաւանական չէ որ խառնուած ըլլան Հայոց, վասնզի ստուար թիւով Հայերու Աղուանից երկիր գաղթած եւ Աղուաններու խառնուած ըլլալը յիշատակուած չէ: Այնպէս որ Ուտի եւ Արցախ կազմեցին Հայ երկիրին մէկ մասը, հայացած բնակչութեամբ մը:

Բուն Աղուանները, որոնց ծնողքն ըլլալ կը յաւակնէին Հայերը, Վրաց պէս ընդդիմացած են ձուլուելու իրենց տիրապետներուն հետ եւ պահած էին իրենց երկիրին Հայերէն եւ Վրացիներէն գրաւուած գաւառներուն մէջ իրենց ազգութիւնը երկար ատեն:

Ժ. Դարուն Լոռիի Հայոց թագաւորը ինքզինք կը կոչէր Աղուանից թագաւոր:

Վրացիք միայն ԺԱ. դարուն յաջողեցան մեռցընել Աղուանից ազգային զգացումը Հէրէթի եւ Կազէթի (1) նահանգներուն մէջ: Իսկ Ժ. դարուն սկիզբը Գանձակի, Երեւանի եւ Նախիջեւանի շրջականերուն բնակիչները՝ կը հաստատուի թէ մէկ կարեւոր մասն էին հնագոյն Աղուանից եւ իրենք զիրենք Աղուաններ կը կոչէին հպարտութեամբ: Ասիկա զարմանալի չէ, քանի որ, հակառակ հայկական նուաճումին՝ Պարտաւի ու Սիւնեաց մէջ եւ մանաւանդ Կուրի աջ ափին վրայ կը խօսուէր Աղուան լեզուի բազմաթիւ գաւառաբարբառներէն մէկը: Աղուանները Հայոց կաթողիկոսին ենթակայ, Վրաց պէս Բիւզանդիոնի թելադրութեամբ, ձգտում ցոյց կու տային ձերբազատուելու, Հայերէն տիրապետուած շրջաններուն մէջ, մինչ Վրացիներէ տիրապետուած շրջաններուն մէջ կը մերժէին իրենց տէրերուն յունադաւանութիւնը:

Աղուանները, անտաշ եւ վայրենի, կ'ատէին իրենց թէ կղերական եւ թէ աշխարհական տիրապետները եւ ամէն կարելի չարիք կը հասցնէին անոնց, երբ առիթը գտնէին: Հայերն ալ կը դիմէին Արաբներուն՝ ծանր պարագաներուն մէջ եւ անոնց օգնութեամբ կրկին կը հպատակեցնէին զանոնք եւ սովորաբար գէշ կը վարուէին իրենց այս ըմբոստ հպատակներուն հետ: Կ'անարգէին զանոնք իբր բարբարոսներ, եւ անոնց լեզուն — զոր չէին հասկնար – կը կոչէին կոկորդային, խեցբեկագոյն, խոպոտ, բարբարոս, խոշորագոյն եւ անյարմար բարբառ:

Հայերը՝ նոյն իսկ Սիւնիքի բնակիչները, որոնք աւելի կանուխ հայացած էին, կը նկատէին «վարժ կամակատարութեանց, վայրագ, վայրենի եւ անհոռնի բարքերով» «բարբարոս եւ զզուելի մարդիկ»:

Աղուանից աշխարհը նշանակելի է որ արաբական տիրապետութեան շրջանին դեռ կը պահէր իր խառն բնակչութիւնը եւ Հայերը գէթ ժամանակաւորապէս յաջողած ըլլալով հանդերձ գրաւել Աղուանական Արցախը, Ուտին եւ Փայտակարանը, չէին կրցած ձուլել այդ նահանգներուն մէջ ապրող օտարածին, այլացեղ եւ այլալեզու բնակիչները, որոնք կը կոչուէին Ուտէացի, Գարդմանցի, Ծովդէացի, Գագարացի, Լփնի, Ճիղբ, Մազկութ եւ այլն:

Արդարեւ, պատմութենէն գիտենք թէ Ուտէացիք, սեփական լեզուով ժողովուրդ մը, կը գրաւէին Աղւանից դաշտը եւ Կովկասեան լեռնաշղթային հարաւային լանջքերը՝ Կասպիական ծովեզերքէն մինչեւ Կախաւան: Նախապէս անոնք կեդրոնացած էին Կուրի աջ կողմը, յետոյ անցան ձախ կողմը: Հռոմէացիք եւ Յոյները զանոնք կը կոչէին *Օդիք* եւ անոնց բնակավայրը՝ *Օդինէ, Օդինի* (=Ուտիք): Մինչեւ հիմա իրենց գոյութիւնը մասամբ պահած են. (տես Մակար Ծ.վրդ. Բարխուդարեան: *Աղուանից երկիր եւ դրացիք*, Թիֆլիս, 1893, էջ 74–75 եւ *Պատմութիւն Աղուանից*, Վաղարշապատ, 1902, էջ 15—17):

Նոյնպէս կը յիշատակուին Գարդմանցիք, որոնք բնիկներն էին Կովկասի լեռնաշղթային մէկ մասին եւ կը բնակէին Արցախի մեծ դաշտը եւ լեռները (տես *Աղուանից երկիր եւ դրացիք*, էջ 74, եւ 180—190. *Արցախ*, էջ 258—300 եւ *Պատմութիւն Աղուանից* ջէ 13—15):

Ծովդէացիք կը գրաւէին Կուր, Ալազան եւ Կախաւան գետերուն միջավայրը, այսինքն Բաղասական դաշտը եւ Կովկասեան լեռնաշղթային հարաւային լանջերը: (Տես՝ *Աղուանից երկիր եւ դրացիք*, էջ 75, եւ 272—273. *Պատմութիւն Աղուանից*, էջ 19—20):

Գարգարացիք ունէին օտար ծագում եւ կորկորդախօս, աղխազուր. խժական եւ խեցբեկագոյն լեզու, որոնց Ս. Մաշտոց գիր տուաւ: Իրենց բնակավայրն էր Գարգարացւոց դաշտն: Հայ պատմիչներէն Ագաթանգեղոս (էջ 593) կը յիշէ «*Իշխանն Գարգարացւոց*»: (տես. *Պատմ. Աղուանից*, էջ 17—19):

Լփնիք կը բնակէին Սուղայիտ եւ Դաւանի գետերուն միջեւ եւ Կովկասեան լեռներու հիւսիսահայեաց լանջերուն վրայ: Ծագումով պարսկական եւ սեփական լեզուով: Ծանօթ են մեր պատմիչներէն Ագաթանգեղոսի, Եղիշէի եւ Կաղանտկայուացիի: (Տես՝ *Պատմ. Աղուանից*, էջ 25—26 եւ *Աղուանից երկիր եւ դրացիք*, էջ 76):

Ճիղբք կը բնակէին Դաւանի եւ Ղուբա գետերու եւ ծովու միջեւ ու լեռնամասին մէջ: Եկամուտ ցեղ մըն էր, առանձին բարբառով: Հայ պատմագիրներ (Ագաթ., Եղիշէ եւ Կաղան.) կը յիշեն այս ցեղը: (*Աղուանից երկիր եւ դրացիք*, էջ 76 *Պատմ. Աղուանից*, էջ 26):

Մազկութք եկած էին հիւսիսէն եւ ծովեզերքը քերելով մտած Աղուանից երկիրը եւ կը բնակէին Դարբանդի, Կասպից ծովի եւ Փոքր կովկասեան լեռնաշղթային միջեւ (հմմ. Պլինիոս, Զ., էջ 17):

Բաւական ուշ եկած են Աղուանից երկիրը (տես *Պատմ. Աղուանից*, էջ 25. *Աղուանից երկիր եւ դրացիք*, էջ 76):

Կար նաեւ Աղուանից աշխարհին մէջ, Կուրի աջ եզերքին վրայ, Ուտիի նահանգին մէջ, դէպի Շամքորի եւ Գուգարքի սահմաններուն արեւմուտքը եւ Արցախի հարաւը՝ անհանդարտ ժողովուրդ մը, Սեւոր-

(1) *Հէրէթ եւ Կաղէթ Թիֆլիսի հարաւ արեւելեան կողմը եւ Կուրի հիւսիսակողմը երկու վրական նահանգներ են, Կաղէթ աւելի արեւելք է քան Հէրէթ,*

դիք անունով: Ծագումով անյայտ, Ը. դարուն կէսերը հաստատուած էր երկիրին մէջ եւ բաժնուած էր երեք ցեղերու կամ տոհմապետութեանց: Սեւորդիք սերտիւ յարած էին քրիստոնէութեան, որուն համար իրենց իշխաններէն շատերը նահատակուեցան Արաբներուն ձեռքով: Իրենց մօտ էին Հաղբատի եւ Սանահինի հռչակաւոր վանքերը: Բայց իրենց հաւատարմութեամբ բարեյոյս չէին: Քաջ, անհարկու՝ իրենց հռչակաւոր կացիններով, թուով մեծ եւ անսրբագրելի աւատառուներ, ինքզինքնին Բիւզանդացւոց նորտեր հռչակելով՝ նուազ հաւատարիմ էին Հայոց եւ անոնց պետութեան մէջ կը նկատուէին խռովութեան տարր մը:

Չեմ խօսիր ուրիշ կարգ մը ցեղերու վրայ, որոնք հին ատեններ ապրած են կամ անցած են Աղուանից երկիրէն, ինչպէս Ճակեր կամ Սակեր, Կասպիք, եւայլն (հետաքրքիրներ թող դիմեն Մակար եպս. Բարխուդարեանցի *Պատմութիւն Աղուանից*, էջ 13—30):

Այս բոլորը, ինչպէս նաեւ Ալաններու եւ Լիկերու (Լեզկի) պէս Կովկասեան ժողովուրդներ, խառնուած էին Աղուաններուն, եւ Հայերէն կորզած էին Ուտին եւ Արցախը եւ կցած՝ իրենց թագաւորութեան, ոչ մշտնջենապէս, վասնզի եղած են պահեր ուր Հայերը զօրանալով ետ առած են այդ նահանգները:

Արաբական տիրապետութեան շրջանի ձախողուածները եւ հարուածները Աղուանները աւելի նկուն ըրին: Իրենց հողերը գրաւուեցան բայց անոնք չնուաճուեցան: Անոնց թշնամական յարաբերութիւնները զիրենք ճնշողներուն հանդէպ մեծապէս նպաստեցին պառակտելու արաբական Հայաստանի քրիստոնեաները:

Ժամանակը, սակայն, վերջապէս ընկճեց Աղուանից տոկունութիւնը, եւ դարերու երկար շրջանի մը տեւողութեան՝ այս ցեղը սկսաւ հետզհետէ տեղի տալ, եւ կորսնցնել իր ինքնութիւնը եւ ձուլուիլ Հայոց հետ, հազիւ աղօտ հետքեր պահելով իր ազգային առանձին նկարագիրէն եւ մասնայատկութիւններէն:

Ձուլումը կ'սկսէր արաբական շրջանին եւ վերջացած իրողութիւն մը կ'ըլլար նոյնիսկ ԺԷ. կամ աւելի ԺԸ. դարերուն, քանի որ Աղուանական պետական կազմին վերջին մնացորդները՝ Մելիքները՝ Արցախի նահանգին մէջ կը գործեն իբրեւ Հայեր, ազգային ազատագրութեան համար աշխատելով:

Արաբ տիրապետութիւնը, որ Հայոց խնամակալութեան տակ կը դնէր Աղուանները եւ Վրացիները, առանց մեծ օգուտ մը ապահովելու, աւելի ապարդիւն կերպով Հայոց կ'ստորադասէր նաեւ իբր Հայաստանի կուսակալութեան ենթակայ, կովկասեան լեռնական ժողովուրդները, որոնք սակայն բնաւ չհամակերպեցան հնազանդելու եւ հպատակելու Հայոց, այլ ընդհակառակը յաջողեցան հեռացնել Կուրի ձախ եզերքէն թէ՛ Արաբներու անմիջական եւ իրական տիրապետութիւնը եւ թէ՛ Հայոց անուանական գերիշխանութիւնը:

Այս ժողովուրդներն էին՝ արեւելքէն արեւմուտք՝ Ծանարք, Ալանք եւ Ափխազները:

Ծանարք (1), Աղուանից դրացիները, Պտղոմէոսի ատենէն իսկ կը բնակէին Կաղէթի հիւսիսային մասին մէջ, այսինքն Ալազանի վերին հովիտը, եւ այն ատենէ ի վեր կը դիմադրէին իրենց դէմ կատարուած արշաւանքներուն:

Իբրեւ ապրուստի միջոց՝ ունէին ծաղկեալ ձիաբուծութիւն:

«Սոքա բնակին յամուրս լեռնականս յանհոգս խաղաղացեալք յարտաքին թշնամեաց, եւ հարկք եւ հասք արքունի ի յինքեանս մնալով միայն զմի ոմն կացուցանեն տիրել ի վերայ իւրեանց ըստ կամս անձանց իւրեանց եւ բնակին ըստ ազգս ազգս բացազոյն ի միմեանց» (Թովմա Արծրունի, էջ 197): Այս ամուր դիրքերու վրայ բոյն դրած այս տոկուն եւ արկածախնդիր ռազմիկները ունէին իրենցմէ ընտրուած պետ մը, եւ ոեւէ կայսրութեան կանոնաւոր հարկ չէին վճարեր:

Համակերպած էին երբեմն որ Հերակլ կայսրը իր վեհապետութեան ենթարկէ զիրենք՝ իրաւունք տալով իրենց պետին իր առջեւը գահու մը վրայ նստելու: Անոնք նախ ընդունեցին Արաբները՝ փրկուելու համար Բիւզանդական ճնշումէն եւ օգնական ունենալու համար զանոնք Խազարներու դէմ: Բայց անոնք չհնազանդեցան ղրկուած բոլոր կառավարիչներուն, որոնք իբրեւ տէր կը վարուէին: Այս պայքարին մէջ շատ քիչ անգամ յաղթուած, սովորաբար վռնտած են արաբ էմիրները: Մասնաւորաբար՝ անոնք կասեցուցած են այն արաբ մեծ բանակը, որ 852—855 փորձեց բոլորովին ընկճել Հայաստանը եւ կովկասեան ժողովուրդները։

Այս հասարակաց սպառնալիքին դէմ՝ անոնք զօրակցեցան Հայոց հետ, ինչպէս երբեմն կռուած էին անոնց հետ Բիւզանդիոնի նենգութիւններուն եւ Խազարներու արշաւանքներուն դէմ: Բայց անոնք չյօժարեցան Հայոց ընծայելու ոեւէ առաւելութիւն եւ մանաւանդ ընդունելու անոնց գերիշխանութիւնը, զոր Խալիֆան շնորհած էր Հայոց: Անկէ զատ անընկճելի թշնամութիւն մը չունէին Հայաստանի դէմ, որ անոնց տուած էր քրիստոնէութիւնը: Անոնք բնաւ չեն յարձակած Հայաստանի հողերուն վրայ: Ընդհակառակը, անոնք չէին ուզեր որ Հայերը ի վնաս իրենց գործեն: Ուրեմն աշխատած են դիմադրել Կուրի աջ եզերքին վրայ, ատոր համար ընդունելով իբրեւ դաշնակից անխտիր իսլամները կամ քրիստոնեաները, ինչպէս Թիֆլիսի եւ Մանազկերտի էմիրները եւ Աղուանները: Այսպէս՝ անոնք կը յաջողին պանպանել մասամբ Կուրի հովիտը ինքնավար Հայաստանի քաղաքական դրութեան մը դէմ:

Անոնց արեւմտեան դրացիները, Ալանները եւս աշխատած են նոյն արդիւնքը ձեռք բերել: Հաստատուած Թիֆլիսի հիւսիսակողմը, Կովկասի մէջ, լեռան երկու զառիթափերուն վրայ, ընդմէջ Ռիոն գետին՝ (2) որ հարաւային Կովկասի մէջ դէպի Սեւ Ծով կը դիմէ եւ Թէրէք գետին՝ որ Եւրոպայի մէջ դէպի Կասպից

(1) *Ըստ Յ. Մարկուարտի* (*ՀԱ.* 1913 *էջ* 293) *Արաբ եւ Հայ պատմագիրներու Ծանարքը համապատասխան է վրական ժամանակագիրէն Մթիուլներուն.*

(2) *Ռիոն՝ Բոթիի մօտ ծով կը թափի.*

ծով կը դիմէ, Ալանները կը պահպանէին Դարիալի կիրճը (1), զոր կը յաջողէին պաշտպանել ընդդէմ խազարներուն, վասնզի զօրաւոր եւ բազմաթիւ էին: Իրենց զինուորականները գրեթէ քով քովի էին, այնպէս որ՝ կ'ըսուի թէ, անոնց մէջ «երբ աքաղաղը կ'սկսէր երգել, թագաւորութեան բոլոր աքաղաղները կը պատասխանէին անոր» (Մասուտի *Ոսկեայ մարգագետինները*, Ֆր. թրգ. 1861–1877. Ա, էջ 45): Անոնք կրնային հանել, իրենց թագաւորին հրամանին տակ, 30,000 հեծելազօրով բանակ մը, որուն շնորհիւ կը վերականգնէին խազարներու բոլոր արշաւանքներէն վերջ: Անոնք չէին ընդունէր նաեւ Բիւզանդիոնի ո՛չ քրիստոնէութիւնը եւ ո՛չ ալ քաղաքական հովանին, թէեւ անոր կը հայթայթէին վարձականներ: Կ'ընծայէին սոսկ ձեւական յարգանք մը Արաբներուն եւ չէին ճանչնար իրականին մէջ հեղինակութիւնը Հայաստանի իշխանին, որուն անուանապէս ենթարկուած էին խալիֆային: Անոնք շանացին հայկական ինքնավարութենէն անջատուած պահել Կուրի հարաւակողմի տիրապետութիւնը:

Ափխազները որոնք կը բնակէին Կովկասեան զառիթափերուն վրայ եւ Սեւ ծովուն եզերքները, Կակրիի (2) եւ Փիցունտայի (3) հիւսիսը՝ մինչեւ Մինկրելիա (4 եւ մինչեւ Ինկուրի (5) բերանը դէպի հարաւ, աւելի վարպետ հանդիսացան. իրենց երկիրը, ծածկուած արօտատեղիներով, մշակութեամբ, այգիներով եւ գեղեցիկ անտառներով, կը գրգռէր մոլեկան ցանկութիւնները իր դրացիներուն: Հիւսիսակողմէն աւարառութեամբ ապրող խազարները, արեւմուտքէն՝ Բիւզանդացիք, որոնք Արաբները վանելու կը ձգտէին մեծ զօրութեամբ Սեւ ծովի արեւելեան եզերքներէն, արեւելքէն՝ խալիֆային կայսրութիւնը, որուն բաւական տարածուն աւատապետութեանը մէջ Ափխազները իրենց տեղը ունէին, կը ցանկային երկիրին տիրապետութեան: Առանցմէ միայն Արաբները կրնային սպառնալ, իսկական տիրակալութեամբ մը, թէ՛ Էմիրներու եւ թէ Հայերու միջոցաւ: Ափխազները սակայն պարզ ցեղախումբ մը չէին, վասնզի թէեւ անծանօթ էր իրենց ծագումը եւ պատմութիւնը, սակայն յայտնի էր թէ իրենց երկիրը ընդարձակ էր եւ թէ անոնք բազմաթիւ եւ վարժ ռազմիկներ էին՝ խմբուած թագաւորի մը շուրջը: Անոնք իրենք զիրենք պաշտպանեցին քաջութեամբ եւ ընդունակութեամբ, միայն յարաբերելով Բիւզանդիոնի հետ, որ զանոնք քրիստոնէութեան դարձուց, բայց չկրցաւ տիրակալել անոնց եւ միայն զանոնք ըրաւ զօրաւոր պատուար մը ընդդէմ իր միւս հակառակորդներուն: Անոնք, համոզուած էին Բիւզանդիոնին թէ կ'ընդունէին իր կրօնական առաջնորդութիւնը, ինչպէս նաեւ իր դաշնակցութիւնը եւ նիւթական օգնութիւնը, միայն իրենց սեփական շահուն եւ ոչ թէ ի վնաս իրենց անոր ընդարձակման համար:

Անոնք ատեն մը առաջացան մինչեւ մօտերը Բիւզանդական կայսրութեան սահմանագլուխին վրայ գտնուող խաղտիք թեմին՝ զոր անոնք իրենցը կը նկատէին: Բիւզանդացւոց եւ Ափխազներու համաձայնութիւնը, հակառակ այս տեսակ թիւրիմացութիւններու, սակայն եւ այնպէս եղաւ տոկուն եւ զօրաւոր: Այս համաձայնութիւնը ի վիճակի ըրաւ Ափխազները դիմադրելու խազարներուն, եւ արգիլեց զանոնք անցնիլ միակ գործածելի երկու կիրճերը, եւ գալ հարաւակողմը Կովկասեան լեռներու այս մասին:

Անոնք վանեցին նաեւ զիրենք նուաճելով Կուրի հովիտին մէջ՝ դէպի Ախալցխա հաստատուիլ ուզող էմիրները, երբ Հայերը, Վերին Վրաստանի տէրերը եւ Ափխազներուն իշխանութեան դաշնակիցները, կը յաւակնէին գրաւել այն տարածքները զորս խալիֆան իրենց տուած էր, եւ վանել Ափխազները իրականապէս Կուրէն անդին:

Ուրեմն ինքնավար Հայաստանի հիւսիսային իրական սահմանը մնաց Կուրը, զոր Ափխազները, նման Ալաններուն եւ Ծանարներուն, թոյլ չտուին որ անցնէին հայկական սահմանի հերտերը:

Հայերը, հետեւաբար, այս ցեղերուն մէջ կրօնական քարոզչութեան ուղիով ծաւալումի մը յաջողութեան փորձին յոյսերը տեսնելէ բոլորովին անյաջող դուրս եկան, վասնզի Արաբները իսլամական կրօնը տարածելով Հայերու գործը քանդեցին եւ ծաւալումի ամէն հաւանականութեան արգելք եղան, եւ այսպէս հայ ցեղը շատ մեծ յաջողութիւն մը չունեցաւ կովկասեան լեռնական ժողովուրդներուն մէջ, եւ նոյնիսկ ցեղային լիակատար նուաճումով մը չկրցաւ հասնիլ մինչեւ Կովկասի ստորոտները, այլ հազիւ մինչեւ Կուր գետը:

Դէպի հիւսիս արաբական քաջալերութեամբ Հայերու այս ձգտումը հետաքրքրական երեւոյթ մըն է, որ ինչպէս տեսնուեցաւ բոլորովին ապարդիւն չեղաւ:

Բայց Հայերը արաբական տիրապետութեան շրջանին միայն դէպի հիւսիս նուաճումներ ընելու առիթ չունեցան, այլ իբրեւ հետեւանք այդ տիրապետութեան, Հայերը երբեմն իրենց նոր տէրերուն կատարած հարստահարութիւններէն ազատելու համար՝ գաղթեցին բիւզանդական երկիրներ եւ առաւելապէս անոնցմէ Հայաստանի ամէնէն մօտ եղողները:

Այսպէս, նոր գաղութներ ստուարացուցին Հայերու թիւը Փոքր Հայքի մէջ, որ ԺԱ. դարէն յետոյ պիտի իյնար Սելջուք-իսլամ տիրապետութեան տակ:

Որովհետեւ Սելջուկները վերջ տուին Բիւզանդացիներու կրօնական հալածանքին, Փոքր Հայքի հայ բընակչութեան բիւզանդականութեան մէջ ծաւալումի վտանգը անհետացաւ եւ Հայերու թիւը նոր աճում մը ունեցաւ այս շրջաններուն մէջ:

Դարձեալ արաբական տիրապետութեան տեւողութեան, մասնաւորապէս Միջագետք, Եդեսիա, Վերին Ասորիք (Հալէպի շրջան) եւ Ամանոսի ու Անդիտաւրո-

(1) *Դարիալի (Dariel) կիրճը կը գտնուէր Թիֆլիսի հիւսիսակողմը, Օրժոնիկիձէ երբեմն Վլատիկաւկաս) քաղաքին հարաւակողմը: Հայ մատենագրութեան մէջ ծանօթ է «Դրունք Կասպից» կոչումով:*

(2) *Կակրի (Gagry) Սեւ ծովի վրայ նաւահանգիստ, Սոչիի եւ Սուխում-Գալէի միջեւ: Հին ատեն կը կոչուէր Դանդարա:*

(3) *Փիցունտա (Pitsounda) նոյնպէս Սեւ ծովու վրայ նաւահանգիստ Կակրիէն քիչ մը հարաւ, անոր եւ Սուխում-Գալէի միջեւ: Հին ատեն Դիոսկուրիաս կամ Սեբաստուպոլիս ալ կոչուած է:*

(4) *Մինկրելիա գաւառ մըն էր որ կը գտնուէր Ինկուրի եւ Ռիոն գետերուն միջեւ:*

(5) *Ինկուրի գետը Ռիոնէն աւելի հիւսիս, Սեւ Ծով կը թափի:*

ւի լեռնային շրջանները եւ Կիլիկիա՝ լեցուեցան Հայերով, մանաւանդ այն ժամանակամիջոցներուն երբ անոնք կ'ենթարկուէին բիւզանդական տիրապետութեան. մասնաւորապէս Փոկասի, Յովհաննէս Զմշկիկի եւ Վասիլի աշխարհակալութիւններով երբ այդ շրջանները վերագրաւուեցան՝ արտաքսուած եւ վանուած իսլամ բընակչութեան տեղ Բիւզանդացիք աշխատեցան այդ վայրերը փոխադրել քրիստոնեաներ, յատկապէս Հայեր, քանի որ Փոքր Ասիա արդէն մեծապէս հայ երկիր մը դարձած էր իր ստուարաթիւ հայ բնակչութեամբ: (տես *Պատմութիւն Հայ գաղթականութեան* էջ 240—254):

Արդարեւ, ԺԱ. դարուն, երբ Սելջուկ հրոսակները Փոքր Ասիա կը հասնէին, Հայերը Կոմագինիէի, Հիւսիսային Ասորիքի, Կիլիկիոյ եւ Միջագետքի մէջ բնակչութեան մեծամասնութիւնը կը ներկայացնէին:

Փիլարտոսի հիմնած պետութիւնը, որ 1086ին կործանեցաւ եւ որ այդ կարեւոր շրջանակը կը գրաւէր, կը պարունակէր մեծամասնութեամբ Հայ, քիչ թիւով Ասորի եւ աւելի քիչ իսլամ բնակչութիւն (Կոմագենացին *Փիլարտոս Հայը Կիլիկիոյ ճոխութեան բուն հիմնադիրը*, Հալէպ, 1930 էջ, 31): Խաչակրութեան շրջանին պահ մը Սուրիոյ եւ Միջագետքի մէջ կազմըւեցան քրիստոնեայ իշխանութիւններ, աւատական վարչաձեւով, եւ ապաստանի վայրեր եղան Հայոց: Սակայն կարճ տեւեցին այս իշխանութիւնները եւ երկիրը ամբողջութեամբ ենթարկուեցաւ իսլամներու տիրապետութեան եւ հայ բնակչութիւնը նուազեցաւ այս շըրջաններէն: Հայերը ապաստանեցան առաւելապէս Կիլիկիա, ուր հայ անկախ թագաւորութիւն մը վերջին եւ միակ տոկացող քրիստոնեայ իշխանութիւնը եղաւ խաչակրաց շիջանէն կազմուած մեծ ու պզտիկ բազմաթիւ իշխանութիւններուն:

*
* *

Բոլոր ասոնք ցոյց կու տան թէ Հայաստան իբրեւ Հայերու բնակավայր չունէր շատ որոշ սահմանագծում մը եւ ցեղագրապէս որոշ տարածութիւն մը չէր գրաւէր, այլ Հայկական բարձրաւանդակին կեդրոնը իբրեւ միջնաբերդ անիկա կանգնած էր ամրապէս խիտ ու հոծ զանգուածներով եւ ցեղային ծաւալականութեան ոյժով տարածուած էր դէպի հիւսիս, դէպի հարաւ, դէպի արեւելք եւ դէպի արեւմուտք, միայն որքան հեռացած էր իր կեդրոնէն եւ ծաւալած, համեմատաբար նօսրացած եւ օտար տարրերու խառնուած էր, այնպէս որ Հայաստանի ծայրագաւառներուն եւ դրացի երկիրներուն մէջ կարելի չէր եղած խիտ Հայ բնակչութեան մը գոյառութիւնը, եւ ցեղը ապրած էր ուրիշ ցեղերու հետ խառն:

Գ.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՀԱՅԱԽՕՍ ԵՐԿԻՐ

Ազգերու քաղաքակրթական նուաճումներուն կարեւորագոյններէն մէկն է իր լեզուին տարածումը, վասնզի լեզուն իբրեւ առաջին յատկանիշը ազգութեան՝ ուրիշ ազգերը ձուլելու առաջին միջոցն է: Այս տեսակէտով գերազանցապէս կարկառուն օրինակներ են արդի ժամանակներուն մէջ Ամերիկայի Միացեալ Նահանգները, ուր բազմաթիւ ազգեր կը ձուլուին արագօրէն ընդհանուր զանգուածին մէջ գլխաւորապէս լեզուի ուղիով: Հին ազգերն ալ անցեալին մէջ իրենց լեզուն հարկադրելով է որ ձուլած են իրենց նուաճած ժողովուրդները: Ուստի ազգի մը քաղաքակրթական ուժին չափանիշը կրնայ նկատուիլ իր լեզուին տարածումը՝ իր գրաւած երկիրներուն եւ նուաճած ժողովուրդներուն մէջ, կամ նոյնիսկ անկէ դուրս: Այնպէս որ ազգերը՝ ինչպէս ունին ցեղագրական եւ պետական սահմաններ, նոյնպէս նաեւ ունին լեզուական սահման մը՝ որ անջատ է անոնցմէ:

Ֆրանսերէն լեզուին սահմանը, օրինակի համար, շատ աւելի ընդարձակ է քան աշխարհագրական Ֆրանսան եւ երկիրին պետական եւ ցեղային սահմանները, քանի որ Ֆրանսերէն լեզուն կը խօսուի իբրեւ մայրենի լեզու իր սահմաններէն դուրս՝ օտարացեղ դրացի Պելնիգայի եւ Զուիցերիոյ որոշ մասերուն մէջ: Ասոր հակառակը ըլլալով, Զարական Ռուսիոյ մէջ, բոլոր ծայրագաւառները կը պահէին իրենց սեփական լեզուն, ինչպէս երբեմն Աւստրիոյ մէջ, ուր գերմաներէնը տիրող ազգին լեզուն էր, սակայն կայսրութեան բաղկացուցիչ ազգերուն ընթացիկ լեզուն չէր:

Հայաստան, որ, ինչպէս տեսնուեցաւ, որեւէ ատեն չէ եղած համացեղ բնակչութիւն մը, այլ միշտ խառն, հաւանական չէ որ համալեզու բնակչութիւն մը ունեցած ըլլայ:

Արդարեւ, կան բազմաթիւ փաստեր Հայաստանի բնակչութեան համալեզու չըլլալուն:

Քսենոփոն, որ Հայաստանէն անցած է 400/401ին Ք.Ե. առաջ, կը հաստատէ բացորոշ կերպով թէ վերջէն Հայաստանի մաս կազմող գաւառներուն մէջ կ'ապրէին օտարալեզու ժողովուրդներ եւ Հայոց պատկանող գաւառներէն ոմանց բնակիչները, որոնք շատ կանուխ հայացած պէտք է ըլլային եւ էին իսկ, դեռ Սասանեանց շրջանին եւ նոյնիսկ աւելի ուշ՝ օտար ծագումով ցեղերով պաշարուած էին (Հիւպշման *Նոյն* 53):

Նոյնպէս Հայաստանի ամէնէն պատմական գաւառներուն մէջ, հնագոյն ժամանակներէն սկսեալ մինչեւ Ք.Ե. ետք Զ. եւ նոյնիսկ Ժ. դար, ո՛չ միայն օտար ծագումով ցեղեր կը բնակէին, այլ կը պահէին նաեւ իրենց օտար լեզուները (տես վերը էջ 14—17), ինչպէս Ուրտացիք՝ որոնք Անձիթի մէջ կը բնակէին եւ ունէին իրենց յատուկ լեզուն՝ հայերէնէ եւ ասորերէնէ տարբեր (Հիւպշման, *Նոյն* 55), եւ Սասունի ու Խոյթի լեռնա-

Տես բնագրին մէջ էջ 26

# ՀԱՅ ԼԵԶՈՒԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԸ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Հորիզոնական գիծերով նշանակուած է միջերկրեայ լեզուին խօսուած նահանգները։
2. Ուղահայեաց գիծերով նշանակուած են օտարական լեզուներու խօսուած նահանգները։
3. Շեղակի գիծերով նշանակուած են այն նահանգները, որոնց մէջ հայերէնը կը խօսուէր բնիկ լեզուներու հետ։
4. Սպիտակ ձգուած են լիովին հայախօս չդարձած նահանգները։

կանները՝ որոնք կը խօսէին լեզու մը որ Հայոց անհասկնալի էր (Թովմա Արծրունի, էջ 134):

Այս տուեալները ունենալով՝ ինչպէ՞ս կարելի է հաւատալ թէ հազիւ Բ. դարուն (Քր.է առաջ) Արտաքիասի եւ Զարիադրիսի ձեռքով՝ Մարերէն, Վրացիներէն, Խաղիբացիներէն, Մոսինացիներէն, Կատաւոնացիներէն եւ Ասորիներէն գրաւուած եւ օտար ցեղերով բնակուած երկիրներով ընդարձակուած Հայաստանի բնակիչները ամէնքն ալ «միեւնոյն լեզուն» (հայերէն) կը խօսէին Ստրաբոնի ատեն, այսինքն Քրիստոնէական թուականին սկիզբները:

Ստրաբոնի (ԺԱ. 14. (528) այս կարեւոր վկայութիւնը՝ հետեւեալն է.

«Կը պատմեն որ Արմենիան եղած է առաջ փոքր եւ մեծցած է Արտաքսիասի (=Արտաշէսի) եւ Զարիադրիսի (=Զարեհի) ձեռքով, որոնք նախապէս Անտիոքս Մեծի զօրավարներն էին եւ անոր անկումէն վերջ թագաւորեցին՝ մէկը Ծոփին է (=Ծոփք) Ակիսենէի (1), Օդոմանտիսի եւ մի քանի այլ գաւառներու վրայ: Անոնք ընդարձակեցին իրենց երկիրներուն սահմանները, եւ գրաւեցին շրջակայ ժողովուրդներէն հետեւեալ շրջանները, Մեդացիներէն (= Մարերէն) Կասպիանէն, (= Փայտակարան Կասպեան երկիր), Փաւնիտենը (2) եւ Բասորոպեդան (= Վասպուրական), Իբերներէն (=Վրացիներէն)՝ Պարիադրէսի լեռնալանջերը (3), Խորզենէն (=Խորձեան) (4), եւ Գոգարինէն (=Գուգարք), որ կը գտնուի յայնկոյս Կուր գետին, Խալիւբներէն (= Խաղտիք) եւ Մոսինեկներէն (կամ Մոսինացիք) Կարինիտիսը (=Կարին) եւ Դերքսենէն (=Դերջան) որոնք սահմանակից են Փոքր Հայքին կամ անոր մասերն են, Կատաւոնացիներէն (5) Ակիլիսենէ (=Եկեղեաց) եւ Անտիտաւրոսի կողմերը գտնուող երկիրը, Ասորիներէն Տամորիտիսը (1). այնպէս որ ԱՅԺՄ ԲՈԼՈՐԸ ՄԻԱԼԵԶՈՒ ԵՂԱՆ»: (Տե՛ս Յ. Մանանդեան, *Քննական տեսութիւն Հայ ժողովրդի պատմութեան*, էջ 116 կամ Հ. Տաշեան *Ուսումն դասական հայերէնի*): Եթէ այսպէս էր՝ ըսել է ամենակարճ ժամանակի մը մէջ, այսինքն հազիւ 200–250 տարիներու ընթացքին այդ օտարալեզու ժողովուրդները հայախօս դարձած էին, ինչ որ շատ հաւանական չէր. ուստի Հիւպշման կը խորհի՝ թէ այս խօսքը տառական իմաստով առնելու չէ, այլ այնպէս մը պէտք է հասկնալ, որ հայկական լեզուն ամբողջ Հայաստանի մէջ կը հասկցուէր իբրեւ տիրող լեզու, մինչ միայն հին նահանգներուն՝ Այրարատի, Տուրուբերանի, Չորրորդ Հայքի եւ Աղձնիքի մէջ սովորաբար կը խօսուէր (հմմտ. Հիւպշման *նոյն* 16 եւ 52):

Հայերէն լեզուն, որքան որ որոշ նուաճումներ ըրած եւ ընդհանրացած էր օտարացեղ շատ մը նահանգներու մէջ, որոշ կ'երեւի թէ Հայաստանի բոլոր նահանգներուն միակ տիրող եւ գործածուած լեզուն չէր եղած, մանաւանդ ծայրագաւառներուն մէջ:

Այսպէս, Խորենացի թէ՛ արեւելքի եւ թէ՛ արեւմուտքի համար հայ լեզուի սահման մը կը դնէ: Ասիկա կը նշանակէ թէ Խորենացիին ատեն իսկ աստանկ սահման մը կար: Արդարեւ, Խորենացի կը պատմէ թէ Վաղարշակ կողմնակալներ նշանակած է:

Անոնցմէ առաջինը Բազարատ Բագրատունին էր, որ կարգուած էր «*ի ծայրս հայերէն խօսից* կողմնակալ բիւրուց եւ հազարաց *յարեւմտից* կուսէ» (Խոր. Բ. գ.), իսկ Սիսակը եւ Կադմոսը «*յարեւելից կողմանէ զեզերբ հայկական խօսից կողմնակալս*» կը նշանակէ, «*զերկու ցեղից նահապետութեանցն՝ Սիսականն եւ Կադմեայն*» (Խոր. Բ. ը.):

Բայց նոյն բացատրութիւնը չի գործածեր ուրիշ կողմնակալներու համար, ինչպէս «*մեծ եւ անուանի բազմաբիւր զարեւելից հիւսիսոյ կողմանն*» կողմնակալութեան համար որ կը տրուի Առանի:

Արեւմտեան կողմի համար անորոշ կը մնայ թէ Բազարատ Բագրատունիի կայանը ո՞ւր էր, բայց արեւելեան կողմը որոշ կ'ըսուի թէ ո՛ւր կը հասնէր «*զեզերբ հայկական խօսից*»ը: Միայն որոշ չէ Սիւնիք՝ Սիսակեանց կեդրոնավայրը եւ Արարատ՝ Կադմեանց գաւառը — որ կը գտնուէր Կոտայք նահանգին մէջ — որոնք կը գտնուէին Հայկական լեզուին եզերքը կամ սահմանին վրայ, Հայաստանի մէ՞ջ էին թէ անկէ դուրս: Արարատի վրայ — որուն տեղը խնդրական է քիչ մը — առանց խօսելու, եթէ Սիւնեաց նահանգը նկատի ունենանք, պէտք է նշել թէ Սիւնիքը այս սահմանին մէ՞ջն էր թէ դուրսը: Նկատելով որ Պրոկոպիոս պարսիկ բանակին մէջ գտնուող Սիւնեցիները Պարսկական Հայաստանի զինուորներէն անջատ կը յիշէ, թէեւ այդ պահուն Սիւնիք Պարսկական Հայաստանի մասն էր, նոյնպէս նկատելով՝ որ Զաքարիա Հռետորի անունով Եկեղեցական Պատմութիւնը 554ին՝ Հայերէն, Վրացիներէն եւ Աղուաններէն ետքը կը յիշէ «*Սիսական երկիրը սեփական լեզուով, հաւատացեալ ժողովուրդ մը, որոնց մէջ հեթանոսք ալ կը բնակին*», ոմանք կը կասկածին թէ Սիւնիք լեզուով եւ ազգութեամբ Հայերէն կը տարբերէին եւ Սիսական նահանգը «Հայկական խօսից» սահմանէն դուրս էր:

Սակայն այս երկու անժխտելի համարուած փաստերուն դէմ զօրաւոր առարկութիւններ կան: Հիւպշման, Պրոկոպիոսի վկայութեան վրայ խօսելով կ'ըսէ՝ թէ ուշադրութեան պէտք է առնել որ իշխանի մը վարչութեան տակ միացած Սիւնիք՝ Հայաստանի պետական կազմին մէջ միշտ բաւական անկախ եւ յատուկ դիրք մը գրաւած էին եւ ասոր համար էր որ 571ին իրենց կամքով Հայաստանէն բաժնուեցան եւ ուղղակի Պարսից արքունիքին կապուեցան:

Իսկ Ասորի եպիսկոպոս՝ Զաքարիա Հռետորի վկայութեան մասին Դուրեան Արքեպս. (*Ամէնուն տարեցոյցը*, 1927 էջ 552) կ'ըսէ՝ թէ՝

«օտարի մը այս վկայութենէն (լեզուի մասին) կարելի չէ որոշ բան մը հետեւցնել, քանի որ՝ եթէ Հայագէտ մ'իսկ ըլլար ան՝ իր գիտցածէն

(1) *Ըստ Հիւպշմանի՝ Անգեղտնէ =Հանձիթ.*
(2) *Ըստ Քիպերդի՝ Փառնէս.*
(3) *Այսինքն Տայք.*
(4) *Արտահանի կողմերը.*
(5) *Ըստ Եէնսէնի՝ Կատաւոնիա բառը կը ծագի Հատէն.*
(6) *Ըստ Tomascіekի եւ Մարկուարդի՝ Տմորիքն է իսկ ըստ Քիպերդի՝ Տարոն:*

բոլորովին տարբեր բարբառ մը պիտի կարծէր լսել Սիւնեցւոյն բերնէն: Ասորին չէր կրնար գիտնալ թէ Սիւնեցին Հա՛յ է: Հայ վարդապետն էր (Ս. Մաշտոց) որ՝ իրմէ երկու դար առաջ՝ Սիւնիք երթալով «մանուկներ ժողոված» ու քրիստոնէական կրթութեան շնորհիւ լուսաւորած էր այդ կողմերը (Կորիւն), ձեւացնելով *բարեպաշտ ժողովուրդը*, որուն մէջ դեռ հեթանոսներ ալ կային: Այո՛, Սիւնեցիք հա՛յ էին կամ *հայացած* (ըստ Գելցերի), ու ցեղային յատկութիւններ սնուցանող այդ ժողովուրդն առհասարակ կը ճանչցուէր մերիններէն իբրեւ *Հայկազն*: Այդ կոչումը կրող բնակչութեան մը լեզուն չէր կրնար դադրիլ հայերէն ըլլալէ»:

Հետեւաբար, շատ իրաւունք ունէր Հիւպշման (*Նոյն*, 58) ըսելու համար՝ թէ Խորենացիին խօսքը պէտք էր այնպէս մը հասկնալ որ լեզուաց սահմանը (հայերէնի եւ առաներէնի = աղուաներէնի միջեւ) Սիւնիքէն դէպի արեւելք կը տարածուէր եւ Սիւնիք՝ ըստ լեզուի Հայաստանի կը վերաբերէր:

Արդարեւ անժխտելի է որ Աղուանները ունէին սեփական լեզու, որուն նշանագիրներ ալ տուաւ Ս. Մաշտոց՝ ինչպէս կը հաւաստեն Կորիւն (էջ 40) եւ Խորենացի (Գ. ծդ):

Կորիւն շատ բացորոշ կերպով Աղուաներէն առանձին լեզուի մը գոյութիւնը կը հաստատէ, ըսելով՝ թէ *«քնեալ զբարբարոս զբանս աղուաներէն լեզուին»*:

Նոյնը կը հաստատէ Խորենացի՝ անոնց լեզուն որակելով «կոկորդախօս, աղխազուր, խժական, խեցբեկագոյն»:

Բայց Սիւնեաց լեզուին համար այս տեսակ յիշատակութիւն մը չունինք, թէեւ անտարակուսելի է որ Ը. դարուն հայկական աւանդութիւն մը Սիւնեաց լեզուն բուն հայերէնէն կը զանազանէր (Հիւպշման, *Հայկական քերականութիւն* էջ 518—9), բայց այս աւանդութիւնն ալ պայծառ չէ, վասնզի որոշ չէ թէ այդ զանազանուած լեզուն գաւառական բարբա՞ռ մըն էր թէ հայերէնէն տարբեր լեզու մը:

Այս աւանդութիւնը գրաւոր մեզի հասած է Դիոնիսիոս Թրակացիի Քերականութեան առաջին թարգմանիչէն (Ստեփանոս կամ Մովսէս), եւ որուն համաձայն Յոյն Քերականին *«լեզուաց եւ պատմութեանց* առձեռն բացատրութիւն» խօսքը հայ թարգմանիչը կը մեկնէ բաւական մութ տողերով, *«Ամենուն Տարեցոյցը*, 1927, էջ 550) որոնք Դուրեան արքեպս. կը բացատրէ սապէս.

«Յոյն բնագիրին *լեզուներու բացատրութիւն* խօսքը կարծել տուաւ ոմանց՝ թէ սահմանակից աշխարհներու մէջ *խօսուող օտարազգի լեզուներու* գիտութիւնը կը յանձնարարէ Թրակիացին, նկատելով որ *ստուգաբանութեան համար* շատ օգտակար է այդ հմտութիւնը, վասնզի բառերու բազմութեան շնորհիւ ձեռք բերուած գետօրէն ընթացք մը ինքնին աւելի կ'արժէ քան դուզնաքեայ ժողովածու մը:

Բայց պէտք է գիտնալ որ Յոյն Քերականը *օտարազգի* լեզուներու մասին չէ որ կը խօսի, այլ իր իսկ լեզուին (Յունարէն) եւ անոր վերաբերեալ զանազան բառերուն (կամ բարբառներուն) ծանօթանալ կը պատուիրէ: Ըստ այսմ՝ դուն ալ պէտք ունիս քու լեզուիդ (հայերէն) բովանդակ *եզերական* բառերը գիտնալու, ինչպէս են Կորճայն, Տայեցին, Խութայինն, Չորրորդ Հայեցին, Սպերացին, Սիւնին եւ Արցախային (որոնք, պիտի ուզէր աւելցնել, *ստուգաբանութեան համար* կարեւոր են). բայց որովհետեւ «Միջերկրեայ եւ Ոստանիկ» լեզուները *միայն* «տաղաչափութեան եւ պատմութեան համար» պիտանի են ու օգտակար, անհրաժեշտ է որ սորվիս զանոնք, որպէսզի չվրիպիս *գրական* նպատակէս՝ անգէտ ու անընտել մնալով այդ լեզուներուն»:

ԺԳ. դարու մէջ ապրող Յովհաննէս Երզնկացի գիտնական վարդապետին. Դիոնեսիոս Թրակացւոյն Քերականութեան հայերէն հին թարգմանութեան մեկնութեան առթիւ գրած այս տողերը Հիւպշմանի ենթադրել տուած են որ զանազանութիւն դրուած էր մէկ կողմէն *Միջերկրեայ* եւ *Ոստանիկ* գաւառականներու եւ միւս կողմէն *եզերականներու* միջեւ, որոնք իբր թէ թիւով եօթն էին:

Դուրեան Ս.ի տեսութեամբ՝ Ոստանիկ բարբառը, որ արքունիքին կամ մայրաքաղաքին լեզուն էր, լեզուն էր նաեւ Արարատեան նահանգին, ուր երկրին իշխանութիւնը դարերով պահուեցաւ իբրեւ իր կեդրոնին մէջ եւ ուր ամէնէն աւելի ապահով ապաստանը պիտի գտնէր ազգային լեզուին պահպանութիւնը, ժողովուրդին ազնուական եւ ընտրելագոյն մասին այդ բնակավայրին մէջ:

Միջերկրեաններն էին կեդրոն գաւառներու, մանաւանդ Տարօնի լեզուն, որ էապէս չէր տարբերեր ոստանիկ լեզուէն: Իսկ եզերականներն էին Կորճայն, Տայեցին, Խութայինը, Չորրորդ Հայեցին, Սպերացին, Սիւնին, եւ Արցախայինը, որոնք գրական առաւելութիւն մը չունենալով հանդերձ՝ կարող էին ծառայելու լեզուին՝ անոր բառամթերքը ճոխացնելով, ինչպէս դիտել կուտայ Յովհաննէս Երզնկացի:

Եթէ այս բաժանումը վաւերական է, այն ատեն ուրիշ խնդիր մը երեւան կու գայ: Եզերական լեզուները—Կորճայն, Տայեցին եւայլն— հայ լեզուին գաւառաբարբառնե՞րն են թէ բոլորովին անջատ նոյն նահանգներու հին բնակչաց լեզուն: Հիւպշման (*Հայկ. Քերականութիւն*, էջ 519) կը միտի հաստատել՝ թէ այդ բարբառները ոչ թէ հայերէնի գաւառաբարբառներ, այլ տարբեր լեզուներ են, որոնք աներեւոյթ եղած են յետոյ, այդ լեզուները խօսող ազգերուն հետզհետէ ձուլուելովը Հայոց մէջ:

Հիւպշման, շատ մեծ կարեւորութիւն տալով Սասունի եւ Խոյթի լեզուներուն համար Թովմա Արծրունիի վկայութեան եւ զանոնք նկատելով ոչ-հայկական լեզուներ, կը կարծէ թէ Հայաստանի այն նահանգներուն մէջ, որոնք կանուխ հայացած էին, ինչպէս Սիւնիք, Վասպուրական, Մոկք եւ Բարձր Հայք, տիրող լեզուն հայերէնն էր, իսկ Կորտուքի, Արցախի, Ուտիի, Գուգարքի եւ Տայքի մէջ, լեզուն գուցէ կը պարունակէր առաւելագոյն չափով օտար տարրեր, իսկ Պարսկահայոց եւ Փայտակարանի մէջ հայերէն բնաւ չէր խօսուեր, ինչպէս Հայերէնը չէր իւրացուած մինչեւ Զ. դար Ուտեցիներէն՝ Դ. Հայքի մէջ, մինչեւ Ժ. դար

Ասորիներէն՝ Մեծ Ծոփաց մէջ, Խութեցիներէն եւ Սասունցիներէն՝ Տուրուբերան եւ Աղձնիք նահանգներուն մէջ, եւ Առանցիներէն (=Աղուաններէն) Ուտիի նահանգին մէջ: Բայց եթէ Դուրեան Արքեպս.ի հասկացողութիւնը ճիշդ է, Յովհաննէս Երզնկացիի տողերուն մասին, այն ատեն տարակոյս չկայ որ *եզերական* բարբառները հայերէն էին եւ ոչ թէ օտար լեզուներ:

Դուրեան Արքեպս. իր տեսութիւնը հիմնաւորելու համար հին Քերականին յիշած եօթը *եզերականներէն* զէթ երեքին համար պատմական փաստարկութիւններ կը ներկայացնէ, որոնք կը հերքեն բաւական զօրաւոր կերպով Հիւպշմանի՝ անոնցմէ զէթ ոմանց օտար լեզուներ ըլլալու տեսութիւնը:

Այսպէս դիտել կու տայ՝ թէ Ե. դարուն Կորիւնի (23) վկայութեան համաձայն Մարական կողմերուն վրայ, այսինքն Կորճայք նահանգին մէջ բնակող հայ տարրին լեզուն *կոկորդախօս, աղխազուր, խժական, խեցբեկագոյն* ու *խոշորագոյն* էր եւ Ս. Մաշտոց՝ իր աւետարանական քարոզութեան շնորհիւ *պարզախօս* բրաւ զանոնք: Ուրեմն անկասկած *հայերէն* էր անոնց լեզուն, թէեւ *կորճայօրէն* աղաւաղուած: *Կորճայն*, զոր յունական *դորային* գաւառաբարբառին հետ կ'ուզէ համեմատել Յովհաննէս Երզընկացի, հայերէնի բոլորովին օտար չի համարեր, ան Կորճուաց լերան ստորոտէն մինչեւ Փոքր Աղբակ տարածուող բնակչութեան լեզուի մասին գրելով սա տողերը. *«նոցա լեզուն կարի թիւրեալ լինի ի հայկազանցս, վասն մերձ գալոյն Մարաց եւ Ասորւոց»*: Ուրեմն կ'ընդունի՝ թէ *կորճայն* (1) պատուաստուած էր հայերէնի վրայ: (Դուրեան, *Պատմ Հայ մատեն.* Երուսաղէմ, 1933, էջ 284—5):

Այս կերպով Դուրեան շատ իրաւամբ կը մերժէ այն տեսութիւնը, թէ Մարաց կողմերը ապրող Հայերը օտարախօս էին:

Արդարեւ, այդ հարաւային սահմաններուն վրայ ապրող Մարաց երկիրին բնակիչները միշտ Հայեր նկատուած են: Մաշտոցէն առաջ՝ Լուսաւորիչի ատեն քրիստոնէական քարոզութեան սահմաններուն մէջ էր ան (Ս. Կանայեանց, *Արարատ*, 1913, էջ 804) եւ ըստ հայկական աւանդութեան՝ ամենահին ժամանակներէ սկսեալ հայաբնակ էր եւ հայկական, քանի որ Խորենացի (Ա. ժդ.) կ'ըսէ թէ Արամ *«զարեւելեայնն եւ զհարաւայինն նուաճեալ, ի ձեռն յանձնեալ էր երկուց ցեղից այսորիկ, Սիսակեանցն զարեւելս եւ որք ի Կարդմեայ տունէն՝ զԱսորեստանին»*:

Ըստ Ք. Պատկանեանի, Կարդմոսի տունն էր Արարատ գաւառին մէջ, որ կը գտնուէր Հայաստանի հարաւ-արեւելեան կողմը, Վանայ եւ Ուրմիոյ լիճերուն միջեւ եւ մաս կը կազմէր Կորդուք նահանգին:

Այս շրջանին հայկական նկարագիրը կը հաստատեն նաեւ Եւդրոպիս եւ Ռուֆոս Ֆիստոս — Դ. դարու հռոմայեցի պատմիչները, որոնք կ'ըսեն թէ Տրայիանոս կայսրը 115ին Եդեսիայէն Ատեաբինա անցնելէն ետքը՝ ընկճեց Կորտուացիները եւ Marcomedները Հայաստանի եւ Մարաստանի սահմանին վրայ:

Ա. Գութշմիտ Marcomedները կը նոյնացնէ Միտացի-Մարերու հետ, որոնք հայկական էին, եւ կ'ապրէին *«Մարաց ամուր աշխարհ, երկիր, կողմանք եւ գաւառ»*ը Հայաստանի մէջ եւ ոչ անկէ դուրս:

Իրենց լեզուն որակող այդ բառերը բնաւ իրաւունք չեն տար զանոնք հայութենէ դուրս հանելու:

Շատ նկատելի է որ — ինչպէս Դուրեան ալ կը դիտէ — Ե. դարուն Ագաթանգեղոս (էջ 593) Դերջանցիներու *բարքերը* եւ ոչ *լեզուն՝ խեցբեկագոյն* եւ *խոշորագոյն* կը ներկայացնէ՝ Լուսաւորիչի գործը գրաւորական հանգամանք մը չունենալուն պատճառով: Բայց ասոր համար մենք Դերջանը բնաւ Հայաստանէն դուրս չենք նկատեր:

Գալով Սասունցիներուն, որոնց բարքն ու լեզուն *խուժ* անունով կը յիշատակէ Թովմա Արծրունի (134), Ժ. դարուն յայտնապէս ծագումով օտար՝ բայց շատոնց արդէն *հայացած* լեռնականներ էին, երբ Պատմիչն այցելեց իրենց: Ահա իր խօսքերը.

«Կեանք վրիպեալք ի բնական *հայրենի լեզուէն* ... խրթին եւ անծանօթ պատահեն առ միմեանս, *մինչեւ թարգմանց անգամ կարօտանալ* ... այլ ի ժամանակս հասանելոյ բռնամեաց յերկիրն իւրեանց՝ զան միաբան լեռնայինքն յօդնութիւն իշխանացն (Տարօնոյ), զի են տիրասէրք ... Սոքա են զոեհք Ասորոց...»:

Որոշ չէ թէ Պատմիչը՝ *հայրենի լեզու* ըսելով՝ այդ ցեղերուն հին ծագումի՞ն կ'ուզէ ակնարկել թէ իբրեւ Հայեր *վրիպած* կը նկատէ զանոնք իրենց բնիկ լեզուէն: Միայն անժխտելի է որ նախաքրիստոնէական թուականներուն մէջ *«ընդ Աղձնիս եւ ընդ Տարօն»* տարածուող լեռներուն այդ բնակչութիւնը ասորի կամ սեմական ցեղ մըն էր, ինչպէս կը վկայէ հին պատմութիւնը եւ այդ հիմին վրայ է որ Տոմաշէկ կը հերքէ Սասանացւոց *ազգով* եւ *լեզուով* հայ ըլլալը՝ նոյն իսկ Ժ. դարուն մէջ եւ Հիւպշման իրեն կը հետեւի: Սակայն Դուրեան (*Ամէն. Տար.* էջ 533) դիտել կու տայ թէ կարեւոր է նկատի ունենալ Թովմա Արծրունիի խօսքերուն մէջ սա հետաքրքրական կէտը՝ որուն համաձայն այդ լեռնականները գիտէին *«զՍաղմոսն զհին թարգմանեալսն Վարդապետացն Հայոց՝ զոր հանապազ ի բերան ունին»* (էջ 135): Դուրեան կ'ըսէ որ «եթէ խուժ կամ մուժ հայերէն մը չըլլար Սասունցւոց խօսած լեզուն, դիւրի՞ն էր միթէ գրաբար հին Սաղմոսը սորվեցնել անոնց՝ իրենց բերնէն վար չձգելու աստիճան. իսկ եթէ ասորերէն ըլլար լեզունին, Ասորի վանականներ կամ եկեղեցականներ չէին պակսեր այդ լեռներուն վրայ, կանուխէն կրօնական այդ դասերը ասորերէնով տալու համար» (*Նոյն*, 553):

Մեր եկեղեցական պատմութեան մէջ տակաւին Զ. դարուն բաւական ծանօթ դէմք մըն էր, օրինակի համար, Աբդիշոյ, որ վանահայր էր Սասնոյ վանքերէն մէկուն, եւ *հայերէն* կը խօսէր եւ *հայերէն* կը խմբագրէր իր թուղթերը (*Նոյն*):

(1) *Կորճայ* (Patois) *կը կոչուին այն լեզուներն որ տարբեր բնատնիքի վերաբերեալ լեզուի մը քերականութեամբն կամ բառերով կը խառնավարին. Ըստ այսմ այն գաւառներու բնիկ ցեղերը որ կային՝ հայերէն խօսելով՝ կորճայ կը խօսէին ըստ Գարագաշեանի,* (*տես. Դուրեան,* Պատմ. Հայ մատեն. 315).

Դուրեան դիտել կու տայ նաեւ թէ այդ լեռնականներուն զիրար չհասկնալու եւ թարգմաններով խօսելու պարագան խնդիրին հանգամանքը չի փոխեր: Միեւնոյն երեւոյթները նմանօրինակ պայմաններու մէջ դիտուած են միշտ: Այսպէս, Ն. Մառ կը հաւաստէ՝ որ

«Ճաներէնի բարբառները՝ յաճախ այնքան են տարբերում իրարից, որ իրանք՝ մայրենի լեզուի երկու բարբառներով խօսող Լազերը՝ չեն հասկանում զիրար» (ՀԱ. 1912 Հոկտ.) եւ կամ՝ ինչպէս կը կարդանք այլուր՝ թէ «Կարապետ Վ.ի հայրենակից Արաբկիրցիք խօսում էին մի առանձին խառնաշփոթ լեզուով, որ զանազանւում էր բուն հայերէնից» (*Վաղարշապատեցի Յարութիւն Արարատեանի կեանքը*, 51—52):

Դուրեան ի վերջոյ կ'ըսէ. «կը մնայ հարցնել որ՝ երբ Ժ. դարուն իսկ Սասունցւոց լեզուն հայերէն չէր, ո՞ր թուականներուն ուրեմն կարելի եղաւ՝ կարի նպաստաւոր կամ խորհրդաւոր նուաճումներուն շնորհիւ՝ այդ լեռներուն վրայ հանել կամ խօսեցնել այն *լեզուն*՝ որ Մշոյ գաւառին մէկ *ենթաբարբառը* կը նկատուի այսօր (Աճառեան. *Բարբառախօսութիւն*)»:

Արդէն վերը (էջ 27) տեսանք թէ Դուրեան ի՛նչ կը խորհէր Զաքարիա Հռետոր Պատրիարքի Սիւնեաց լեզուի մասին գրածին համար, իսկ մնացեալ չորս եզրականներուն վրայ առանց խօսելու, «որովհետեւ անոնց բարբառներուն մասին տուեալներ կը պակսին»՝ ընթերցողին կը թողու «հետեւութեան մը գալու հանգիտաբար, քանի որ եօթը *եզերականները*՝ մէկ կարգի վրայ՝ իրարմէ տարբեր նշանակութիւններով չէին կրնար հռչակուիլ Հայ Քերական Մեկնիչին կողմէ, եւ անոնց *ային* կամ *եցի* մասնիկներով կիրարկումն ալ՝ եզակի ձեւի տակ՝ *լեզուի* կամ *բարբառի* միայն կրնայ պատշաճիլ» (*Նոյն* 553):

Արդարեւ, որչափ որ *հայերէնը* լեզուական ընդհանուր միութեան մը հանգամանքն ունէր Հայաստանի մէջ, մանաւանդ հայ գիրերու գիւտէն յետոյ, բայց ամէն տեղ միեւնոյնը չէր կրնար ըլլալ լեզուն իր բովանդակ լրութեամբ: Այն գաւառները՝ որոնք կեդրոնէն (Արարատ-Տարօն) հեռու մնացած կը համարուէին՝ ի հարկէ միջավայրի ու ցեղային խառնումներու ազդեցութեան տակ պիտի կրէին արտասանութեան, բառերու եւ այլ փոփոխումներ, կամ որ նոյնն է՝ յառաջ պիտի գային մեր մէջ *բարբառ*ներու աւելի կամ նուազ զանազանութիւններ, աչքի առջեւ ունենալով ազգին պատմական այլափոխ շրջանները ու մանաւանդ հայ նախարարական դրութեան հետեւանքով ցեղերու իրարմէ անջատ ապրելու պարագաները, որոնք բարբառներու զանազանութիւն մը ենթադրել կու տան, որչափ ալ վաւերագրական հիմեր պակսին առ այդ (Դուրեան, *Պատմ. Հայ Մատենագրութեան*, էջ 281—2):

Ե՞րբ է տեղի ունեցեր բարբառներու ծագումը: Հ. Աճառեան (*Սիոն*, 1940 էջ 260) կ'ըսէ թէ՝

«Երկու կարծիք կայ այս մասին—ոմանք կարծում են թէ հայ բարբառները ժամանակակից եւ կամ նոյնիսկ աւելի հին են գրաբարից, հետեւաբար եւ նրանից անկախ են, ուրիշներ կարծում են թէ հայ բարբառները գրաբարի շարունակութիւնն են եւ հետեւաբար նրանից աւելի ուշ են ձեւացած:

Երկու կարծիքները ձեւակերպելով մի ուրիշ ձեւով, կարելի է ասել՝ որ ըստ առաջինների՝ Ե.դարում կային մի խումբ հայերէն բարբառներ, որոնք ապրում էին իրար հետ կողք կողքի եւ որոնցից մէկը միայն բարձրացաւ գրականութեան եւ կոչւեց գրաբար, միւս բարբառները թէեւ նրան ժամանակակից, բայց մնացին միայն ժողովուրդին մէջ՝ իբրեւ խօսակցական լեզու, եւ նրանց շարունակութիւնն են կազմում արդի բարբառները:

Երկրորդ կարծիքին հետեւողները Ե. դարում առանձին բարբառների գոյութիւնը չեն ընդունում, եւ հետեւաբար նոր բարբառները հին բարբառների շարունակութիւնը չեն համարում:

Ի՞նչ պատճառաբանութիւններ ունին առաջին կարծիքին հետեւողները —նախ այն ընդհանուր սկզբունքը, որ ոչ մի լեզու միօրինակ չէ, եւ չկայ լեզու՝ որ բարբառներ չունենայ: Հայերէնը՝ որ խօսւում է մի լեռնոտ երկրի մէջ, իրարից անջատ մեծամեծ նահանգներում եւ գաւառներում, պէտք է որ անպատճառ բարբառներ ունեցած լինէր: Երկրորդ՝ հին քերականների տուած յայտնի վկայութիւնները մի խումբ հայ բարբառների գոյութեան մասին: Երրորդ՝ մի քանի բառական ձեւեր, որոնք ըստ իրենց կազմութեան աւելի հին են քան գրաբարի ծանօթ ձեւերը:

Հ. Աճառեան (*Նոյն*), ինքն կ'ընդունի Ե. դարուն իսկ Հայ բարբառներու գոյութիւնը, բայց կը փաստէ թէ այդ բարբառները իրարմէ զգալապէս զանազանուած չէին եւ կարելի էր զանոնք աւելի ենթաբարբառ կոչել քան բարբառ: Իր տեսութեամբ (տես՝ *Սիոն*, 1938, էջ 278)՝

«ժողովրդական լեզուն, որ Ե. դարում նոյն էր գրական լեզուի հետ, մի կողմից բնական աճումով եւ միւս կողմից օտար ազդեցութիւնների տակ հետզհետէ փոխւում էր ազատօրէն, այնպէս որ՝ գրական անփոփոխ լեզուի եւ ժողովրդական յարափոփոխ լեզուի միջեւ տարբերութիւնը քանի գնում մեծանում էր»:

Այնպէս որ՝ միշտ իր տեսութեամբ Հայ բարբառներու ծագումը յապաղած է մինչեւ ԺԱ. եւ ԺԲ. դարեր, որ ատեն՝

«արդէն կազմուած էին Հայաստանում եւ Հայաստանից դուրս գաղթավայրերում զանազան բարբառներ, իրարից աւելի կամ պակաս մեծ տարբերութեամբ» (*Սիոն*, 1938, էջ 305):

Հետեւաբար, կը նատատուէր այն գաղափարը թէ՝

«Ե. Դարում կամ նրանից առաջ էլ, Հայաստանում խօսւում էր մի՛ հայերէն, որի ներկայացուցիչն էր գրաբարը: Բարբառների այնպիսի սուր տարբերութիւն, ինչպէս նկատում ենք այժմ մեր մէջ, չկային —եղածները մանր բաներ էին»: (*Սիոն*, 1940, էջ 311):

Բայց հակառակ Հ. Աճառեանի կարծիքին՝ Ե. դարուն կային բարբառներ եւ անոնց գոյութեան համար բոլորովին փաստեր չեն պակսիր: Ոսկեդարեան դասական հայ լեզուի այս մեծ վարպետը, ունի կարեւոր վկայութիւն մը, որ իր ժամանակ գոյութիւն ունեցող լեզուական տարբերութեանց կը խօսի: Ան կ'ըսէ *«յորժամ մենք ասեմք թէ սիք* (սիւք ?) *շնչէ, տորնեայք* (1) *ասեն* այս *շնչէ»* (*Եզնիկ*, 1826, էջ 92):

Եզնիկի այս վկայութեամբ կը հաստատուի թէ Ե. դարուն բառերու տարբերութիւններ ունէր հայերէն մէկ տեղէն միւսը:

Դուրեան Ս. ալ (տես՝ *Պատմութիւն Հայ մատենագրթ.*, էջ 282) կը կարծէ թէ լեռնազաւառներու մէջ ընդհանուր տիրող հայ լեզուին մօտ՝ անհաւանական չէր որ հնագոյն լեզուներն ալ կարենային մնալ ու տեւել թերեւս երկար ժամանակի մը համար:

Ուրեմն Յովհաննէս Երզնկացիի յիշատակած *եզերական* այդ լեզուները՝ եթէ ոչ հայերէնի վրայ՝ գէթ հայերէնով պատուաստուած մուրացածոյ լեզուներ պէտք էին ըլլալ: Ենթադրելով իսկ թէ հին լեզուներ գոյութիւն ունեցած չըլլային հայերէնէն տարբեր՝ անխուսափելի էր գաւառաբարբառներու գոյութիւնը:

Ընդհանուր լեզուաբանութեան մէջ ընդունուած է թէ ամէն լեզու գաւառաբարբառներ ունեցած է կամ ունենալու է: Հայերէնը այս ընդհանուր կանոնէն բացառութիւն չէր կրնար կազմել:

Եզնիկի վկայութենէն զատ ունինք նաեւ Խորենացիի (տես. Գ. ծբ եւ Ա. ժդ) ընծայած մէկ փաստը, որ թէեւ շատ յստակ չէ բայց բաւական յատկանշական է:

Ան կը գործածէ *«հայկականաց լեզուաց»* բացատրութիւնը, որով կ'ընդունի թէ իր ատենը, որ ապահովաբար Ե. դարէն բաւական ուշ է, *հայերէն մէկէ աւելի լեզուներ* կային:

Եթէ ճիշդ է այս մեկնութիւնը՝ կը հաստատուի որ հայերէնը ունէր բարբառներ բաւական կանուխէն եւ ի զուր են տարբեր մեկնութիւններ, ինչպէս Հիւպշմանի այն տեսութիւնը թէ Երզնկացիի յիշած *եզերականներէն* ոչ թէ հայերէնի գաւառաբարբառներ՝ այլ տարբեր լեզուներ էին, որոնք աներեւոյթ եղած էին այժմ, այդ լեզուները խօսող ազգերուն հետզհետէ ձուլուելովը Հայոց մէջ:

Ընդհակառակը, Մեյյէ (Mellet), Քարստ (Karst), Հ. Յ. Տաշեան (ՀԱ. 1901 Յունուար) եւ վերջապէս Հրաչեայ Աճառեան (*Բանասէր*, Հտ. Գ. 1901, էջ 78—79) բաւական դրական եւ անժխտելի փաստերով, տրամաբանօրէն եւ գործնականապէս կ'ապացուցանեն հայ բարբառներու վաղեմի գոյութիւնը:

Միակ հարցը սա է թէ այդ բարբառները ի՞նչ ծնունդ ունէին:

Հին ոչ-հայ լեզուներո՞ւ կը պարտին իրենց գոյութիւնը թէ՞ հայերէն լեզուի աղճատումներն են:

Այս մասին դժբախտաբար հայ լեզուով զբաղող լեզուաբանները համաձայն չեն:

Հիւպշման, Մեյյէ եւ Հ. Աճառեան չեն ընդունիր թէ հայերէն խօսուած լեզուն եւ գրաբարը իրարմէ կը տարբերէին եւ թէ գրաբարը հին հայերէնի զանազան բարբառներէն մէկն էր միայն (հմմտ. *Սիոն*, 1940, էջ 311):

Հ. Աճառեանի տեսութեամբ Քերականներու վկայութիւնները՝ *եզերականներու* մասին կը վերաբերին, ոչ թէ հայերէն բարբառներու, այլ Հայաստանի մէջ բնակող օտար մանր ազգերու լեզուներուն: Անիկա կ'ըսէ թէ՝

«Որպէսզի Ե. դարում զանազան բարբառներ գոյութիւն ունեցած լինէին, եւ արդի բարբառները գրաբարից տարբեր հիմք ունեցած լինէին կամ մինչեւ անգամ աւելի հին եղած լինէին քան գրաբարը, պէտք էր որ ներկայացնէին այնպիսի բառական ձեւեր, որոնք ձայնաբանօրէն կարող չլինէին յառաջանալ գրաբարի ձեւերից եւ աւելի հին լինէին քան գրաբարի ձեւերը» (*Սիոն*, 1940, էջ 260):

Ընդհակառակը, Հ. Աճառեան լեզուաբանօրէն հայերէն բարբառներէն ամէնէն յատկանշականներէն մին՝ Ագուլիսի բարբառը (որ զօկերէն կը կոչուի) կ'առնէ եւ շատ մը փաստերով կը հաստատէ թէ անիկա ոչ միայն գրաբարէն հին չէ, այլ անկէ առաջացած (*Սիոն*, էջ 257) եւայլն:

Հ. Աճառեանի տեսութեամբ զօկերէնը եւ Ղարաբաղի բարբառը՝ իրենց այնքան բնորոշ առանձնայատկութիւններով հանդերձ՝ արդիւնք էին ԺԲ. դարու, ինչպէս Սուէտիոյ եւ Համշէնի բարբառները՝ աւելի ուշ ժամանակներու մէջ. իսկ միւս բարբառները արդէն մեծ տարբերութիւն չեն ներկայացներ գրաբարէն (հմմտ. *Սիոն*, 1940 էջ 311):

Հետեւաբար, եթէ Ե. դարուն հայերէն բարբառներ գոյութիւն ունէին՝ անոնք իրարմէ կը տարբերէին ըստ Հ. Աճառեանի. ա) *արտասանութեամբ*, բ) *բառերով՝ որոնք գրաբարի ձեւէն տարբեր են եւ կը ներկայացնեն աւելի հին վիճակ*. գ) *ամբողջական բառերով, որոնք գոյութիւն ունէին այս կամ այն բարբառին մէջ, բայց չկային արարատեան բարբառին կամ գրաբարին մէջ*: Հ. Աճառեան (*Սիոն*. 1940, էջ 311—2) այս վերջին դասակարգի բառերը երեք տեսակի կը բաժնէ. 1.— բառեր, որոնք ժառանգութիւն մնացեր էին Հայաստանի հողին վրայ բնակող եւ յետոյ Հայոց մէջ ձուլուած զանազան մանր մունր ազգերէն եւ կը գործածուէին տեղական նեղ շրջանակներու մէջ եւ այսօր ալ կը գործածուին զանազան բարբառներու մէջ:

(1) *Վենետիկեան* 1826*ի տպագրութեան մէջ այս բառը* Ասորեայք *տպուած է, և Գառնիկ Ֆնտքլեանն է որ այսպէս կը կարդայ, անշուշտ գրիչի սխալ մը նկատելով բառը* (Անահիտ, 1929 *թ.* 1, *էջ* 111—12)*. Իր տեսութեամբ Երասխի հովիտին Հայաստանը կը ճանչցուէր «Վերին Հայաստան», իսկ Փոքր Ծոփքինը «Վարի (ստորին) Հայաստան». Գ. Ֆնտքլեանի կարծիքով Արտաշէսի և Զարեհի ատեն իրենց անկախութիւնը ձեռք բերող իշխանութիւնները երկու տարբեր զարգացումով լեզուներ ունեցած են, մէկը՝ արեւմտեան ազդեցութիւն կրած, իսկ միւսը՝ առաւելապէս արեւելեան-իրանեան։*

*Եթէ* Ասորեայք՝ Տորնեայք *ընթերցումը ճիշդ է, այս տողերը թանկագին փաստ մը կը դառնան գաւառաբարբառներու հնօրեայ գոյութեան, իսկ հակառակ պարագային՝ լեզուական այս տարբերութիւնը հայերէնին և ասորերէնին միջեւ գոյութիւն ունեցող տարբերութեան մը ակնարկ կրնայ ըլլալ, ինչ որ նուազ հաւանական է, և Գ. Ֆնտքլեանի մեկնութիւնը աւելի հաւանելի։*

Ասոնց թիւը բաւական մեծ էր՝ ըստ Աճառեանի:

2. Բառեր՝ որոնք փոխառեալ էին սահմանակից լեզուներէ եւ կը գործածուէին ծայրամասերու մէջ, բայց դեռ չէին թափանցած մինչեւ կեդրոնական վայրերը: Նման փոխառութիւններ կարող էին գտնըւիլ հիւսիս-արեւմուտքի մէջ (վրացերէն), հիւսիս արեւելքի մէջ (աղուաներէն), հարաւի մէջ (ասորերէն) եւ արեւմուտքի մէջ (յունարէն):

3. Բառեր՝ որոնք բնիկ հայ են, այսինքն հնդեւրոպական ծագում ունին, գործածական են այժմ բարբառներու մէջ, չկան գրաբարի մէջ: Այս կարգի բառերու համար կարելի է ըսել թէ անոնք շատ աւելի հին ժամանակ, այսինքն երբ Արմէնները Հայաստան մտան (Ն. Ք. Զ. դար) ընդհանուր էին հայերէն լեզուին: Իրենց Հայաստան մտնելէն եւ զանազան գաւառներ հաստատուելէն յետոյ կեդրոնին մէջ անհետացան եւ մնացին միայն այս կամ այն գաւառին մէջ եւ կը շարունակեն մնալ տակաւին (*Սիոն*. 1940, էջ 311-312):

Եթէ ճիշդ են այս տեսութիւնները՝ Հայերը յաջողած են իրենց մէջ ձուլել երկիրին բնիկները, անոնց սեփական լեզուէն փոխառութիւններ ընելով միայն եւ փոխադարձաբար իրենց լեզուն հարկադրելով անոնց եւ միալեզու երկիր մը կազմելով:

Ասիկա մեծ փաստ մըն է թէ հայ ցեղը ճշմարտապէս քաղաքակրթական մեծ դեր մը կատարած է Հայաստանի մէջ, նուաճելով շատ մը այլալեզու ցեղեր եւ ժողովուրդներ եւ զանոնք հայախօս դարձուցած:

Արդարեւ, Հայախօս եղած էր բովանդակ Հայաստանը իր բոլոր սահմաններուն մէջ, բացի իր քանի մը լեռնային գաւառներէն եւ կղզիացեալ վայրերէն:

Իսկ աւելի հետաքրքրական է դիտել տալ, թէ Հայ լեզուն Հայաստանի սահմաններէն դուրս ալ նուաճումներ ըրած է եւ Հայերը կրցած են այդ սահմաններէն դուրս վայրեր ալ հայախօս դարձնել:

Այսպէս՝ անտարակուսելի փաստեր ունինք որ Փոքր Հայքը եւ մասամբ նոյն իսկ Կապադովկիան, ուր տեղերը Հայերու բնակութիւնը շատ հին էր եւ անյիշատակ ժամանակներու կը հասնէր, հակառակ հայ իշխանութեան զրկուած ըլլալնուն շատ կանուխէն, տակաւին Քրիստոնէական թուականին առաջին դարերուն հայախօս էին: Այսպէս, Ստրաբոն որ քաջածանօթ է իր իսկ երկիրին հանգամանքներուն իբրեւ Կապադովկիացի, գիտէ թէ Գամիրք՝ թէպէտեւ բաժնուած էին, *մէկ լեզու* կը խօսէին մինչեւ Տաւրոս, Հայաստան եւ Կողքիս, բայց կ'ըսէ թէ *ուրիշ լեզուներ ալ կային երկիրին մէջ*, ինչ որ արդարեւ հաւանական էր (Տաշեան. *Ուսումն Դասական Հայ լեզուի*, 239—240): *Այս լեզուներէն մէկն էր նաեւ հայերէնը, որ սփռուեալ էր ամէն կողմերը, ինչպէս նաեւ դրացի երկիրները* (ՀԱ. 1900, 112 եւայլն. *Ուսումն. Դասական Հայ լեզուի*, էջ 24):

Նոյնպէս հայերէն լեզուին զօնէ Փոքր Հայքի մէջ տիրապետած ըլլալուն փաստն է որ Ս. Բարսեղ Կեսարացի հայրապետը (✝ 379) Սասաղ ուղեւորած ատեն՝ Փոքր Հայոց եպիսկոպոսական աթոռներուն համար լեզու գիտցող մարդիկ փնտռած է (Migne Patrol, 32. 502):

Ուրեմն՝ նոյնիսկ Դ. դարուն, Հայաստանի արեւմտեան կողմը, հաւանօրէն Եփրատէն Արեւմուտք, մինչեւ Ալիս, հայերէն լեզուն եթէ ընդհանուր չէր՝ գէթ բնակչութեան կարեւոր մէկ մասին կողմէ կը խօսուէր:

Իսկ աւելի ուշ ժամանակներու մէջ, երբ Կիլիկիա ենթարկուած է հայկական տիրապետութեան, հոն ալ հայ լեզուն իբր բնակչութեան եւ պետութեան լեզուն տիրած է, իբր խօսուած եւ գրուած ընթացիկ լեզու: Արդէն, ինչպէս վերը բացատրուեցաւ, այն ատեն գոյութիւն ունէին Հայաստանի մէջ եւ Հայաստանէն դուրս բազմաթիւ բարբառներ, որոնցմէ մէկն ալ Կիլիկեան հայերէնն էր (1), որ պետականութեան շնորհիւ բարձրացաւ գրականութեան (հմմտ. Հ. Աճառեան. *Սիոն*, 1938, էջ 341):

Հայաստանի հիւսիսային արեւելեան, եւ հարաւային սահմաններէն ալ դուրս հայախօս զանգուածներու գոյութիւնը անժխտելի իրողութիւն մըն է. բայց դժբախտաբար մատենագրական տեղեկութիւններ կը պակսին:

Տեսնուեցաւ արդէն որ Վրաստանի այն մասերը, որոնք Հայերէ գրաւուած էին, հայախօս եղած էին: Ցուրտաւի Հայոց պարագան եւ անոնց եպիսկոպոսին հայ լեզուով գիրերը, շատ բացորոշ փաստեր են: Իսկ Աղուանից աշխարհը հայացած էր որքան կրօնքով նոյնքան լեզուով:

Կարելի է ենթադրել թէ հարաւային կողմն ալ, Հայկական Միջագետքը, մանաւանդ Եդեսիոյ շրջանակը, հայախօս էին կամ ունէին հայախօս զանգըւածներ: Մատթէոս Ուռհայեցի եւ Գրիգոր Երէցի գործերը ասիկա հաստատելու նպաստ մը կը բերեն:

Հայաստանի արեւելեան սահմանին գաւառներուն մէջ, ուր Հայերը նշանակելի դիրք մը ունէին, անհաւանական չէ որ հայերէնը տարածուած լեզու մը եղած ըլլայ:

Այս մասին թանկագին փաստ մը կու տայ արաբ մատենագիր մը՝ Իպն Հաուգալ, որ որոշապէս կը վկայէ թէ Ժ. դարուն Ատրպատականի Արտիպիլ քաղաքին բնակիչները հայերէն կը խօսէին, (Յ. Քիւրտեան, *Նիւթեր հայ վաճառականութեան պատմութեան համար —Հում մետաքսի վաճառականութիւնը եւ Հայերը*, *Հայրենիք* ԻԲ. տարի թ. 3 էջ 57): Եթէ ճիշդ է այս տեղեկութիւնը՝ ասիկա հաւաստիք մըն է թէ հայերէն լեզուն դէպի արեւելք, հաւանօրէն մինչեւ Կասպից ծովու եզերքները եթէ բոլորովին տիրապետող չէր՝ գէթ տարածուած լեզու մըն էր: Եթէ այդպէս չըլլար Արտապիլ պարսիկ քաղաքին մէջ հայերէն պիտի չխօսէին բնակիչները:

Ասոնք բոլորը ցոյց կու տան թէ «*Հայկական խօսից սահմանը*» կ'անցնէր Հայաստանի բնական սահմանները, Եփրատէն Արեւմուտք եւ ինչպէս նաեւ դէպի Արեւելք հայ լեզուն տարածուած էր այնպիսի շրջաններու մէջ, որոնք բնաւ Հայաստանի մաս կազմած չէին ոեւէ ատեն:

Ասիկա կ'արժէ շեշտել իբրեւ պատուաբեր նշան մը հայ ցեղին քաղաքակրթական ընդունակութեան:

(1) *Ասոր մասին Քարստ ունի ուշադրաւ ուսումնասիրութիւն մը, որ թարգմանուած է հայերէնի:*

## Դ.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԵՍ ՀԱՅԱԴԱՒԱՆՆԵՐՈՒ ԵՐԿԻՐ

Լեզուին չափ Հայ ազգին համար կարեւոր նշանակութիւն մը ունեցած է նաեւ կրօնքը, որ մեր ազգին կազմաւորման մէջ խիստ նշանակելի դեր մը կատարած է:

Հայ ազգը, ինչպէս քրիստոնէութեան յարելէ յետոյ, այս տիեզերական կրօնը ազգայնացուցած եւ անոր սեփական տոհմային դրոշմ մը տուած է, նոյնպէս նաեւ հեթանոսական շրջանին Ասիոյ մէջ տիրող հեթանոսական կրօնքներուն հետեւած է եւ շատ հաւանօրէն անոնց տուած՝ առանձնայատուկ նկարագիր մը եւ ստեղծած՝ հեթանոս հայադաւանութիւն մը: Շատ դժբախտաբար այսօր կարելի չէ տալ կարկառուն փաստեր, Հայ հեթանոսական կրօնքին ի՛նչ աստիճանով հայադաւանութիւն մը կազմած ըլլալուն, թէեւ ունինք ինչ ինչ տուեալներ, որոնք մեզ կը մղեն հաւանական ենթադրութիւն մը համարելու սա տեսութիւնը՝ թէ Հայերը հեթանոսական շրջանին ալ ունէին կրօնք մը, որ ունէր հեթանոսական բոլոր կրօնքներու հետ բազմաթիւ նմանութեան եզրեր, եւ սակայն կը տարբերէր դրացի երկիրներէն ազգին իր «պատկերին համաձայն» ստեղծագործած աստուածներովը:

Ասիկա մտածութիւն մըն է, որուն սակայն շատեր համամիտ չեն, որովհետեւ ոմանք կը մտածեն՝ թէ

«Դրութեան վերածուած կրօնք մը ինքնուրոյն եւ բարգաւաճ քաղաքակրթութեան մը ծնունդը միայն կրնայ ըլլալ, բան մը զոր չենք կրցած ունենալ մենք, գէթ այն չափով եւ կարեւորութեամբ՝ որով ունեցած են զայն Եգիպտացիք, Բաբելոնացիք, Ասորեստանցիք, Արաբներ, Հնդիկներ, Պարսիկներ, Յոյներ, Հռոմայեցիներ, Կելտեր, Գերմաններ, Սլաւներ եւայլն: Այս պատճառաւ, բարացուցականօրէն հայկական պանթէոնի մը գաղափարը երեւակայական կը թուի գիտուններու մեծամասնութեան. անոնք կը կարծեն՝ թէ ինչ որ կայ մեր նախաքրիստոնէական կրօնական կեանքին մէջ, իբրեւ աստուածութիւն եւ իբրեւ դից պաշտամունք, մեծ մասամբ պարագաներու բերումով կատարուած փոխառութիւններ են մեզի սահմանակից եւ ցեղակից ազգերէ, եւ այնպիսիներէ՝ որոնց հետ քաղաքական կամ այլ կարգի յարաբերութիւններ ունեցած են մեր հին նախնիք» *(Թորգոմ պատրիարք Գուշակեան, յառաջաբան Դուրեան պատրիարքի «Հայոց հին կրօնը կամ Հայկական Դիցաբանութիւն» գործին)*:

Այս տեսութիւնը, որ Երուսաղէմի հոգելոյս Պատրիարքը կը պարզէ իր հոգեւոր հօրը՝ Դուրեան Պատրիարքի գործին ընթերցման անմիջական ազդեցութեան տակ, բոլորովին համոզիչ ըլլալ չի թուիր, վասնզի նոյնինքն Թորգոմ Պատրիարք անմիջապէս կը յարէ՝ թէ

«այս տեսութիւնը բոլորովին կամ ոեւէ չափով ճիշդ լինի կամ ոչ՝ չ'արգիլեր զմեզ սակայն մտածելէ որ մենք, թէ՛ իսկ մեր ինքնայատուկ պանթէոնը ունեցած չըլլանք՝ չենք կրնար իբրեւ ժողովուրդ —ինչպէս ամէն ժողովուրդ— ունեցած չըլլալ մեր սեպհական կրօնական կեանքը եւ պաշտամունքային դրութիւնը, համաձայն մեր միջավայրի պայմաններուն եւ ընկերական ու բարոյական հանգամանքներուն: Աններելի պիտի ըլլար արդարեւ խորհիլ՝ թէ ոեւէ կերպով կրնայ իր դիցաբանութիւնը ունեցած չըլլալ ժողովուրդ մը, որ սակայն շատ կանուխ անցեալէ մը սկսելով՝ ունեցած է իր ուրոյն լեզուն ու մշակոյթը, որոնք քաղաքակրթութեան նկատելի աստիճանի մը գոյութիւնը կը մատնանշեն իր մէջ» *(նոյն)*:

Արդարեւ, անհաւատալի է որ Հայերու հեթանոսական կրօնը բոլորովին մուրացածոյ եղած ըլլայ, երբ մանաւանդ գիտենք թէ Հայաստան օրօրանը եղած է ժողովուրդի մը, որ գրեթէ բնիկ էր երկիրին եւ ստեղծած էր իրեն համար քաղաքակրթութիւն մը եւ այդ հիմնախաւին վրայ եկած աւելցած էին զանազան ժամանակներու մէջ ուրիշ ժողովուրդներ, որոնք իրենց սեփական քաղաքակրթութիւնը ունէին:

Այսպէս, ինչպէս ցեղը նոյնպէս իր լեզուն, իր կրօնը եւ մշակոյթին ուրիշ տարրերը եղած են խառնուրդ մը այդ զանազան ցեղերուն ստեղծագործութեանց: –

Սակայն անզիր ժամանակներու մէջ կատարուած ցեղախառնումներուն հետեւանօք՝ Հայ ազգին մէջ ներմուծուած կրօնական հաւատալիքներուն զատորոշումը այնքան դժուար է՝ որ այսօր գրեթէ անկարելի է վերակազմել Հայ հեթանոսական կրօնքին զարգացման պատմութիւնը եւ դարերու ընթացքին անոր կրած փոփոխութիւնները:

Այնպէս որ՝ հաւասարապէս անկարելի է ճշդել Հայ հեթանոսական կրօնքին մէջ բնիկ եւ եկուոր տարրերը, ինչպէս նաեւ օտար կրօնքներէ եղած փոխա-

ռութիւններու ե՛րբ եւ ի՛նչ ազդեցութեան տակ ներմուծուած եւ ի՛նչ չափով ազգայնացած ըլլալը (1):

Միայն որոշ է՝ որ Հայ հեթանոսական կրօնքին մէջ կը նշմարուին որոշ տարրեր, իրանական, փոքր ասիական, յունական եւ նոյն իսկ հնդկական, որոնք չէին կրնար միաժամանակ ներմուծուած ըլլալ, այլ դարերու շրջանի մը, եւ արգասիքն էին զանազան ազդեցութիւններու: Անոնք որդեգրուելէ ետք Հայ ազգէն՝ իւրացուած եւ նոյնիսկ պատշաճեցուած էին հայ ըմբռնումներու, այնպէս որ՝ քրիստոնէութիւնը մեր մէջ քարոզուիլ սկսած ատեն հաւանօրէն գոյութիւն ունէր հեթանոս հայադաւանութիւն մը, որ անշուշտ այլացեղ ու խառն բնակչութեամբ երկիրին կազմաւորման գործին իր նպաստը բերած էր. բայց յայտնի չէ թէ այդ Հայ կրօնքը աշխարհագրական ո՛ր տարածութեան վրայ բացարձակ տիրապետող էր:

Իսկ քրիստոնէութիւնը Հայաստանի մէջ տարածուելէն ետքը՝ կը գտնուինք զարմանալի երեւոյթի մը առջեւ:

Հայ Եկեղեցին, իր սեփական դաւանութեամբ իր ինքնայատուկ վարչական կազմակերպութեամբ, իր ծէսերով ու արարողութիւններով, իր մասնաւոր պաշտամունքով. քրիստոնեայ եկեղեցիներու շարքին մէջ ունի իր մասնաւոր տեղը եւ կը ներկայանայ գերազանցապէս ազգային հանգամանքով եկեղեցի մը:

Հայ Եկեղեցիին պատմութեան ուսումը մեզ կը հասցնէ սա պարզ եւ յստակ եզրակացութեան՝ թէ Հայերը կանուխ ընդունելով քրիստոնէութիւնը մաս կազմած են նախ տիեզերական կամ ընդհանրական եկեղեցիին, բայց յետոյ տեսնելով այս միջազգայնութեամբ (եթէ ներելի է այս բառը գործածել այս պարագային) ազգին սպառնացող վտանգը, մնալով հանդերձ թունդ հաւատացեալ քրիստոնեաներ, քրիստոնէական կրօնքը ազգայնացուցած կամ հայացուցած են, եւ Դ. դարէն սկսեալ հետզհետէ աւելի ազգային հանգամանք տուած եւ կերտած են Հայ ազգային Եկեղեցին, որ կրնանք ըսել թէ Հայ ազգին ամէնէն շէնք, ամէնէն հոյակապ եւ ամէնէն արժէքաւոր ստեղծագործութիւնն է, արժանի մեծ հիացման:

Այն բացատրութիւնը, թէ Հայերուն քրիստոնէական հաւատալիքներուն տարբերութիւնը ուրիշ ազգերէն՝ ստեղծուած է քաղաքական դէպքերու բերումով եւ հայ եկեղեցական առաջնորդներու տիեզերական ժողովներէն բացակայ եղած ըլլալուն իրողութեամբը, կրնայ ճշմարտութեան բաժին մը ունենալ, բայց հայկական խառնուածքի ուսումնասիրութիւնն իսկ եզրակացնել կու տայ մեզի՝ որ անջատ եւ ուրոյն մնալու ձգտումը խոր էր հայ ժողովուրդին մէջ նաեւ կրօնական գետնի վրայ:

Ժողովրդավար ոգիով եւ ժողովուրդին հետ նոյնացած Հայ Եկեղեցին, իր ազգային դրոշմը կ'առնէ Ե. դարէն յետոյ, մասնաւորապէս Զ. դարուն, երբ Հայերը մնալով հանդերձ քրիստոնեայ եւ բարեկամ բոլոր քրիստոնեայ աշխարհին, բոլորովին առանձնայատուկ նկարագիր մը տուին իրենց եկեղեցիին, եւ իրարու յաջորդող քայլերով ընդհանրական եկեղեցիին միութեան մէջ՝ ազգին սպառնացող վտանգին դիմագրաւեցին:

Այսպէս, Հայ Եկեղեցին նախ մերժեց Կեսարիոյ կամ Անտիոքի աթոռներուն Հայաստանի վրայ հովուապետական իրաւունքներ ունենալու յաւակնութիւնը, յետոյ հայ գիրեր ստեղծեց հայ ժողովուրդին տալու համար իր հաւատքին հիմը եղող Աստուածաշունչը՝ հայերէն, ինչպէս նաեւ հայ լեզուով կատարելու համար հայ եկեղեցիներու մէջ պաշտամունքը, եւ վերջապէս հնաւանդ հաւատքը ամուր պահեց եւ նորանոր դաւանանքներ եւ վարդապետութիւններ բացարձակ մերժեց: Մասնաւորապէս Քաղկեդոնի ժողովին մերժումը եղաւ այն մեծ քայլը՝ որ Հայ Եկեղեցին անկախ ըլլայ Ընդհանրական Եկեղեցիէն, որ՝ ինչպէս Փոքր Ասիոյ մէջ ապազգայնացուցած եւ քրիստոնէական ընդհանուր եղբայրութեան մէջ ձուլած էր բազմաթիւ եւ այլազան ժողովուրդներ, որոնք երբեմն կը կոչուէին Կապադովկիացի, Պոնտացի, Պափլագոնիացի, Փիւռիկեցի, Բիւթանացի եւ այլ անուններով, նոյնպէս նաեւ կ'սպառնար ձուլել Հայերը բիւզանդականութեան մէջ:

Այսպէս, կազմակերպուեցաւ եւ կերտուեցաւ այն սքանչելի յօրինուածքը՝ Հայաստանեայց Առաքելական եկեղեցին՝ որ Է. դարէն յետոյ ամենամեծ նեցուկը եւ յենարանը պիտի ըլլար Հայ ազգին:

Օրմանեան Ս. Հայ Եկեղեցին արդարացիօրէն կը կոչէ «Հայադաւան», վասնզի անիկա Հայ ազգութեան հետ ձուլուած եւ միաւորուած է, եւ Հայերը միշտ իրենց կրօնքը որակած են իրաւամբ «Հայ-Քրիստոնէութիւն», որ իսկապէս ճիշդ բացատրութիւն մըն է:

Այո՛, «Հայ-Քրիստոնէութիւնն» էր որ Ե. դարէն սկսեալ, իր ինքնագլուխ եւ անկախ գոյութիւնը ապահովելէ յետոյ, կենսունակ զօրութիւն մը եղաւ ազգին մէջ եւ հիանալի դեր մը կատարեց, վասնզի ներքին քարոզչական աշխատութեամբ՝ հայացուց Հայաստանի կէս-հայացած նահանգները՝ եւ նոյնիսկ Հայաստանի սահմաններէն դուրս թափանցեց եւ յաջողեցաւ Հայադաւան դարձնել դրացի հայախօս եւ նոյնիսկ ոչ-հայախօս շրջանները, եւ այսպէս հայադաւանութեան կամ հայ-քրիստոնեայ աշխարհին սահմանները ընդարձակեց:

Հայաստան, ինչպէս ծանօթ է, քրիստոնեայ քարոզիչներ ընդունած է նոյնիսկ մեր թուականին առաջին դարերուն: Պատմական որոշ տուեալներ ունինք, ազգային եւ օտար պատմիչներէ աւանդուած, որոնք կը հաստատեն թէ նախ քան Գրիգոր Լուսաւորիչ, Հայաստանի մէջ կային քրիստոնեայ Հայեր, որոնք ունէին նոյնիսկ իրենց յատուկ հովիւները, կամ եպիսկոպոսները, եւ յարաբերութեան մէջ էին ընդհանրական եկեղեցիին հետ:

Գրիգոր Լուսաւորիչ՝ Կապադովկեան եկեղեցիէն

(1) Հայոց հեթանոսական կրօնքը գլխաւորաբար ուսումնասիրած են հետեւեալ հեղինակները.— Հ. Միքայէլ Չամչեան, Հ. Ղուկաս Ինճիճեան, Հ. Յովսէփ Գաթըրճեան, Մկրտիչ Էմին, Կ. Կոստանեանց, Մ. Ա. Գարագաշեան, Հ. Բարսեղ Սարգիսեան, Հ. Ղ. Ալիշան, Գելցեր, Գարիէր. Եղիշէ Պատրիարք Դուրեան, Մ. Աբեղեան, Սիմոն Վէպէր, Մ. Անանիկեան, Տօքթ. Տաղաւարեան եւայլն, որոնցմէ ոչ մէկը կրցած է Հայ հեթանոսական կրօնքին դարերու ընթացքին կրած շրջափոխութեանց ուղին ներկայացնել, պարզապէս աղբիւրներու չգոյութեան պատճառով:



32
34
36
38
40
42
44
46
48
Գերրոս գ.
Կուր գետ
Երասխ գ.
Գարդման
Տայք
Սպեր
Եկեղեաց
Բասեն
Վանանդ
Բագրատունիք
Արշարունիք
Ամատունիք
Ոստան
Բագրևանդ
Մարդաղի
Արդամունիք
Հարք
Ապահունիք
Խորխոռունիք
Տարոն
Բզնունիք
Գնունիք
Մարդաստան
Սյունիք
Գողթն
Արծրունիք
Պալունիք
Երուանդունիք
Միհրունիք
Ռշտունիք
Մոկք
Անձևացիք
Բուժունիք
Աղձնիք
Հեր
Զարևանդ
Ուտայն
Դ. Հայք
Արածանի
Եփրատ գ.
Ասորիք
Միւս Ասորիք
Տիգրիս գ. Մեծ կամ
փոքր Զար
Սիհուն գ.
Ճիհուն գ.

# ՀԱՅԱԴԱՒԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կարմիր գիծը ցոյց կու տայ Ս. Գրիգոր Լուսաւորիչի քարոզչութեան շրջանակը ըստ Ագաթանգեղոսի։
2. Կարմիր խաչանիշով սահմանագծուած է Ժ. դարուն Հայադաւան երկիրները։
3. Կարմիր կէտով սահմանագծուած է ԺԱ. դարուն Հայադաւան երկիրները։
4. Խաչաձեւ գիծերով նշանակուած է Ներսէս Պարթեւի Հայրապետական սեփական վիճակները և Հայաստանի ամէնէն կանուխ քրիստոնէացած վայրերը։
5. Ձախէն աջ ուղղութեամբ շեղագիծ նշանակուած են Ե. դարուն քրիստոնէութեան ամրացած շրջանները։
6. Աջէն ձախ ուղղութեամբ շեղագիծ նշանակուած են Ե. դարուն վերստին քարոզութեամբ քրիստոնէութեան ամրապնդուած շրջանները։

ղրկուած դէպի Հայաստան, իր գործակիցներով յաջողեցաւ Հայերը զանգուածային կերպով քրիստոնեայ դարձնել 279ին (1)։ Իրեն համար մեծ յաղթանակ մըն էր հայ արքունիքն քրիստոնեայ ընելը, եւ նախարարարական տուները նոր կրօնքին հնազանդեցնելը։ Աւազանին եւ արքունիքին՝ ժողովուրդն ալ հետեւեցաւ, առանց շատ թափանցելու նոր կրօնքին հոգւոյն, ինչպէս որոշ կերպով կը յիշատակէ Փաւստոս, մօտաւորապէս հարիւր տարի յետոյ դառնապէս զանգատելով որ Հայերը տակաւին կը պահէին իրենց հեթանոսական սովորութիւնները, կենցաղը եւ բարքերը (Փաւստոս Գ. ժգ)։

Ագաթանգեղոս (էջ 627—7) թէեւ այնպէս մը կը ներկայացնէ թէ Գր. Լուսաւորիչ քարոզած եւ քրիստոնեայ ըրած է «Ընդ ամենայն երկիրն Հայոց ի ծագաց մինչեւ ի ծագս… ի Սատաղացւոց քաղաքէն մինչեւ առ աշխարհաւն Խաղտեաց, մինչեւ առ Կաղարջօք, մինչ ի սպառ ի սահմանս Մասքթաց մինչեւ ի դրունս Ալանաց, մինչ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց եւ յԱմտացւոց քաղաքէն մինչեւ առ Մըծբին քաղաքաւ, քերէր առ սահմանօքն Ասորւոց, առ Նոր Շիրական երկրաւն եւ առ Կորդւօք մինչեւ յամուր երկիրն Մարաց, մինչեւ առ տամբն Մահքրտոն իշխանին, մինչեւ յԱտրպատական ձգէր տարածուէր աւետարանութիւնն իւր», սակայն հաւանական չէ բնաւ որ անիկա ամբողջ այս տարածութիւնը իսկապէս քրիստոնեայ դարձնել յաջողած ըլլայ։

Գր. Լուսաւորիչ եւ իր հետեւորդները մասնաւորապէս իրենց բոլոր ոյժը թափեցին Հայաստանի քրմական կեդրոնները գրաւելու ու մեհեաններուն ծառայող քուրմերը քրիստոնեայ դարձնելու։

Արդ, որոշ է թէ Հայաստանի ութը գլխաւոր մեհեանները կը գտնուէին առաւելապէս Արաքսի եւ Եփրատի հովիտներուն մէջ, որով առաջին անգամ քրիստոնէացած շրջաններն եղան Այրարատը, Տարօնը, Եկեղեաց գաւառը, եւ մանաւանդ Ծոփքը (յետոյ Դ. Հայք կոչուած նահանգը) որ իբրեւ Կապադովկիոյ դրացի երկրամաս մը՝ թերեւս աւելի կանուխ քրիստոնեայ եղած էր։

Այնպէս որ՝ Դ. դարուն ամբողջ երկիրը կատարելապէս քրիստոնէացած չէր, եւ Հայաստանի զանազան մասերուն մէջ տակաւին կ'ապրէր հեթանոսութիւնը։

Այս մասին Փաւստոս Բիւզանդացիէն զատ, որ դժգոհ էր երկիրին մէջ պահուած հեթանոսական սովորութիւններուն եւ բարքերուն համար, Ե. դարուն սկիզբէն ունինք ուրիշ փաստ մը, անժխտելի կերպով վաւերական, (որ ժամանակակից մատենագիր մը, Կորիւն կ'ընծայէ մեզի) Իր վարդապետին՝ Մաշթոցի կենսագրութեան մէջ։ Կորիւն կը պատմէ թէ ինչպէս Սահակ Պարթեւ եւ Մեսրոպ Մաշթոց, կը համաձայնին *«որպէսզի Տէր եպիսկոպոսն* (հիմա՝ Սահակ) *ի կայենականսն, եւ նա* (իմա Մաշթոց) *ի սփիւռս հեթանոսաց զբանն կենաց սերմանիցէն»* (*Վարք Մաշթոցի*, 1930, Երուսաղէմ, էջ 28)։

Այս խօսքերէն որոշ է թէ Մաշթոց պիտի քարոզէր Հեթանոսներուն, այսինքն ոչ-քրիստոնեաներուն։ Եւ նըկատելի է որ այս հեթանոս վայրերուն առաջինը կը նշանակուի Գողթան գաւառը (երբեմն Վասպուրականի եւ երբեմն Սիւնեաց նահանգին կցուած), ուր *«ընտելական սովորութեամբ ի կիրարկեալ զվարդապետութիւնն… լի առնէր զգաւառն ողջունիւ Աւետարանին Քրիստոսի եւ կարգէր յամենայն գիւղս գաւառին դասս սրբոց վանականաց»* (Նոյն, էջ 29)։

Ուրեմն՝ Սիւնեաց եւ Վասպուրականի միջնասահման տեղ մը եւ հոծ Հայութեան կեդրոն մը, տակաւին Ե. դարուն կը մնար Հեթանոս՝ գոնէ մասամբ, եւ Մաշթոց կ'երթար հոն քարոզելու երկրորդ անգամ, վասնզի նախապէս ալ հոն՝

«յանկարգ եւ յանդարման տեղիս Գողթան» գացած էր երբեմն «աստարութեամբ իշխանին, զերեալ զամենեսեան ի հայրենեաց աւանդելոց, եւ ի սատանայական դիւապաշտ սպասաւորութենէն ի հնազանդութիւն Քրիստոսի» մատուցած էր (Կորիւն, էջ 15).

Գողթան գաւառին այս երկրորդ այցելութենէն յետոյ է որ՝

«ի սահմանակիցս ի Սիւնական աշխարհն եղանէր, եւ անդ աստուածասէր հնազանդութեամբ ընկալեալ զնա իշխանին Սիւնեաց, որ էր Վաղինակ անուն, բազում օգնականութիւն գտեալ ի նմանէն վասն իրացն առաջի արկելոց՝ մինչեւ՝ հասանել նմա բովանդակ ի վերայ սահմանացն Սիւնեաց։ Եւ ժողովեալ մանկունս առ ի նիւթ վարդապետութեան, առաւել զգազանամիտս՝ զվայրենագոյն՝ զհիւաղաբարոյ կոչմանցն, եւ այնչափ փոյթ ի վերայ ունելով եւ դայեկաբար սնուցանել եւ խրատել մինչեւ ի նոցունց իսկ ի վայրենեացն եպիսկոպոս՝ տեսուչ եկեղեցւոյն Սիւնեաց կարգել, որոյ անուն կոչէր Անանիաս, այր սուրբ եւ երեւելի՝ հայրաբարոյ ժառանգաւորաց եկեղեցւոյ. ապա եւ զերկիրն Սիւնեաց վանականօք լնոյր» (*Նոյն*, էջ 29—30)

Ասկէ բացորոշ կը հասկցուի որ Սիւնեաց նահանգը եւս մինչեւ այդ թուականները կը մնար տակաւին հեթանոս, գէթ մասամբ, եւ Մաշթոց կը քարոզէր եւ կը կազմակերպէր։

Մաշթոց նաեւ Վրաստանի մէջ կը գործէ եւ «զաղտ եւ զժանգ շարաւահոտ դիւացն եւ զանոտիագործ պաշտամանն ի բաց բերեալ, այնչափ անջատեալ ի հայրենեաց իւրեանց եւ այն յիշատակ ցուցանել մինչեւ ասել թէ «մոռացայ զժողովուրդ իմ եւ զտուն հօր իմոյ» (*Նոյն*, էջ 31—32)։

Այս տողերն ալ ցոյց կու տան՝ թէ Վրացիք տակաւին Ե. դարուն, թէեւ Գր. Լուսաւորիչէ քրիստոնեայ

(1) *Ըստ Ա. Մալխասեանի* (*տես* Էջմիածին *ամսաթերթ* Ա. 1944 *թ.* 1 *էջ* 22—26)։ *Հ. Ներսէս Ակինեան անհամաձայն է եւ աւելի կանուխ՝* 220*ին կը տանի Լուսաւորիչի քարոզութիւնը եւ Հայոց քրիստոնէութիւնը ընդունիլը* (*տես* Արեւ 1945 *Յունիս* 30 *թ.* 8068)։ *Միայն թէ իր փաստերը կը կարօտին աւելի հիմնաւորուելու եւ մշակութեան։ Իր ներկայացուցած ձեւին մէջ կը մնան շատ տարակուսելի կէտեր։*

դարձած, կը պահէին հեթանոսութիւնը կամ մակերեւոյթաբար միայն քրիստոնեացած էին:

Մաշթոց, ինչպէս կը պատմէ Կորիւն, աւելի վերջը այցելած է Աղուանից աշխարհը, որ թէեւ քրիստոնեայ եղած՝ սակայն Կորիւնէն *«վայրենամիտ եւ դատարկասուն եւ անասնաբարոյ»* կ'որակուի *(Նոյն*, էջ 43*)* եւ իրենց գիրերու գիւտէն յետոյ է որ «մարգարէագէտք եւ առաքելածանօթք եւ աւետարանաժառանգք լինէին եւ ամենայն աւանդելոցն Աստուծոյ ոչ իւիք անտեղեակք» *(Նոյն*, էջ 43*)*: Յետոյ Մաշթոց կ'այցելէ *«ի Բաղասական կողմանս»* ուրնք արդէն քրիստոնեայ էին եւ եպիսկոպոս (Մուշեղ*)* մըն ալ ունէին, սակայն անոնց հաւատքն ալ կ'ամրապնդէ:

Այս վայրը ոմանք կը կարծեն թէ ըլլայ Հայոց Ուտի նահանգը, դրացի Աղուանից երկիրին *(*1):

Վրացիք եւ Աղուանք դուրս կը մնային Հայաստանէն, սակայն ինչպէս տեսնուեցաւ՝ Գողթան գաւառը եւ Սիւնեաց նահանգը եւս հեթանոս էին, ինչպէս հարաւի մէջ՝ Մարաց կողմերը «որք ոչ միայն

վասն դիւական սատանայակիր բարուցն հիւանդութեան, այլ եւ վասն խեցբեկագոյն եւ խոշորագոյն լեզուին դժուարամատոյցք էին, առ ի յարդարել եւ զնոսա հարանց ամացն ծնունդս, առեալ պարզախօս՝ հռետորաբանս, կրթեալս աստուածատուր իմաստութեան ծանօթս կացուցանէին» *(Նոյն*, էջ 23):

Անշուշտ կային ուրիշ ծայրագաւառներ ալ, որոնք պէտք եղածին պէս քրիստոնեայ չէին:

Սակայն, ինչպէս կը թուի Հայ գիրերու գիւտէն, այսինքն 404էն մինչեւ 451 թուականը սահող հազիւ կէս դարու ժամանակամիջոցին, Հայ Եկեղեցին զօրացած հայախօս Ս. Գիրքերով, եռանդուն քարոզչութեամբ մը յաջողած է ամբողջ Հայաստանը եւ դրացի քանի մը ժողովուրդները, ինչպէս Աղուանները, Վրացիները, եւ այլ Կովկասեան ազգերը *(2)* այնքան եռանդուն քրիստոնեաներ դարձնել, որ անոնք 451ին ամէնքը միասին իբր մէկ ճակատ՝ Յազկերտի դէմ կանգնեցան եւ յանձն առին իրենց կրօնքին համար նահատակուիլ:

Երբ առձեռն ունենայինք Հայ Եկեղեցիին թեմական կազմակերպութեան պատմութիւնը լուսաբանող փաստեր, թերեւս կարելի ըլլար նշել թէ քրիստոնէութիւնը Հայաստանի ո՛ր նահանգներուն մէջ աւելի կանուխ ամրապնդուած է:

Դժբախտաբար շատ քիչ են այս մասին մեր ունեցած ծանօթութիւնները, եւ յաճախ աւանդութիւններ են, որոնք վաւերական չեն:

Երբ հաւատ ընծայել կարելի է Ագաթանգեղոսի, Լուսաւորիչ ձեռնադրած էր 12 եպիսկոպոսներ, որոնք երբ իսկապէս թեմակալներ ըլլային Հայ Եկեղեցին իր սկզբնաւորութեան ժամանակամիջոցին իսկ պիտի ունեցած ըլլար 12 թեմակալութիւն: Սակայն Յ. Մարկուարդ կը կարծէ՝ թէ (տես *Հայկական թեմերուն սկզբնաւորութիւնը*, ՀԱ. 1934, էջ 112—124), հակառակ հայ պատմագիրներու ջանքերուն, որպէսզի եպիսկոպոսական թեմերու մեծ թիւ մը ներկայացնեն, Հայ եպիսկոպոսներու թիւը շատ սահմանափակ էր Լուսաւորիչի եւ անոր անմիջական յաջորդներուն ատեն:

«Հայ Եկեղեցւոյ հիմնարկութեան ժամանակ նախնաբար՝ Գործք Առաքելոցի օրինակին վրայ եօթը Սարկաւագ, վերակացու Եպիսկոպոս դրուեցաւ աղքատներու խնամքին եւ տնտեսութեան համար: Վերջէն երբ անոնք կանոնական իմաստով «եպիսկոպոս» անուանուեցան, անոնց թիւը նախ տասի, յետոյ տասներկուքի բարձրացուցին: Ներսէսի ժամանակ, երբ անոնց նշանակութիւնը մեծցած էր, առաքեալներն յիշել ուզելով անոնց թիւը 12ի բարձրացուցին» *(*ՀԱ. 1934, էջ 124*)*:

Յ. Մարկուարդ իր հետազօտութեան իբր եզրակացութիւթիւն կ'ըսէ՝ թէ

«Լուսաւորիչի ժամանակ Հայաստանի մէջ կային երեք եպիսկոպոս միայն: Ինքը՝ Գրիգոր Լուսաւորիչ, իւր որդին ու աթոռակիցը՝ Արիստակէս, եւ իւր ընդհանուր փոխանորդը՝ Դանիէլ քորեպիսկոպոս Տարօնոյ» *(*Die Entstehung, էջ 187*)*:

Ծոփք, որ այն ժամանակ Հռոմէական կայսրութեան հող էր *(3)* հարաւային Հայաստանի մէջ, իբր առաքեալ եպիսկոպոս *(*քորեպիսկոպոս*)* ունէր Արիստակէսը *(Նոյն*, էջ 199*)*:

Ուրեմն՝ Լուսաւորիչի ժամանակները աւելի շրջուն եպիսկոպոսներ կային քան հաստատուն թեմակալներ: Անոնք կը գործէին Հայաստանի մէջ. ծայրագաւառները եւ սահմանէն դուրս: Այդպէս էին Դանիէլ քորեպիսկոպոսը *(4)*, որ մինչեւ Պարսկաստան գացած

(1) *Գառնիկ Ֆնտգլեան* (Կորիւն, *էջ* 44) *կ'ենթադրէ թէ ան Աղուանից երկիրին ծայրը դէպի արեւելեան հիւսիս դրացի Բաղասականներու երկիրն է, դրացի Մաղքթաց, Ալանաց եւ Հոնաց* (*Հմմտ. Եղիշէ Է.* 39 *եւ Փաւստոս Դ. Է*)*: Բաղասական տոհմին մասին* (*տես. նաեւ Մակար եպս. Բարխուդարեանց*, Պատմ. Աղուանից *էջ* 23—25):

(2) *Հայերու Կովկասեան ժողովուրդներուն մէջ քրիստոնէութիւնը տարածելու համար կատարած ջանքերը ամբողջական կերպով պատկերացուցած է Գէորգ Մեսրոպ* (*տես* Հայրենիք *ամսագիր, Բ. տարի, Թ.* 1, *եւ ԺԲ. տարի Թ.* 9 *և* 11, *և* Հակարան. *Սոֆիա*, 1931, *էջ* 201—215):

(3) *Աղձնիք և Ծոփք* 297*էն անցան Հռոմի եւ Յունացին Հռոմէական տիրապետութեան տակ մինչեւ* 363:

(4) *Ըստ Մարկուարդի՝ Դանիէլ Տարօնի եպիսկոպոսն էր եւ մասնակցած է Նիկիոյ ժողովին, որուն իբր ներկայ յիշուած է Ակրիտէս հայ եպիսկոպոս մը: Մարկուարդ կը կարծէ թէ Ակրիտէս=Վահրիճ=յաջորդական մակդիրն էր Դանիէլ եպիսկոպոսի* (*տես* Հայրենիք *ամսագիր, ԺԴ. տարի, Թ.* 3) *իսկ Հ. Ներսէս վրդ. Ակինեան համոզուած է թէ Նիկիոյ ժողովին մասնակցած է՝ իբր հովուապետ Հայաստանի՝ Արիստակէս, որուն հայրապետութեան ժամանակամիջոցը կը համարէ* 298*էն* 339 *թուականները* (*տես* Արեւ, 1945 *Յունիս* 30 *Թ.* 8068) *մինչ Օրմանեան անոր հայրապետութեան ժամանակամիջոցը նշանակած է* 325*էն* 333 (Ազգապատում *և Ստեփաննոս Մալխասեան՝* 308*էն* 315 (Էջմիածին, 1944, *Թ.* 1)*: Նիկիոյ ժողովը գումարուած է* 325*ին, որով ըստ Օրմանեանի՝ Արիստակէսի հայրապետութենէն առաջ կամ առաջին տարին, և ըստ Մալխասեանի ընաւ ներկայ գտնուած չէ կրնար ըլլալ: Ժողովին մասնակից* 318 *հայրապետներու կարգին կը յիշուի Հայոց մեծաց Արիստարքոս կամ Արիստակիոս կամ Արսափիոս անունով եպիսկոպոս, զոր Օրմանեան կը կարծէ մեր Արիստակէսը, թէպէտ օրինակէ օրինակ անունը աղաւաղուած* (Ազգապատում, *էջ* 112):

էր, Մանուկն Գրիգորիս, որ մինչեւ հիւսիսային Կովկաս տարածած էր իր քարոզչական շրջանակը եւ թերեւս նաեւ Արիստակէս, որ Ծոփաց եւ թերեւս հարաւային սահմանակից երկիրներու մէջ գործած էր (հմմտ. Յ.Մարկուարդ, ՀԱ. 1934, էջ 124):

Աւելի ուշ՝ Հայաստանեայց Եկեղեցին ունեցած պէտք է ըլլայ իր թեմական կազմակերպութիւնը, որ հետզհետէ կանոնաւորուած է: Սակայն, ինչպէս դիտել տուի, դժբախտաբար վաւերական տուեալներ չունինք անոր զարգացումը ցոյց տուող: Մասնաւորապէս նախ քան Ե. դար մեր ունեցած ծանօթութիւնները խիստ սահմանափակ են:

Ինչպէս տեսնուեցաւ՝ Յ. Մարկուարդ կը կարծէ թէ Լուսաւորիչէն մինչեւ Մեծն Ներսէս խիստ սահմանափակ էր Հայ եպիսկոպոսական թեմերու թիւը:

Այս ժամանակամիջոցին՝ միայն Վրթանէսի ժամանակ (315–330) կը յիշուի թէ Հայրապետանոցի վերակացու եպիսկոպոսներէն երկուքը՝ արքունական Աղբիանոս եւ Եւտաղիոս, Մանաւազեան (1) եւ Որդունի (2) նախարարութիւններու ջնջումով՝ թեմ ստացան:

Ներսէս Պարթեւ Մեծ հայրապետին ժամանակ, երբ քրիստոնէական հաւատքը բաւական ամրապնդուած էր Հայաստանի մէջ, ամէն կողմ պաշտօնեաներ նշանակուեցան:

Ներսէս *«բազմացոյց զկարգս պաշտօնէից յամենայն տեղիս իշխանութեանն ի սահմանացն Հայոց, եւ յամենայն գաւառս կացոյց տեսուչս եպիսկոպոս եւ հանապազ զգուշանայր տեսչութեան իւրոյ եւ իշխանութեան, որչափ եկաց նա ժամանակս»* (Փաւստոս, Է. խա., էջ 270—271): Եւ որչափ կ'երեւի Փաւստոսի մէկ խօսքէն Ներսէսի հօտին տարածութիւնը ամբողջ Հայաստանը չէր ընդգրկեր: Ան կ'ըսէ՝ թէ

«զայնու ժամանակաւ սուրբն Ներսէս շրջէր ընդ իւր ձեռական իշխանութիւնն, զի հնգետասան գաւառ զայն ձեռական իշխանութեան ունէին իբրեւ սեպհական ի բնէ, առանձին առոշոզի նոցա էր կարգեալ: Եւ յայն գաւառ գլխաւոր գաւառք այս էին, Այրարատ, Դարանաղի, Եկեղեաց, Տարօն, Բզնունիք, Ծոփք, եւ որ ընդ մէջ նոցա եւ որ շուրջ զնոքօք» (*Փաւստոս*, Դ. ժդ.) (3):

Դ. դարէն միայն 12 եպիսկոպոսութիւններ կրնային գոյութիւն ունեցած ըլլալ, եթէ Յ. Մարկուարդի նկատողութիւնները առանց նկատի առնելու՝ Ագաթանգեղոսի խօսքերը առնենք իրենց տառական իմաստով, թէեւ ան նշած չըլլայ իր յիշատակած եպիսկոպոսներուն թեմերը կամ պաշտօնները:

Ըստ Հ. Ն. Ակինեանի (*Եղիշէ վարդապետ եւ իւր պատմութիւնն Հայոց պատերազմի*, էջ 622)՝ Դ. դարուն պէտք է գոյութիւն ունեցած ըլլային 12 թեմեր (4), սակայն իբր ծանօթ կը յիշատակէ միայն հետեւեալ 8 թեմերը (5). —

1.— Մանաւազակերտի (Մանազկերտի) կամ կողմանցն Եփրատական գետոյն,
2.— Բզնունեաց,
3.— Բասենոյ,
4.— Բագրեւանդայ եւ Արշարունեաց,
5.— Տայոց,
6.— Վանանդայ,
7.— Աղձնեաց,
8.— Կորդուաց,

Իսկ Ե. դարուն կէսերը, Ղազար Փարպեցիի եւ Եղիշէի վկայութեամբ, անոնց թիւը հասած էր 17ի՝ միայն պարսկական Հայաստանի մէջ, առանց հաշուելու Բիւզանդական Հայաստանի թեմերը, որոնց մէջ կը գտնուէին Դ. դարէն ծանօթ Աղձնեաց եւ Կորդուաց եպիսկոպոսութիւնները եւ ուրիշներ, ինչպէս հաւանօրէն Դ. Հայոց (Ծոփք, Հաշտեանք), եւ Բարձր Հայոց (Կարին, Դերջան, Եկեղեաց եւայլն) նահանգներուն մէջ գտնուող եպիսկոպոսութիւնները (Հ. Ակինեան, *նոյն*, էջ 621), որոնց անյիշատակ մնալը իբր ոչ-մասնակից Արտաշատի ժողովին զարմանալի պէտք չէ թուի քանի որ այդ ժամանակամիջոցին Բարձր Հայք, Դ. Հայք, Աղձնիք եւ Կորճէք, այսինքն Հայաստանի արեւմտեան եւ հարաւային չորս նահանգները՝ Բիւզանդական տիրապետութեան տակ կը գտնուէին: Արդարեւ, Արտաշատի ժողովին կը մասնակցին հետեւեալ 17 եպիսկոպոսները.—

| | | | |
|---|---|---|---|
| 1.— Հայոց կաթողիկոսը | | Արարատեան | նահանգէն |
| 2.— Բագրեւանդի | Եպիսկոպ. | „ | „ |
| 3.— Բասենի | „ | „ | „ |
| 4.— Վանանդի | „ | „ | „ |
| 5.— Ամատունեաց | „ | „ | „ |
| 6.— Մամիկոնէից | „ | Տուրուբերան | „ |
| 7.— Հարքի=Մանազկերտի | „ | „ | „ |
| 8.— Բզնունեաց Եպիսկոպոսը | | „ | „ |
| 9.— Տարբերունեաց կամ Արշամունեաց | | „ | „ |
| 10.— Ապահունեաց եպիսկոպոս | | „ | „ |
| 11.— Արծրունեաց | „ | Վասպուրական | „ |
| 12.— Ռշտունեաց | „ | „ | „ |
| 13.— Անձեւացեաց | „ | „ | „ |
| 14.— Մարդպետական | „ | „ | „ |
| 15.— Սիւնեաց | „ | Համանուն | „ |
| 16.— Մոկսի | „ | „ | „ |
| 17.— Տայքի | „ | „ | „ |

Այս ցուցակին մէջ՝ ինչպէս կը տեսնուի՝ Դ. դարէն ծանօթ բոլոր եպիսկոպոսական աթոռները յիշուած են, բայց Աղձնեաց եւ Կորդուաց եպիսկոպոսներէն, որոնք չէին կրնար մասնակցիլ ժողովին, բիւզանդական երկիրներէն Պարսկական մասը գալով:

Այս ցուցակը, ցոյց կու տայ թէ երկիրին մէկ մասին՝ Պարսկական Հայաստանի մէջ մէկ դարու ընթաց-

(1) *Ըստ Փաւստոսի* (Գ. ա.) *«Մանաւազակերտ ամենայն սահմանօքն եւ գաւառակաւ հանդերձ՝ որ շուրջ զնովօք էր, որ կայ ի կողմանս գետոյն Եփրատայ», այնպէս որ «Եփրատացւոց եպիսկոպոս» ալ կոչուած է* (Ազգապատում, *էջ* 99).

(2) *Փաւստոսի* (Գ. ա.) *խօսքերէն այնպէս կը հասկցուի թէ Բասենի եպիսկոպոսութեան սկզբնաւորութիւնն է.*

(3) *Օրմանեան* (Ազգապատում, *էջ* 255) *այս հատուածին համար կու տայ մեկնութիւն մը որ հեռու է համոզիչ ըլլալէ:*

(4 *Ասոնց մասին՝ ըստ Հ. Ակինեանի՝ շատ անգոհացուցիչ կերպով կը խօսին Փաւստոս և անոր ազդեցութեան տակ Ագաթանգեղոս* (Եղիշէ վարդապետ, *էջ* 622).

5) *Հ. Ակինեան, ինչպէս կը տեսնուի, Տարօնը չէ յիշատակած, մինչ շատ մը փաստեր կան ցոյց տուող՝ թէ Տարօն ալ կը կազմէր թեմ մը և նախապատիւ աթոռ մը.*

քին եպիսկոպոսական աթոռները որքան շատցած էին:

Նոյնպէս շատ նշանակելի է՝ թէ հակառակ անոր որ Պարսկական Հայաստանը կը պարունակէր Հայաստանի 15 նահանգներէն միայն 11 հատը, այդ 11 նահանգներէն միայն 6ին սահմաններուն մէջ գտնուող եպիսկոպոսները կը մասնակցէին Արտաշատի ժողովին (449—450) եւ աւելի նշանակելի է որ այդ վեց նահանգներէն երեքին՝ Այրարատի, Տուրուբերանի եւ Վասպուրականի եպիսկոպոսները բազմաթիւ էին, իսկ միւս երեքինը՝ միայն մէկ մէկ հատ:

Ասիկա կարեւոր փաստ մըն է, որ ցոյց կու տայ թէ Ե. դարուն՝ Այրարատ, Տուրուբերան եւ Վասպուրական երեք նահանգները իսկապէս կը կազմէին հայ քրիստոնէութեան միջնաբերդը. իսկ ցեղագրապէս եւ լեզուով կէս-հայացած կարգ մը նահանգներ, ինչպէս Կորտուք, Պարսկահայք, Փայտակարան, Արցախ, Գուգարք՝ կը ներկայացնէին քրիստոնէապէս ալ յետադէմ վիճակ մը:

Արդէն հայ ցեղին քաղաքակրթութեան օրօրանը եւ իր բոլոր արտայայտիչ ստեղծագործութիւնները առաւելապէս Հայկական Բարձրաւանդակին միջնաբերդը կազմող չորս նահանգներուն՝ Այրարատի, Տուրուբերանի, Վասպուրականի եւ Սիւնիքի մէջ կեդրոնացած էին:

Առնցմէ առաջին երեքը Ե—Զ. դարերուն կը ներկայացնէին աւելի սերտ միութիւն մը, իսկ Սիւնիք, որ քաղաքականապէս Հայաստանի միութենէն բաժնուելու ձգտումներ ունէր, կրօնապէս ալ հայկական կեդրոնական նահանգներուն մէջ միակն էր որ քրիստոնէութեան նկատմամբ ալ քիչ մը արտակեդրոն էր, վասնզի, ինչպէս Կորիւնի վկայութեամբ տեսնուեցաւ, այդ նահանգը մինչեւ Ե. դար պէտք եղածին պէս քրիստոնէացած չէր եւ ատոր համար էր որ Մաշթոց իր առաքելական գործունէութեան դաշտ ընտրած էր Սիւնիքը, ուրուն Վասակ իշխանը — յետոյ Հայաստանի Մարզպանը — զինք մեծապէս քաջալերած եւ խրախուսած էր թէ՛ քրիստոնէութեան արմատացման եւ թէ՛ Հայ դպրոցներու հաստատութեան համար: Մաշտոցն էր, որ Սիւնեաց աթոռին վրայ հաստատեց իր աշակերտներէն Անանիան, որմէ ետք անընդհատ շարունակուած է Սիւնեաց աթոռը, որ այդ նահանգը շատ ընդարձակ չըլլալուն համար թերեւս մինչեւ վերջը պահեց իր միութիւնը, անշուշտ ոչ առանց փորձութեան պահեր ունենալու: Իսկ Այրարատ, Տուրուբերան, եւ Վասպուրական, ընդարձակ կեդրոնական նահանգներուն մէջ, եպիսկոպոսարաններու թիւը շատցաւ հետզհետէ։

Արդարեւ,

Այրարատեան նահանգը որ ունէր 21 գաւառներ, իր մէջ ունէր 9 եպիսկոպոսութիւն.—

| | | |
|---|---|---|
| 1.— Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը | Դ. | դարէն |
| 2.— Բագրեւանդ | „ | „ |
| 3.— Բասեն | „ | „ |
| 4.— Վանանդ | „ | „ |
| 5.— Արշարունիք | „ | „ |
| 6.— Ամատունիք | Ե—Զ. | „ |
| 7.— Բագրատունիք | Է. | „ |
| 8.— Դուին-Բզնի=Կարբի | Է. | „ |

Տուրուբերանի նահանգը, որ ունէր 16 գաւառներ, իր մէջ ունէր 9 եպիսկոպոսութիւն.—

| | | | |
|---|---|---|---|
| 1.— Հարք | Դ. | դարէն | |
| 2.— Բզնունիք | Դ. | „ | |
| 3.— Տարօն | Դ. | „ | |
| 4.— Արշամունիք | Զ. | „ | |
| 5.— Մարդաղի | Զ. | „ | |
| 6.— Ապահունիք | Զ. | „ | |
| 6.— Ապահունիք | Զ. | „ | վերջերէն |
| 7. Գնունիք | Զ. | „ | „ |
| 8.— Խոռխոռունիք | Զ. | „ | „ |
| 9.— Ասպականունեաց | Ը. | „ | |

Վասպուրականի 35 գաւառներէն 9ը ունէր եպիսկոպոսներ.—

| | | | |
|---|---|---|---|
| 1.— Ռշտունիք | Ե–Զ. | դարէն | |
| 2.— Անձեւացիք | „ | „ | „ |
| 3.— Մարդաստան | „ | „ | „ |
| 4.— Պալունիք | Զ. | դարու | վերջերէն |
| 5.— Մեհունիք-Մեծունիք | „ | „ | „ |
| 6.— Բուժունիք | „ | „ | „ |
| 7.— Ակէ | „ | „ | „ |
| 8.— Գողթն | „ | „ | „ |
| 9.— Արտազ | Է. | դարէն | |

Իսկ Սիւնեաց նահանգը կը մնար անբաժան մէկ եպիսկոպոսութիւն: Գալով Բիւզանդական Հայաստանի կցուած Բարձր Հայքի, Դ. Հայքի, Տայքի, Աղձնիքի, ատոնց մասին դժբախտաբար մեր ծանօթութիւնները շատ քիչ են:

Հաւանօրէն Բարձր Հայքի 9 գաւառներէն 5ը (Դարանաղի, Եկեղեաց, Դերջան, Սպեր, Կարին):

Դ.— Հայքի 9 գաւառներէն 4ը (Ծոփք, Խորձեանք, Հաշտեանք, Հանձիթ եպիսկոպոսական աթոռներ ունեցած են:

Իսկ Տայք եւ Աղձնիք (1) ընդհանուր նահանգային եպիսկոպոսներու յիշատակութիւնը ունին միայն եւ նշանակելի է որ այս երկու նահանգները խառն բնակչութիւն ունէին:

Այս դասուն մէջ կարելի է համարել Մոկք եւ Կորտուք նահանգները եւս, որոնց առանձին եպիսկոպոսները կը յիշուին:

Իսկ պարսիկ տիրապետութեան տակ գտնուող Պարսկահայք նահանգին 10 գաւառներէն միայն երկուքը՝ Հեր եւ Զարեւանդ (2)՝ ունէին իրենց եպիսկոպոսները։

Արցախ եւ Ուտի հայ նահանգներ չէին, այլ աւելի աղուանական, եւ կապուած՝ առանձին կաթողիկոսութեան մը: Փայտակարանի անունով ոչ մէկ թեմական յիշատակութիւն կար, ինչպէս Գուգարքի, որ աւելի վրական էր քան հայկական:

(1) *Աղձնիք հաւանօրէն երբեմն Արծրունիներու կը պատկանէր։ Հետեւաբար Ե. և Զ. դարերուն յիշատակուած Արծրունեաց եպիսկոպոսները կը վերաբերին Աղձնիքի, եւ ոչ թէ Վասպուրականի նահանգին։*

(2) *Ոմանք կը խորհին թէ միայն Հեր ունեցած է իր եպիսկոպոսը և Զ. դարուն յիշուած եպիսկոպոսները այս անունով կը պատկանէին Այրարատեան նահանգին Զարեհաւանի, ինչ որ շատ հաւանական չէ։*

Ասոնք որոշ ցոյց կու տան թէ, ինչպէս հայ քրիստոնէութեան միջնաբերդը եղած են Այրարատեան, Տուրուբերանի, Վասպուրականի եւ Սիւնեաց նահանգները, որոնք ունեցած են կանոնաւոր եկեղեցական կազմակերպութիւն, իբրեւ պահանջ կամ հետեւանք հոծ Հայութեան մը, որ կրօնապէս ամուր եւ հաստատուն նկարագիր մը առած էր: Իսկ Բիւզանդական Հայաստանի մաս կազմող նահանգներէն Բարձր Հայք եւ Դ. Հայք՝ ունենալով հանդերձ նոյնքան հոծ հայութիւն եւ նոյնքան ալ թերեւս գիտակից քրիստոնեաներ, յունական մոլեռանդութեան պատճառով դժուարութիւններու առջեւ կը գտնուէին եւ չունէին հանգիստ եւ ազատութիւն իրենց եկեղեցական կազմակերպութիւնները անարգել վարելու համար:

Այնպէս որ յաջորդ տարիներուն, հակառակ անոր որ հայադաւանութեան ծիրը կ'ընդարձակուի, սակայն անիկա միայն դէպի արեւելք եւ դէպի հարաւ կրնայ տարածուիլ: Արդարեւ, կը տեսնենք թէ Հայաստանի արեւելեան ծայրագաւառներէն ոմանք եւ անոնց դրացի գաւառներ կ'ունենան Հայ եպիսկոպոսներ: Ժ. դարու պատմագիր մը՝ Ուխտանէս (Ա. 100) կը յիշէ ցուցակ մը հայ եպիսկոպոսութիւններու որոնք իբր թէ Լուսաւորիչէն հաստատուած էին: Անշուշտ այս հաւաստումը որ ոեւէ արժէք չի ներկայացներ, սակայն գոնէ իր ժամանակին մերձաւոր պատկերը տալու արժէքը ունի (1):

Ըստ Ուխտանէսի՝ այդ երեսուն եպիսկոպոսութիւններն էին.—

1. Հարք = Խնուս, Վերին Պուլանըխ
2. Ոստան (Դուին) = Գառնի Պազար
3. Տայք = Օլթի
4. Մարդաղի = Խնուս
5. Արշամունիք = Վարդոյ, Գոյնուկ
6. Արծրունիք = Վան
7. Սիւնիք = Ղարապաղ
8. Ռշտունիք = Գաւաշ, Ոստան
9. Մոկք = Մոկս
10. Ամատունիք = Էջմիածին, Սարդարապատ
11. Բասեն = Հասան Գալէ
12. Մամիկոնեանք-Տարօն = Մուշ
13. Բագրեւանդ = Ալաշկերտ
14. Խոռխոռունիք = Ալճավազ
15. Վանանդ = Կարս
16. Ապահունիք = Մանազկերտ
17. Աշարունիք = Զալտրան, Սհաբլու
18. Գնունիք = Բեկրի
19. Գողթն = Ագուլիս, Օրտուբատ
20. Գարդման = Գրդմանիկ
21. Ակէ = Մակու
22. Բուժունիք = Նորտուզ
23. Երուտակք = ? ?
24. Ասորիք = Ուրֆա
25. Անձեւացիք = Խօշաբ, Նորտուզ
26. Պալունիք = Օվանըգ
27. Մեհնունիք =
28. Էլոյ (Հեր) = Խոյ
29. Զարեհաւան = Սալմաստ
30. Միւսաւորիք (2) = Տիարպեքիր

Նոյն Ժ. դարուն ապրող նշանաւոր վարդապետ մը՝ Սամուէլ Կամրջաձորեցի եւս իբր թէ կազմած ունէր ուրիշ ցուցակ մը, զոր ԺԴ. դարու մատենագիրներէն Մխիթար Այրիվանեցի մէջ բերած է (Գարեգին Արքեպ. Յովսէփեան, *Մխիթար Այրիվանեցի, նորագիւտ արձանագրութիւնը եւ երկեր*, էջ 20):

Այս ցուցակն ալ, որ կը պարունակէ 30ի տեղ 38 եպիսկոպոսութիւններ, նոյնպէս իբր թէ Լուսաւորիչէն հաստատուած եպիսկոպոսութիւններու ցանկն էր:

Ըստ այս ցուցակին *«Սուրբն Գրիգոր կարգեաց գահագլուխ եպիսկոպոս ԼԸ. (38) ԺԹ. 119)։ յաջմէ եւ ԺԹ. (19) յահեկէ, որք են այսորիկ»*:

Այս աջակողմեան եւ ձախակողմեան բացատրութիւններէն որոշ է, որ իրենց նախապատուութեան կարգը ցոյց կու տայ հետեւեալը.—

| ԱՋԱԿՈՂՄԵԱՆՔ ԷԻՆ՝ | ՁԱԽԱԿՈՂՄԵԱՆՔ՝ |
|---|---|
| 1. Հարքայ | 1. Բասենոյ |
| 2. Ոստանի (Դուին) | 2. Մամիկոնեան |
| 3. Տայոց | 3. Բագրեւանդայ |
| 4. Մարդաղեաց | 4. Բզնունեաց |
| 5. Արշամունեաց | 5. Բագրատունեաց |
| 6. Արծրունեաց | 6. Խոռխոռունեաց |
| 7. Սիւնեաց | 7. Վանանդոյ |
| 8. Ռշտունեաց | 8. Ապահունեաց |
| 9. Մոկաց | 9. Աշարունեաց |
| 10. Երկորկեայ (?) | 10. Գնունեաց |
| 11. Ամատունեաց | 11. Անձեւացեաց |
| 12. Գողթան | 12. Պալունեաց |
| 13. Գարթմանաց | 13. Ասորեաց |
| 14. Ակելոյ | 14. Մեհնունեաց |
| 15. Բուժանեաց | 15. Էլիոյ (Հեր) |
| 16. Ռոտակաց | 16. Զարեանդայ |
| 17. Արզնոյ | 17. Եկեղեաց |
| 18. Չորրորդ Հայոց | 18. Միւս Ասորեաց |
| 19. Սագաստանի | 19. Սպերոյ |

եպիսկոպոսները

Հետաքրքրական է դիտել տալ թէ այս երկու ցուցակները բաւական իրարու հետ համաձայն են, եւ երկուքն ալ հաւասարապէս 30 թեմեր ունին, որոնցմէ չորսը նախապէս բնաւ յիշուած չեն:

(1) *Զարմանալի որ է Օրմանեան Ազգապատումին մէջ* (503) *Ուխտանէսի ցուցակին պատմական արժէք տուած է, ինչպէս Գր. Լուսաւորիչէն ձեռնադրեալ եպիսկոպոսներու ըստ Ագաթանգեղոսի՝* 400 *և ըստ Զենոբի* 620 *թիւերուն* (Ազգապատում, էջ 98—99)։

(2) *Միւսաւորիքը Օրմանեան* (Ազգապատում, էջ 503) *կը նոյնացնէ* Մարգպետականի *հետ, սակայն կարծեմ աւելի ճիշդ է կարդալ «Միւս Ասորիք»։ Արդարեւ, Ե. դարէն սկսեալ ծանօթ էին «Ասորիք» եւ «Միւս Ասորիք» բացատրութիւնները։ Կորիւն կը գրէ Մաշտոցի համար թէ «երթալ հասանէր ի կողմանս Արամի, ի քաղաքս երկուս Ասորւոց, որոց առաջինն Եդեսիա կոչի և երկրորդն՝ Ամիթ անուն»* (էջ 18—19)։ *Կըպըն կը հաստատէ թէ վերին Ասորիք երկու բաժանում ունէր, առաջինին կեդրոնն էր՝ Եդեսիա եւ երկրորդինը՝ Ամիթ,*

Ասոնք են՝

1.— Գարտման,

2.— Երուտակք կամ Երբորկայ,

3.— Ասորիք (Եդեսիա),

4.— Միւս Ասորիք (Ամիթ):

Ասոնք՝ եթէ ոչ բոլորը՝ գոնէ երկուքը Հայաստանի սահմանին մէջ չեն:

1.— *Գարտման*, Աղուանից աշխարհին կամ մեր Ուտի նահանգին մէջ էր: Արշակ Բ.ի ատեն Աղուանից անցան, սակայն Մուշեղ Սպարապետ զանոնք ետ առաւ եւ Կուրը սահման որոշեց:

387ին Ուտի եւ Արցախ գաւառները թէեւ Աղուանից տրուեցան, բայց 462ին Աղուանից աշխարհին հետ Պարսից անցան (Հիւպշման, էջ 109): Այս նահանգին գլխաւոր քաղաքն էր Պարտաւ, ուր է Աղուանից կաթողիկոսութեան աթոռը, հետեւաբար Գարտմանի աթոռը հայկական չէր կրնար ըլլալ: Աբրահամ կաթողիկոսի 608ին գումարած ժողովին մասնակից Առանի եպիսկոպոսը եթէ Աղձնիքի մէջ նոյն անունով յիշուած վայրին չի պատկանիր, ապահովաբար նոյնն է ասոր հետ: Մանաւանդ որ Առան կը յիշուի Է. դարուն եւ Գարտման՝ Ժ. դարուն:

2.— *Երուտակք*՝ ըստ Ուխտանէսի, եւ Երբուրկայ՝ ըստ Սամուէլ Կամուրջաձորեցիի, շատ հաւանօրէն նոյնն են, սակայն դժուար է ճշդել թէ այս աղաւաղումը ինչպէս եղած է եւ ի՞նչ է բուն բառը: Արդեօ՞ք *Երուարդունիք* կամ *Երուանդունիք*՝ Վասպուրականի գաւառը որուն մէկ տարբեր ընթերցուածն էր *Երիթունիք* (տես Հիւպշման, *նոյն*, էջ 218) թէ Տուրուբերանի *Երեւարքի* (հիմա Կարճկան) գաւառն է: Դժուար է ճշդել:

3.— *Ասորիք*, որուն գլխաւոր քաղաքն էր Եդեսիա, շատ բնական է որ առած են հայադաւան երկիրներու ծիրին մէջ այս երկու Ժ. դարու մատենագիրները, ոչ միայն անոր համար որ հոն հոծ հայութիւն մը կար, այլ Աբգարի աւանդութիւնը շատ խոր արմատ բռնած էր Հայոց մէջ:

4.— *Միւս Ասորիք*, որուն գլխաւոր քաղաքն էր Ամիթ=Տիարպեքիր: Բայց նկատելով թէ Արզն արդէն յիշուած է եւ Ամիթ Աղձնեաց մաս կը կազմէ, հաւանական է որ Միւս Ասորիք, երկու հեղինակներն ալ գործածած են Մերդինի շուրջին համար, որ այլ անուամբ *Միջագետք Հայոց* ծանօթ է: Գալով այն ութը եպիսկոպոսական աթոռներուն որոնք միայն Սամուէլ Կամրջաձորեցի եւ անկէ առնելով Մխիթար Այրիվանեցի կը յիշեն, անոնք հետեւեալներն են.—

1.— *Ռոտակը* Սասունի հետ կը նոյնացնէ Հ. Ներսէս Ակինեան (*Եղիշէ Վարդապետ եւ իր Պատմութիւն Հայոց պատերազմի*, 1936, էջ 625) եւ ասոր եպիսկոպոսներուն մասնակցութիւնը 554ի Դուինի 560ի Յովհաննէս Գաբեղեան կաթողիկոսի գումարած ժողովին, եւ 726ի Մանազկերտի ժողովին կը յիշատակէ: Հիւպշման (*Հին Հայոց տեղւոյ անունները*, էջ 92) այս նոյնացումը չի հաստատեր եւ Ռոտակը կը դնէ Պարսկահայոց մէջ կամ անոր մօտ տեղ մը:

Ղեւոնդ (էջ 134) եւ Յովհաննէս կաթողիկոս (էջ 88, 134, 158) իրենց պատմութեանց մէջ չորս անգամ կը յիշատակեն այս վայրը, սակայն անոնց գրածէն որո հետեւութիւն հանել դժուար է:

Նշանակելի է որ 726ին Մանազկերտի ժողովին մէջ կը յիշատակուի Ռոտակայ՝ Գէորգ եւ Սասունի՝ Սարգիս եպիսկոպոսները իբր մասնակից ժողովին. եթէ նոյն վայրը եղած ըլլար, երկու տարբեր անձեր պիտի չյիշուէին եւ ոչ ալ երկու տարբեր աթոռ: Հետեւաբար աւելի հաւանական է Հիւպշմանի տեսութիւնը:

2.— *Արզն* անունը, ինչպէս կը բացատրէ Հիւպշման (*Հին Հայոց տեղւոյ անունները*, էջ 76) արաբական շրջանին նոյնանուն քաղաքին կարեւորութեան պատճառով տարածուած է ամբողջ նահանգին, այսինքն Աղձնեաց վրայ, եւ արդէն ծանօթ է թէ Աղձնեաց նահանգը, նոյնիսկ Դ. դարէն ունէր իր եպիսկոպոսը, որ Ե. Զ. Է. Ը. դարուն չէ յիշուած, թերեւս օտար տիրապետութեան տակ մնացած ըլլալուն համար:

3.— *Դ. Հայք* բացատրութիւնը հարազատ հայկական չէ, այլ օտարոտի: Հայերը այս նահանգը կը ճանչնային Ծոփք անունով եւ գիտենք թէ Լուսաւորիչի որդին՝ Արիստակէս գործած է այս շրջանին մէջ: Այս շրջանը՝ կանուխէն ենթարկուած ըլլալով Բիւզանդական տիրապետութեան՝ հայ եպիսկոպոսներ բնաւ յիշուած չեն այդ շրջանէն Դ.էն մինչեւ Ժ. դար: Սամուէլ Կամջաձորեցի հին աւանդութեան իբր արձագանգ պէտք է յիշած ըլլայ այս եպիսկոպոսութիւնը:

4.— *Սագաստան*, ապահովաբար գրչագրական սխալ մըն է: Սագաստան եւ Վրկանք երկու իրարու սահմանակից երկիրներ էին Պարսկաստանի հիւսիսակողմը, բարբարոս ժողովուրդներու, մանաւորապէս Սկիւթացւոց, Քուշանաց եւայլն աշխարհներուն սահմանակից: Վրկանքը՝ այսօրուան Մազանդարանի նահանգն է եւ Սագաստանը՝ այսօրուան Խորասանը, Աֆղանիստանի եւ Թուրքեստանի (1) մէկ մասին հետ:

Հայեր գտնուած են Ե. դարէն սկսեալ այս նահանգներուն մէջ, Քուշանաց դէմ պատերազմելու համար հոն տարուած: Խոսրով արքայի ատեն (590—627) Սմբատ Բագրատունի Վրկանքի մարզպան եղած է: Այս առթիւ Սեբէոս կ'ըսէ՝ թէ «*կային յաշխարհին յայնմիկ ազգս գերեալք ի Հայաստան երկրէ եւ նստուցեալ առ սահմանօք անապատին մեծի՝ որ ի Թուրքաստանի եւ ի Դելհաստանի կողմանէ զլեզուն իւրեանց մոռացած եւ դպրութիւն նուազեալք եւ կարգ քահանայութեանն պակասեալք*»: (Սեբէոս, էջ 96—97)

Յովհաննէս կաթողիկոս այս տեղեկութեան վրայ կ'աւելցնէ որ Սմբատի հրամանով անոնց եպիսկոպոս ձեռնադրուած է Աբել անունով անձ մը (Յովհաննէս, էջ 90—91, հմմտ. Ասողիկ բ. 2.):

Յովհաննէս կաթողիկոսի խօսքերէն կ'երեւի թէ Աբել Սագաստանի առաջին եպիսկոպոսն էր, ձեռնադրուած Մովսէս Բ. կաթողիկոսէն (574—604):

Յովհաննէս կաթողիկոս եւ Ասողիկ մինչեւ իրենց ժամանակը, այսինքն Թ. եւ ԺԱ. դար, անոնց գոյութիւնը կը հաստատեն «*կան մինչեւ ցայսօր վիճակ Սրբոյն Գրիգորի* (Ասողիկ Բ. 2):

Իսկ ԺԳ. դարուն Կիրակոս Գանձակեցի, պատմելէ յետոյ նախորդ պատմիչներու ըսածները (տես էջ 29) մինչեւ իր ժամանակ անոնց գոյութիւնը պահպանուած

(1) Բաշկար քաղաքը կը յիշէ Եղիշէ (էջ 359).

ըլլալը չըսեր, թէեւ ունինք այլ եւ այլ յիշատակութիւններ, ինչպէս Պայքալ լիճին հարաւակողմը, չինական սահմանագլխի խորհրդային սահմանին մէջ Պիշպէքի Նեստորական գերեզմանատան մէջ գտնուած 1323 թուականով Հայոց Յովան եպիսկոպոսի տապանաքարը, 1375ին Կատալանեան ատլասին վրայ Սույկ-Կօլի հարաւակողմը նշանակուած հայկական Ս. Մատթէոսի վանքը, եւայլն, որոնք կը հաստատեն թէ այս շրջաններուն մէջ Հայեր կային:

Սակայն հակառակ այս բոլորին՝ բնաւ հաւանական չէ որ Սամուէլ Կամրջաձորեցիի ցուցակին մէջ Սագաստան յիշուած ըլլայ իբր Գր. Լուսաւորիչէն կազմըւած թեմ մը: Կամրջաձորեցիէն մինչեւ Մխիթար Այրիվանեցի անցնող երեք դարերու ընթացքին իրարմէ ընդօրինակողներ հաւանօրէն ՄԱՐԴԱՍՏԱՆԸ՝ ՍԱԳԱՍՏԱՆԻ վերածած են, հոն իրենց ժամանակ եպիսկոպոս մը գտնուելէն տպաւորուած: Թէ ինչո՞ւ ՄԱՐԴԱՍՏԱՆը Սագաստանի վերածուած ըլլալ կը կարծեմ՝ որոշ է: Ինչպէս յայտնի է Մարդաստան կը համապատասխանէ Մարդպետականի եւ այս վերջինը վաղեմի եպիսկոպոսական աթոռ մըն էր, որուն եպիսկոպոսները յիշատակուած են իբրեւ մասնակից Աշտիշատի *(*449—450*)*, Բաբգէն կաթողիկոսի *(*508), Դուինի (554*)*, Յովհ. Կաթ. Գաբեղեանի *(*560), Աբրահամ կաթողիկոսի *(*668*)* Դուինի *(*654*)*, Մանազկերտի *(*726), Պարտաւի (768) ժողովներուն:

Այս եպիսկոպոսութիւնը անհաւանական է որ մոռցած ըլլայ Սամուէլ Կամրջաձորեցի: Դժբախտաբար յաջորդ գրիչներ աղաւաղած են:

Հ. Ակինեան *(*Եղիշէ, էջ 627*)* կ'ըսէ թէ «Մարդաստանը» նոյնն է «Մարդպետականի» հետ, որ կոչուած է նաեւ «Սեպհական գնդի» եւ «Ոստան եւ Մարդպետականի» թեմ: Այս նոյնութեան մասին կը վկայէ Թովմա Արծրունի *(*էջ 24*)*: *«Մնացին ի Համբոյրզան աւանի, Մարդաստան գաւառի ուր եպիսկոպոսական աթոռ Մարդպետականի յանժամ փոխեալ դնէր ի Նախճաւան քաղաքէ»* հետեւաբար Մարդաստան=Մարդպետական գաւառը հին ատեն ունէր աթոռանիստ Նախիջեւանը, *(*տես *նոյն)*: Հարկ է սրբագրել ուրեմն Սագաստանը Մարդաստանի:

5.— *Բզնունեաց* աթոռը երբ չէ յիշուած Ուխտանէսէ, պարզ պէտք է գրչագրական վրիպանք կամ մոռացութիւն համարել, վասնզի Բզնունեաց եպիսկոպոսները յիշուած են Դ. դարուն եւ յաջորդ դարերուն իբրեւ մասնակից Աշտիշատի (450), Դուինի (654) եւ Պարտաւի *(*724*)* ժողովներուն:

6.— *Բագրատունեաց* եպիսկոպոսներ յիշատակուած են 654ին եւ 726ին, Դուինի եւ Պարտաւի ժողովներուն իբրեւ մասնակից: Ինչպէս եղած է որ Ուխտանէս զայն չէ յիշած՝ անմեկնելի է: Մանաւանդ Ժ. դարուն, երբ Բագրատունիք այնքան կարեւոր դիրք մը ունէին:

Բագրատունեաց գաւառ մը գոյութիւն չունէր, ուստի դժուար է ճշդել թէ ո՛ւր էր այս աթոռին վայրը, որ հաւանօրէն Շիրակ պիտի ըլլայ:

7.— *Եկեղեաց* եպիսկոպոսական աթոռը առաջին անգամ Սամուէլ Կամրջաձորեցի կը յիշատակէ: Եկեղեաց եպիսկոպոսները երբ կային — ինչ որ շատ հաւանական է — չեն կրցած մասնակցիլ Պարսկական Հայաստանի մէջ գումարուած ժողովներուն եւ ատոր համար է որ Ծոփաց եւ Դ. Հայոց եպիսկոպոսներուն հետ չեն յիշատակուած:

8.— *Սպեր,* Բարձր Հայոց գաւառներէն մին, որ Բագրատունեաց որորանը եղած է: Սահմանակից է Տայք նահանգին, չէ յիշուած աւելի կանուխ, ինչպէս չէ յիշուած Ուխտանէսէ: Կը գտնուէր Եկեղեաց եւ Դ. Հայոց հետ համանման պայմաններու մէջ:

Ինչպէս կը տեսնուի՝ մինչեւ Ժ. դարուն արդէն Հայաստանեայց Եկեղեցին ունէր հայադաւանութեան համար որոշ շրջագիծ մը, որ 38 թեմերու բաժնուած էր:

Դ. դարէն մինչեւ Ժ. դար մատենագրական տեղեկութիւններուն մեզի հայթայթած տուեալներուն համադրութեամբ կազմուած այս 38 թեմերու պատկերը, որ մեծաւորապէս նոյնը մնացած է յաջորդ դարերուն ալ, շատ քիչ փոփոխութիւններու ենթարկուած ըլլալով, կը գծէ Ժ. դարուն տարածութիւնը հայադաւանութեան ծիրին, եւ կրնայ իբր հաստատուն հիմ մը ծառայել մեզի:

Սակայն ինչպէս կը տեսնուի, կամ հաւանական է, այս 38 թեմերը Հայաստանի մէջ էին եւ անկէ դուրս թեմեր չէին պարունակեր, մինչ նոյնպէս մատենագրական տուեալներ ունինք, որոնք կը հաստատեն թէ այս շրջանակէն դուրս Հայ Եկեղեցին քարոզչական գործունէութիւն ունեցած եւ շրջակայ երկիրներ հայադաւան դարձնելու աշխատանք կատարած եւ տեղ տեղ յաջողութիւններ նշած է: Այսպէս, բազմաթիւ փաստեր կան ցոյց տուող՝ որ մինչեւ Ժ. դար Հայաստանեայց Եկեղեցին սքանչելի առաքելութիւն մը կատարած է ոչ միայն երկիրին ներսը, Հայաստանի բնակչութիւնը իսկական «Հայ-քրիստոնեաներ» դարձնելով եւ կրօնական միութիւն մը ստեղծելով, այլ Հայաստանի սահմաններէն դուրս նուաճումներ ըրած եւ հայադաւանութեան ծոցին մէջ առած էր Հայաստանի աշխարհագրական սահմաններէն դուրս, վերը յիշուած վայրերէն զատ, դրացի կարգ մը աշխարհամասեր, որոնք հայկական ծագումով ստուարաթիւ բնակչութիւն ունէին: Այսպէս, Հայ եկեղեցին, իր քարոզչական գործունէութեամբ աշխատած է տարածելու քրիստոնէութիւնը Հայաստանի սահմաններէն դուրս, բոլորովին այլացեղ ժողովուրդներու մէջ, ինչպէս Կովկասեան լեռներու երկու կողմերը բնակող հեթանոս ժողովուրդները, զորս քրիստոնեայ դարձնել աշխատած է:

Արդէն յիշուեցաւ՝ թէ ինչպէս Վրացիք եւ Աղուանք քրիստոնէութիւնը ընդունեցին Լուսաւորիչէն *(*1*)*:

Իր թոռը՝ Մանուկ Գրիգորիս յատկապէս Կովկասեան ժողովուրդներու, մինչեւ «Սահմանացն Մազքթաց» քարոզիչը եղած եւ նահատակուած է հոն 335ին իր հաւատածաւալ գործունէութեան պատճառով *(*հմմտ. *Հայկարան*, էջ 203—204*)*:

(1) *Հմմտ. Մ. Խորենացի Բ. իբ Ստեփանոս Օրբելեան Ա. հտ.* էջ 59. *Ագաթանգեղոս՝* էջ 627—628, *Մովսէս Կաղանկայտուացի՝* էջ 123. Գիրք Թղթոց՝ էջ 128, 130, 132, 174 *եւայլն.*

*ինչպէս Ն. Մառ.* Մկրտութիւն Հայոց, Վրաց, Աբխազաց եւ Ալանաց ի Սրբոյն Գրիգորէ (*Թրգ. Յուսիկ Արք. Վաղարշապատ,* 1911)՝

Է. դարուն վերջերը, 688ին, Աղուանից Վարազ-Տրդատ իշխանը Հոնաց թագաւորին հետ դաշինք կնքելու համար իբրեւ պատուիրակ կը ղրկէ Իսրայէլ անուն եպիսկոպոս մը, որ որքան իր քաղաքական առաքելութեամբ՝ նոյնքան ալ կրօնական քարոզչութեամբ զբաղած է, Հոնաց մէջ քարոզելով Քրիստոսի կրօնը եւ մկրտելով շատերը, ինչպէս նաեւ հաստատելով եկեղեցիներ (*Կաղանկայտուացի*, էջ 368—401):

Այս անցողակի յիշատակութիւնները բնական է անբաւական են ճշդելու համար չափը Հայ Եկեղեցիին յաջողութեան, զոր ան ունեցած է կովկասեան լեռնականներուն մէջ, սակայն որոշ է՝ որ բոլորովին ապարդիւն չեն եղած Հայ Եկեղեցիին ճիգերը եւ մինչեւ իսլամութեան ծագումը եւ Արաբներու Հայաստանը նուաճելը, այդ խառնիճաղանճ զանգուածներուն մէջ քրիստոնէութիւնը ապրած է շնորհիւ հայ անձնուէր եկեղեցականներու քարոզչութեան:

Բայց եթէ Հայերը չեն յաջողած ամբողջ Կովկասը հայադաւան դարձնել, գէթ որոշ է թէ Վրացիները եւ Աղուանները կրցած են ենթարկել Հայ Եկեղեցիի հովանիին: Անոնց եպիսկոպոսները Հայ կաթողիկոսներէն կը ձեռնադրուէին, նոյնիսկ Վրացի պատմիչներու վկայութեամբ (1) (հմմտ. *Հայկարան*, էջ 204—205):

Մաշտոց, Վրաց եւ Աղուանից գիրերը պատրաստելով, ամրապնդեց քրիստոնէութիւնը այս երկիրներուն մէջ, ինչպէս կը հաստատէ վրական աւանդութիւնն ալ (ՀԱ. 1934, էջ 124):

Մովսէս Կաղանկայտուացի, Աղուանից պատմիչը (Ա. էջ 190) կ'ըսէ թէ Մաշտոց *«ծգէր զքարոզութիւն Աւետարանին յաշխարհէն Ուտիացւոց եւ յԱղվանս եւ ի Փյինս: եւ ի Կասպս եւ ի դուռն Չողայ եւ զայլազգի ազգսն, զորս գերութեամբ էր ածեալ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, եւ նստուցեալ զմեծ լերամբն Կաւկասու՝ զԳարգարսն եւ զԿամիճիկ Հեփթաղսն, դարձուցեալ ի հաւատս՝ զկարգ աստուածպաշտութեան ուսուցանէր, զոր ի վաղնջուց ուսեալ՝ էին մոռացեալ: Բոլորովին քարոզ եւ առաքեալ խուժադուժ Սարմատանեացն լինելով ըստ նոցին բարբառոյ դպրութեան առնէր զնոսա ծանօթս»*:

Ս. Մաշտոցի քարոզութիւնները, Աղուանից պատմիչին համեմատ, ապարդիւն չանցան: Իր աշակերտները հետզհետէ բազմացան եւ քրիստոնէութիւնը տարածեցին աւելի հեռուն ինչպէս Հոնաց մէջ: Մասնաւորապէս նշանակելի է որ Աղուանները՝ որոնք անկախ թագաւորութիւն մըն ալ ունէին հին եկեղեցական աւանդութեան համաձայն՝ ինքնագլուխ եկեղեցի մը կազմած էին, իրենց յատուկ կաթողիկոսով, բայց կը մնային հայադաւանութեան կապուած: Անոնք ժամանակի ընթացքին բոլորովին հայացան, շնորհիւ կրօնքին եւ ստուերի վերածուած եւ իր գոյութեան իմաստը կորսուած իրենց կաթողիկոսութիւնը ջնջուեցաւ 1836ին եւ բոլորովին ենթարկուեցան Հայոց կաթողիկոսութեան, այն երկիրները՝ որոնք իբրեւ երբեմնի Աղուանից աշխարհին մասեր, կը մնային Գանձասարի մէջ նստող «Աղուանից» տիտղոսով կաթողիկոսին իշխանութեան տակ (1):

Ընդհակառակը՝ Վրացիք, որոնք մինչեւ Է. դար Հայոց կաթողիկոսներու գլխաւորութիւնը կը ճանչնային եւ Հայոց հետ հաւատակից էին, Է. դարուն յարեցան քաղկեդոնականութեան եւ Հայ Եկեղեցիէն բաժնուեցան բոլորովին: Սակայն նկատելի է՝ որ Վրաստանի մէջ կ'ապրէին միշտ մեծ թիւով Հայեր, եւ կարելի է նաեւ հայադաւան Վրացիներ, որոնք պահած են իրենց հնաւանդ ծէսերը եւ դաւանանքը:

Անոնք նշանակելի թիւ մը ունէին, սակայն բնական է չէին կրնար եկեղեցական կազմակերպութիւն ունենալ, կրօնական անհերողութեան պատճառով, որչափ ատեն որ քաղկեդոնականութեան վէճը կ'արծարծուէր եւ Բիւզանդիոն կը հովանաւորէր Վրաստանը:

Սակայն երբ կիրքերը հանդարտեցան, եւ Բիւզանդիոն հեռու մնաց Վրաստանէն եւ Հայք ու Վրացիք իրարու մօտեցան հասարակաց բարբարոս թշնամիներու դէմ, որոնք արեւելքէն Հայաստան եւ Վրաստան կ'արշաւէին, Հայերը կրցան Վրաստանի մէջ վայելել դաւանանքի ազատութիւն, եւ ունենալ իրենց կրօնական վարչութիւնը, նոյն իսկ երկիրին մայրաքաղաքին՝ Թիֆլիզի մէջ, ուր ԺԲ. դարուն առաջին անգամ կը յիշուի հայ եպիսկոպոսի մը գոյութիւնը, թէեւ անհաւանական չէ որ աւելի կանուխէն ալ գոյութիւն ունեցած ըլլայ:

Դէպի հիւսիս՝ Հայաստանի սահմաններէն դուրս, Հայերը տարածուած էին Պոնտոսի ուղղութեամբ եւս: Մասնաւորապէս Խաղտիք ամբողջովին եւ Պոնտոս մասամբ լեցուած էին Հայերով, որոնք Բիւզանդացիներու այդ շրջաններէն քաշուելէն եւ հեռանալէն յետոյ՝ հայադաւանութեան ծիրին մէջ մտան, մասնաւորապէս Խաղտիքի շրջանը, որուն կեդրոնն էր Բաբերդ (այժմ Պայպուրդ):

Իսկ Տրապիզոն՝ կեդրոնը Պոնտոսի՝ մնաց միայն մասամբ հայացած քաղաք մը:

Դէպի արեւմուտք Հայաստանի սահմանակից Փոքր Հայքը, որ Եփրատէն Ալիս տարածուող երկիրները, ինչպէս Եփրատէն մինչեւ *Տաւրոս* լեռները տարածուող հողերը կը գրաւէր, ամբողջովին հայ չէր իր բնակչութեամբ, բայց ունէր ստուար թիւով հայ ծագումով բնակիչներ, որոնք դժբախտաբար Բիւզանդական տիրապետութեան տակ չէին կրնար ազատօրէն իրենց կրօնքը պաշտել:

Արաբական տիրապետութիւնը՝ երբ մինչեւ այդ տեղերը տարածուեցաւ, այդ շրջաններուն բնակիչները կրցան փրկուիլ Բիւզանդական կրօնական հալածանք-

(1) *Ջուանշէր.* «Պատմութիւն Վրաց», *էջ* 70, *Brosset, Histoire de la Géorgie, St. Petersbourg,* 1849, *Ա. հտ. էջ* 136, *Հ. Ներսէս վրդ. Ակինեան.* Կիւրիոն, *էջ* 15 *եւ* 85:

(2) *Հոս աւելորդ չըլլայ դիտել տալ, թէ Աղուանք նախապէս շատ պզտիկ հողամաս մը ունէին իրենց տիրապետութեան տակ, Կուր գետին հիւսիսային կողմը: Արշակունեաց ժամանակ իրենց իշխանութեան ենթարկեցին նաեւ կարգ մը դէպի հիւսիս Կովկասեան ցեղեր (Ճիղբք, Լփնիք եւայլն) եւ հասան մինչեւ Տերբենտ կամ Ճորայ Պահակ: Իսկ Ե. Դարէն յետոյ Աղուանից թագաւորութեան կցուեցան Հայաստանի մաս նկատուած Ուտի եւ Արցախ նահանգները եւ Գուգարքէն եւ Սիւնիքէն փոքր մասեր: Ուտի եւ Արցախ զուտ հայաբնակ չէին եւ յետոյ հայացան:*

ներն եւ կերպով մը կրօնական ազատութիւն ձեռք բերել:

Հաւանօրէն այդ շրջանին է, որ հայադաւանութիւնը մեծապէս կը նպաստաւորուի եւ կ'ամրանայ եւ եպիսկոպոսութիւններ կը հաստատուին Սեբաստիոյ, Մալաթիոյ, Եւդոկիոյ, Նիկոպոլսոյ պէս եթէ ոչ բոլորովին հայաբնակ՝ գէթ խիտ հայաշատ քաղաքներու մէջ:

Ասոր պատճառաւ՝ երբ Վասիլ Բ. Կայսրը (976—1025) յաջողեցաւ Փոքր Հայքը վերստին գրաւել եւ առաջանալ մինչեւ բուն Հայաստան, Բիւզանդացիք սաստիկ հալածանք գործադրեցին Հայոց դէմ:

Ասոր կարկառուն փաստն է այն մեծ հալածանքը, որ Սեբաստիոյ եւ Մելիդինէի, այսինքն Ա. եւ Բ. Հայքի Յոյն մետրոպոլիտները բրին Հայոց դէմ: Սեբաստիոյ մետրոպոլիտը 986ին մինչեւ իսկ մարմնական տանջանքներ ի գործ դնել տուաւ եւ նահատակեց՝ զոր օրինակ՝ Սեբաստիոյ Գաբրիէլ աւագերէցը: Անիկա արգիլեց նաեւ Հայոց եկեղեցիին կոչնակը:

Որքան որ հայադաւաններէն շատերը արիաբար դիմադրեցին այս հալածանքներուն, սակայն տկարացողներ ալ եղան, ինչպէս Սեբաստիոյ՝ Սիոն եւ Լառիսայի՝ Յովհաննէս եպիսկոպոսները եւ կարգ մը քահանաներ (*Ասողիկ*, 1859, էջ 188—189):

Ասիկա ապացոյց մըն էր որ հայադաւանութիւնը՝ հակառակ աններող եւ մոլեռանդ Յոյն կղերին եւ զայն հովանաւորող Բիւզանդական կայսերական իշխանութեան հալածանքներուն, ոյժ մըն էր եւ տոկուն՝ դիմակալելու համար ամէն տեսակ փորձութիւններու, որոնք ԺԱ. դարուն մեծ համեմատութիւններ առին, ինչպէս կը դիտէ Շառլ Տիհլ (*Բիւզանդական կայսրութեան կառավարութիւնը եւ վարչութիւնը* (Cambridge Medieval History, Դ. հտ. գլ, ԻԴ. էջ 737):

1007ին Ծռազատիկի առթիւ յարուցուած մեծ հալածանքը, որուն միայն Երուսաղէմի մէջ 10,000 քրիստոնեաներ զոհ գացին (Սամուէլ Անեցի, էջ 104 եւ Մատթէոս Ուռհայեցի էջ 53), ցոյց կու տայ թէ հակաքաղկեդոնականութիւնը՝ որուն գլխաւոր ներկայացուցիչներն էին Հայերը եւ Ասորիները, որքան մեծ ոյժ կը ներկայացնէր Բիւզանդական կայսրութեան մէջ: Մասնաւորապէս հակաքաղկեդոնականներու դէմ գործադրուած հալածանքներուն գլխաւոր թատերավայրը Ժ.—ԺԱ. դարերուն, Սեբաստիան եւ Լարիսան ըլլալը փաստ է՝ թէ որքան մեծ ոյժ կը ներկայացնէին Հայերը Փոքր Հայքի եւ Կապադովկիոյ մէջ եւ ո՛րքան ամուր փարած էին իրենց կրօնքին եւ ի՛նչպէս կը մաքառէին անոր պահպանութեան համար։

Ուրեմն՝ Արշակունեաց անկումէն յետոյ հայ խիտ բնակչութեամբ մը լեցուած Փոքր Հայք եւ Կապադովկիա, Պոնտոս եւ Միջագետք, նաեւ հայադաւանութեան կապուած էին եւ հայադաւանութեան սահմանները կը տարածուէին Հայաստանի աշխարհագրական սահմաններէն շատ հեռու:

Հաւանական է ենթադրել՝ թէ Ժ. դարուն Սեբաստիոյ եւ Լարիսայի հետ միաժամանակ՝ Լիկանդոնի կամ Խարբերդի եւ Մալաթիոյ մէջ (1), որոնք կը գտնուէին դէպի աւելի արեւելք, Մայր Հայրենիքի մօտ, կային եկեղեցական-վիճակային վարչութիւններ կամ եպիսկոպոսներ, միայն թէ՝ դժբախտաբար՝ հաստատող յիշատակութիւններ կը պակսին։

Լիկանդոնի շրջանակին մէջ սակայն՝ հայ վանքի մը շինութիւնը Անանիա Մոկացի կաթողիկոսի (946 – 968) ատեն, ինչպէս կը հաստատէ Ասողիկ (էջ 161 նաեւ Զամ. Բ. էջ 824), եւ Մալաթիոյ երկար ատեն իսլամ տիրապետութեան ենթարկուած ըլլալը, ենթադրել կու տայ թէ պէտք է հոն տեղերն ալ Ժ. դարուն վիճակային կազմակերպութիւններ գոյութիւն ունեցած ըլլային: Իսկ եթէ մինչեւ այն ատեն չէին ունեցած, այդ դարուն ունենային, վասնզի նոյնիսկ Վասիլի օրով գործադրուած հալածանքներէն յետոյ՝ երբ Բիւզանդական պետութիւնը ներքին ըմբոստութիւններով կը քայքայուէր, մասնաւորապէս Վարդ Սկլերոսի հայկական բնոյթ ունեցող ապստամբութիւնով, Խաչիկ Ա. Արշարունի (979—992) կաթողիկոս կը ձեռնադրէ «*եպիսկոպոսունս յԱնտիոք Ասորւոց եւ ի Տարսոն կիլիկեցւոց եւ ի Սուլընտայ* (1) *եւ յամենայն գաւառն յայնոսիկ* (Ասողիկ, էջ 249):

Ասիկա ցոյց կու տայ թէ Ժ. դարուն, Հայերը Փոքր Հայքէն աւելի անդին, Եփրատցւոց կողմէն Տաւրոսի հարաւակողմը, արդէն կարեւոր թիւով տեղաւորուած էին, եւ անոնց հոգեւոր վարչութեան գործը մտածութեան առարկան կ'ըլլար Հայոց կաթողիկոսին որ այդ կողմերուն համար կը նշանակէ Հայ եպիսկոպոսներ:

Այսպէս, տակաւին Ժ. դարուն իսկ հաստատուած կը գտնենք հայեր, Եփրատէն արեւմուտք, ոչ միայն Սեբաստիա, Լարիսա, Մելիդինէ, Լիկանդոն եւայլն, այլ նաեւ դէպի հարաւ-արեւմուտք Միջագետք Հայոց (Սամոսատ, Եդեսիա, Ապամիա, Պիրէճիկ, եւայլն), Հիւսիսային Սուրիա (Անտիոք, Լաւոդիկէ, Հալէպ, Մարաշ, եւայլն), Կիլիկիա (Տարսոն, Հոնի, եւայլն) եւ Իսաւրիա (Սուլընտայ) եւ անոնք կը ճանչնային հայ կաթողիկոսներու հեղինակութիւնը, հայադաւան մնալով՝ հակառակ Բիւզանդական պետութեան անբարեացակամութեան:

Հայերու այդ շրջաններուն մէջ տեղաւորուիլը աւելի շեշտուեցաւ ԺԱ. դարուն, երբ Սելջուկները պատմութեան ասպարէզ եկան եւ վանեցին Բիւզանդացիները Հայաստանի սահմաններէն եւ տիրապետեցին երկիրին:

Մէկ կողմէն Մայր Հայրենիքին մէջ հայ ազգին դարերու նիզով կերտած հիմնարկութիւններն ու մշակոյթային օրօրանները կը քանդուին եւ երկիրը կ'ա-

(1) *Մալաթիա,* (*Հիներու* Մելիդինէն) *Հայաստանի արեւմտեան սահմանագլուխին վրայ, Հայաստանի մաս կը համարուէր տեսականին մէջ և Դ. Հայոց գլխաւոր քաղաքներէն մին էր։ Սակայն շատ կանուխ Հայաստանէն բաժնուած՝ Բիւզանդական տիրապետութեան ենթարկուած էր և աւելի մաս կը համարուէր Բիւզանդական Փոքր Հայքին և կարեւոր դեր մը կատարած էր իր ռազմական դիրքովը՝ Եփրատի վրայ. իբր կամրջագլուխ մը, ուրկէ դիմագրաւած են Բիւզանդացիք երկար տարիներ՝ արաբական արշաւանքներուն,*

(2) *Սուլընտոն, Օրմանեան կը նոյնացնէ Սելինունտիայի հետ (այժմ Սելինդի), որ էր երբեմն Տրայանուպոլիս եւ գլխաւոր քաղաք Իսաւրիոյ և Նաւահանգիստ։*

մայանայ, մինս կողմէն Հայերը զարմանալի տոկունութեամբ եւ անվհատ ջանադրութեամբ կ'աշխատին վերախմբուիլ ու կազմակերպուիլ այն հողերուն վրայ, ուր ապաստանած են: Արդ, ԺԱ. դարուն խսկապէս հայ ցեղը զանգուածօրէն դէպի արեւմուտք կը շարժէր եւ կ'ստիպուէր իր գրաւած նոր տարածութիւններուն պատշաճեցնել եւ միջավայրին պահանջներուն զոհացում տալ:

Բիւզանդացիք Հայաստանի արեւմտեան կողմը, Եփրատէն Ալիս տարածուող հողերուն վրայ, ինչպէս նաեւ Տաւրոսեան լեռնաշղթային կողերուն վրայ ապաստան ընծայեցին Հայաստանէն փախստական Հայերուն եւ զանոնք ուզեցին պատուար գործածել բարբարոսներու արշաւանքին դէմ:

Այս նպատակով, իրենց հովանաւորութեան տակ կազմեցին Հայ ճորտ թագաւորութիւններ, Սեբաստիա, Ծամնդաւ եւ Պիզու (Կեսարիա) կեդրոններով, ինչպէս նաեւ անոնց վստահեցան Տաւրոսեան անցքերու պաշտպանութիւնը, Քեսուն, Կոռոմոզոլ եւայլն՝ հաստատելով հայ իշխաններ, ինչպէս նաեւ աչք գոցելով Փիլարտոսի իշխանութեան կազմակերպութեանը եւ անոր ըմբոստ եւ անկախ գործունէութեան եւ հայ ճորտ թագաւորներուն պաշտպանի եւ հովանաւորի ձեւեր առնելուն:

Այս տագնապալի օրերուն՝ երբ Բիւզանդացիք պէտք ունէին Հայերու աջակցութեան՝ բնական է թէ Հայ Եկեղեցիին դէմ հալածանքը կը դադրէր, թէեւ անուղղակի կը շարունակուէին Հայերը օրթոտոքութեան ենթարկելու ջանքերը:

Այս պայքարին մէջ Հայերը յաջողեցան յաղթանակը տանիլ, վասնզի կրցան Բիւզանդիոնի խարդաւանանքները ապարդիւն դարձնել:

Նախկին հայ թագաւորները, ինչպէս Փիլարտոս, իրենց իշխանութեան սահմաններուն մէջ Հայ Եկեղեցիին կազմակերպութեան եւ զօրացման նպաստեցին, Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը իրենց սահմանները (Թաւբլուր, Ծամնդաւ կամ Մուտուրուսուն, վերջապէս Հռոմկլայ) տեղափոխելով եւ Մարաշ, եւ յետոյ Հոնի մասնաւոր կաթողիկոսութիւն մը ստեղծելով՝ հակառակ թերեւս Բիւզանդական ցանկութիւններուն:

Այսպէս, Վասպուրականի Սենեքերիմ եւ Անիի ու Կարսի երկու Գագիկ թագաւորներուն տեղափոխութենէն յետոյ դէպի Փոքր Հայք, Կապադովկիա եւ արեւելեան Փոքր Ասիա, հիւսիսային Ասորիք, ինչպէս նաեւ Տաւրոսեան լեռներու լանջերը եւ Սեւ լեռներու շրջանակին մէջ մեծ թիւով Հայեր հաստատուեցան եւ հայադաւանութիւնը մեծ զարգացում ունեցաւ այս շրջաններուն մէջ, եւ ամրապնդուեցաւ եւ ամուր կռուան մը դարձաւ գաղթական զանգուածներու համար (հմմտ. *Հայ Կեսարիա*, էջ 536—538):

Յաջորդ երկու դարերուն (ԺԲ. եւ ԺԳ.) Եփրատի արեւմուտքը) (Արաբկիր, Ակն, Չմշկածագ, Տիվրիկ, Շապին-Գարահիսար, Թոզատ, Սեբաստիա, Ամասիա եւայլն) հայադաւան կը դառնան գրեթէ ամբողջութեամբ ինչպէս Տաւրոսի երկու լանջերը (Քեսուն, Ռապան, Մարաշ) եւ լեռնային ու դաշտային Կիլիկիաները, ուր եպիսկոպոսական աթոռներու թիւը ԺԲ. դարուն վերջերը 15ի հասած էր արդէն:

Հայադաւանութեան դէպի Արեւմուտք կատարած այս նուաճումները կը դառնան նշանակելի այն տեսակէտով՝ որ ապահովաբար, անոնք դեր մը կատարած են Կիլիկեան այլացեղ եւ այլալեզու բնակչութիւնը, ինչպէս նաեւ երբեմն Հայաստանի ծայրագաւառներու խառն բնակչութիւնը Հայութեան մէջ ձուլելու կամ հայացնելու նպաստած են՝ կրօնքի ուղիով:

Ասիկա վերջին փառքի շրջանը եղաւ Հայ Եկեղեցիին, որ ԺԴ. դարէն յետոյ, դժբախտաբար նետզնետէ նուազիլ սկսաւ, մասնաւորապէս հայ քաղաքական իշխանութեան տկարութեան պատճառով իր հովանաւոր ուժէն զրկուելով:

Դէպի արեւմուտք այս նուաճումը թերեւս պատճառ եղաւ որ Հայ Եկեղեցին, ինչպէս Վրականին եւ Աղուանականին, նոյնպէս նաեւ Ասորականին հետ շփում ունեցաւ եւ որոշ չափով մը հեղինակութիւն ձեռք բերաւ եւ զայն ստորադասեց իրեն:

Ասորի եկեղեցին մինչեւ Ե. դար ինքն առաջնորդ եւ ղեկավար եղած էր Հայ Եկեղեցիին համար, բայց վերջը դերերը փոխուեցան եւ Հայ Եկեղեցին է որ հովանաւորած եւ պաշտպանած է Ասորի Ուղղափառները, որոնք դաւանակից էին Հայոց եւ մեզի պէս կը մերժէին Քաղկեդոնի դաւանութիւնը ու Նեստորականութիւնը եւ անոր համար դարձեալ մեզի պէս կը հալածուէին Բիւզանդացիներէն:

Ասորիները թուով աւելի նուազ եւ զուրկ սեփական պետութիւն մը ունենալու առաւելութիւններէն, տկար էին եւ հետեւաբար իրենց հաւատքը պահելու համար, երբ Բիւզանդացիք զիրենք կը նեղէին, կ'ապաստանէին Հայ եկեղեցիին պաշտպանութեան եւ համերաշխ կը քալէին Հայոց հետ:

Ասորի եկեղեցին պառակտող հերձուածներու մէջ ալ Հայերը միշտ հովանաւորած են Ասորի ուղղափառները:

Մասնաւորապէս երբ Զ. դարուն Յուլեանց եւ Սեւերեանց բաժանումը եղաւ, երկու հատուածներն ալ Հայոց հետ բարեկամ մնալ ուզեցին:

Առաջին անգամ Հայ Եկեղեցիին օժանդակութեան ապաստանեցան Հայաստանի հարաւակողմի Ասորական Միջագետքի, Աղձնեաց եւ Սասունի Ասորիները, որոնք Յուլիանեան էին:

Ներսէս Բ. Բագրեւանդացի իրենց խնդրանքով անոնց հոգեւոր պետ կը ձեռնադրէ Աբտիշոն, որ իբր հայ եպիսկոպոս Դուինի ժողովին կը մասնակցի:

Այս պատճառով՝ Ասորի այդ հատուածը կոչուած է նաեւ Գրիգորիկ կամ Գրիգորեան, Հայոց Լուսաւորիչին անունով:

Է. դարուն Նփրկերտի եւ Սասունի Ասորիները Հայ Եկեղեցիին կապուած էին (*Միքայէլ Ասորի*) եւ Ը—Ժ. դարերուն, տակաւին, այս շրջանակին Ասորի եպիսկոպոսները Հայոց կաթողիկոսներէն ձեռնադրութիւն կ'ստանային (*Ուխտանէս*): Անոնք բռուն կերպով դիմադրեցին Սեւերեան Յակոբ Ծանծաղոսի եւ 616ին ուրիշ նոյն աղանդէն եպիսկոպոսներու եւ զանոնք վանեցին այդ սահմաններէն:

Քրիստափոր Ա. Տիրառիջցի «փիլիսոփայ» կաթողիկոսը (539—549) նոյն իսկ Պարսկաստան գացած էր

Խոսրով Նուշիրուանէ 539–540ին եւ 544ին՝ Անտիոքէն եւ Եդեսիայէն դէպի Պարսկաստան տարագրուած Ասորիները հոգեւորապէս մխիթարելու եւ սրտապնդելու, ինչպէս նաեւ եպիսկոպոսներ ձեռնադրելով անոնց հոգեւոր կազմակերպութիւնը ապահովելու համար:

Նոյնիսկ այդ ժամանակները Հայեր կը բարձրանան Ասորի եպիսկոպոսական աթոռները:

726ին Մանազկերտի ժողովը Հայոց հետ Ասորիներու դաւանակցութիւնը վերստին կը հաստատէ:

Այդ թուականէն յետոյ միշտ անխտիր երկու ազգերը իրարու հետ յարաբերած են «ի հոգեւորս»:

ԺԱ. դարուն ամէն տարբերութիւն բառնալու փորձեր եղած են, թէեւ առանց յաջողութեան, բայց միշտ երկու եկեղեցիները իրարու նկատմամբ անխտրական ոգի ցոյց տուած են:

Գրիգոր Մագիստրոս, իր ժամանակին ամէնէն հեղինակաւոր անձը, Ասորւոց Յովհաննէս Ժ. Բար-Շուշան կաթողիկոսի գրած մէկ թուղթին մէջ կ՚ըսէ՝ թէ «Մեք

ի ձէնջ ոչինչ հայցեմք յաղագս նաւատոյ, քանզի միաբանութեամբ պարսպեալ եմք եւ ամենայն բարեձեւութեամբ փարթամացեալս եւ առ մեզ եւ մերում հայրապետաց նոցի քո սրբազնութեանդ որպէս սրբոյն Կիւրղի եւ երից երանեալ հարցն, որք յԵգիպտոսն են, այսպէս համարեմք՝ աթոռակից, պատարագակից, մանաւանդ թէ քահանայակից, ձեռնադրիմք եւ ձեռնադրեմք եւ զոր թող բոլոր քահանայագործութեան հետեւին»:

Ներսէս Շնորհալի (1166—1173) եւ Միքայէլ Ասորւոց պատրիարքը (1166—1199) միաբան հաստատած են երկու եկեղեցիներու համերաշխութիւնը եւ միասին Միութենական բանակցութեանց ձեռնարկած են Օրթոտոքս եկեղեցիին հետ:

Հայ Եկեղեցին սակայն այլեւս իսկապէս նախապատիւ եւ հովանաւոր եկեղեցիի դեր կը կատարէր հանդէպ Ասորի եկեղեցիին, որուն ներքին գործերուն կը միջամտէին երբեմն հայ թագաւորներ եւ կաթողիկոսներ:

Ասորիները, Ռուբինեանց թագաւորութեան սահմաններուն մէջ կարեւոր թիւ մը ունէին, եւ կը կազմէին հաւատարիմ եւ բարեկամ տարր մը հայ թագաւորութեան: Ասորիները Կիլիկիոյ մէջ կը գտնէին բարեացակամ վերաբերում, մինչ անկէ դուրս Ասորիներէ բնակուած շրջանները, Միջագետք եւ Հիւսիսային Սուրիա, մինչեւ Եփրատ, ենթարկուած էին խաչակիրներէ կազմուած իշխանութիւններու որոնց պետերը իբր քաղկեդոնականներ, իրե՛նց կարգին կը հալածէին Ասորիները: Հայ կաթողիկոսները՝ Ասորի հալածական պատրիարքները այս շրջանին հիւրընկալեցին Հռոմկլայի կաթողիկոսութեան մէջ, եւ վերջապէս Սիսի մէջ, ուր Ասորիները ունէին եկեղեցի մը:

ԺԴ. դարու կիսուն Սիս կը դառնայ Ասորի կաթողիկոսներու ալ աթոռը, պաշտպանութեան տակ Հայոց թագաւորներուն, մինչեւ որ Կիլիկեան թագաւորութիւնը կը կործանի: Անկէ ետքն է որ Ասորի կաթողիկոսները ԺԵ. դարուն կը հաստատուին Մերտինի շուրջ Ասոր վանք մը: (Հայ եւ Ասորի եկեղեցիներու յարաբերութեանց մասին տես Երուանդ վրդ. Տէր Մինասեանցի *Հայոց Եկեղեցու յարաբերութիւնները Ասորւոց եկեղեցիների հետ.* 1908, Էջմիածին, եւ Ա. Ալպօյաճեանի *Հայ եւ Ասորի յարաբերութիւններ* յօդուածաշարը *Ժողովուրդի Ձայն-Ժամանակ* լրագիրին մէջ, թիւ 565—588, ինչպէս նաեւ Չամիչեանի՝ *Հայոց Պատմութիւնը* եւ Օրմանեանի՝ *Ազգապատում մը)*:

Նման երեւոյթի մը կը հանդիպինք նաեւ Արեւելքի մէջ, վասնզի ինչ ինչ ցուցմունքներ կան որ Հայեր եւ Ասորիներ քարոզած են քրիստոնէութիւնը Պարսկաստանի մէջ Դ. դարէն սկսեալ եւ յաջողած են կազմել հոն պարսիկ քրիստոնեայ համայնք մը: Է. դարուն սկիզբը՝ երբ Նեստորականներ մեծ տագնապի մը ծնունդ տուին՝ պառակտում յառաջ բերելով Պարսից եւ Ասորւոց եկեղեցիներուն միջեւ, Կոմիտաս կաթողիկոս (615—628) անոնց համար ղեկավարի դեր կատարեց եւ ուղիղ դաւանութիւնը ցոյց տուաւ:

Դժբախտաբար հայ կաթողիկոսներու իբր կրօնապետ գրաւած այս առաջնակարգ դիրքը երկար չտեւեց, վասնզի արաբ տիրապետութիւնը եւ իսլամ կրօնքի տարածումը Պարսկաստանի մէջ ջնջեց պարսիկ եկեղեցին եւ գրեթէ անշքացուց ասորի եկեղեցին:

Այնպէս որ Հայ Եկեղեցին՝ եթէ երբեք Հայաստանի արեւելեան սահմաններէն անդին Պարսկաստանի մէջ նուաճումներ կատարած էր—ինչ որ անհաւանական չէ— եւ յաջողած պարսիկ քրիստոնեաներու զէթ սահմանափակ խումբեր ստեղծել, դժբախտաբար դէպքերը այնպէս դասաւորուեցան որ անոնք անհետ մոռցուեցան եւ Հայ եկեղեցիին ջանքերը բոլորովին կորսուեցան:

Արաբական տիրապետութեան տակ Հայ Եկեղեցին ալ մասնուեցաւ դժուարութիւններու եւ իր ներգործող ոյժը կորսնցուց, թէեւ անիկա մնաց մեծ ազդակ մը ազգութեան պահպանութեան համար, ինչպէս արաբական՝ նոյնպէս նաեւ անոր յաջորդող Սելջուկ, Թաթար, եւ Թուրք տիրապետութիւններու տակ, բոլորն ալ մահմետական եւ ոչ բարեկամ քրիստոնէից:

Ասով հանդերձ բաւական յաջողած է Հայ Եկեղեցին Հայաստանի հայ բնակչութեան կրօնական միութիւնը անեղծ պահելու՝ ինչպէս նաեւ Հայաստանի արեւելքը սահմանակից պարսկական նահանգներու հիւսիսը Պոնտոսի, Վրաստանի եւ Կովկասեան շրջաններու եւ հարաւը՝ Ասորիքի եւ դէպի արեւմուտքը՝ Փոքր Հայքի եւ Կապադովկիոյ մէջ ապրող Հայերը եւ նոյնիսկ աւելի արեւմուտք՝ մինչեւ Եգէական եւ Վոսփորի եւ Տարտանէլի նեղուցները սփռուած հայ գաղութները հայ ազգութենէն անբաժան պահելու, եւ այսպէս կատարելու շատ նշանակելի դեր մը:

Այս յաջողութիւնը լիակատար չէ եղած, վասնզի Հայ ազգին տկարութենէն օգտուելով, օտար հաւատորսներ հայ ազգին կրօնական միութիւնը եղծանելու աշխատած եւ մասամբ յաջողած են:

Այսպէս, մէկ կողմէն Բիւզանդիոնի գործադրած ճնշումին տակ մաս մը Հայեր յունադաւանութեան կը

յարէին, ուրիշներ լատին վարդապետներու քարոզութիւններէն եւ Հռոմի մեծ անունէն հրապուրուած կաթոլիկութեան կը կապուէին, եւ ուրիշ մաս մըն ալ իսլամ տիրապետներու ճնշումին տակ կամ պարզապէս դիւրակեցութեան կամ զինաթափ չըլլալու համար կ'իսլամանային եւ Հայ կրօնական միութիւնը կը քանդուէր, քանի որ Հայութեան ծոցին մէջ կ'ապրէին Հայ Հոռոմներ կամ Նաքանիկեաններ, Հայ կաթոլիկներ կամ Միաբանողներ եւ Հայ-իսլամներ կամ Թիւրքեր, առանց հաշուելու զանազան աղանդներու յարող եւ նոր ժամանակներու մէջ Ամերիկացի միսիոնարներու ջանքերով Հայ Եկեղեցիէն բաժնուելով՝ բազմատեսակ բողոքականութեան զանազան հատուածներու միացող Հայերը:

Այնպէս որ՝ հայադաւանութիւնը ոչ մէկ աշխարհագրական սահման գրաւեց միապաղաղ կերպով, ԺԴ. դարէն յետոյ:

## Է.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՊԱՏՄԱԿԱՆ ԵՐԿԻՐ

Հայաստան, ինչպէս տեսնուեցաւ, ո՛չ աշխարհագրական եւ ո՛չ ցեղագրական, եւ ո՛չ ալ լեզուական յստակ ու պայծառ սահմանագծումներով իր շրջակայ երկիրներէն զատուած աշխարհամաս մըն էր: Բայց զարմանալի է որ Հայերը իբրեւ իրենց պատմական հայրենիքը կը ճանչնային ընդարձակ երկրամաս մը, որուն բնակչութիւնը դարերու ընթացքին հայացած էր:

Հայերու համար Հայաստանը մի եւ անբաժանելի էր, որչափ որ ալ աշխարհագրական որոշ պատուարներ զայն բաժնած չըլլային դրացի երկիրներէն: Բոլոր այն երկիրները, որոնք Հայերէ բնակուած էին մեծամասնութեամբ՝ Հայաստան էին: Այս իսկ պատճառով հաւանօրէն Հայոց համար Հայաստան էր նաեւ Եփրատէն դէպի արեւմուտք տարածուած հողերէն կարեւոր մաս մը:

Ասիկա ո՛չ միայն Հայոց համոզումն էր, այլ նաեւ օտարներու, ինչպէս Հերոդոտոսին, որ Եփրատէն Ալիս տարածուած երկիրները Հայաստանի կը միացնէր (տես վերը, էջ 10), իսկ Դարեհի արձանագրութիւնը այդ միեւնոյն հողերը մաս կը համարէր ԺԳ. Սատրապութեան, որուն մէջ էին Հայերը (տես Հ. Հիւպշման, *Հին Հայոց տեղւոյ անունները* էջ, 10, նաեւ վերը էջ 10):

Աւելի հետաքրքրական պարագայ մըն է որ երբ այդ սատրապութիւնը երկուքի կը բաժնուի, այդ երկու մասերը կը զանազանուին *Արեւելեան* եւ *Արեւմտեան* կոչումներով, ինչպէս կը հաստատէ Քսենոփոն: Նոյնքան նկատելի է որ Հայերը բնաւ չեն գործածեր «*Փոքր Հայք*» բացատրութիւնը, եւ Մ. Խորենացի «*Արեւմտեան մեր կողմն*» կը սիրէ կոչել (Ա. ժգ) վերջը «Փոքր Հայք» կոչուած երկիրը, անշուշտ հակադրելով «*Արեւելեան*» մասի մը հետ:

Հերոդոտոսի խօսքերէն կը հասկցուի թէ Քր.է առաջ Ե. դարուն Հայերը արդէն հաստատուած էին Վանի ծովին շուրջ բոլորը, մինչեւ վերին եւ միջին Երասխի հովիտները (Հիւպշման, *նոյն*, էջ 12): Նոյնպէս որոշ կերպով գիտենք, Քսենոփոնի վկայութեամբ, թէ 401 Քր.է առաջ Հայերը տեղաւորուած էին Հայկական Բարձրաւանդակին սիրտին վրայ, քանի որ իր խօսքով Կենդրիտէս գետը (= Պոհտանսու) հարաւային սահմանն էր Հայաստանի, իսկ դէպի հիւսիս՝ արեւելեան եւ արեւմտեան սատրապութիւնները կը տարածուէին մինչեւ Ճորոխի եւ Երասխի հովիտները:

Բայց շատ աւելի հին ժամանակներէ մեզի հասած են յիշատակութիւններ, որոնք եթէ ոչ յստակօրէն գէթ աղօտ կերպով մը կը հաստատեն այսօր Հայաստան անունով ծանօթ աշխարհամասին վրայ Հայերու գոյութիւնը:

Այսպէս, Հոմերոսի *Ոդիսականին* աշխարհագրական թատերավայրը նկարագրուած է Հեսիոդէն եւ Արգոնաւորդներու պատմութեան մէջ: Հեսիոդի քարտէզին մէջ, թատերավայրին սահմանները յառաջացած են մինչեւ Անտիտաւրոսի շրջակայքը, մօտերը *Արիմ*ներու (Z. Khanzadian, Rapport sur l'Unité géographique de l'Arménie, Atlas Historique, Paris. 1920, էջ 6), որոնք գրեթէ արդի Հայաստանի տեղը կը գրաւէին:

Իլիականի մէջ ալ կը յիշատակուին այս Արիմացիները (*Իլիական* Բ. 780—5) նաեւ Հեսիոդ «*Դիւցազն*», 324, Պինտար *Հատակոտորք*, 93, որոնց քով եղած է իբր թէ Զեւսի եւ Տիփէոսի պատերազմը (տես այս մասին Փրոֆ. Յովսէփ Պարչի մեկնաբանութիւնները, *Պատմութիւն Հայ Կեսարիոյ*, էջ 12 եւ 148):

Յ. Մարկուարդ այս Արիմները կը նոյնացնէ Արմէններուն հետ եւ կ'եզրակացնէ թէ անոնք այն ատեն կը բնակէին Կիլիկիա՝ հրաբուխի մը մօտ, որ միայն Արգէոսը կրնար ըլլալ (տես Revue des Etudes Arméniennes, t. VII, էջ 215—216). եւ այսպէս կը կազմէ Ալիսէն Արգէոս եւ անկէ դէպի Արաքսի աղբերակունքը ենթադրական ուղեգիծ մը Հայերու համար, դժբախտաբար կասկածելի:

Երբ Հոմերոսի Արիմացիները կամ Արիմները Եփրատէն անդին անցած չէին Հոմերոսի ատեն՝ այդ պարագային Արիմներու եւ Արմէններու նոյնացումը խնդրական կը դառնայ, եւ կը քանդուի նաեւ Զ. Խանզատեանի տեսութիւնը, որ հիմնուած է Հէքատէի, Էսքիլէսի եւ Հերոդոտոսի (ամէնքն ալ Քր.է 500 տարի առաջ) վրայ, որոնք համաձայն են Արիմներու բնակա-

վայրը Հայաստանի սահմաններուն մէջ զետեղելու (Խանզադեան, *նոյն*, էջ 6):

Այս երեք հեղինակները օգտուած են զիրենք կանխող ուրիշ հեղինակներէ, որոնց գործերը կորսուած են այսօր: Անոնք ծանօթ էին ի մէջ այլոց Դարեհի կողմէ աշխարհագրական բազմաթիւ հետազօտութեանց համար ղրկուած յոյն Իոնիոյ Կարիանտացի Սկիլաքի (Scylax de Caryanda) (500 Քր.է առաջ) *«Միջերկրականի շրջագայութիւնը»* գործին, որմէ մեզի հասած են բաւական հատուածներ, ինչպէս Դիոնեսիոս Միլէտացիի Պարսից վրայ գրածներուն (մասամբ միայն ծանօթ հիմա) եւ այլ հատակտորներու:

Հակառակ այս իրենց քիչ շատ վաւերագրեալ հանգամանքին՝ եթէ այս տեղեկութիւնները վստահելի ալ չըլլան, բան մը չենք կորսնցներ, վասնզի չեն պակսիր աւելի վաւերական եւ աւելի հաւաստի փաստեր, հաստատելու համար Հայաստանի պատմական գոյութիւնը, քիչ մը ժամանակով աւելի ուշ վաւերագիրներու մէջ:

Նոյնպէս՝ երկրորդական նշանակութիւն ունին Հայաստանի հնագոյն պատմութեան համար Աստուածաշունչի Ծննդոց գիրքի Ժ. Գլուխին Թորգոմայի քարտէզը եւ Բերոսոսի (Բաբելացի քուրմ մը, որ կ'ապրէր 330—260 Քր.է առաջ) տեղեկութիւնները, որոնցմէ հատուածներ մեզի հասած են Աղեքսանդր Բազմավէպի, Ապոլլոդորոսի (Apollodore) եւ Աբիւդենոսի (Abydéne) գործերուն միջոցաւ (տես Smith «The Chalden Account of Genese», London, 1876, ինչպէս նաեւ P. Lenormantի Les Origines de l'Histoire d'après la Bible et les Traditions des peuples orientaux. Paris. 1880—1882): Սեպագրական նոր յայտնութիւններ արժէքազրկած են այս տեղեկութիւնները (Խանզադեան, *նոյն*, էջ 5):

Բայց առանցմէ զատ կան ուրիշներ, որոնք մեզի կու տան անփոխարինելի տեղեկութիւններ:

Այսպէս, յոյն ուղեւոր Գլէսիասի (Clesias) Պարսից Պատմութեան հատուածները եւ մանաւանդ Քսենոփոնի Նահանջ Բիւրուն նկարագրութիւնը կը կազմեն թանկագին վաւերագիրներ Աղեքսանդր Մակեդոնացիէն առաջի շրջանին Հայաստանի աշխարհագրութեան համար:

Մինչեւ այն ատեն բոլոր աշխարհագրական ծանօթութիւնները մասնաւորապէս կը վերաբերին պատմութեան: Անաքիմանտրոսի (Anaximandre) քարտերը որ անոնց կ'ընկերանային, ուրիշ բաներ չէին այլ պարզ ցուցակներ մերձաւորապէս նշանակուած տեղերու: Անոնք բաւարարութիւն չէին կրնար տալ Աղեքսանդրի արշաւանքովն Արեւելքի մասին մարդկութեան ստացած ծանօթութիւններուն զարգացման: Ասոր համար Արիստոտելի ամէնէն հռչակաւոր աշակերտներէն մին՝ Դիկէարքոս (Dicéarque) Մեսինացի (300 Քր.է առաջ), արեւմուտքէն արեւելք երկարող լայնութեան աստիճանները յղացաւ, եւ եղաւ հիմնադիրը քարտիզագրութեան Աղեքսանդրի շրջանին:

Աստեղագէտները եւ աշխարհագիրները, որոնք Աղեքսանդրի բանակներուն կը հետեւէին, զարգացուցին քարտիզագրութիւնը, այնպէս որ մէկ դարէն նուազ ժամանակամիջոցի մը մէջ, Երատոսթենէս (Eratosthène) (200 Քր.է առաջ) կը շատցնէ լայնութեան աստիճանները եւ Հիպպարքոս (Hipparque) (150 Քր.է առաջ) զանոնք աւելի որոշակի կը նշանակէ, մինչեւ որ Ստրաբոն (Քր. 20ին) եւ Պտղոմէոս (150 Քր.է յետոյ) կը հիմնեն ճշմարիտ քարտիզագրութիւնը (հմմտ. Խանզադեան, *նոյն*, էջ 6):

Անշուշտ, նախ Աղեքսանդրի եւ ապա Ասիա առաջացող հռոմէական բանակներուն հետեւող Յոյն եւ Լատին գիտուններու պատմական եւ աշխարհագրական ծանօթագրութիւնները նպաստեցին այս աշխարհամասին քարտիզագրութեան զարգացման: Աղեքսանդրի ծովակալներէն մէկուն՝ Նէարքոսի (Néarque) նշանակելի օրագրութեան հատուածները, Արիանէն (Arrian) հաղորդուած, ինչպէս նաեւ Վիրգիլիոսի, Պոմպէոսի, Պլինիոսի, Պլուտարքոսի, Դելլիուսի, Pomponius Mélaի եւ դեռ ուրիշներու նկարագրութիւնները, անվիճելի փաստերն են այն շահագրգռութեան զոր հռոմէացի յաղթականները միշտ ցոյց տուած են իրենց նուաճումներու ընթացքին. գիտութիւններու եւ մասնաւորաբար աշխարհագրութեան համար, իբրեւ իրենց յաջողութիւններուն պատկերագրական տեւականացումը (հմմտ. Խանզադեան *նոյն*):

Հռոմէական բանակները երբ Ասիոյ մէջ առաջանալով անցան Անտիտաւրոսը եւ ոտք դրին Հայերէ բնակուած Հայկ. Բարձրաւանդակին վրայ, շատ լաւ ըմբռնեցին աշխարհագրական միութիւնը այս երկրին եւ զայն վարչական երկու շրջանակներու բաժնեցին, որոնցմէ մէկը կոչեցին Մեծ Հայք (Armenia Major) եւ միւսը՝ Փոքր Հայք (Armenia Minor), անուանակոչումներ՝ որոնք դարեր տեւեցին:

Աւելի ուշ ժամանակներու մէջ էր որ վարչական ուրիշ բաժանումներ երեւան եկած են Ա. Բ. Գ. եւ Դ. Հայք անուններով, որոնք ամէնքն ալ Փոքր Հայքի մէջ էին, իսկ Հայկական լեռնադաշտին կեդրոնական մասը՝ ընդհակառակը՝ մնացած է *Մեծ Հայաստան* անունով, Աղեքսանդրէն մինչեւ հիմա:

Մէկ խօսքով, ինչպէս կ'ըսէ Խանզադեան, չկայ էջ մը գրուած Ասիոյ վրայ, ուր յիշուած չըլլայ Հայաստանը: Զատիկ Խանզադեան իր յիշատակեալ գործին մէջ որպէս դրական փաստեր՝ կու տայ հարազատ ընդօրինակութիւնները կարգ մը աշխարհացոյցերու: Այսպէս՝ անիկա տուած է Հոմերոսի եւ Հեսիոտի կիսագունդը, ուր Հայաստանի տեղ կը գտնենք *Արիմներ* անունը (քարտէզ թ. 1 նոյն գործին մէջ), ինչպէս նաեւ աշխարհացոյցերը Հէքատէի (500 Քր.է առաջ) եւ Հերոդոտոսի (450 Քր.է առաջ) (քարտէզ թ. 2 եւ 3), որոնց վրայ Հայաստանը որոշուած է ոչ այլեւս Հոմերոսի *Արիմներ* բառով, այլ *Արմէնիք*ով: Իսկ Երատոսթենէսի (220 Քր.է առաջ) եւ Հիպպարքոսի (150 Քր.է առաջ) քարտէզներուն վրայ (քարտէզ թ. 4 եւ 5) «Արմէնք»ի տեղ գրուած կը գտնենք դասականբառը« Armenia» (=Հայաստան):

Ստրաբոնի (20 Քր.ի) եւ Պտղոմէոսի (150 Քր.ի) քարտէզները (թ. 6 եւ 7, ինչպէս նաեւ թ. 8) կը փակեն շարքը հնութեան կիսագունդերուն որոնց մէջ Հայաստան կը գտնէ իր բնական եւ գիտական սահմանները: Իսկ Փարիզի Ազգ. Մատենադարանի լատինական աշ-

խարհացոյցերու հաւաքածոյին պատկանող քարտէզի մը մէջ (տես Խանգատեանի թիւ 9 քարտէզը) նշանակուած են Առաջին Հայք (Armenia Prima), Երկրորդ Հայք (Arménia Sconda) եւ Երրորդ Հայք (Armenia Tertia) բաժանումները Փոքր Հայքի մէջ:

Յոյն Ստրաբոն (66 Քր. առաջ — 24 Քր.է վերջ), առաջին հեղինակն է հիներէն, որ մանրամասն աշխարհագրական տեղեկութիւններ կու տայ Հայաստանի մասին: Ան կը նկարագրէ երկրին դիրքը, ջրագրական հանգամանքները, հողը եւ անոր արտադրութիւնները, ինչպէս նաեւ կու տայ պատմական տեղեկութիւններ, կը յիշատակէ վարչական քանի մը բաժանումներու անունները, բայց դժբախտաբար չի տար առհասարակ տեղերու, նահանգներու լիակատար ցուցակը:

Այս աշխարհագիրը (Գիրք ԺԱ. Գլ. ԺԴ.) կը նկարագրէ Հայաստանի հնագոյն սահմանները այսպէս. հարաւէն՝ Տաւրոսեան լեռները, որոնք կը բաժնեն Հայաստանը Միջագետքէն, արեւելքէն՝ Մեծ Միտիան (Մարաստանը) եւ Ատրպատականը, հիւսիսէն՝ Պարախոաթրաս լեռներու մէկ մասը, որ կը գտնուէր ուղիղ Կասպից ծովին վրայ, յետոյ Աղուանից երկիրը, եւ Վրաստանը՝ Կովկասեան լեռնաշղթային հետ, որ կը պատէ այդ երկու երկիրները եւ այստեղ իսկ (այսինքն Հայաստանի սահմանին վրայ) կը միանայ Մոսխներու եւ Կողքիսի լեռնային շղթաներուն հետ եւ կը տարածուի մինչեւ այն երկիրը, ուր կ'ապրէին Տիբարանի ցեղերը: Վերջապէս արեւմուտքէն Հայաստանը եզերուած է նոյն Տիբարանի երկիրով, յետոյ Պարիադրէս սարով եւ Սկիդիեսով մինչեւ Փոքր Հայք եւ Եփրատի հովիտը, որ կը շարունակէ բաժնել մէկ կողմէն Հայաստանը եւ միւս կողմէն՝ Կապադովկիայի Կոմմագէնը:

Ստրաբոնի տուած տեղեկութեանց համաձայն՝ հաւանօրէն Քր.է երկու դար առաջ Հայերը իրենց բնակավայրին շրջագիծը աւելի ընդարձակած էին, վասնզի իրբ Անտիոքոս կը պարտուի (190 Քր.է առաջ) եւ կը հարկադրուի հրաժարիլ Հռոմի պահանջմամբ Տաւրոսէն անդին գտնուող երկիրներէն, Հայաստան եւս իր անկախութիւնը ձեռք կը բերէ:

Ստրաբոն որ բաւական ժամանակով մօտ է այն շրջանին, ուր Հռոմի յաղթութեան հետեւանօք ազատագրուեցան ասիական կարգ մը երկիրներ, ինչպէս Հայաստանը, կը հաւաստէ թէ գէթ երեք բոլորովին անկախ թագաւորութիւններ կազմուեցան, իբրեւ նախկին բաժանումներու շարունակութիւն. (տես. վերը, էջ 12).

1. *Մեծ Հայք*՝ Երասխի հովիտին մէջ՝ Արտաշատ մայրաքաղաքով.

2. *Ծոփք*՝ Հայաստանի հարաւ-արեւմտեան կողմը՝ Արշամաշատ մայրաքաղաքով.

3. *Փոքր Հայք*՝ Եփրատի արեւմտեան եզերքը.

Ասոնցմէ առաջինը՝ Ստրաբոն (ԺԱ. 15) կը կոչէր *Բուն Արմենիա*, *«այսինքն զամենայն մասն երկրին, որ ձգի զաշխարհօքն Մարաց, Աղուանից եւ Վրաց մինչեւ Կողքիս եւ ի ծովեզրեայն Կապադովկիա»*, երկրորդը՝ *«Հարաւակողմն Արմենիոյ, մանաւանդ զմասն յարեւմտից»* (Ստրաբոն ԺԱ. 15), իսկ երրորդն՝ *«Աշխարհն փոքուն Հայոց... երկիր ըստ բաւականին պտղաբեր»* (Ստրաբոն ԺԲ. 3. 18) եւ կը գտնուէր Եփրատի արեւմտեան կողմը, այն աշխարհամասին մէջ որ երբեմն Կապադովկիոյ մաս կը կազմէր եւ որ իր Հայ ստուարաթիւ բնակչութեան համար պէտք էր ստացած ըլլար *Փոքր Հայք* (Armenia Minor) կոչումը:

Ստրաբոնի իսկ խօսքերով *«Արմէնները Արտաքսիասի եւ Զարիադրիսի օրով շրջակայ ազգերէն սահմանակից տեղեր գրաւելով՝ ընդարձակեցին իրենց սահմանները... Իբերներէն Պարիադրիս լեռնաշղթային լեռնակողմը, Խորձենք* (1) *ու Կուր գետի միւս կողմը գտնուող Գուգարք, Խալիւբներէն ու Մոսինոքներէն Կարինիտիս (=Կարին) ու Դերկսինէ (=Դերջան), որոնք Փոքր Հայքի սահման երկիրներ կամ (թերեւս) նոյնպէս անոր մասերն են, Կատաւոններէն՝ Ակելիսինէ (=Եկեղեաց) ու Անտիտաւրոս երկիրը»* (Ստրաբոն, ԺԱ. 14, 5).

Այս նուաճումները՝ որոնց ցեղագրական հետեւանքներուն վրայ խօսուեցաւ (վերը՝ էջ 12 - 13), միեւնոյն ատեն ունեցան պատմական նշանակութիւն մը, վասնզի Հայ ցեղին տիրապետութիւնը հաստատեցին մինչեւ արդի Ղարապաղի, Ատրպատականի սահմանները, մինչեւ Կուրի հովիտը եւ մէկ խօսքով Հայկ. Բարձրաւանդակի ամէն կողմերը:

Այս սահմանը սակայն անփոփոխ չմնաց: Արտաշէսի թոռներէն մէկը՝ Տիգրան (Բ.), որ բուն Հայաստանի տէրն էր, *«գահընկեց ըրաւ Զարիադրիսի սերունդէն Ծոփացի Արտանէսը, որ հարաւային մասերը եւ այն ալ անոնց մէջէն աւելի արեւմտեանները ունէր»* (Ստրաբոն 532) եւ գրաւեց անոր հողերը: Տիգրան ասով ամբողջ Հայաստանի տէր եղաւ: Սակայն ինքը Տիգրան Ա.ի մէկ որդին եւ հաւանօրէն Արտաւազդ (Ա.) թագաւորին կրտսեր եղբայրը, ժամանակաւ պատանդ տրուած էր Պարթեւաց, եւ որպէսզի ազատ թողուի եւ Արտաւազդի տեղ թագաւորէ Հայոց, Պարթեւաց թագաւոր՝ Միհրդատ Մեծին 70 ձոր ստիպուած էր թողուլ (94ին Ն. Ք. Քր.), ինչ որ ետ առաւ եր- Հայաստանի կրկին մասերուն վրայ թագաւորեց: (Ստրաբոն Գ. 532).

Ասկէ զատ նուաճեց եւ իր իշխանութեան ներքեւ առաւ Ատրպատականի, Ադաբենիոյ եւ Կորդուաց թագաւորութիւնները, գրաւեց Միջագետքը, Ասորիքը (83էն սկսեալ) եւ Փիւնիկէն, եւ շինեց Տիգրանակերտ քաղաքը, ուր բնակեցուց, Յունաց այն տասներկու քաղաքներուն բնակիչները, զորս ինքը քանդած էր: Քաղաքին շինութիւնը աւարտած չէր երբ Լուկուլլոս անոր վրայ արշաւեց (69ին), քաղաքը կործանեց, եւ Տիգրանը Ասորիքէն եւ Փիւնիկէէն վանեց (*Նոյն*):

Իր պարտութեան հետեւանքը եղաւ Տիգրիսի հարաւակողմը գրաւուած երկիրներուն կորուստը, զորս Պարթեւներէն եւ Ասորիներէն առած էր: Նոյնպէս Հայոց իշխանութենէն ելան Կորդուքը եւ հիւսիսային Միջագետքը, ուր իր եղբայրը՝ Գուր քիչ մը ատեն եւս կրցաւ պահել Մծբինը, մինչեւ որ Լուկուլլոս՝ Արտաշատի վրայ ըրած անյաջող արշաւանքէն յետոյ (68ին Ն. Ք. Քր.), Մծբինի վրայ յարձակեցաւ եւ առաւ: Այս միջոցին անհամաձայնութիւն ծագեցաւ Տիգրանին ու իր համանուն որդւոյն միջեւ:

(1) Xorzene՝ *ըստ Հիւպշմանի կը համապատասխանէ Կաղարջքի (Հիւպշման*, Նոյն, 62).

Տիգրան Փոքր՝ պարթեւական բանակ մը բերելով Հայաստան՝ իր հայրը ստիպեց լեռները փախչիլ, բայց քիչ մը ետքը իր հօրմէն յաղթուեցաւ, վասնզի Պարթեւաց թագաւորը, Արտաշատը չկրնալով առնել, դժկամ քիչ մը առաջ իր բանակին մէկ մասովը մեկնած էր:

Հազիւ թէ Տիգրան իր իշխանութիւնը վերականգնած էր՝ երբ Պոմպէոս եւ իր որդին՝ Արտաշատի առջեւ երեւցին, որով Տիգրան ստիպուեցաւ, առանց որեւէ դիմադրութեան, Հռոմէացւոց առջեւ տեղի տալ եւ հաշտութիւն խնդրել:

Խաղաղութիւն ընելու ատեն Տիգրան մեծ գումարներ վճարելէ զատ, բոլոր գրաւած երկիրները—Փիւնիկէն, Ասորիք, Կիլիկիան, Կապադովկիան եւ միանգամայն Ծոփքը եւ Կորդուքը ետ տուաւ (Մոմսէն, *Հռոմ. Պատմ.* $3^{8}$ 130):

Տիգրանի ձեռքը մնաց միայն բուն Հայաստանը (առանց Ծոփքի): Իսկ երբ Պարթեւք եւ Հայք իրարու հետ պատերազմի բռնուեցան Կորդուաց պատճառով—զոր Պարթեւք գրաւած էին, Պոմպէոս (65ին Քր.է առաջ) Աֆրանիոսի ձեռքով Պարթեւները Կորդուքէն վռնտել տուաւ (*Նոյն* 148) եւ 64ին իբր իրաւարար հրատարակեց թէ Տիգրանինն են Կորդուք եւ հիւսիսային Միջագետքը (*Նոյն,* 150):

Ահա այդ շրջանէն կ'սկսի Հայաստանի աշխարհագրական գաղափարին, հաստատուն կերպով զարգացումը՝ իբրեւ միաձոյլ երկիր մը եւ ասոր գլխաւոր ապացոյցը այն էր որ, արդէն նոյն ատեն իսկ՝ լեզուով, կրօնքով ու սովորութիւններով զարգացած էր համացեղ Հայութիւն մը, որ քանի մը նահանգներու մէջ ամբողջ զանգուածը կամ բնակչութեան մեծամասնութիւնը կը կազմէր, իսկ քանի մը նահանգներու մէջ ալ գէթ տիրող դասակարգը: Այս Հայութիւնը այն հաստատուն կապն էր որ պէս պէս ազգերը ամբողջութեան մը միացուցած էր՝ երկիրին ի բնէ ու պատմական յարաբերութեանց բերմամբ գծուած սահմաններուն մէջ:

Այս գաղափարը հաստատուն մնացած է Հայոց քով երկար ատեն, թէեւ քաղաքական պայմանները շատ քիչ անգամ համապատասխան էին այս շրջագիծին, որուն Հայաստան անունը կը տրուէր: Շատ անգամ հարաւային նահանգները Պարսից կ'անցնէին, արեւմտեանները՝ Յունաց, հիւսիսայինները՝ Վրաց կամ Աղուանից. Նոյնիսկ Պարսիկները եւ Հռոմէացիները երկիրը իրենց միջեւ կը բաժնէին, սակայն Հայերը միշտ Հայաստան անունով կը ճանչնային այն երկիրը՝ որ իրեն սահման ունի հարաւէն Տաւրոս լեռները, որոնք Հայաստանը Միջագետքէն կը բաժնեն, Արեւելքէն Ատրպատականն ու Մարաստանը, հիւսիսէն Կասպից ծովուն կողմերը գտնըւող Պարաքսաթրեան լեռները, Վիրքն, Աղուանքն ու Կովկասը՝ Մոսքեան ու Կողքեան լեռներով, արեւմուտքէն՝ Պարխարը եւ Սկիւտիսիան, Փոքր Հայքն ու Եփրատը —որ Հայաստանը Կապադովկիայէն ու Կոմագենէն կը բաժնէ: Շատ քիչ տարբերութեամբ իրարու համաձայն են այս մասին Ստրաբոնի (Գ. 571, 522, 527) —որ Պոմպէոսի Միհրդատեան պատերազմին մասնակից, Թէոփանէս Միտիլենացիի կը հետեւի— եւ Խորենացիի վերագրուած աշխարհագրութիւնը, որ պատրաստուած կրնայ ըլլալ միայն այն ատեն, երբ Հայաստան կորսնցուցած էր իր քաղաքական անկախութիւնը, եւ բաժնուած՝ երկու պետութիւններու միջեւ: Հետեւաբար այս աշխարհագրութեան մէջ Հայաստանի մասին տրուած տեղեկութիւնները կը թուին քաղուած ըլլալ պաշտօնական աղբիւրէ (Լէօ, *Պատ. Հայոց, Ա.*, էջ 169) եւ կը պատկերացնեն Մարզպանութեան շրջանի վիճակը (*Նոյն*):

Բրոֆ. Աշոտ Աբրահամեանի եւ Հ. Ներսէս Ակինեանի տեսութիւնները չեն հակասեր այս տեսութեան, քանի որ Է. դարուն Հայաստան արդէն կորուսած էր իր անկախութիւնը:

Այս ըմբռնումով Հայերը Հայաստանի մաս կը համարէին Փոքր Հայքը, այն հնագոյն սահմաններով որ անոր կու տան Ստրաբոն եւ Պլինիոս, որոնք կը խօսին Փոքր Հայաստանի մը վրայ, որ Փոքր Ասիոյ մէջ էր, Եփրատի հիւսիս-արեւմուտքը եւ հարաւէն իրեն սահման ունէր Գայլ գետին (Lycos) հովիտը: Ուրեմն որոշ է թէ այդ շրջանակին մէջ ալ Հայեր կ'ապրէին հին ժամանակներէ սկսեալ եւ կազմած էին *Փոքր Հայքը*՝ անջատ *Մեծ Հայաստանէն* եւ Եփրատով անկէ բաժնուած (*Հիւպշման, նոյն,* էջ 12 եւ 26 եւ J. Laurant, l'Arménie entre Byzance et l'Islam, էջ 301)։ Լօռան Փոքր Հայքը կը համարէ առաջին նըւաճուած երկիրը Հայ ցեղէն եւ առաջին հայախօս նահանգը՝ որ պարսկական միպետութեան անկումէն յետոյ ստացած էր իր ազգային անկախութիւնը (*Նոյն*) վասնզի Ստրաբոն (ԺԲ. 3, 18) կ'ըսէ. «*Փոքր Հայք ունէր, ինչպէս Ծոփաց աշխարհը՝ միշտ թագաւորներ կամ տոհմային իշխաններ, որոնք դաշնակից էին յաճախ բուն Հայոց կոչուած թագաւորներուն հետ, բայց առանձին եւս կը գործէին։ Փոքր Հայոց թագաւորները իրենց իշխանութեան տակ ունէին խաղդիքը եւս*»։ Այս թագաւորութիւնը հազիւ կրցաւ տոկալ մինչեւ Պոնտացի Միհրդատ Եւպատորի ժամանակ (130—63, Ք. Ա.) վասնզի անիկա կցեց Պոնտոսի (*Թէոդոր Ռէյնախ, Միհրդատ Եւպատոր*, 79) եւ անկէ յետոյ գրեթէ ընդմիշտ կորսնցուց իր անկախութիւնը, սակայն Հայերը զայն Հայաստանի մաս համարելէ չդադրեցան, ինչպէս Հայաստանի անբաժանելի միութեան մէջ նկատած էին Խորենացիի վերագրուած Աշխարհագրութեան թուած Հայաստանի 15 նահանգները, որոնցմէ ոմանք հազիւ կարճ շրջաններ, եւ ոմանք զուցէ բնաւ չէին ենթարկուած Հայկական տիրապետութեան: Բայց կ'երեւայ թէ այս 15 թիւը հինէն եկած աւանդութիւն մըն էր, որուն արձագանգ եղած է Խորենացիի վերագրուած Աշխարհագրութեան հեղինակը: Ինչպէս տեսնուեցաւ (վերը՝ էջ 37) Արշակ Բ.ի եւ Ներսէս Պարթեւ Հայրապետի ժամանակէն կամ գէթ Ե. դարէն արդէն 15 նահանգի կամ գաւառի բաժանումի մը գաղափարը կար, վասնզի Փաւստոս (Գ. ժդ) Ներսէսի իշխանութեան տակ ցոյց կու տայ իբրեւ սեփական վիճակ «*Հնգեւտասան Գաւառ*» եւ յանուանէ կը յիշատակէ Այրարատը, Դարանաղէն, Եկեղեացը, Տարօնը, Բզնունիքը, Ծոփքը «*եւ որ ընդ մէջ նոցա եւ շուրջ զնոքօք*»: Եթէ Հայաստանի նահանգներէն ոմանք հայ իշխանութեան չէին ենթարկուած, սակայն անժխտելի է որ հայաբնակ էին:

Այսպէս, օրինակի համար՝ Հայաստան նկատած են Հայերը մինչեւ Կասպից ծով տարածուող երկիրները,

սակայն կասկածելի է որ Հայերը մինչեւ հոն հասած ըլլան, թէեւ ոմանք կը կարծեն թէ Արտաշիսեան հարստութեան ժամանակ, Քր.է առաջ Բ. դարէն սկսեալ մինչեւ Դ. դար՝ Արշակունիներու ժամանակ միմիայն՝ հասած են Կասպից ծով (Ն. Դոլենս եւ Ա. Խաչ, *Պատմութիւն հին Հայերի*, Բ. 7), մինչ որոշ է թէ Հայերը այդ ծովով չեն շահագրգռուած (*Նոյն*):

Նոյնպէս հետաքրքրական իրողութիւն մըն է որ հակառակ անոր որ Հռոմ եւ Բիւզանդիոն երկար դարեր նոյնիսկ անդրեփրատեան ընդարձակ Փոքր Ասիական տարածութիւններ Հայկական երկիրներու ծիրին մէջ առած եւ զանոնք Հայք=Հայաստան անուանած են՝ *Առաջին Հայք*, *Երկրորդ Հայք*, *Երրորդ Հայք*, *Չորրորդ Հայք* եւ այլ կոչումներով (1) եւ Արաբները՝ աւելի ուշ ժամանակներու մէջ երբ Հայոց երկիրին հետ յարաբերութիւն ունեցած են, Մեծ Հայաստանի տուած են շատ աւելի տարածուն սահման մը, (J. Laurant, l'Arménie entre le Byzance et l'Islam. 300) սակայն Հայերը միշտ վաղեմի ժամանակներէն ի վեր նուիրագործուած սահմաններէն, այսինքն Խորենացիի վերագրեալ Աշխարհագրութեան 15 նահանգներէն դուրս գտնուած երկիրները չեն ուզած Հայաստան նկատել, հակառակ նոյնիսկ օտարներէն Հայաստան ճանչցուած ըլլալուն:

Այս սահմանագիծը՝ որ Հայերը իրենք իրենց գրեթէ մտովին կերտած էին Հայաստանի համար, ինչպէս տեսնուեցաւ, ցեղին դարաւոր մաքառումներով ստեղծուած էր: Անոր նախնական կորիզէ մը ծաւալումով կազմուած ըլլալուն փաստերը կ'ընծայեն նաեւ Հայ մատենագրութենէն ինչ ինչ տեղեկութիւններ, որոնք Արշակունեաց շրջանին վերջերէն մեզի հասած են: Այսպէս, անվիճելիօրէն Ե. դարու պատկանող երկու մատենագիրներ, Ագաթանգեղոս եւ Փաւստոս, կը հաստատեն թէ Արշակունիներու ժամանակ Հայաստանի մէջ կային չորս *բդեշխութիւններ*, որոնք քաղաքականապէս գրեթէ անկախ իշխանութիւններ էին, Արշակունիներու գերիշխանութեան տակ: Այս բդեշխութիւնները, ընդարձակ երկիրներ էին Հայաստանի սահմաններուն վրայ, եւ այս պատճառով իսկ բդեշխները կը կոչուէին *«սահմանապահք»*, *«սահմանակալք»*, նաեւ *«կողմնապահք»* կամ *«կողմնակալք»*:

Ծանօթ կամ յիշատակուած չորս բդեշխները հետեւեալներն էին.

1. *Նոշիրական բդեշխը*, որ կ'իշխէր Հայաստանի հարաւ-արեւելեան սահմանին վրայ.

2. *Աղձնեաց բդեշխը*, հարաւային սահմանին վրայ, *«յԱրուաստան կողմանէն»*, այսինքն՝ հիւսիսային Միջագետքի եւ Մծբինի հիւսիսակողմը.

3. *Ծոփաց բդեշխը*, ըստ Մարկուարդի, հարաւ-արեւմտեան սահմանին վրայ *«յԱսորեստանեայց կողմանէն»*, այսինքն Ասորիքի դիմաց գտնուող շրջանին մէջ.

3. *Գուգարաց բդեշխը*, հիւսիսային սահմանին վրայ *«ի Մասքթաց կողմանէն»*, այսինքն Իբերիայի Մեսխեթի շրջանին դիմաց: Այս չորս բդեշխութիւններուն համար որոշուած տեղերը, արդէն ցոյց կու տան թէ մօտաւորապէս ինչ էին սահմանները — գէթ հարաւակողմը եւ մասամբ հիւսիսակողմը— Հայաստան աշխարհին, Արշակունիներու շրջանին: Նոյնպէս անոնց ունեցած մասնաւոր դիրքը Հայ նախարարութիւններուն մէջ, իբրեւ *«գահերէց»* իշխաններ *«արքունի տաճարին»* (*Ագաթանգեղոս*, *ՃԻԶ*. Փաւստոս Գ. թ.) եւ իրենց բարձր դիրքը եւ կերպով մը անկախութիւնը, իրենց պետերը թագաւոր կոչելու աստիճան (Փաւստոս, Ե. ժգ.), իրաւունք կու տան նոյնիսկ ենթադրելու թէ անոնք կ'իշխէին շրջաններու, որոնք նախապէս հայկական չէին եւ ապա մուծուեցան Հայաստանի շրջանակին մէջ:

Բրոֆ. Մարկուարդի կարծիքով, Պլուտարքոսի ծանօթ տեղեկութիւնները չորս թագաւորներու մասին, որոնք կ'սպասարկէին Տիգրան Մեծի, կը վերաբերի նոյնիսկ այս չորս բդեշխներուն (J. Marquart, Eranschahr, Berlin, 1901, էջ 171—3): Այսպէս, ուրեմն այս շրջանները Մեծն Տիգրանի օրով հայկական գերիշխանութեան ենթարկուած էին եւ սակայն իրենց ինքնուրոյն ու առանձնայատուկ դիրքը եւ նկարագիրը մինչեւ Արշակունեաց շրջանին վերջերը պահած էին: (հմմտ. Յակոբ Մանանդեան, *Ֆեոդալիզմը Հին Հայաստանում. Արշակունիների ու մարզպանության շրջան*, Երեւան, 1934, էջ 34—38), եւ նոյնիսկ խիստ հաւանօրէն ազատ կը մնային սովորական հարկէն զոր նախարարական տուները պարտաւոր էին վճարելու Արշակունի թագաւորներուն (*Նոյն*, 89):

Յիշատակուած չորս սահմանապահութիւններ, բաւական որոշ կերպով կը գծեն Հայաստանի ընդարձակեալ սահմաններու շրջագիծը, որ Հայերու համար ընդհանուր ըմբռնում մը եղած էր: Այս տեսակէտով մեզի նպաստ մը կը բերէ կրկին Ե. դարու պատմագիրը, Փաւստոս, նկարագրութեանը մէջ Պապ թագաւորի ժամանակ ծագած ընդհանուր ապստամբութեան, զոր Մուշեղ Մամիկոնեան սպարապետը զսպեց (տես Փաւստոս, Ե. դպ. գլ. Ը. Թ. Ժ. ԺԱ. ԺԲ. ԺԳ. ԺԴ. ԺԵ. ԺԶ. ԺԸ. եւ ԺԹ ): Հոն իբրեւ ծայրագաւառներ կը յիշատակուին *Ատրպատականը*, *Նոշիրական աշխարհը*, *Կորդուքը*, *Կորտիք* եւ *Տմորիքը*, *Մարաց կողմերը*, *Արցախը*, *Աղուանից երկիրը*, *Փայտակարանը*, *Վրաց աշխարհը*, *Աղձնիքը*, *Մեծ Ծոփքը*, *Անգեղ տունը* եւ *Անձիտը*, (Մանանդեան, *նոյն*, 85—87 եւ հմմտ. Հիւպշման. *նոյն*, 64) որ եթէ դասաւորելու ըլլանք, պիտի տեսնենք թէ հակառակ Պապի ժամանակ Արշակունի հարստութեան անկումը սկսած ըլլալուն, Հայաստանի աշխարհագրական գաղափարը տակաւին կը մնար հաստատուն ըմբռնում մը: Այս գաղափարը մնաց գրեթէ անփոփոխ նաեւ յաջորդ դարերուն:

Արաբները երբ պատմութեան ասպարէզ եկան Է. դարուն վերջը, Կիլիկիան եւ Հայաստանէն մաս մը գրաւեցին եւ իրենց տիրապետութիւնը արագօրէն տարածեցին ի վնաս Բիւզանդական կայսրութեան: Հայկական հարստութեան վեհապետները, մասնաւորապէս

(1) *Հետաքրքիրներ այս բաժանումներուն մասին ընդարձակ տեղեկութիւններ կրնան գտնել Հիւպշմանի* Հին Հայոց տեղւոյ անուններ, (*էջ* 37—51), *Գէորգ Մեսրոպի՝* Հայաստան (*էջ* 18—21) *և իմ* Պատմութիւն Հայ Կեսարիոյ (*էջ* 331—368) *գործերուն մէջ:*

Վասիլ Ա. (867—886) հալածեց Արաբները, եւ Վասիլ Բ. (976—1025) Հայաստանը, Կիլիկիան եւ Սուրիան, միացուց Բիւզանդական կայսրութեան եւ գրեթէ հասաւ Հռոմէական կայսրութեան հին սահմանները: Այս անվերջ պայքարը, զոր Բիւզանդիոն եւ Արաբները մղեցին իրարու դէմ Հայաստանի եւ մանաւանդ անոր արեւմտեան եւ հարաւային սահմանագլուխին վրայ, ծանր վնասներ պատճառեց Հայ ժողովուրդին, բայց Հայաստանի աշխարհագրութիւնը գրեթէ փոփոխութեան չենթարկեց՝ հակառակ տիրապետութեան պայքարներու բազմապիսի իրադարձութեանց:

Մինչեւ արաբական շրջանը, Հայաստան միշտ պահեց իր ազգային անկախութիւնը կամ տեղական ինքնավարութիւնը, Պարսիկ, Հռոմէական եւ Արաբ գերիշխանութիւններու տակ: Միայն դիտելի է որ Հայկական Լեռնադաշտին երկու մասերէն մին՝ «Փոքր Հայք» կոչուածը, աւելի յաճախ եղաւ թատերավայր արշաւներու եւ առարկայ պայքարի, մինչ միւսը՝ լեռնադաշտին կեդրոնական մասը կամ միջնաբերդը՝ «Մեծ Հայաստան» կոչուածը, ընդհակառակը, պահեց իր անկախութիւնը անմատչելի բարձունքներու վրայ:

Իսկ ինչ որ կարեւոր է՝ սա է որ բոլոր այն վարչական եւ զինուորական բաժանումները եւ կարգադրութիւնները զորս գործադրեցին Հռոմի կայսրերը եւ Յուստինիանոսի 536ին կատարած բաժանումէն վերջը մինչեւ Ժ. դար, եւ նոյնիսկ այդ դարէն ալ վերջը, մինչեւ թրքական արշաւանքներու նախօրեակին, բոլորն ալ կը կրէին միշտ Հայաստան անունը (հմմտ. Զատիկ Խանզադեան, *նոյն*, էջ 11, նոյնպէս *Պատմութիւն Հայ Կեսարիոյ*, էջ 331—368):

Ասիկա կը հաստատեն բոլոր արեւելեան եւ արեւմտեան աշխարհագրական գործերը՝ Հայկական Բարձրաւանդակին տալով Հայաստան անունը:

Սասանեանց մայրաքաղաքին Տիզբոնի մէջ տարածուած էին Պտղոմէոսի *Մեգալէ Սինթաքսիս* գործին (աւելի ծանօթ Ալմակեստ=Almageste անունով) եւ հնդկական կարգ մը երկերու թարգմանութիւնները: Այս գործերուն երբայերէն եւ ասորերէն թարգմանութիւնները Պաղտատը — որ յաջորդած էր Սասանեանց մայրաքաղաքին՝ Տիզբոնի — վերածեցին քաղաքակրթութեան իսկական կեդրոնի մը, ուր նաեւ աշխարհագրութեամբ զբաղեցան:

Պտղոմէոսէն վերջ, Մարինոս Տիւրացի (Maren de Tyr) կը մշակէ արաբ քարտէզագրութիւնը, որուն առաջին փորձերը կը հասնին մինչեւ 814—835 եւ հետզհետէ կը զարգանայ մինչեւ 1154 արաբ աշխարհագիր Իտրիսի ժամանակները (Խանզադեան, նոյն, էջ 13):

Արաբները յետոյ իրենց աշխարհագրական ծանօթութիւնները ընդարձակեցին բազմաթիւ ճամբորդութիւններով, զորս կատարեցին Իտրիսի յաջորդող աշխարհագիրներ, որոնց ժամանակագրական կարգով անունները հետեւեալներն են՝ ըստ Զատիկ Խանզադեանի:

Ալ-Մամուն (արաբ), Ապու Ֆերա (արաբ), Նովախոի (արաբ), Ապու Ապտալլահ (արաբ), Ալ-Քենդի (արաբ), Իպն Քորտատպէք (պարսիկ), Ալ Պարտէնի (Հայ) (1), Իպն Հաուքալ (արաբ), Ապու Իսաք Իսթաքրի (պարսիկ), Մուհամմէտ էլ Ֆարապի (արաբ), Ալ-Պիրունի (հնդիկ), Եագուտ (յոյն), Իպն Պաթութա (արաբ), Իպն Քալտէնի (արաբ), Մարասիտ էլ Իսլամ (արաբ):

Անոնց գործերը հասած են մեզի մասնակի կամ ամբողջ: Եթէ իրենց տեղագրական նկարագրութիւնները արհամարհելի չեն, սակայն իրենց աշխարհագրական քարտէզները մեծ արժէք մը չունին եւ աւելի խեղճ են քան Քր.է չորս դար առաջ Անաքսիմանտրոսի (Anaximandre) պատրաստածները, ինչպէս կը տեսնուի այն բազմաթիւ ձեռագիրներուն մէջ, որոնք կը պահուին Լոնտոնի, Պերլինի, Պրուքսէլի եւ Փարիզի մատենադարաններուն մէջ (հմմտ. Զ. Խանզադեան, *նոյն*, էջ 13):

Մեզի համար շահագրգռական է գիտնալ թէ ամէնքն ալ միօրինակաբար կը յիշատակե՞ն Հայաստանը իբր աշխարհամաս:

Ասոնց ամէնէն գլխաւորն է Իտրիսի (1), որ կը յիշէ Մեծ եւ Փոքր Հայաստանները, գրեթէ Պտղոմէոսի տուած սահմաններով: Ան կը յիշէ Հայաստանի Արեւմուտքը՝

*«Նատոսը (*Անատոլու*), երկիր որուն անունը կը նշանակէ Արեւելք, ուր հաստատուած են Ամուրիա (*Amourium*),* del Alamin *Բերդը,* Meridj al Chaher *(հին Կիրմա), Պուքելան (*Պուքլարիոն*) նահանգը որ կը պարունակէ* Ankina (Անկիւրիա), Tahbour *(*Թապիա*), Թոգատ,* al Khazlassa: *Արմենիակ նահանգը (*=Փոքր Հայք*) ուր են Լատիքիէ (*Laodicèa*), Դերաքիօ, (*Aloumi*),* Belouti *եւ աւելի բոլոր բերդերը Կապադովկիոյ (*Cabadie=Capadoce), *նահանգ որ կը տարածուի Տարսուսէն մինչեւ* el-Laïn (Ալիս)»:

Անտարակուսելի է որ Իտրիսի իբր Հայաստանի արեւմտեան սահման կը նշանակէ Անտիտաւրոսի գիծը, որ արեւմուտքէն կը սահմանէ Հայկական լեռնադաշտը:

Ասիկա այնքան որոշ է որ Իտրիսի կը ծանրանայ այս Անտիտաւրոսի պատուարին պաշտպանողական կարեւորութեան վրայ, գրելով այսպէս. «Թարսուս կարեւոր քաղաք մըն է. որ կը պարունակէ երկու շուկաներ՝ շինուած քարէ, եւ շատ վաճառաշահ: Այս քաղաքին եւ Ռում (Փոքր Ասիա) սահմանագլուխին միջեւ կան լեռներ կտրատուած փոսերով (Դրունք Կիլիկիոյ=Pilae Cilicie), որոնք կը կարծուէին թէ սահմանուած էին ծառայելու իբր պաշտպանութեան գիծ երկու նահանգներուն միջեւ»:

Քիչ մը անդին կը գրէ.

«Կային հոս երկու դուռներ՝ ամրացուած եւ պահպանուած զունդերով, որոնք հսկողութիւն կը կատարէին եկող-գացողներուն վրայ»:

Հարաւային սահմանին վրայ խօսելով կ’ըսէ. «Maïa Farkin (Mifarkin=Մուֆարղին) կը գտնուի Ճեզիրէի (Միջագետք) եւ Հայաստանի սահմաններուն վրայ: Ոմանք զայն կը համարեն Հայաստանի մաս եւ այլք կը նկատեն Ճեզիրէի ենթակայ: Շինուած է Տիգրիսի արեւելքը երկու

(1) *Ալ Պարտէնի հայ ծագումը սխալ մըն է:*

(2) *Փարիզի Ազգ. Մատենադարանը ունի արաբերէն ձեռագիրը* (Թ. 2221) 68 *կտոր, քարտէզով, Իտրիսի ֆրանսերէնի թարգմանուած է* *Amedée Jaubert*է*ն: Իտրիսի իր գործը աւարտած է* 548 *Շէվվալի վերջը, որ կը համապատասխանէ Քր.է* 1154 *Յունուարի կէսին:*

օրուան ճամբայ, եւ ասոր համար զայն Հայաստանի մէջ զետեղած են»:

Քարտէզին վրայ Մուքադդիսիի տեղը ճշդելը բաւական է հաստատելու համար թէ Հայաստանի բնական սահմանը՝ զինքը բաժնող Միջագետքէն Հայկական Տաւրոսէն զատ բան մը չէր կրնար ըլլալ:

Իտրիսի իր գործին մէջ կը գրէ.

«Ներկայ հատուածը կը պարունակէ Հայաստանի մեծ մասը, Ատրպէյճանի զանազան մասերը, Ռանի (Աղուան) ամբողջ երկիրը, Կովկաս լեռը եւ Հայաստանի այն մասերը, որոնք իրեն կցուած են, Maïa-Farkin Bakhenis (Khenis =Խնուս ?), Menadjird (Melezgherd=Մանազկերտ), Bedlis (Պիթլիս=Բաղէշ), Halat (Akhlat=Ախլաթ), Ardjis (Ardjicha=Արճէշ). Chitanzouzan, Nesoua ?) Cali-Cala (Էրզրում), Dabil (1) (=Դուին) Seradj (Շերակաւան), Kartouri, Khoï (=Խոյ), Salmas (=Սալմաստ) եւ Փոքր Հայաստան»:

Գալով Ռան (Աղուան) երկիրին, Իտրիսի իբր այն երկիրին քաղաքները կը յիշատակէ.

«Berda'a (Պարտաւ ?), եւ Bilakan (=Բայլաքան), Borzendj, Samakhia (Շամախի ?), Seman Alaïdjan, Sabiran, Kila, Saklli, Hathwa, Samkhaun, Tiflis (Թիֆլիս) Ahar եւ Racan»:

Ատրպէյճանի ենթակայ կը յիշատակէ՝

«Kouwather, Ardebil (Արտապիլ), Etend, Bourend, Warthan, եւ Moukan (Մուղան)»:

Տեղ մը կը գրէ *«Ուղեգիծ* Meledniէն *(Մելիտինէ=Մալաթիա) Թիֆլիս Հայաստանի քաղաք»* եւ քիչ մը անդին *«Թիֆլիս, քաղաք նշանաւոր եւ հռչակաւոր Հայաստան երկիրին մէջ»*:

Իտրիսի կը գրէ նաեւ թէ «Maïa-Farkin, Cali-Cala, Erzen, Seredj, Menadjerd, Bedlis, Niswa, եւ Barkouri իրարու շատ կը նմանին, տարածութեամբ եւ շէնքերու քանակով: Անոնց միջեւ չկայ մեծ տարբերութիւն: Անոնց հողը ընդհանրապէս բարեբեր է, արգասաբեր, բազմամարդ եւ ենթակայ նոյն այն փոփոխութիւններուն որոնց ենթակայ են աշխարհի միւս երկիրները: Այս գաւառներուն եւ շրջանակներուն մէջ կը կատարուի նշանաւոր վաճառականութիւն մը արտածման եւ հոն կրնաս գտնել ամէն ուզածդ, գրաստներ, ոչխարի նախիրներ եւ աւելի Հայաստանի թաղիքներ, որոնք կը շինուին ի Սալմաս, եւ կը վաճառուին ի Merend, ի Meires եւ ի Dabil (=Դուին), բարձեր, Հայաստանի գորգեր, այնքան յարգի, sahani կոչուած վուշէ քողեր սեւ ներկուած, Maarifat անունով ճանչցըւած ճարտարաշէն առարկաներ եւ անձեռոցներ, որոնք կը գործածուին ի Maïa-Fa kin եւ ունին անբաղդատելի գեղեցկութիւն մը»:

Ուրիշ տեղ մը կը գրէ. «Խլաթի (Ախլաթ) եւ Արճէշի հարաւը կայ աղի լիճ մը (Վանի լիճը) որուն տարածութիւնը արեւելքէն արեւմուտք, է 55՝ 27 մղոնի վրայ: Հոն կ'որսան ձուկի տեսակ մը, ծանօթ Տարեխ անունով: Կ'աղեն այս ձուկը եւ կը փոխադրեն Ճեզիրէ, Մուսուլ, Ռանա, Իրաք, եւ Հորան եւայլն եւայլն»:

Իտրիսիի այս տեղեկութիւնները գրեթէ կրկնուած են արաբ ուրիշ աշխարհագիրներու կողմէն, որոնք Հայաստանի վրայ խօսելու առիթ ունեցած են:

Այսպէս, արաբ աշխարհաշրջիկ պատմագիր Եագուտի, որ ծագումով յոյն էր, իր *Աշխարհագրական բառարանին (Մոռճամ էլ Պիւլտան)* մէջ, որ Հիճրէի 625 թուականին գիրի առնուած հոյակապ գործ մըն է ըստ Գէորգ Մըսըրլեանի (տես՝ *Իպն Խալլիքան. Վէֆայաթ էլ Ա'աեան*, Գահիրէ, 1935, նախաբան էջ 7), *Իրմինիա* (=Հայաստան) մասին ունի բաւական ընդարձակ տեղեկութիւններ:

Ան կ'ըսէ թէ Հայաստան «դէպի հիւսիս տարածւող ընդարձակ երկիր մըն է... կ'ըսուի թէ Մեծ եւ Փոքր երկու Հայաստաններ գոյութիւն ունին, որոնց միացեալ սահմանը կը տարածուի մէկ կողմէն՝ Պարդաայէն մինչեւ Պապ էլ Ապվապ (Դըրանց Դուռ): Իսկ միւս կողմէն՝ մինչեւ Պիլատ էր Րում (Փոքր Ասիոյ Յունական երկիրներ), Կովկասեան լեռնաշղթայ եւ Սահիպ էս Սերիրի (2) (Գահու Տէր) երկիրը: Ըստ ոմանց՝ Մեծ Հայքը կը բաղկանայ Խլաթէն եւ յարակից շրջանէն, իսկ Փոքր Հայքը՝ Թիֆլիսէն եւ անոր ենթակայ շրջանէն:

Կան նաեւ ըսողներ, թէ երեք եւ նոյնիսկ չորս Հայաստաններ գոյութիւն ունին անջատ շըրջաններով: Առաջին Հայաստանը կը կազմեն Պայլաղան (=Փայտակարան), Գապալան (3) եւ Շիրման (Շիրվան) իր յարակից մասերով: Երկրորդը՝ Ճուրտան, Սուղտապիլ, Պապ Ֆէյրուզ Գուպադ եւ էլ Լաքզ: Երրորդը՝ էլ Պասֆուրճան (Վասպուրական), Տապիլ (Դուին), Սարտաճ Թէյր, Պաղրավանդ (Բագրեւանդ) եւ էն Նաշավա (Նախիջեւան): Իսկ չորրորդը՝ Շիմշաթ, Գալի Գալա (Կարին), Արճէշ եւ Պաճունիս: Չորրորդ Հայաստանի մէջ թաղուած է Մարգարէին ընկերներէն Սաֆուան Պին էլ Մուաթթալ, որուն գերեզմանը Հըսն Զիատի (Խարբերդ) մօտն է...:

Արրանի շրջանը, ինչպէս նաեւ էս Սիսէճան (Սիսական), Տապիլ, էն Նաշավա, Սարաճ Թէյր, Պաղրավանդ, Խլաթ եւ Պաճունիս ատենօք յունական տիրապետութեան ենթակայ էին, բայց Հայերու (բնագիրը՝ Յոյներու) կողմէ գրաւուելով Շիրվանի շրջանին միացուեցան:

Պարսիկ Մատենագիրներ կը պատմեն, թէ պատմական հին շրջաններու մէջ Ճուրղան (=Ջուղա ?) եւ Արրան Խազարներու ձեռքը կը գտնուէին, իսկ Հայաստանի միւս երկիրները՝ Յոյներու ձեռքը:... Խազարները կ'ասպատակէին դէպի երկիրին ներսերը եւ յաճախ կը յառաջանային մինչեւ Տէյնուր: Այս աւազակային գործողութիւններուն վերջ մը դնելու համար՝ Գուպադ պին Ֆէյրուզ թագաւորը անոնց դէմ 12,000 զօրքով մեծ զօրա-

(1) *Dabil՝ Դուին է որ Խանզատեան չէ կրցած ճշդել: Արաբները այս անունը կու տային քաղաքին, չենք գիտեր ինչո՞ւ:*

(2) *Հաւանօրէն Աղուանից թագաւորութեան կ'ակնարկէ իբր անկախ երկիրի:*

(3) *Ղարապա՞ղ արդեօք.*

վար մը ղրկեց, որ Արրանը ընկնելէ յետոյ՝ Նեհր էլ Րաս *(Արաքս)* կոչուած գետէն մինչեւ Շիրվան տարածուող ամբողջ երկրամասը գրաւեց։ Իր զօրավարին ետեւէն հասնելով՝ Գուպաղ նախ տեղահան ըրաւ խազարները եւ ապա Արրանի երկրին մէջ շինել տուաւ էլ Պայլագան *(Փայտակարան)* եւ Գապալա քաղաքները, ինչպէս Պարզա՚ան, որ ամբողջ լեռնաշխարհի մայրաքաղաքն է։ Ապա Շիրվանի եւ Էլլանի մէջտեղ կանգնել տուաւ Միւտտ էլ Լիւպն կամ Միւտտ էլ Լապան կոչուած պատնէշը եւ շուրջը 360 քաղաքներ հաստատեց, որոնք ետքէն աւերակ դարձան, երբ Պապ էլ Ապվապը (Դրանց Դուռ*)* կամ Տերպէնտ կառուցուեցաւ»։

Գուպաղին յաջորդեց իր որդին Անուշըրվան, որ էլ Շապարան եւ Մասքաթ անուններով երկու քաղաքներ շինել տուաւ։ Լեռնային անցքերը փակեց պատնէշով մը, որ իր դիրքին պատճառաւ *Պապ էլ Ապվապ* կոչուեցաւ։ Այս վայրերուն մէջ *Սիասճին* (Սիսեճանցիներ կամ Սիսականներ*)* անուն ժողովուրդ մը բնակեցուց։ Ապա Արրանի երկիրին մէջ հաստատել տուաւ Շէքիր եւ Գամբռանի դուռները, ինչպէս նաեւ դուռը Տուսանի կոչուած ժողովուրդին, որ արաբական ծագում ունին։ Շինեց նաեւ Տուրղուդիներու 12 դուռները, Ճարտամանի եւ Սամշուլտայի բերդերը, որոնց ամէն մէկուն առջեւ քարաշէն ամրոց մը կառուցանել տուաւ։ Ճուրղանի նահանգին մէջ շինել տուաւ Սուզտապէլ քաղաքը, զոր ամրացընելէ յետոյ բնակեցուց Ֆարսիներով եւ Սուզտ կոչուած ժողովուրդով մը։

Յոյներու երկիրին դիմացը Ճուրղանի նահանգին մէջ շինել տուաւ Պապ Ֆէրուզ Գուպաղի, Պապ Լազիգայի եւ Պապ Պարիգայի ամրոցները, որոնց վերջինը Տրապիզոնի ծովուն կ'իշխէր։ Շինեց նաեւ Էլլանի եւ Սամաախի դուռները, Ճարտամունի եւ Սամշուլտայի բերդերը Յոյներու ձեռքէն գրաւեց ամբողջ Հայաստանը եւ նորոգեց Տապիլ *(Դուին)* եւ Նախճավան *(Նախիջեւան)* կոչուած էն Նաշուան քաղաքը, որ ՊասՖուրճան (Վասպուրական) նահանգին մայրաքաղաքն է։ Կանգնել տուաւ Վէյսի ամրութիւնները, Սիսէճանի *(Սիսական)*, Շահպուշի եւ Քիլապի բերդերը, որոնք լեցուեցան քաջ մարդիկներով։

Հայաստան Յոյներու *(Ռումի)* ձեռքը մնաց մինչեւ Իսլամի երեւումը։ ... Իպն Վադիհ էլ Էսպահանի, որ երկար ատեն ապրած է Հայաստանի մէջ, կ'ըսէ թէ ընդարձակութեան եւ բարգաւաճութեան տեսակէտով ոչ մէկ երկիր կրնայ հաւասարիլ անոր։ Ան կ'ըսէ, թէ այս երկիրին մէջ 118 իշխանութիւններ *(1)* կան։ Ասոնցմէ միայն Սահիպ էս Սէրիրի երկիրը (2*)*, որ Էլլանը եւ Պապ էլ Ապվապը կ'ընդգրկէ 18,000 գիւղ կը պարունակէ. Միւս իշխանութիւններէն իւրաքանչիւրը 4000՝ է աւելի կամ քիչ պակաս գիւղեր ունին ...»։ (Քաղուածօրէն առնուած Գէորգ Մըսրլեանի *Իպն Խալիքանէն*, էջ 14—16*)*։

Ինչպէս կը տեսնուի Եագուտի՝ տուած տեղեկութիւններէն, ան ալ կը հաստատէ Հայաստանի իբր պատմական երկիր գոյութիւնը հնութենէն հասած սահմաններուն մէջ։

Արեւելեան վաւերագիրներէն անցնելով արեւմտեաններուն, պէտք է ըսել թէ Միջին դարերու շրջանին սկիզբէն, երբ բարբարոսներու արշաւանքները սկսան իրենց աւերածութիւններով եւ սովորական ջարդերով, գիտուններ ստիպուեցան իրենց գործերը եւ անձերը պատսպարել, ամուր ապաստաններու մէջ, ինչպէս էին վանքերը։ Այն պատճառով, աշխարհագրական վաւերագիրներուն մեծ մասը, Ե. դարէն սկսեալ, երկերն են միայն վանականներու, որոնք ոչ ճամբորդած են եւ հետեւաբար ոչ ալ տեսած այն երկիրները, որոնց վրայ ծանօթութիւններ կու տան։ Ուրեմն, գիտութիւններու բոլոր ճիւղերէն աշխարհի նկարագրութիւնը՝ կրնային նուազ յաջողութեամբ ուսումնասիրել, չորս պատերու մէջ փակուած։ Հետեւաբար իրենց աշխատութիւնները յաճախ յաջող, միայն տղայական գիծերաջան տքնութիւններ են առանց ոեւէ նկարագրական ճշգրտութեան։

Այս անկման շրջանի գործերէն նմոյշներ մեծ թուով ծանօթ են, ինչպէս են, Պիւտինկէրի իջեւանագրութիւնը, հիմնուած հնագոյն ցուցակի մը վրայ (3), Անկլօ-Սաքսօն կիսագունդը Ժ. դարուն Banulphus Hyggedenի Համատարած 1360ին պատրաստած, Marino Sanudiի եւ Fra Mauroի իտալական քարտէզները, եւ Haldengam d'Herefordsի անգլ. քարտէզները, աւելի կամ նուազ ճշդութեամբ։

Այս նախնական եւ ոչ յաջող ցամաքային կիսագունդերուն քով կը տեսնուի վերածնունդը ծովային քարտիզագրութեան որ կը զարգանայ Սպանիոյ մէջ արաբ դպրոցին աշխատութեան շնորհիւ։ Մասնաւորապէս խաչակիրներէն մինչեւ ԺԴ. դար՝ Թուրքերէն փակումը Տարտանէլի եւ Արեւելեան Միջերկրականի մէջ այնքան ծաղկեալ ուրիշ նաւահանգիստներուն, կը բազմանան նկարագրութիւնը նաւահանգիստներու, որոնք ուշագրաւ են իրենց ճշգրտութեամբ եւ գեղեցկութեամբ։ Այդ դպրոցին մէջ պատրաստուած աշխարհացոյցներու երկու գեղեցիկ նմոյշները կու տայ Զ. Խանզատեան իր գործին մէջ *(*քարտէզ թ. 10 եւ 11*)* լուսանկարեալ։ Ասոնք են 1330ին պատրաստուած Գատալանի *(Սպանիա)* դպրոցէն Dulcertի եւ Villadesteի քարտէզները *(*ձեռագիրը պահուած է Փարիզի Ազգ. մատենադարանին մէջ)։

Այս աշխարհագրական անգուգական թանկագին ձեռագիրները, նահանգներու պատկերներուն տակ եւ Արարատ լերան շուրջը հաստատուած, ամուր դղեակներուն վրայ կը դնեն «Erminia Maïor»ի դրօշակը։

(1) *Հաւանօրէն ակնարկութիւն Հայ Նախարարութեանց։*

(2) *Ինչպէս ըսուեցաւ՝ հաւանօրէն Աղուանից թագաւորութիւնն է։*

(3) *Պիւտինգէր (*Peutinger*) գերման հնախոյզ մըն է որ ապրած է 1465—1547։ Պիւտինգէրեան ցուցակը կամ ըստ Ալիշանի իջեւանագրութիւնը, հռոմէական կայսրութեան ճամբաներուն մէկ քարտէզն է, խմբագրուած դէպի Գ. դար, կամ աւելի առաջ Կեսարի ժամանակ, բայց պահուած 1264ին կատարուած ընդօրինակութեան մը մէջ։ Այս օրինակը գտնուած է Որմսի մէջ։ Պիւտինգէր զայն վերակազմած է։ Իսկական օրինակը գտնուած է 1714ին եւ կը գտնուի Վիեննայի մատենադարանին մէջ, եւ ունեցած է քանի մը հրատարակութիւններ։*

Նոյն դրօշը կը ծածանի կեդրոնը, Փոքր Հայքի դղեակներուն վրայ եւս: Վերջապէս ասոր տակ, առնուած կատարեալ քառակուսիի մը մէջ, Erminia Minor անունին քով, կը պարզուի Կիլիկիոյ թագաւորութեան դրօշը, նման անոր որ կը տեսնուի Կիպրոս կղզիին վրայ:

Նոյն ժամանակներու համար Օքսֆորտի համալսարանի փրոֆեսորներէն Freemanի 1880ին պատրաստած աշխարհացոյցը (տես Զ. Խանզատեանի թ. 12 քարտէզը) եւ նոյն տարուան համար պատրաստուած Ֆրանսական աշխարհացոյցները (նոյն. թ. 13 եւ 14) աւելի Կիլիկիայով կ'զբաղին քան Մեծ Հայաստանով, սակայն չեն ալ ուրանար անոր պատմական գոյութիւնը եւ իբրեւ աշխարհամաս:

Նոր ժամանակներու մէջ երբ աշխարհագրական խուզարկութիւնները մեծ զարգացում գտան, ԺԵ. դարուն տիրապետեցին լատին աշխարհացոյցները, ԺԶ. դարուն Rhénan-Հոլանտականները, ԺԷ. դարուն հոլանտականները եւ Ֆրանսականները, ԺԸ. դարուն մասնաւորապէս Ֆրանսականները, եւ ԺԹ. եւ Ի. դարերուն գերմանականները:

Յատկապէս այս աշխարհացոյցներէն նշանակելի է ան զոր պատրաստած է 1470—1480ին Ֆլորենսացի Berlinghierri, որ հրատարակած էր իտալերէն բանաստեղծութիւն մը, որուն մէջ կը ներկայացնէր Պտղոմէոսի աշխարհագրութիւնը (Զ. Խանզատեանի թ. 8): Անոր օրինակին կը հետեւի 1490ին Վենետիկցի Dominico Mario Négro եւ 1492ին Նիւրէմպերկցի Martin Behaim: Պելճիքայի արքայական մատենադարանը ի Պրիւքսէլ՝ ունի թանկագին վաւերագիր մը, որ աշխարհի մէջ միակն է: Ասիկա է 1541ի Ebedat Gérard Mercator Rumpelmundanusի պատրաստած հողային եւ երկրային երկրագունդը՝ նուիրուած Grandvelleի տիրոջ Nicolas Perrenotի: Ասոր լուսանկարը (Զ. Խանզատեան թ. 15) ցոյց կու տայ Հայաստանի գրաւած տեղը:

1544ին հրատարակուած Baptiste Agnèseի լատին աշխարհացոյցը, 1544ին Պալի մէջ պատրաստուած Munsterի հռչակաւոր աշխարհացոյցը, ինչպէս Pietro Andréa Mattioloի եւ Bartholomé Olivesի աշխարհագրութիւնը, ամէնքն ալ ընդհանուր կերպով կը յաւերժացընեն Պտղոմէոսի աշխարհագրութիւնը: Հոլանտական դպրոցէն 1565ին Blaeu կը հրատարակէ գերազանց աշխարհացոյց մը եւ 1575ին եւ 1584ին անոր կը յաջորդեն Jausson եւ Villardի գործերը, որոնք կը պատկանին նոյն դպրոցին, որուն կեդրոնը Ամստերտամ էր, ուր այս շրջանին կէս դարէն նուազ ժամանակամիջոցի մը մէջ երեւան կու գան գործեր որ, կը գերազանցեն մինչեւ այն ատեն եղածները:

1653ին Լուի ԺԴ.ի աշխարհագրութեան ուսուցիչը Nicclas Sauson եւ Philippe de Ruë կը հրատարակեն պատմական գեղեցիկ աշխարհացոյցներ որոնց մին (թ. 9. Զ. Խանզատեան) պատրաստուած էր Հռոմէական կայսրութեան «Notitia Dignitatum» պաշտօնական ցուցակին համաձայն: Եւրոպական մի քանի դեսպաններ՝ պաշտօնով առաքուած իրենց վեհապետներէն, վերջապէս կը թափանցեն Ասիա: 1568ին Antony Jenkinson, Pietro de la Vallé եւ ուրիշներ կ'ընեն քանի մը ճամբորդութիւններ այս երկրամասին մէջ: Այս խորհրդաւոր երկիրը կ'սկսի երեւալ ժամանակակից քաղաքական աշխարհացոյցներու վրայ: Զինուորական եւ դիւանագիտական յարաբերութիւնները Եւրոպական արքունիքներու Օսմ. վեհապետներուն հետ կը նպաստեն Օսմ. կայսրութեան ստացուածքները ներկայացնող քարտէզներու պատրաստութեան: Առաջին անգամ այն առանձնաշնորհեալ հազուագիւտ ճամբորդները, Հայաստանէն դարձին կը տեղեկագրեն հոն տիրող դժբախտ կացութիւնը:

Ստրկութիւնը կատարեալ էր եւ երկիրը այնքան այլանդակօրէն փոփոխուած, որ Հայաստանի գոյութիւնն իսկ ուրանալ կ'սկսին եւ Մեծ Հայաստանը կը կոչեն Թորգոմանի կամ Թուրքմանիստան, ինչպէս Ամստերտամ տպուած աշխարհացոյցի մը (Զ. Խանզատեան թ. 16) վրայ կը տեսնուի (1): Անգլիացի William Gutheric իր գործին մէջ սակայն կը գրէ.

«Թուրքոմանիա, այս նահանգը երբեմն կը կոչուէր Մեծ Հայաստան (Armenia Major): Կ'արտադրէ արջառներ եւ ձիեր: Կը բաժնուի երկու մասերու: Արեւմտեան Թորքոմանի եւ Արեւելեան Թուրքոմանի (Էրզրում, Կարս, Երեւան)»։

Այս կոչումը, ինչպէս կ'երեւի շատ վաղանցիկ կեանք մը ունեցած է, եւ Թուրքերը ջնջած են զայն եւ Հայկական Բարձրաւանդակին կեդրոնական մասը կոչած են *«Էրմէնիստան»*, յետոյ վերածելու համար զայն *«Էրզրում էյալէթ»*ի (Էրզրումի նահանգ), ինչպէս կը տեսնուի Սուլթան Սիւլէյման Գանունիի Գանուննամէին մէջ (Զ. Խանզատեան նոյն, էջ 21):

Միակ թուրք հռչակաւոր աշխարհագիրը՝ Էվլիա Էֆենտի (2), 1685ին կը հաստատէ թէ Սուլթան Սիւլէյմանի վարչական կարգադրութիւնները պահպանուած են (Զ. Խանզատեան, թ. 21 աշխարհացոյց):

Այս թուականներէն յետոյ այլեւս աշխարհացոյցներուն վրայ Թուրքմէնիստան կոչումին չենք հանդիպիր եւ այն ճամբորդները եւ աշխարհագիրները, որոնք ոտքով անցած են Հայաստանէն, անոր Հայկական նկարագիրը շեշտած են, միայն թէ՝ ինչպէս կը թուի՝ բռնակալ տիրապետներու իշխանութեան տակ Հայոց թիւը մեծապէս նուազած է ջարդերով եւ գաղթականութեամբ եւ Հայերը քաշուած են դէպի կեդրոնական լեռնադաշտին բարձունքները:

Իբր հետեւանք այս իրողութեան՝ Հայաստան անունը աշխարհացոյցներու վրայ գործածուած է միայն Հայաստանին հիւսիս-արեւելեան մասին համար, ինչպէս Ortilinsի գեղեցիկ աշխարհացոյցին վրայ, որուն կը հիանան դիտողները Փարիզի Ազգ. մատենադարանին մէջ:

Հայերու երկիրին հիւսիս-արեւելքը այս ընկրկումը թէեւ կը հաստատուի, սակայն եւ այնպէս, Հա-

(1) *Չափազանց նշանակելի է որ ԺԷ. դարուն երբ Ամստերտամ կը գտնուէր առաջին տեղը քարտէզագրութեան մէջ, հոն Հայեր 1,500 X 1,300 ծաւալով Հայերէն համատարած աշխարհացոյց մը կը հրատարակեն: Այս համատարածը իսկական գլուխ գործոց մըն է, ինչպէս կը հաւաստէ Զ. Խանզատեան* նոյն, էջ 22)։

(2) *Օսմ. Պետութեան առաջին եւրոպացի պատմագիրը V. Hammer թարգմանած է Էվլիա Էֆենտիի Աշխարհագրութիւնը։*

յաստանի այս մասին մէջ եւ Թօզաթէն Դավրէժ — դեռ կը տիրապետեն Հայերը, ինչպէս կը հաստատէ Jean Beptiste Tavernier 1655ին իր հրատարակած վեց ճամբորդութեանց նկարագրութեան մէջ, ուր կ'ըսէ թէ՝

«Թօզաթէն մինչեւ Դաւրէժ երկիրը բնակուած է գրեթէ քրիստոնեաներէ, այնպէս որ պէտք չէ զարմանալ, երբ հողի այս ընդարձակ տարածութիւնը հիները կ'անուանէին Հայաստանի նահանգ, վասնզի, քաղաքներու եւ գիւղերու մէջ կը գտնուին յիսուն Հայեր մէկ մահմեդականի դէմ»։

Այս տաս կարկառուն փաստին հետ, ըսենք թէ Հոլանտական դպրոցին զարգացման շրջանին Ֆրանս. դպրոցը անգործ չմնաց։ Guillaume de l'Isleով կ'սկսի նոյնպէս ցանկը Ֆրանսացի աշխարհագիրներու, որոնք մինչեւ մեծ յեղափոխութիւն գործած են։ Ասոնց մէջ Guillaume de l'Isleէն (1710) զատ կը յիշուին անուններ Yaillotի (1712), Buacheի (1740), de Vaugondyի (1757), Jauvierի եւ Bonneի (1762), Jean Baptiste d'Anvilleի (1765), Gillardի (1774), եւայլնի։

Անոնց աշխատութիւնները կը բաղկանային պատմական եւ քաղաքական աշխարհացոյցներէ, որոնց առաջիններուն մէջ Հայաստան ունէր այն նոյն սահմանները զորս նշանակած էր Պտղոմէոս եւ երկրորդներուն մէջ՝ այս անունը տրուած էր հիներու մեծ Հայաստանին։

Իսկ մօտաւոր ժամանակներու մէջ երբ Գերմանները առաջին տեղը կը գրաւէին քարտիզագրութեան գործին մէջ, դարձեալ *Հայաստան* անունը պահուած կը տեսնենք իբր պատմական անունը երկրին։

Von Richard, տնօրէնը Weimarի աշխարհագրական Institutին, 1804ին պատրաստած է աշխարհացոյց մը (Զ. Խանզատեան թ. 19) ուր Հայաստանը կը գրաւէ բոլոր տարածութիւնը լեռնադաշտին՝ Իսկէնտէրունէն մինչեւ Արաքսի եւ Կուրի հովիտը։

Անգլիացի սպայ Magdonald Kinneir կը զատէ վերին Հայաստանը իր *«Կովկաս, Պարսկաստան եւ Միջագետք»* (1809—1816) մեծ աշխարհացոյցին մէջ։

Նոյնպէս Amédée Jaubertի, ինչպէս նաեւ դեսպան Զօր. Gardanի ճամբորդութեան նկարագրութիւնները, 1807ին Զօր. Gardenի Հայաստանի եւ Պարսկաստանի մէջ ընկերացող երկու Ֆրանսացի տեղագիրներու — Dupre եւ Lapie — երկրաբանական եւ աստեղաբաշխական գործերը, Vivien de Saint-Martinի, Malte-Brunի եւ իր որդիներուն 1818ին միթաբանական, ազգագրական եւ Ֆիզիքական նշանաւոր ուսումնասիրութիւնը, ամէնքն ալ ակներեւ կերպով կը հաստատեն Հայոց անժխտելի տիրական դիրքը Հայաստանի վրայ եւ հայկական լեռնադաշտին անբաժանելիութիւնը։

Ռուսերու դէպի հարաւ յառաջացման իբրեւ հետեւանք՝ անոնք ալ շահագրգռութիւնը ցոյց տուած են Հայկական լեռնադաշտին համար եւ Բասքէվիչի արշաւին առթիւ պատրաստուած է աշխարհացոյց մը, որ իր տեսակին մէջ միակը չէ մնացած, վասնզի Զօր. Khotzke եւ պետական խորհրդական Khanikin, Mouchkétove, Ghagossof եայլն եւս զբաղած են այս շրջանին աշխարհագրութեամբ։

1823—1830ին գերման Stiellerի աշխարհացոյցը, ամերիկացի եւ անգլիացի առաջին աշխարհագիր միսիոնարներու, Harford Brydgesի, Elie Smithի, Dwightի, Southgateի, եւ Hamiltonի, տեղական գնդապետ անգլիացի Stielի, Վանայ լիճին վրայ նօթերը, Brant Glascoltի, Dixonի, Djohn Soterlandeի աշխարհացոյցը (1830—1840), ծովակալ Sir Frencis Baufortի Գարամանի (Կիլիկիոյ) մասին ջրագրական հետազօտութիւնները, Ֆրանսացի Montperrenxի (1819) եւ Texieiի (1842) նկարագրութիւնները, Eugène Boréի, Univers Pittoresque գործը եւ մանաւանդ հնչակաւոր աշխարհագիր Elisée Reclusի երկը, ամէնքն ալ առանց բացառութեան միաբան են կոչելու համար մեր երկիրը իր պատմական անունով։

Զասիկ Խանզատեան իր գործին մէջ կու տայ (թ. 21) հաւատարիմ վերարտադրութիւնը M. Levasseurի մէկ քարտէզին Dufeurի աշխարհացոյցին մէջ (1846) երեւցած։ Հոն կը տեսնուի որ ոչինչ փոխուած է Օսմ. վարչական բաժանումներէն այն շրջանին, ուր էրզրումի նահանգը կը ներկայանար Հայաստան *(Էրմէնիստան)* անունով, համապատասխան Մեծ Հայքի։

1840էն յետոյ Գերմաններ կը պատրաստեն Հայաստանի խնամեալ աշխարհացոյցներ։

1841ին երկրաչափ Moltk, 1843ին Karl Ritter, դարձեալ 1843ին Karl Roche կը հրատարակեն, բնական, ազգագրական եւ երկրաբանական աշխարհացոյցներ 1:1,000,000 չափով, բայց միայն Harman Abicheի կը պատկանի դժնդակ այլ փառաւոր դերը դրած ըլլալու հիմերը հայկական լեռնադաշտին երկրաբանական եւ ճշգրտագրական աշխարհագրութեան։

Իր տարազներուն վրայ պիտի հաստատուին երկար ատեն դեռ բոլոր գիտական հետազօտութիւնները, որոնք մեր երկիրին կը վերաբերին։

Արդարեւ 1850էն յետոյ աշխարհագիրներ, պատմագիրներ եւ քննադատներ Հայաստանի անցեալին անդրադարձան։ Ասոնց գլխաւորներն են Houzé (1851), Tchihatcheff (1853), Sainte Croix, Langlois (1857) եւ մանաւանդ Dulaurier, (1863) որ թարգմանած է Ալիշանի *«Տեղագիր Հայոց Մեծաց»*ը։

Kiepert, 1854—58ին պատրաստած է իր Հայաստանի աշխարհացոյցը 1:1,000,000 չափով։

Գերման աշխարհագիրը յետոյ եղաւ հեղինակութիւն մը մասնաւորապէս Օսմ. Պետութեան քարտիզագրութեան համար, վասնզի այս թուականէն սկսեալ Kiepert չէ դադրած պատրաստելէ քարտէզներ, որոնք գընահատուած են ամբողջ աշխարհէն եւ որոնց մէջ Հայաստանը միշտ կը գրաւէր իր տեղը։ 1902ին Kiepert հրատարակած է նաեւ Պատմական Հայաստանի քարտէզը, որուն հետեւած է զօրավար Hoffmeister, հրատարակելով իր «Durch Armenien Xenophone»ը (1)։

Անգլիացիք՝ Ֆրանսացիներուն եւ Գերմաններուն նման շարունակեցին «Armenia» անունը տալ Մեծ Հայաստանի տեղին, մէջը առնելով Տրապիզոնի նահանգը։

Այս սահմանումը հինէն կու գար։ Զ. Խանզատեան կ'ըսէ թէ կը բաւէ ակնարկ մը նետել աշխարհի սպայակոյտերու պաշտօնական բոլոր վաւերագիրներուն վրայ, տեսնելու համար թէ Հայաստան անունով կը ներկայացուի կեդրոնական լեռնադաշտը, որ կը տարածուի հիւսիսէն

(1) *Այս գործը թարգմանուած է հայերէնի* 1913*ին Երուանդ Տէր Անդրէասեանէ (Նոտան) և տպուած Պոլիս, «Հայաստանի մէջէն» խորագրով։*

Սամսոնէն մինչեւ Պաքում եւ կը սահմանագծուի հարաւէն Հայկական Տաւրոսով, այնպէս որ Տրապիզոն եւ Ռիզէ նաւահանգիստները կը կցուին Հայաստանի:

Զ. Խանզատեան իր գործին մէջ առած է հռչակաւոր անգլիացի աշխարհագիր James Wildի աշխարհացոյցէն էջ մը (թ. 22)։ Հոն կը տեսնուի թէ 1861ին ինչ տարածութիւն ունէր «Էրմինիստան»ի կուսակալութիւնը՝ Օսմ. կայսրութեան վարչական բաժանումներուն մէջ:

ԺԹ. դարուն վերջերը, 1895ին, Օսմ. պետութենէն հայթայթուած տեղեկութիւններով եւ պաշտօնական վիճակագրութիւններով, Vital Quinet ունի կարեւոր աշխատասիրութիւն մը Ասիական Թուրքիոյ վրայ, ուր հակառակ հեղինակին ջանքերուն Հայոց դերը ու թիւը նուազեցնելու եւ երկիրին հայկական նկարագիրը ուրանալու, անկարող կ'ըլլայ իր դիտումին հասնելու:

Հինգ տարի յետոյ, 1901ին, անգլիացի Lynch, իր Հայաստան ուղեւորութեան նկարագրութիւնները պարունակող հոյակապ գործին՝ «Armenia»ի կը կցէր 1:1,000,000 առաջին կարգի կարեւորութեամբ Հայաստանի շատ մանրամասն մէկ աշխարհացոյցը, որ Զօրավար Von Westarpի նոյն չափով Հայաստանի քարտէզին հետ կուգար ծառանալ Համիտեան քաղաքականութեան դէմ որ Հայաստանի մը գոյութիւնը ուրանալ կ'ուզէր:

Համիտեան այս քաղաքականութիւնը, աւելորդ է ըսել թէ մեծ ոգեւորութեամբ ընդգրկեցին իր յաջորդները, որոնք Հայաստանի գոյութեան հիմը՝ Հայ բնակչութիւնը բնաջնջել նկրտեցան, Հայաստանի եւ Հայկական խնդիրը իր արմատէն ջնջելու համար:

Սակայն ինչ որ ալ եղած ըլլան արդի փոփոխուած պայմանները, Հայաստան կայ ու կը մնայ իբրեւ պատմական երկիր: Գուցէ բռնակալներ կարենային ջնջել Հայերը, սակայն անոնք պիտի չկարենային անհետ ընել Հայերու պատմութիւնը եւ այդ պատմութեան թատերավայրը՝ Պատմական Հայաստանը:

## Զ.

# ՀԱՅԱՍՏԱՆ ՈՐՊԷՍ ՊԵՏՈՒԹԻՒՆ

Հայաստան բառը ունի նաեւ ուրիշ առում մը, որ աշխարհագրական, ցեղագրական, լեզուական եւ պատմական Հայաստանին հետ կապ չունի:

*Հայաստան* կը նշանակէ նաեւ *Հայ պետութիւն* եւ չափազանց յարափոփոխ իմաստ մը ունի ժամանակին եւ տեղին համաձայն: Օրինակի համար, երբ այսօր *Հայաստան* կ'ըսենք, կը հասկնանք *Հայաստանի Խորհրդային Հանրապետութիւնը*, Երեւան մայրաքաղաքով եւ իբր 30,000 քառ. քիլոմէթր տարածութեամբ, որ մաս կը կազմէ Խորհրդային Միութեան:

Այս երկիրը այսօր՝ պատմական եւ աշխարհագրական Հայաստանի մէկ փոքր մասը միայն կը գրաւէ եւ սակայն՝ մասը ամբողջին տեղը կը գործածուի: Նոյն երեւոյթը սովորական էր նաեւ հին դարերուն մէջ:

Տեսնուեցաւ թէ այլազան ցեղեր եւ ժողովուրդներ անյիշատակ ժամանակներէ սկսեալ մինչեւ այսօր Հայկական Բարձրաւանդակին վրայ բնակած եւ հոն կազմած են՝ մասնակի կամ ամբողջական գրաւումով, պետութիւններ որոնց կեանքը աւելի կամ նուազ մեզի ծանօթ է, պատմական յիշատակարաններու շնորհիւ:

Այսօրուան հայ ցեղին տիրակալութենէն վերջ, Հայաստան նկատուած աշխարհամասին 15 նահանգներէն միայն չորսը (Այրարատ, Տուրուբերան, Մեծ Ծոփք (1), եւ Աղձնիք) կազմած են նախնական կորիզը կամ միջնաբերդը Հայութեան, եւ անկէ որ արդի Հայ ցեղը, նուաճած էր դրացի երկիրներէն զանազան շրջանակներ եւ իր տիրապետութեան ենթարկած (տես վերը 4—26):

Սակայն, ինչպէս տեսնուեցաւ, մինչեւ Քր.է առաջ Ա. դար, Հայերը չէին կրցած միակ պետութիւն մը կազմել եւ Հայկական Բարձրաւանդակին վրայ գոյութիւն ունէին գոնէ 3—46 եթէ ոչ աւելի պետութիւններ (տես վերը էջ 6):

Եղած են ժամանակներ, որ այդ պետութիւնները կրցած են միութիւն մը կազմել եւ տիրանալ բովանդակ Հայկական բարձրաւանդակին, եւ երբեմն այնքան ընկճուիլ որ տէր մնալ միայն անոր մէկ մասին: Սակայն երկու պարագային ալ անոնց ունեցած պետութիւնը Հայաստան էր, իբրեւ այն կը ճանչցուէր որպէս պետութիւն: Ըսենք նաեւ որ *Հայաստան* որպէս պետութիւն՝ երբեմն ունեցած է աշխարհագրական Հայաստանէն, այսինքն Հայկական Բարձրաւանդակէն, ինչպէս նաեւ պատմական Հայաստանէն՝ այսինքն Հայկական 15 նահանգներէն շատ աւելի ընդարձակ տարածութիւն, ինչպէս Մեծն Տիգրանի ատեն:

Նոյն իսկ եղած են ժամանակներ, ուր Հայերը Հայաստանի աշխարհագրական սահմաններէն դուրս, տարբեր երկիրի, ինչպէս Կիլիկիա կոչուած աշխարհամասին մէջ, հիմնած են հայ պետութիւն մը՝ որ նոյնպէս *Հայաստան* կը կոչուէր գոնէ օտարներէն, թէեւ Հայերը զգուշացած ըլլան իրենց պատմական հայրենիքէն դուրս

*(1) Խորենացիի վերագրուած Աշխարհագրութիւնը Չորրորդ Հայք կը կոչէ, բայց աւելորդ չըլլայ դիտել տալ թէ այդ կոչումը օտարներէ տրուած՝ Հայոց համար խորթ էր: Փաւստոս Մեծ Ծոփք կ'անուանէ, ինչ որ աւելի հարազատ է հաւանօրէն: Շատ նշանակելի է որ Ե. դարու այդ պատմագիրը գիտէ որ Մեծ Ծոփք «Ոստան արքունի լեալ էր վաղ վաղ» (Փաւստոս, Ե. ժը) ինչ որ կատարելապէս կը հաստատէ քննական պատմութիւնը հիմա:*



ԵՒՔՍԻՆԵԱՆ ՊՈՆՏՈՍ
ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎ
ԿԱՍՊԻԱՑ ԾՈՎ
ՊՈՆՏԱԿԱՆ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆ
ՓՈՔՐ ՀԱՅՔ
ՄԵԾ ՀԱՅՔ
ԿԱՊԱԴՈՎԿԻԱ
ԿԻԼԻԿԻԱ
ԱՍՈՐԻՔ
ՓԻՒՆԻԿԷ
ՄԻՋԱԳԵՏՔ
ՕՍՐՈԷՆ
ՄԱՐԱՍՏԱՆ
ՊԱՐԹԵՒՆԵՐ
ԱՏՐՊԱՏԱԿԱՆ
ԱՂՈՒԱՆՔ
ՎՐԱՍՏԱՆ
ԻԲԵՐԻԱ
ԿՈՂՔԻՍ
ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆ
ԱԴԻԱԲԵՆ
ԾՈՓՔԻ ԲԴԵՇԽՈՒԹԻՒՆ
ԳՈՒԳԱՐՔԻ ԲԴԵՇԽՈՒԹԻՒՆ
ԿՈՄՄԱԳԵՆ
Պալմիրա
(Մագմոր)
Անտիոք
Աղեքսանդրիա
Եդեսիա
Մծբին
Սամոսատ
Մելիտինէ
Արտաշատ
Կուր գ.
Երասխ գ.
Եփրատ գ.
Տիգրիս գ.
Փոքր Զաբ
Մեծ Զաբ
Տիգրանակերտ

Թիւ 10 — Էջ 56-57

# ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆԻ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կարմիր քառակուսի գիծերով նշանակուած մասը հայկական թագաւորութեան երկիրներն են Մեծն Տիգրանի գահակալութեան ատեն:
2. Հողագոյն նշանակուած են Մեծն Տիգրանի աշխարհակալած երկիրները:

կազմուած այս պետութիւնը Հայաստան կոչելու, եւ *«Հայոց Թագաւորութիւն»* բացատրութիւնը գործածած են, մինչ պէտք էր Հայաստան կոչէին, ինչպէս *Տաճկաստան* կը կոչեն պետութիւն մը, որուն տաճիկ հիմնադիրները տիրած են շատ մը երկիրներու՝ ինչպէս նաեւ Հայաստանի եւ Կիլիկիայի: Թուրքերը կամ Տաճիկները ոչ մէկ կապ ունին իրենց գրաւած երկիրներուն հետ եւ հեռաւոր աշխարհներէ եկած են, սակայն եւ այնպէս իրենց կազմած պետութեան Տաճկաստան կամ Թուրքիա անունը տրուած է:

Հայաստան, քաղաքական կամ պետական իմաստով, չէ ունեցած դժբախտաբար հաստատուն հանգամանք եւ միշտ յարափոփոխ վիճակ մը ներկայացուցած է՝ երբեմն ընդարձակուելով եւ երբեմն սեղմուելով:

Արդի Հայ Ազգին Հայկական Բարձրաւանդակին վրայ տեղաւորուելէն մօտաւորապէս չորս դար վերջը Հռոմ-Սելեւկեան պայքարէն օգտուելով՝ 190ին (Քր.է առաջ) Հայաստանի մէջ կազմուեցան երեք Հայ պետութիւններ (տես վերը էջ 12), որոնցմէ մին՝ Փոքր Հայք, երբ իր անկախութիւնը շուտով կորոյս, միւսները Ստրաբոնի նկարագրած ձեւով հետզհետէ ընդարձակուեցան եւ ի վերջոյ իրարու միանալով կազմեցին միակ պետութիւն մը՝ Հայաստանը որ ո՛չ միայն չկրցաւ իր անփոփոխ սահմանները եւ տեւական կեանքը ունենալ, այլ դարերու ընթացքին, իր սահմանները այլազան եւ բազմազան փոփոխութիւններ կրեցին, ինչպէս նաեւ եղան շրջաններ, ուր իբրեւ անկախ պետութիւն, գոյութենէ դադրեցաւ:

Հետեւաբար Հայաստան իբրեւ պետութիւն ունեցաւ իր պատմական զանազան ելեւէջները, անկումները եւ բարձրացումները, նոյնիսկ անէացումի պահերը, յետոյ իբր փիւնիկ վերստին յարութիւն առնելու եւ դարձեալ ասպարէզ գալու համար։

Հետեւելով Հայաստանի պատմութեան, կը տեսնենք թէ հոն Քր.է առաջ 189ին կը կազմուի բացարձակ անկախ պետութիւն մը, որ ունեցած է շատ փոփոխական ճակատագիր մը:

Եղած է ժամանակ որ այդ պետութիւնը կորուսած է իր լիակատար անկախութիւնը եւ դարձած է միջոց մը հովանաւորեալ եւ ուրիշ ատեն մը հարկատու իշխանութիւն: Վերջապէս եղած են ժամանակներ որ նոյնիսկ իր սեփական կառավարութիւնը կորսնցուցած եւ ուրիշ պետութեան մը կառոյցքին մաս կազմած է: Հետեւաբար՝ Հայաստան աշխարհը, դարերու ընթացքին, որպէս անկախ եւ կամ ինքնավար երկիր, ինչպէս նաեւ օտարներէն նուաճուած եւ կառավարուած հողամաս, ունեցած է զանազան վարչաձեւեր եւ շատ փոփոխական սահմաններ, որոնք կրնան ներկայացուիլ հետեւեալ մեծ բաժանումներով:

Ա.

## ԱՐՏԱՇԻՍԵԱՆ ՀԱՐՍՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ

### (ՔՐ.Է ԱՌԱՋ 189—1 ՔՐ.Է ՅԵՏՈՅ)

Արտաշիսեան հարստութեան տակ Հայաստան իր վարչաձեւով անկախ միապետութիւն մըն էր, մանաւանդ առաջին շրջանին, այսինքն մինչեւ Մեծն Տիգրան, որուն անկումէն յետոյ՝ Հայաստան կը դառնար Հռոմէն հովանաւորեալ կամ պաշտպանեալ թագաւորութիւն մը:

Գալով իր սահմաններուն՝ տեսնուեցաւ որ Ստրաբոնի տեղեկութիւններուն համաձայն՝ Արտաշէսի եւ Զարեհի ատեն, Հայաստան կը բաղկանար վերջին ժամանակներու մէջ, իր պատմական 15 նահանգներէն ապահովաբար գոնէ 11էն, որոնք էին.

1. Փայտակարան,
2. Սիւնիք,
3. Վասպուրական,
4. Այրարատ,
5. Գուգարք,
6. Տայք,
7. Բարձր Հայք,
8. Տուրուբերան,
9. Ծոփք կամ Դ. Հայք,
10. Աղձնիք,
11. Մոկք,

Աւելին ըլլալով՝ 12, Կորճայքի մէկ մասը եւ թերեւս նաեւ 13, Ուտին եւ 14, Արցախը, դուրս ձգելով 15, Պարսկահայքը (տես այս մասին վերը էջ 15):

Արտաշիսեան հարստութիւնը Ասիոյ մէջ ունեցաւ փառքի եւ շքեղութեան շրջան մը եւ տիրեց աշխարհագրական Հայաստանի սահմաններէն դուրս ընդարձակ երկիրներու եւ կազմեց փառայեղ պետութիւն մը, կարճատեւ փայլով մը։

Այդ շրջանը Մեծն Տիգրանի (95—55) իշխանութեան ժամանակամիջոցն է, ուր այս մեծ աշխարհակալը ոչ միայն Ծոփքը գրաւելով հայկական պետութեան միութիւնը կերտեց, այլ աւելին ըլլալով՝ շատ մը երկիրներու ալ տիրեց եւ իրեն հնազանդեցուց:

Այսպէս, նուաճեց Կապադովկիան, Կոմագենէն, Կիլիկիան, Հիւսիսային Միջագետքը, Ասորիքը, Փիւնիկէն, Կորդուաց աշխարհը, Ադիաբենէն, Մարաստանը եւ Ատրպատականը:

Բայց երբ հռոմէական բանակներէն պարտուեցաւ, ոչ միայն Հայաստանէն դուրս իր աշխարհակալած երկիրները կորոյս, այլ նաեւ ստիպուեցաւ նորէն հրաժարիլ Ծոփքէն՝ Պոմպէոսի հետ իր կնքած դաշնադրութեամբ:

Պոմպէոս՝ Ծոփքը տուաւ Արիոբարզան Կապադովկիացիին, իսկ Ներոն կայսրը Ծոփքը թագաւորութեան բարձրացնելով Հեմեսայի տունէն Սոհիմոս իշխանին յանձնեց ըստ Տակիտոսի (13. 7), Ծոփաց մէջ Հռոմէական պահապան զինուորներ զետեղելով (Մոսէն եւ Հիւպշման, *նոյն*, էջ 29): Քիչ յետոյ Ծոփք պի-

տի դառնար հռոմէական երկիր, իսկ հայկական թագաւորութիւնը պիտի սեղմուէր նեղ սահմաններու մէջ եւ խաղալիք դառնար դրացի հզօր երկու պետութիւններուն՝ հռոմէականին եւ պարթեւականին միջեւ, որոնք օտար թագաւորներ զէնքի ուժով Հայոց թագաւորութեան գահը պիտի բարձրացնէին:

## Բ.

## ԱՐՇԱԿՈՒՆԻ ԹԱԳԱՒՈՐՆԵՐՈՒ ՇՐՋԱՆ

(66 — 429)

Ներոն կայսրը Արեւելքի համար իր ըրած կարգադրութեանց միջոցին՝ համաձայնեցաւ՝ Հռոմի մէջ 66ին, Հայաստանի թագով պարգեւատրելու եւ Հայաստանը տալու Պարթեւաց Վաղարշակ Ա. թագաւորին եղբօրը՝ Տրդատ Պարթեւին, որով Հայաստան՝ Արշակունի նոր հարստութիւն մը ունեցաւ Հռոմայեցւոց գերիշխանութեան տակ, գրեթէ Արտաշիսեան հարստութեան շրջանին տարածութեամբ, սակայն երկու ուժերու միջեւ տատանող անհաստատ գահով մը:

Երկիրին վարչաձեւն էր աւատական կարգերով միապետութիւն մը, աւելի կամ նուազ ժառանգական: Հռոմ եւ Տիզբոն շարունակ կը միջամտէին Հայաստանի գործերուն եւ պետութիւնը կը դարձնէին խաղալիք երկու ոյժերու միջեւ:

Հայաստանի հողերը պարբերաբար օտար տիրապետութեան կ'ենթարկուէին եւ իրմէ կը բաժնուէին: Նոյնիսկ 115ին Տրայիանոս կայսրը Հայաստանը հռոմէական նահանգի մը կը վերածէր, Միջագետքը կը գրաւէր, Կորդուաց Մանիսարոս իշխանը — որ Հայաստանի եւ Միջագետքի քանի մը մասերը յափշտակած էր եւ այլ պատճառով ալ Պարթեւաց Խոսրով թագաւորէն ընդդիմութիւն գտած, կը նուաճէր եւ 116ին կ'առնէր Ադիաբենիան՝ Տիգրիսը Կորդուաց լեռներուն մէջ կամուրջէ մը անցնելէն վերջ: Երբ Տրայիանոս մեռաւ (117) Հայաստան հռոմէական նահանգ ըլլալէ դադրեցաւ եւ եղաւ նորէն Հռոմէական իշխանութեան ներքեւ կէս անկախ պետութիւն մը իր բնիկ թագաւորներով: (Մոմսէն, 5[2] 303, Gustchmid, Irans, 47, Հիւպշման, 30), Լուկիոս Վերոս կայսեր օրովը՝ 163ին՝ Հայաստանի Արտաշատ մայրաքաղաքը առնուեցաւ եւ կործանուեցաւ: Հռոմայեցիք Վաղարշապատը շինեցին իբր նոր մայրաքաղաք եւ հոն պահապան զօրք թողուցին (Մոմսէն, *նոյն* 400):

244ին՝ Սասանեան Շապուհի Հռոմէացւոց հետ կնքած նուաստացուցիչ խաղաղութեամբ Հայաստան եւ Միջագետք Պարսից անցան (Հիւպշման, 30) եւ ամէն տարակոյսէ վեր է որ Շապուհ 252ին գրաւեց Հայաստանը:

Սակայն կ'երեւի թէ Վալերիանոս կայսրը գերութենէն (260ին) եւ Ոդենաթոս Պալմիրացիի՝ Պարսից յաղթելէն յետոյ՝ Հայաստան դարձեալ Հռոմայեցւոց գերիշխանութեան տակ մտած է:

Պարսիկները Հայաստանն ու Միջագետքը նորէն առնելէն եւ 282ին նորէն Կարոս կայսեր տալու ստիպուելէն ետքը, Ներսեհ թագաւորի ատենը՝ 296ին՝ նորէն Հայաստանի եւ Միջագետքի վրայ յարձակեցան եւ Գալերիոս Մաքսիմիանոսի՝ Կառէ եւ Նիկիփորիոն ըսուած տեղերուն միջեւ յաղթեցին, բայց իրենք ալ անմիջապէս վերջը բոլորովին յաղթուեցան եւ ստիպուեցան 297ի խաղաղութեամբ հաւանիլ որ Անգեղ տան եւ Ծոփաց հայ սատրապութիւններն մէկ կողմանէ, —այսինքն Եփրատէն մինչեւ Նիմփիոս *(Պատման-Սու)* գտնուող երկիրը — եւ Աղձնիք, Կորդուք, եւ Ծաւդէք միւս կողմէն— այսինքն Նիմփիոսէ մինչեւ Կորդուք տարածուող երկիրը – Հռոմայեցւոց մնան, որով վերին Տիգրիսի հիւսիսակողմը՝ Եփրատի ու Կորդուաց միջեւ գտնուող երկիրը Հռոմէական եղաւ: Իսկ Մարաց սահմաններուն վրայ գտնուող Զինթա ամրոցը Հայաստանի սահման որոշուեցաւ եւ Հռոմի գերիշխանութիւնը Վրաց վրայ եւս հաստատուեցաւ: Այս դաշնադրութեամբ Հռոմի շահած օգուտը՝ Յուլիանոսի մահուամբ՝ 363ին մասամբ նորէն կորսուեցաւ: Երբ Յովիանոս՝ բանակէն կայսր ընտրուելով՝ ուզեց ամէն գնով Պարսից Շապուհ Բ. թագաւորին հետ խաղաղութիւն ընել. Շապուհ պնդեց որ Մաքսիմիանոսի Պարսիկներէն առած երկիրները նորէն իրեն դարձուին, եւ տկար կայսրը ստիպեց ոչ միայն անդրտիգրիսեան Աղձնիք, Մոկք, Ծաւդէք, Ռեհիմենա եւ Կորդուք հինգ նահանգները, 15 ամրոց եւ Մծբինը, Շնդարն եւ Castra Maurorum ըսուած տեղը տալ, այլ նաեւ Հռոմի հաւատարիմ բարեկամը՝ Հայոց Արշակ թագաւորը յանձնել (Փաւստոս, 130): Անոր հետեւանքը սա եղաւ որ Պարսիկները վերջէն Արշակը գերի բռնեցին եւ կռիւներու եւ խառնաշփոթութեանց ատեն՝ Հայոցմէ Մարաց սահմանակից մեծ երկիր մը եւ Արտաշատ քաղաքն յափշտակեցին (Ամմիանոս, 25, 7, 9 եւ 12, 27, 12, 3. Հիւպշման, 32-33):

Ինչպէս տեսնուեցաւ, Հայաստան Արշակունեանց հարստութեան շրջանին, երկար խաղաղութեան շրջան մը չէ ունեցած, որպէսզի տեւական ապահով եւ հաստատուն սահմաններ ունենար:

Արշակունի թագաւորներուն պատմութիւնը քիչ շատ կը ճշդէ թէ ինչ փոփոխութիւններու ենթարկուած են Հայաստանի սահմանները, որոնց մասին սակայն հաստատուն եւ որոշ տուեալներ չունինք:

Անանուն (*Սեբէոս*, Ա. էջ 13), որ անժխտելի կերպով Է. դարուն խմբագրուած է, ունի հետաքրքրական հատուած մը, որ կը սահմանէ այն հողերը՝ որոնք հայ Արշակունիներու սեփական էին:

Անիկա կ'ըսէ. «Յայն ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ Փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհին Հայոց ի Մծբին (1) քաղաքի: Եւ զատուցանէ նմա սահմանս զԱրուաստան առ երկրաւն Տաճկաց եւ առ երկրաւն Ասորւոց եւ զԿապուտկեայ (Կապադովկիա) առ Կիւլիկեաւ (Կիլիկիա)... եւ ցհիւսիսոյ կողմանէ ի լեառն Մեծ Կովկաս, որ ձգի ընդ կողմանս արեւելից եւ անցանէ առ սահմանաւն առ ամուր աշխարհաւն Մարաց, եւ հասանէ ի լեառն Զարասպ եւ անցանէ առ Նոր Շիրակ (ան) երկրաւն» որ Ասորեստանի սահմանն էր: Այս սահմանները՝ ինչպէս կը թուի՝ առաւել կամ նուազ հաստատուն պահ-

(1) *Կարդա՛ Մծուրք* (ՀԱ. 1913 էջ 21) *կամ Մզուր որ, երբեմն Բարձր Հայոց եւ երբեմն Ծոփաց նահանգին մասն էր* (*Հիւպշման*, Հին Հայոց տեղւոյ անունները, *էջ* 47 *և* 73, *համմ. նոյն էջ* 128).



ԵՒՔՍԻՆԵԱՆ ՊՈՆՏՈՍ
(ՍԵՒ ԾՈՎ)
ԿԱՍՊԻՑ ԾՈՎ
ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎ
ԱԼԱՆՔ
ՍԱՐՄԱՏԻԱ կամ ՍԱՐՄԱՏԱՑՒՈՑ ԱՇԽԱՐՀ
ԱՏՐՊԱՏԱԿԱՆ
ՆՈՐ ՇԻՐԱԿԱՆ
ՄԻՋԱԳԵՏՔ
ԿԱՊԱԴՈՎԿԻԱ
ԱՐԱԶԻՆ ՀԱՅՔ
ԿԻԼԻԿԻԱ
ՍԻՆՈՊ
ՏՐԱՊԻԶՈՆ
ԱՄԻՍՈՍ
ՍԵԲԱՍՏԻԱ կամ ԿԱԲԻՐԱ
ՏԱՐՍՈՆ
ԱՆՏԻՈՔ
ՄԾԲԻՆ
ՏԻԳՐԱՆԱԿԵՐՏ
ՎԱՆ
ԱՐՏԱՇԱՏ
ԴՈՒԻՆ
ՏՓԽԻՍ
ՇԱՄԱԽԻ
ՊԱՐՏԱՒ
ԴԱՐԲԱՆԴ կամ ԴՌՈՒՆՔ ՃՈՐԱՅ
ԳԱՆՁԱԿ ՇԱՀԱՍՏԱՆ
ՆՆՆՈՒԷ
32
34
36
38
40
42
44
46
48

# ԱՐՇԱԿՈՒՆԵԱՑ ԵՒ ԱՂՈՒԱՆԻՑ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կարմիր խաչանիշով և գիծով սահմանագծուած են Հայաստանի սահմանները Արշակունի թագաւորութեան ամէնէն զօրաւոր շրջանին։
2. Կարմիր գիծով նշանակուած է Արշակ Բ.ի առնուած Հայաստանը։ Այդ գիծէն դուրս և երբեմն Արշակունի տիրապետութեան ենթարկուած վայրերը, ապստամբած էին Հայոց թագաւորէն և նուաճուեցան։
3. Խաչանիշ կարմիր, հիւսիսէն հարաւ քաշուած գիծը Արշակունեաց 396-ին երկու թագաւորութեանց բաժանման սահմանն է։
4. Կարմիր ուղղահայեաց գիծով ցոյց տրուած է Աղուանից թագաւորութեան Արշակունեաց ժամանակ նուաճուած հողերը։
5. Կարմիր հորիզոնական գիծով ցոյց տրուած է Աղուանից թագաւորութեան հնագոյն սահմանները։
6. Կարմիր քառակուսիներով ցոյց տրուած է Աղուանից թագաւորութեան Ե. դարէն վերջ կցուած երկիրները։

ւած են մինչեւ Արշակունեաց շրջանին վախճանը, կամ անոր մօտերը, վասնզի դարձեալ Ե. դարուն, եթէ ոչ աւելի առաջ, ապրող պատմագիր մը, Փաւստոս (Դ. ծ) կու տայ ոչ նուազ շահեկան տեղեկութիւններ, որոնք անուղղակի կերպով կը հաստատեն Արշակունի պետութեան տարածութիւնը եւ սահմանները:

Անիկա կը պատմէ թէ Արշակ Բ.էն Դ. դարուն ապստամբեցան բազմաթիւ նահանգներ իրենց նախարարներուն՝ գլխաւորութեամբ:

«Եւ սկսան ստոտրել զնալ ի բանակէն Հայոց թագաւորին, թողին զիւրեանց արքայն Արշակ: ... Նախ այսմ զնալոյ սկիզբն առնէին մեծամեծ աւագանին: Նախ բդեաշխն Աղձնեաց, եւ Նոշիրականն բդեշխն, եւ Մահկեր տանն, եւ Նեհոռականն եւ Դասարնտերին, եւ ամենայն նախարարութիւն Աղձնեաց եւ զօրն եւ տունն տոհմին Աղձնեաց կողմանն ապստամբեցին յարքայէ Հայոց Արշակայ, եւ զատուցին զիւրեանց աշխարհն ի Հայոց:

Եւ յետ սորա Գուգարաց բդեաշխն, եւ յետ սորա Ձորայ գաւառին տէրն, եւ Կողբայ գաւառին տէրն, եւ ընդ նոսա Գարդմանաձորոյ տէրն: Եւ որք մօտ էին հնոսա կողմն այնր ձեռին, որ շուրջ էին զնոքօք, միահաղոյն ապստամբեցին ի թագաւորէն Հայոց Արշակայ...: Ապստամբեցին յԱրշակայ արքայէն Հայոց ամուրն գաւառն Արձախայ եւ ամուր գաւառն Տմորեաց, եւ ամուրն աշխարհն Կորդեաց, ապա եւ տէր գաւառին Կորդուաց չոգաւ եկաց առաջի թագաւորին Պարսից: Ապստամբեաց ի թագաւորէն Հայոց եւ ձեռին իշխանութեանն տանն Հայոց թագաւորին, որ էր զԱտրպայական աշխարհաւն, յետս եկաց ի թագաւորէն Հայոց ամուր աշխարհն Մարաց, յետս եկաց ... եւ աշխարհն Կազբից. երող... եւ զնաց... տէրն Անձտեայ եւ ընդ նմա իշխանն Մեծի Ծոփաց...: *Միջնաշխարհն* մնացեալքն յերկուացան յարքայէն եւ ոչ կամէին լսել թագաւորին իւրեանց» (*Փաւստոս*, Դ. ծ):

Այս տողերը յստակ ցոյց կու տան թէ ի՞նչ էր Հայոց թագաւորութեան տարածութիւնը նոյնիսկ Արշակունեաց վախճանին մօտ, պետութեան քայքայման օրերուն:

Հետաքրքրական է դիտել տալ թէ այս հատուածին մէջ Արքայական սեփականութիւնը, կամ Փաւստոսի բացատրութեամբ «ի ձեռին» կամ ձեռական» (1) կամ սեփական իշխանութիւնը՝ Այրարատը չէր որ Միջնաշխարհին մասն էր (2), այլ Արշակ Բի. Շապուհէն ստացած *«երկրորդական մեծ տունը»* (3), որ «Ատրպայական աշխարհ»ի շուրջը եւ մօտն էր (Ս. Կանայեանց, *Արարատ*, 1913, էջ 795):

(1) *Այս բացատրութիւնը Փաւստոս*, (էջ 56 եւ 151) *և Ագաթանգեղոս* (էջ 296) սեփական *իմաստով գործած են* (*տես* Արարատ, 1913, էջ 795)։

(2) *Փաւստոս*, *Դ. իդ. Ե. ա, Դ. խա*։

Սեբէոս, որ Է. դարու պատմագիր մըն է, մէջ կը բերէ պատճէնը հրովարտակի մը, որ իբր թէ Վահրամ Պահլաւ կամ Վահրամ Չոբին կամ Միհեւանդակ ուղղած է սպարապետ Մուշեղ Մամիկոնեանի եւ հայ նախարարներուն, խոստումներով զանոնք յորդորելու համար որ չօգնեն Խոսրովի եւ Բիւզանդացւոց, վասնզի Որմիզդ Դ.ի (579—590) սպանութենէն յետոյ իր որդին՝ Խոսրով Բ. Պարվէզի (590—628) իբրեւ հակաթոռ Կովկասի բանակին կողմէ թագաւոր հռչակուած էր եւ թէեւ յաղթական մինչեւ Տիզբոն մտած եւ գահը գրաւած էր, բայց Խոսրով ապաստանած էր բիւզանդական երկիր եւ Մօրիկ կայսեր օգնութիւնը խնդրած։

Մօրիկ Խոսրովը թագաւորեցնելու համար բիւզանդական եւ Հայ բանակներով Պարսկաստանի վրայ քալեց եւ յաջողեցաւ Խոսրովը հաստատել իր գահուն վրայ: Ճիշդ այդ նեղ օրերուն է որ Վահրամ Պահլաւ կ'ուզէ Հայերը անջատել Բիւզանդիոնէն եւ Խոսրովէն, ուստի կը խոստանայ—եթէ իրեն օգնեն— հայ նախարարներուն տալ Հայոց թագաւորութիւնը, որպէսզի ով որ ուզեն թագաւոր ընտրեն:

Այս առթիւ կը նշդէ Հայոց թագաւորութեան սահմանները՝ ըսելով թէ «Թողում ձեզ զամենայն երկիրը Հայոց մինչեւ ցԿապկոհ եւ ցդուռն Աղուանից եւ յԱսորւոց կողմանէ՝ զԱռուաստան եւ զՆոր Շիրական մինչեւ ցսահմանս Տանկաց, զի առ նախնեաւքն իսկ ձեզ լեալ է եւ ընդ արեւմուտս մինչեւ ցԿեսարիա կապադովկիացւոց» (*Սեբէոս*. Գ. էջ 5):

Այս տողերը, եթէ վաւերական են, կը հաստատեն թէ Պարսիկ վեհապետ մը այս սահմանները կը ճանչնար եւ կ'ընդունէր իբրեւ Հայ Արշակունի թագաւորութեան երկիրներ, իսկ եթէ պատմագիրն է որ յարմարցուցած է, ինչ որ հաւանական չէ, ըսել է թէ Հայերը այս հողերը մաս կը համարէին կործանած Արշակունի թագաւորութեան եւ ինչպէս կը տեսնուի՝ այս մասին զանազան աղբիւրներ համաձայն են իրարու:

Սակայն շուտով Արշակունի տան ընդարձակ երկիրները կրճատուեցան.

Պապի եւ Վարազդատի թագաւորութենէն եւ Մանուէլ Մամիկոնեանի Պապի՝ Արշակ ու Վաղարշակ որդիներուն տեղ բռած խնամակալութենէն յետոյ՝ քիչ մը ժամանակ իր եղբօրը մեռնելէն ետքը Հայոց վրայ առանձին իշխեց Արշակ (Խոր. Գ. խա): Բայց իրմէ դժգոհ մեծամեծները Պարսից Արքայէն խնդրեցին որ Հայոց վրայ ուրիշ Արշակունի մը թագաւոր դնէ: Երբ անոր վրայ Խոսրով թագաւորը Պարսից կողմէ կուսակալի մը հետ եւ բանակներով Հայաստան ղրկուեցաւ, Արշակ Այրարատէն Հռոմէական Հայաստան քաշուեցաւ եւ մինչ Խոսրով Այրարատ կը գտնուէր եւ Արշակ Եկեղեաց կողմերը, Պարսից եւ Հռոմէացւոց ինքնակալներուն (Շապուհ Գ. 383—388 եւ Թէոդոս մեծ 379—395) դեսպանները բանակցութեան մտան եւ 387ին որոշեցին Հայաստանը բաժնել. Խոսրով թագաւորին արեւելեան եւ մեծագոյն բաժինը (իբր չորս հինգերորդ) Պարսից գերիշխանութեան տակ մտաւ, իսկ Արշակ փոքրագոյն Արեւմտեան բաժինը՝ Հռոմէացւոց.

Շատ մը գաւառներ ալ այս երկու թագաւորնե-

(3) *Փաւստոս ուրիշ երկու տեղեր կ'ըսէ՝* «երկրորդական *մեծ* տուն... *յԱտրպատական աշխարհին*» (Դ. ժզ. էջ 164) *և* «տունն թագաւորին Հայոց, որ յԱտրպատականին էր» (Ե. ը. էջ 264)։

րուն երկիրներէն հանուեցան, այնպէս որ *«Մնաց սակաւ մասն յաշխարհաց երկոցունց առ երկոսեան թագաւորսն»* ըստ Փաւստոսի Բիւզանդացիի (262), որ միանգամայն կը հաւաստէ թէ երկու թագաւորները խաղաղութեամբ համաձայնեցան իրենց երկիրին սահմանները որոշելու համար: Բայց քիչ յետոյ իրարու հետ գժտեցան եւ Արշակ Երեւել դաշտին մէջ Խոսրովէն յաղթուելով՝ Եկեղեաց փախաւ եւ հոն հիւանդանալով մեռաւ 390ին: Ասկէ յետոյ դադրեցաւ Հռոմէական Հայաստանի մէջ թագաւորութիւնը, որուն գլուխը դրուեցաւ յատուկ Կոմէս—իշխան մը—Comes Armeniae—, բայց կառավարութեան ձեւն ու կերպը մնաց նոյնը (Güterbel, 21—26, Հիւպշման, 34—5): Իսկ Պարսկական Հայաստանը քիչ մը ատեն ալ ունեցաւ իր թագաւորները, մինչեւ որ Վահրամ Ե. Գոր (420—438) Արտաշէս վերջին Արշակունին, գահընկեց ըրաւ եւ հոն ալ հայկական թագաւորութեան վերջ տուաւ 428ին, (Ղազ. Փարպեցի, 69, եւ Եղիշէ 7), որով առաջին անգամ ըլլալով ջնջուեցաւ հայ ցեղին իր բնակավայրին վրայ ունեցած ինքնիշխանութիւնը:

Գ.

## ՊԱՐՍԻԿ-ԲԻՒԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

(428—640)

Արշակունի թագաւորութեան վերջ տրուելէն յետոյ թագաւորին տեղը անցաւ Պարսիկ մարզպան մը (*Փարպեցի*, էջ 70), որ յունական բաժինի Կոմէս իշխանին պէս՝ երկիրը կառավարեց այն կերպով որ մինչեւ այն ատեն կառավարուած էր: Հայաստան, այսպէս, բաժնուեցաւ երկու մեծ պետութիւններու միջեւ, որոնք իրենց պատկանող մասերը վարեցին երկիրին յատուկ կարգերով, թագաւորին տեղ վարչութեան գլուխը միայն իրենցմէ նշանակուած *կոմս* մը կամ *մարզպան* մը դնելով: Այս վիճակը գրեթէ անփոփոխ մնաց մինչեւ Խոսրով Ա.ի (531—578) եւ Յուստինիանոսի (527—565) ատենները:

571ին Սիւնիք՝ երկիրին Վահան իշխանին բաղձանքով Պարսկական Հայաստանի հայկական նահանգներու միութենէն անջատուեցաւ եւ կապուեցաւ ուղղակի Ատրպատականի սպայապետին, որմէ կախում ունէր նաեւ Հայաստանի մարզպանը, որ Դուին կը նստէր (Հիւպշման, էջ 36—37): Այս ձեւով կառավարուեցաւ Պարսկական Հայաստանը՝ մինչեւ որ 640ին Արաբները Սասանեանց հարստութեան վերջ տուին եւ տիրեցին Պարսկաստանի եւ անոր տիրապետած երկիրներուն, ընդ որս նաեւ Հայաստանի:

Իսկ բիւզանդական տիրապետութեան ենթարկուած Հայաստանի —որ վերջէն Բարձր Հայք եւ Չորրորդ Հայք կոչուած գաւառներէն կը կազմուէր— վարչութիւնը կամ կառավարութիւնը հիմնովին փոփոխութեան ենթարկուեցաւ, վասնզի տեսնուեցաւ որ Մեծ Հայոց (Armenia Magna) վարչութիւնը Հայաստանի իշխանին —Կոմեսին ներքեւ շատ տկար էր յարձակումներու դէմ երկիրը պաշտպանելու համար: Հայաստանի իշխանը իր տրամադրութեան տակ բանակ չունէր եւ պատերազմի վտանգ եղած ատեն ստիպուած էր մօտակայ նահանգներու *«վասն Արեւելից զօրավարին»*,(Magister militum per Orientem) իշխանութեան նպաստող զինուորական հրամանատարներուն օգնութեան դիմել, ուստի Յուստինիանոս կայսրը 528ին Կոմեսի պաշտօնը ջնջեց, եւ Ա. եւ Բ. Հայոց, Պոլեմոնեան Պոնտոսի, Բարձր Հայքի եւ «Ազգաց» (=Դ. Հայք) վրայ յատուկ զինուորական հրամանատար մը դրաւ Magister militum per Armenian et Pontum Polemonincum et gentes տիտղոսով: Միեւնոյն ատեն Յուստինիանոս, Մեծ Հայաստանի մէջ քաղաքային վարչութիւն մըն ալ հաստատեց եւ նահանգին գլուխը գահերէց մը դրաւ իբր կուսակալ (Հիւպշման, էջ 37—38):

536ին Յուստինիանոս հայկական երկիրները նոր բաժանումներու ենթարկեց եւ կազմեց չորս գաւառներ.

1. *Առաջին Հայք* (Կարին, Սատաղ, Նիկոպոլիս, Կողոնիա, Տրապիզոն եւ Կիրասոն), Յուստինիանուպոլիս (Բաղանիս կամ Ղեւոնդուպոլիս) մայրաքաղաքով:
2. *Երկրորդ Հայք* (Սեբաստիա, Սեբաստուպոլիս, Կոմանա, Զիլէ եւ Բրիսա կամ Բերիսա) Սեբաստիա մայրաքաղաքով:
3. *Երրորդ Հայք* (Մալաթիա, Արկա, Արաբիսոս, Կոմանա Բ. Կոկիսոն կամ Արիարաթէ) Մելիտինէ մայրաքաղաքով:
4. *Չորրորդ Հայք* (Ազգաց երկիրէն կազմուած), ուր մինչեւ այն ատեն իրենց գոյութիւնը կը պահէին հինգ բնիկ նախարարներ (1), ցկեանս պաշտօնավարութեամբ եւ ժառանգական իրաւամբ: Ասոնք ջնջուեցան, եւ այս շրջանն ալ Հռոմ կուսակալի մը իշխանութեան ենթարկուեցաւ (Հիւպշման, էջ 41—43):

591ին Մաւրիկ կայսրը Պարսից Խոսրով Փարվէզ (590—627) արքային օգնեց գահ բարձրանալու եւ այս առթիւ ստացաւ անոր խոստումին համաձայն պարսիկ երկիրէն մաս մը՝

> «զԱրուաստան զամենայն մինչեւ ցՄծբին եւ զերկիրն Հայոց՝ որ ընդ իշխանութեամբ էր, զտուն Տանուտիրական (=Այրարատ) մինչեւ ցգետն Հուրազդան եւ զգաւառն Կոտէից մինչեւ ցաւանն Գառնի, եւ մինչեւ ցեզր ծովուն Բզնունեաց եւ յԱռեստ աւան (2) եւ ցԳոգովիտ գաւառ մինչեւ ցՀացիւն եւ ցՄակու»

(Սեբէոս, էջ 33—35, հմմտ. Թովմա Արծրունի՝ 86 եւ 88, ինչպէս նաեւ Narratie de rebus Armenise՝ էջ 280, Հիւպշման՝ էջ 44 եւայլն) եւ վրաց երկիրին մէկ մեծ մասը միայն Տփղիս:

Պարսկական Հայաստանէն մինչեւ Վասպուրական կը մնար Պարսից ձեռքը ըստ Սեբէոսի, բայց Հիւպըշմանն հիմնուելով Յովհաննէս կաթողիկոսի (էջ 39 եւ 42) եւ օտար աղբիւրներու վրայ (տես էջ 45)՝ կ'ըսէ թէ Դուին, Գառնի, Մակու, Հացիւն, Առեստ եւ Մծբին չեն տրուած եւ երկու պետութիւններու սահմանը Հրազդան գետը չէր այլ քիչ մը աւելի արեւելքէն անցնող

(1) *Ըստ Հիւպշմանի՝ այդ հինգ նախարարները կամ սատրապներն էին Ծոփաց, Աղձնեաց, Անգեղտան, Բալահովտի, եւ Հաշտենից տէրերը (Հիւպշման, էջ 39).*

(2) *Վանի ծովուն արեւելակողմն էր այս աւանը.*

Ազատ գետը (Հիւպշման, էջ 45): Այս առթիւ պէտք է աւելցնել թէ Բիւզանդիոնի անցած է նաեւ Աղձնիք նահանգը, որ Մեծ Ծոփաց եւՎ. երին Տիգրիսի հարաւակողմը գտնուող երկիրին հետ նոր կազմուած Վերին-Միջագետք գաւառին միացուեցաւ, այնպէս որ Նիմփիոս գետը երկու պետութեանց սահմանը ըլլալէ դադրեցաւ:

Այս կերպով երկու Տէրութիւններու սահմանը կը կազմէ Մծբինէն մինչեւ Ընձաքիսար լեռը՝ Վանայ ծովու հարաւ-արեւմտեան կողմը, եւ Առեստ աւանէն՝ Վանայ ծովուն արեւելեան ափին հիւսիսակողմը՝ Մակուի, Հացիւնի, Ազատ գետին եւ Դառնի աւանին վրայէն մինչեւ Հրազդանի վերին ընթացքը գացող գիծ մը,

Բիւզանդիոն, այսպէս իր նախապէս գրաւած Բարձր Հայք եւ Ծոփք (Դ. Հայք) նահանգներու վրայ աւելցուց Տայք, Այրարատ (առանց Դուինի), Տուրուբերան, եւ Աղձնիք նահանգները, թերեւս նաեւ Գուգարաց մեծ մասը, իսկ Պարսից ձեռքը մնացին միայն Մոկք, Կորդուք, Վասպուրական, Պարսկահայք, Դուին եւ շրջակայքը, Սիւնիք, Փայտակարան եւ Աղուաններէն Պարսից անցած Ուտի եւ Արցախ նահանգները (Հիւպըշման, էջ 47—49 հմմտ. *Յովհաննէս կաթողիկոս*, էջ 40 եւ *Վարդան*, էջ 59 եւ Տաշեան, ՀԱ. 1945, էջ 3-4):

Մօրիկի եւ Խոսրովի դաշինքով որոշուած սահմանը մինչեւ պարսիկ պետութեան կործանումը պահուեցաւ՝ հակառակ պատահած մեծ վերիվայրումներուն:

Թէպէտ Խոսրով՝ Մօրիկի մահէն (602) վերջ Բիւզանդացիներուն իր զիջած գաւառները ետ առաւ եւ նորանոր երկիրներ ալ գրաւեց, սակայն Հերակլ կայսրը (610—641) շատ մը պատերազմներու մէջ (624—628) յաղթեց Պարսիկներուն եւ անոնց գրաւած երկիրները ետ առաւ եւ 630ին հարկադրեց Պարսիկները խաղաղութեան դաշինք կնքելու 591ի սահմաններով:

Իսկ երբ Հերակլ մեռաւ 641ին, Արաբները Պարսիկներուն յաղթելէ յետոյ, սկսան անընդհատ Հայաստան արշաւել եւ աշխատիլ զայն Բիւզանդացիներէն գրաւել: Թէեւ 653ին Կոստանդին կայսրը անձամբ Կարին եկաւ եւ Այրարատը Դուին մայրաքաղաքովը գրաւեց, բայց կայսեր դառնալէն յետոյ, Թէոդորոս Ռշտունի Արաբները օգնութեան կոչեց եւ նպաստեց որ անոնք գրաւեն ամբողջ երկիրը (654), Բիւզանդացիներու հետ երկար պատերազմներէ վերջը:

Դ.

## ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ
## (654—885)

Հայաստան արաբական տիրապետութեան կ'ենթարկուէր բացառիկ առաւելութեամբ մը, զոր կը պարտէր Թէոդորոս Ռշտունիի: Այս իշխանը կրցած էր խալիֆային ներկայացուցիչէն ստանալ առանձնաշնորհներ, որոնց տրամադրութեան համաձայն Արաբները կը խոստանային՝

1. Երեք տարի ապահարկ կացուցանել Հայաստանը, եւ երեք տարի ետքը Հայոց ուզածին չափ հարկ առնել:

2. Հայերը պիտի պահէին՝ 15,000 հեծեալ զօրք, որուն ծախքերը իրենք պիտի հոգային, արքունի հարկին հաշուելու պայմանով:

3. Զօրքը Հայաստանէն դուրս՝ Ասորիք պիտի չղրկուէր, բայց Հայաստանի մէջ եւ շուրջը Արաբներուն պիտի տրամադրուէր:

4. Հայաստանի բերդերուն մէջ արաբ էմիրներ պիտի չհաստատուէին եւ արաբ զօրք պիտի չմնար Հայաստանի մէջ:

5. Եթէ Բիւզանդացիք Հայաստանի վրայ յարձակէին՝ Արաբները օգնութեան պիտի հասնէին այնքան զօրքով որ Հայերը ուզէին (Տես *Սեբէոս*, տպ. Թիֆլիս, 1912, էջ 224):

Այս պայմաններով Արաբները Հայաստանի կ'ապահովէին ինքնավարութիւն մը զոր շատ քիչ կամ շատ գէշ գնահատեցին Հայերը կրօնական մոլեռանդութեամբ կամ բիւզանդական սադրանքներու ազդեցութեան տակ, փորձելով բազմիցս ապստամբութիւններ, այնպէս որ Արաբ տիրապետութեան տակ Հայաստան ունեցաւ դժընդակ ճակատագիր մը, որուն մանրամասնութիւնները չեմ տար (1), միայն ըսեմ թէ արաբական տիրապետութեան շրջանին (640—1040) Հայաստան ունեցաւ զանազան ելեւէջներ եւ փոփոխութիւններ, համեմատ իր շուրջը եւ ներսը գործող ուժերուն փոխ-յարաբերութեանց: Բայց արաբական տիրապետութեան ամբողջ տեւողութեան, հակառակ Հայոց բռնած անհաւատարիմ ընթացքին եւ Մուավիյէի եւ Թէոդորոս Ռշտունիի միջեւ կնքուած դաշինքը եղծած եւ ապստամբութեան փորձեր կատարած ըլլալուն, Արաբները յարգեցին Հայոց ինքնավարութիւնը:

Նոյնիսկ եղան շրջաններ, ինչպէս 661—684ին, որ Հայ մը —Գրիգոր Մամիկոնեան— Հայաստանի կառավարիչ կարգուեցաւ եւ ստացաւ իշխանական աստիճան ու միանգամայն Հայ զօրքին հրամանատարութիւնը, եւ չափաւոր հարկ մը տալով, 24 տարի կառավարեց երկիրը, իմաստուն վարչութեամբ մը, եւ իր արքայավայել իշխանութեամբ Հայաստանի համար ապահովեց խաղաղութեան, բարգաւաճութեան, բարօրութեան եւ զարգացման շրջան մը:

685ին էր որ Հայաստան վերածուեցաւ արաբական նահանգի մը, հոն նշանակուելով Արաբ Ոստիկան (=կառավարիչ) մը, որուն քով Հայ Պատրիկը կամ Սպարապետը շատ երկրորդական պաշտօնեայ մըն էր, մինչ առաջ՝ երկիրին իրական պետն էր եւ Արաբները՝ երբեք չէին միջամտեր ներքին վարչութեան, եւ միայն հարկ եւ հպատակութիւն կը պահանջէին Հայերէն:

Պատմութիւնը ցոյց կու տայ՝ թէ եթէ Հայերը պատշաճ վերաբերում ունեցած ըլլային եւ հեռու մընային Բիւզանդացիներէն ու հարկը կանոնաւոր վճարէին, Արաբ տիրապետութիւնը միայն տնտեսական խնդիր մը պիտի դառնար, ինչպէս եղած էր Գրիգոր Մամիկոնեանի (661—684) ատեն, որով Հայերը պիտի կա-

(1) *Հետաքրքիրներ իբրեւ ընդհանուր տեսութիւն մը, ժամանակակից պատմիչներու և օտար աղբիւրներու վրայ հիմնուած, թող հաճին կարդալ իմ* Պատմութիւն Հայ Գաղթականութեան 208*էն* 226 *էջերը, ուր փորձ մը եղած է յստակ գաղափար մը տալու Արաբական տիրապետութեան նկարագիրին վրայ:*

րենային պահել ինքնավարութիւնը եւ վայելել կարգ մը առաւելութիւններ։ Հայերը՝ զոհ բիւզանդական նենգութեան դժբախտաբար քանի մը անգամներ փորձուեցան ապստամբութեան դիմելու, գործելով աւելի զգացումով քան տրամաբանութեամբ, եւ առիթ տուին որ անհանդուրժելի խստութիւններու ենթարկուին։

Առանց փոքր ազգերու տկարութիւնը եղող այս յեղյեղուկ ընթացքին՝ աներկբայելի է որ Հայերը արաբական տիրապետութեան շրջանին աւելի պիտի նպաստաւորուէին քան թէ տուժէին, վասնզի Արաբները Հայերուն տուած էին ինքնավարութիւն։

Հայերը իմաստուն ու իրատես աշխարհվարութեամբ մը կրնային ամրապնդել իրենց գոյութիւնը եւ թերեւս ընդարձակել նաեւ իրենց ինքնավար Հայաստանը, որ չէր պարունակեր իր մէջ ո՛չ Բիւզանդիոնի տիրապետութեան ենթարկուած Եփրատի եւ Սեւ Ծովու միջեւ գտնուող Փոքր Հայքի Հայերը եւ ո՛չ ալ այն հողերը որ Բիւզանդիոն խլած էր Արաբներէն Եփրատի երկայնքին։

Բիւզանդական կայսրութիւնը չէր հանդուրժած Հայոց նոր տեսակ ազատութեան իր հողին վրայ, չըմբռնելով այն առաւելութիւնները, զոր կրնար քաղել ինքն եթէ ինքնավարութիւն շնորհած ըլլար Եփրատի արեւմուտքը գտնուող Հայոց, որոնք այնքան յարած էին Բիւզանդիոնի։ Ասիկա մասամբ պատճառ եղաւ որ Արաբները աւելի ազատութիւն չտան այն Հայերուն, որոնք կը բնակէին իրենց տիրապետութեան տակ՝ դէպի Միջին Եփրատ բարձրացող Տիգրիսի զառիթափերէն մինչեւ Վանայ լիճին եզերքները։ Յետոյ Արաբները այս շրջանէն դուրս տակաւ առ տակաւ նուաճեցին, պարագաներէն օգտուելով, գրեթէ Արածանիի (այժմ Մուրատ Սու) ամբողջ հովիտը եւ Վանայ լիճին հիւսիսային եզերքները, եւ Մանազկերտի, Արճէնի, Տիարպէքիրի եւ Միջագետքի մէջ էմիրութիւններ հաստատեցին։

Նոյնիսկ Ինքնավար Հայաստանի մայրաքաղաքներուն եւ շատ մը ամրոցներու մէջ արաբ մնայուն պահակազօրք դրին եւ արաբ պետեր նշանակեցին։ Այս հողամասերուն մէջ Հայոց տրուեցաւ կրօնական ազատութիւն եւ կղերական-հոգեւոր առաջնորդ ունենալու իրաւունք։

Այսպէս, Ինքնավար Հայաստանի սահմանները կրճատուեցան հարաւէն եւ արեւմուտքէն, բայց ընդարձակուեցան դէպի հիւսիս, Կովկասի ուղղութեամբ։ Այսպէս, Արաբները իրենց Հայաստան կոչած նահանգին մէջ առին կարգ մը կովկասեան ժողովուրդներ, որոնք Հայաստանի իշխողներուն ենթարկուեցան։

Սակայն, ինչպէս տեսնուեցաւ (տես վերը էջ 20—26), Արաբական հովանիին տակ Հայերու դէպի հիւսիս մղումը չպսակուեցաւ մեծ յաջողութեամբ մը եւ Հայերը գրեթէ հարկադրուեցան կանգ առնել Կուրի ափերը, եւ բնաւ չկարենալ անցնիլ գետին միւս եզերքը։

Նոյնպէս, Հայերը Բիւզանդացիներէն կամ Արաբներէն կասեցուած ուրիշ սահմաններու վրայ, իրենց երկիրին ընդարձակագոյն սահմանը կը ներկայացնէին գիծով մը որ կը մեկնէր Ճորոխէն դէպի Արտանուշ, ապա կ'երկարէր դէպի Ափխազիա, անցնելով Կուրը Ախալձխայի վերնակողմէն եւ ընթանալով որոշ միջոց մը անոր աջ ափէն, մինչեւ՝ Թիֆլիսէն քիչ մը անդին, վերջը կը հետեւէր նոյն գետին ընթացքին՝ մինչեւ անոր Արաքսի խառնուիլը։ Յետոյ հայ երկիրը կը մօտենայ Ուրմիոյ լիճին, կը դիմէ հարաւ դէպի Տիգրիս, Մեծ Զապի հովիտի ուղղութեամբ, կը շրջապատէ Վանի լիճը, պարփակելով իր մէջ հարաւային Եփրատի վերին հովիտը մինչեւ Մուշ, ուրկէ կը դիմէ Ճորոխ, իբրեւ արեւմտեան սահման ունենալով գիծ մը որ կ'անցնէր Էրզրումի քիչ մը վարէն։

Ահա այն հողամասը, որ ինքնավար վարչութիւն մը ունեցաւ՝ շնորհուած Արաբներէն։

Երբ ան հեռու էր պարփակելէ իր մէջ ամբողջ Հայաստանը, որուն մէկ կարեւոր մասը դուրս կը մնար արեւմուտքի եւ հարաւի կողմէն, սակայն կը պարունակէր Հայաստանի գլխաւոր նահանգները, որոնք կը կազմէին հայ ազգին սիրտը։ Անոր մաս կը կազմէին Տայքը, Վերին Ճորոխի երկիրը Սպերի հետ, մինչեւ աղբերակունքը Արաքսի, Օլթիի հետ, Այրարատի Մեծ նահանգը, որ կը տարածուէր ամբողջ Վերին Արաքսի աւազանին վրայ, Կարսի, Երեւանի եւ Դուինի շրջականերուն հետ, եւ որ կը թափանցէր դէպի հարաւ մինչեւ Տուրուբերան, հիւսիսային Եփրատէն եւ Վանի լիճէն վեր դէպի հիւսիս երկարաձգուող նահանգը։ Դեռ կար Վասպուրականը, որ կը գտնուէր արեւելեան կողմը նախորդ նահանգներուն, եւ կը տարածուէր Արաքսէն Մեծ Զապ, Վանայ եւ Ուրմիոյ լիճերուն միջեւ, եւ Մոկաց նահանգը, որ կը գտնուէր Վանայ լիճին հարաւը, Քիւրտերու երկիրին լեռներուն զառիվարներուն վրայ։ Հին Պարսկահայքէն՝ Ինքնավար Հայաստան կը պահէր Հեր եւ Զարեւանդ գաւառները Ուրմիոյ լիճին մօտ։

Հետեւաբար, այս շրջանին, Հայերը ունէին Հայաստան մը, շատ կրճատուած, բաղդատմամբ ցեղին տիրապետած վայրերուն, բայց տակաւին բաւական ընդարձակ։ Անոր նահանգները իրարու կից կը կազմէին միաձոյլ զանգուած մը, բարեբեր հովիտներով եւ զառիթափերով եւ լեռներով՝ որոնք կը հանդիսանային անառիկ ամրոցները բազմանդամ ազնուականութեան մը՝ լաւ զինուած եւ շատ ընդունակ կռուելու։

Այս իրական ոյժերը, արգասաբեր հողին հետ, որուն կապուած էին բոլոր պատմական եւ կրօնական աւանդութիւնները ազգին, ապահովեցին Ինքնավար Հայաստանի էական տարրերուն պահպանութիւնը եւ իր գոյութեան տեւականացումը։

Հայկական ինքնավարութեան օրինական հիմն էր 653ի պայմանագիրը, որ Մուավիյէի կողմէ Թէոդորոս Ռշտունիի տրուած էր եւ որ կը փրկէր Հայաստանի աւատական ազատութիւնը, միեւնոյն ատեն առիթ կու տար ենթարկուելու բիւզանդական կասկածներուն եւ բանսերուն։

Բիւզանդիոնի կրօնական հալածանքները եւ Արաբներու սպառնացող ոյժը, մղած էր մեծ թուով Հայեր անմիջապէս յարելու այս դաշինքին եւ յանձնուելու Բիւզանդացիներէն աւելի լայնախոհ Արաբներուն, թէեւ կարեւոր հատուած մը շարունակած է դիմադրել անոնց՝ Բիւզանդիոնի օգնութեամբ։ Բայց այս յունասէր Հայերը, գէշ պատսպարուած Կ. Պոլիսէն, —որ յուսա-


ԵՒՔՍԻՆԵԱՆ ՊՈՆՏՈՍ
(ՍԵՒ ԾՈՎ)
ՊՈՆՏՈՍ
ՀԱՅՔ
ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔ
ՓՈՔՐ ՀԱՅՔ
ԿԱՊԱԴՈՎԿԻԱ
ԿԻԼԻԿԻԱ
ՄԻՋԱԳԵՏՔ ՀԱՅՈՑ
ՄԻՋԱԳԵՏՔ ԱՍՈՐԻՈՑ
ԱՍՈՐԵՍՏԱՆ
ՊԱՐՍՔ
ԱՏՐՊԱՏԱԿԱՆ
ԱՂՈՒԱՆՔ
ՎԻՐՔ կամ ՎՐԱՍՏԱՆ
ԱԼԱՆՔ
ԱՓԽԱԶՔ
ՍԱՐՄԱՏԻԱ կամ ՍԱՐՄԱՏԱՑՒՈՑ ԱՇԽԱՐՀ
ՃՆՃՄԱՏԱԿՔ
ՄԱՍՔՈՒԹՔ
ԼԵԿՔ
ԿԱՍՊՔ
ԾՈՎ ԿԱՍՊԻՑ
Եփրատ գ.
32
34
36
38
40
42
44
46
48

Թիւ 12 — Բնագիր էջ 20–26, 61—64 եւ 118—120

# ԱՐԱԲԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

(640էն մինչեւ Բագրատունեաց թագաւորութեան հաստատութիւն)

---

## ԻՆՔՆԱՎԱՐ ՀԱՅԱՍՏԱՆ
## եւ
## ԲԱԳՐԱՏՈՒՆԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆ

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Կարմիր գիծը ցոյց կու տայ Ինքնավար Հայաստանի սահմանները և հորիզոնական կարմիր գիծերը՝ այն հողամասերը որոնք պարբերաբար կցուած են անոր։
2. Կանանչ սահմանագծուած է 867էն հաստատուած Բագրատունի իշխանապետութիւնը։ Արծրունի մեծ Նախարարութիւնը նշանակուած է հորիզոնական գիծերով և ուղղահայեաց գիծերով այն հողերը որոնք նուաճուած են Բագրատունիներէն։

հաս վերագրուելու ինչ որ Արաբները կորզած էին իրմէն՝ Տարօնէն եւ Եփրատէն անդին—ի զուր մաքառած են, եւ հետզհետէ անցած են Արաբներու կողմը, ընդունելով Թէոդորոս Ռշտունիին հաստատուած վարչութիւնը կամ կանոնը, որ ստացաւ ընդհանուր հանգամանք:

Այս պայմանագրութիւնը Հայերը կը դարձնէր խալիֆային ճորտերը, այնպիսի պայմաններով՝ որոնք կը նկատուէին շատ նպաստաւոր, քանի որ անոնք կը պահէին իրենց տանուտիրութիւնները, իրենց աւատական հիմնարկութիւնները եւ իրենց կրօնական ազատութիւնը, այսինքն իրենց ազգութեան էական տարրերուն հետ, անհրաժեշտ ոյժը պաշտպանելու համար ինքզինքնին ճնշումին դէմ, իրենց նոր վեհապետին, խոստանալով հաւատարմութիւն եւ վճարելով տարեկան հարկ մը եւ իրենց ընտրելագոյն 15,000 զօրքերու ծառայութիւնը: Արաբ լուծը բոլորովին ստուերի վերածուեցաւ Թ. դարուն վերջերը, երբ խալիֆաներու պետութիւնը ծայրագաւառներու մէջ ծագած ըմբոստութիւններէն տկարացած՝ անկարող դարձաւ տեւականապէս մնայուն բանակներ պահելու Հայաստանի, ինչպէս շատ մը ուրիշ երկիրներու մէջ, որոնք միայն հարկի վճարումով Պաղտատի կապուած մնացին եւ էմիրներու եւ զօրավարներու իշխանութեան տակ ճորտ իշխանութիւններու վերածուեցան եւ Արաբ պետութեան տուին աւատական կազմ: Կուսակալները կամ Ոստիկանները դարձան մեծ աւատապետներ, ստորադաս ունենալով բազմաթիւ ճորտեր, որոնց գործերուն իրենք չէին միջամտեր եւ միայն իբրեւ այցելու հաւաքիչներ՝ հարկերը կը գանձէին:

Հայաստան կը գտնուէր Ատրպատական նստող Արաբ Ոստիկանին իշխանութեան տակ եւ բաժնուած էր ազդեցիկ հայ նախարարներու եւ մահմետական պզտիկ իշխաններու միջեւ, որոնք իբր ճորտեր ստորադասուած էին Դուինի նստող Ատրպատականի ամիրային փոխանորդին: Մեծ հայ իշխաններու ստորադաս կամ ճորտ էին մեծ ու պզտիկ ուրիշ իշխաններ եւ կը կազմէին աւատապետութիւններ:

Բարեացակամ ոստիկանի մը իշխանութեան ատեն Բագրատունիք յաջողեցան կազմել աւատապետութիւն մը Հայաստանի հողաբաժինին մէջ գտնուող մեծ ու պզտիկ ճորտերու պետը դառնալով եւ ամբողջ հարկին վճարումը իրենք ստանձնելով: Այսպէս՝ երկիրին ապահովեցին հարկատու իշխանութիւն մը եւ հովանաւորեալ թագաւորութիւն մը:

## Ե.

## ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ՇՐՋԱՆ

### (885—1045)

Բագրատունի «իշխանաց իշխան»ը, որ յետոյ «թագաւոր» տիտղոսը պիտի ստանար, իրեն իշխանութեան տակ ունէր Հայաստանի 15 նահանգներէն միայն 6-ը, այսինքն Այրարատը, Տայքը, Տուրուբերանը, Վասպուրականը, Մոկքը, Սիւնիքը, որոնց կ'իշխէին նախարարական Հայ ազդեցիկ տուներ, որոնց պետերը կը կրէին «իշխան» տիտղոսը:

Հայ նախարարական տուներու հետ, Բագրատունիներու որպէս ճորտ, անոնց ստորադասուած էին մահմետական մի քանի գաւառապետներ ալ, ինչպէս Ցամանիկ, որ կը նստէր Պարտուի մէջ Աղուանից կողմերը, Ապըլաբառ Կայսիկ Ապահունեաց գաւառին (Մանազկերտ) մէջ եւ Ահմաթ որդի Հալթի (իմա Ահմատ Պին Խալիտ) Տարօնի մէջ:

Աշոտ Ա.ի ձգտումն էր իր իշխանութեան ենթարկելով Հայաստանի միւս նահանգներն ալ՝ ստեղծել միութիւն մը: Այս նպատակով նուաճեց Գուգարքը եւ Ուտին, եւ իրեն դաշնակից դարձուց Վրաց եւ Եգերացւոց անկախ իշխանութիւնները:

Բագրատունիք շնորհիւ իրենց չափաւորութեանը, համբերատարութեանը եւ ճարպիկութեանը՝ դարաւոր աշխատանքով անխոնջ կերպով ընդարձակած էին իրենց սեփական կալուածները, ձեռք բերած էին յարգանք օտար իշխանաւորներուն քով եւ ազդեցութիւն՝ Հայ ժողովուրդին վրայ, հակառակ բոլոր ջանքերուն Արաբներուն, որոնք կը ձգտէին Հայ ազնուականութիւնը անհետել, որպէսզի միայն ստրուկներ ունենան իրենց իշխանութեան տակ:

Շնորհիւ իրենց դիրքին՝ Թ. դարուն վերջերը Բագրատունիք առանց դժուարութեան արքայական թագի տիրացան: Մանաւանդ երբ Վասիլ Ա. (867-886) կայսրը առաջացաւ մինչեւ Եփրատ, Արաբները Հայերը սիրաշահելու դիտումով՝ Աշոտ Բագրատունիի «իշխանաց իշխան» տիտղոսը տուին եւ իրենց կողմէ կուսակալ նշանակեցին Հայաստանի (859), գոհանալով միայն տուրք ստանալով:

Աշոտի ուղղամիտ վերաբերումը եւ անձնուիրութիւնը վերջապէս Արաբները մղեցին Աշոտը ճանչնալու իբր «թագաւոր» (885):

Վասիլ ինքն ալ թագ ղրկեց եւ Աշոտը ճանչցաւ թագաւոր: Այսպէս, կազմուեցաւ Բագրատունեաց թագաւորութիւնը, օգտուելով նախ Արաբ պետութեան տկարացման հետեւանօք՝ անոր աւատական կազմ ստանալէն եւ երկրորդ՝ բիւզանդական պետութեան ներշնչած պատկառանքէն:

Բագրատունի արքայական տունը անկախ չէր, այլ հարկատու աւատապետութիւն մը, որ նոյնիսկ դրամ հատանելու իրաւունք չունէր, մինչ էմիրներէն շատերը, ինչպէս Հայաստանի Ոստիկանները՝ ունէին այդ իրաւունքը:

Ինչպէս ինչ ինչ ցուցմունքներէ կը քաղուի, Բագրատունիք կը ներկայանային Արաբ աւատապետական մեծ կայսրութեան կազմին մէջ իբրեւ ճորտեր՝ հանդէպ Ատրպատականի ոստիկանին, իսկ աւատապետներ՝ հանդէպ Հայաստանի հողատէր հայ եւ մահմետական իշխան-նախարարներուն:

Իրենց ստորադասուած ճորտերը՝ ինչպէս կ'երեւի իրենց աստիճանաւորումը ունէին:

Առաջին աստիճանին վրայ էին հաւանօրէն՝ Արծրունիք եւ Սիւնիք, որոնք ըստ մատենագրական ակնարկներու իրենց կարգին աւատապետներ էին իրենց ստորադասուած ճորտերու:

Այսպէս, Արծրունեաց իշխանին ստորադաս էին Մոկաց եւ Անձեւացեաց տէրերը եւ Սիւնիքի ստորադաս էր Սիսական:

Հետեւաբար, որոշ է թէ կար աստիճանաւորում մը, որուն վերին պետը Բագրատունի թագաւորն էր, որ կը նստէր Շիրակաւան, եւ որ իր կարգին կը գտնըւէր Հայաստանի մայրաքաղաքը՝ Դուին նստող Ատրպատականի ոստիկանին փոխանորդին գերիշխանութեան տակ:

Հաւանօրէն Բագրատունիները յաջողէին ժամանակի ընթացքին ամբողջ երկիրին վրայ տարածել իրենց իշխանութիւնը, եթէ հնարաւորութիւն տրուէր իրենց՝ պահ մը անդորրութեան մէջ զարգացնելու բնականոն կերպով իրենց ոյժերը: Բայց, դժբախտաբար, Հայաստան չունեցաւ այդ խաղաղութեան ժամանակամիջոցը, նախանձոտ դրացիներու սադրանքներով։ Բագրատունեաց օրինակը այնչափ հրապուրիչ էր որ լայնատարած կալուածներու տէր ուրիշ իշխաններ եւս նետամուտ եղան արքայական թագի, մեծ մասամբ գրգռուած զօրաւոր Հայաստանի մը կազմութիւնը վտանգ համարող դրացիներէ: Այնպէս որ, պատահեցան տեսակ տեսակ դաւաճանութիւններ՝ նոյնիսկ արքայական տան մէջ, եւ առաւել եւս՝ դաշնակիցներուն քով: Բայց շատ աւելի վտանգը այն էր որ, երկիրին մեծ մասը իրենց անմիջական տիրապետութեան տակ առած էին մահմետականները, որոնց հետ Հայերը սերտ գործակցութիւն չէին կրնար հաստատել:

Այնպէս որ, Աշոտի մահէն (890) յետոյ, իր ստեղծել ուզած միութիւնը կարելի չեղաւ պահել երկիրին մէջ, ասով հանդերձ Բագրատունիք 915ին յաջողեցան բոլորովին ձերբազատել երկիրը Արաբներէն, հարկը դադրեցնելով եւ 920ին Արաբները վանելով բոլորովին:

Արաբները համակերպեցան եւ տեղի տուին, առանց իրենց գերիշխանի դիրքէն հրաժարելու եւ 922ին Աշոտ Երկաթի (915—928) շնորհեցին «Շահնշահ»՝ «Արքայից Արքայ» տիտղոսը, որ աննշանակ պատուանուն մը չէր, այլ նուիրագործումը Բագրատունի կեդրոնական պետութեան գերիշխանութեան՝ Վասպուրականի, Աղուանից, Վրաց եւ Ափխազաց քրիստոնեայ նոր պետութեանց վրայ, որոնք աւատական դրութեամբ արդարեւ կապուած էին Հայոց թագաւորին:

Այս կերպով Հայաստան կրնար ամրապնդուիլ եւ կազմել ուժ մը, ինչ որ համաձայն չէր ո՛չ Բիւզանդիոնի եւ ո՛չ Ատրպատականի Ոստիկաններու շահերուն: Հետեւաբար երկուքն ալ կը դաւէին, եւ ոչ միայն Հայաստան արշաւելով կը կեղեքէին եւ կը հարստահարէին, այլ Հայ հողի վրայ նորանոր մահմետական իշխանութիւններ կը կազմէին եւ բաժան բաժան կ'ընէին երկիրը:

Այսպէս, Բագրատունի թագաւորներուն քով — որ բոլոր իշխաններուն զօրաւորագոյններն էին եւ միեւնոյն ժամանակ ամէնուն գերիշխանը — Հայաստանի հողին վրայ կազմուեցան զանազան նոր հայ իշխանութիւններ եւս (1), Ժ. դարէն սկսեալ Արաբ եւ Բիւզանդական օգնութեամբ, տկարացնելու համար Հայոց Բագրատունի թագաւորութիւնը, որուն աւատապետութեան տակ Հայաստան կրնար ոյժ մը կազմել, եւ կազմեց իսկ երբեմն, երբ օրինակի համար, Աշոտ Գ. Ողորմած (955—978) Բագրատունի Հայոց թագաւորը, իր «Արքայից Արքայ» տիտղոսը իրական արժէքի մը կըրցաւ վերածել, ճանչցնելով իր գերիշխանութիւնը Վասպուրականի, Վրաստանի եւ Աղուանից թագաւորներուն կամ իշխաններուն եւ մի քանի մահմետական էմիրներուն: Նոյնպէս Սմբատ Բ. Տիեզերակալ (979—989) յաջողեցաւ ստեղծել միութիւն մը Տայոց Դաւիթ Կիւրապաղատին եւ Վրաց թագաւորին հետ եւ գործակցիլ նաեւ Վասպուրականի, Սիւնեաց եւ Աղուանից իշխաններուն եւ Կարսի թագաւորին հետ։

Այսպէս, Հայաստանի հողին վրայ գտնուող բնիկ իշխանութիւններէն կազմուած պատկառելի միութիւն մը անշուշտ յարգանք պիտի պարտադրէր դրացիներուն, եթէ սակայն այդ միութիւնը պահել կարելի ըլլար եւ իրարու դէմ չելլէին հայ իշխանները, եւ Հայաստանի թագաւորին ստորադասուած Վրացի եւ Աղուան իշխանութիւնները:

Բագրատունիներու շրջանին Հայոց թագաւորութիւնը բնաւ տէր չկրցաւ ըլլալ ամբողջ Հայաստանի, թէեւ եթէ իր գերիշխանութեան ենթարկուած Վրաստանը, Աղուանից եւ Ափխազներու երկիրներն ալ Հայաստանի մաս համարենք, պիտի տեսնենք թէ Բագրատունիք դէպի հիւսիս Հայաստանի սահմանները ընդարձակած էին, սակայն չէին կրցած միաձոյլ պետութիւն մը կազմել, գոնէ դաշնակցային հիմով, Արաբներու կողմէ իրենց ենթարկուած բոլոր հողերուն վրայ:

Ընդհակառակը՝ Բագրատունի կեդրոնական իշխանութիւնն իսկ չէ կրցած պահել միութիւնը եւ երկիրին զանազան մասերուն մէջ կազմուած էին զանազան իշխանութիւններ, որոնք խուսափիլ կը ջանային Բագրատունեաց կեդրոնական թագաւորութեան գերիշխանութենէն: Աւելորդ է ըսել թէ Վրացիք եւ Աղուանք, որոնք բոլորովին հայացած չէին, մանաւանդ այն շրջաններուն մէջ ուր ամրապէս կը պահէին իրենց ազգութիւնը, չեն ուզած ենթարկուիլ Հայ թագաւորութեան եւ միշտ ձգտած են մերժելու Բագրատունի թագաւորներու հեղինակութիւնը կամ եթէ հարկադըրուած են հնազանդելու կամ ընդունելու Բագրատունի թագաւոր մը իրենց գահուն վրայ, անոր ընտանիքը ազգայնացուցած են, ինչպէս եղած է Վրաստանի մէջ, որուն Բագրատունի արքայական հարստութիւնը բոլորովին վրացի դարձաւ եւ տեղականացաւ:

Ասով հանդերձ, այդ շրջանին, վրական կարգ մը գաւառներ բոլորովին հայացան:

Այսպէս, Ժ. դարուն Գուգարքի մէկ մասը՝ Տաշիրք, որ որքան վրական նոյնքան աղուանական էր եւ կը ներկայացնէր Հայ, Վրացի եւ Աղուան ցեղերուն իրարու հանդիպման կէտը, բոլորովին հայ դարձաւ եւ որորանը եղաւ Հայ Բագրատունի (Կիւրիկեան) թագաւորութեան մը, ինչպէս Տայք նահանգը, որ ժա-

(1) Բոլոր այս հայ իշխանները, ինչպէս նաեւ վրացի տիրապետները, շահերը, իշխանները, նախարարները, ցեղապետները, մարզպանները և այլ Բիւզանդական դիւանները միօրինակաբար իշխան (=Արխոնտ) անունով կը կոչուէին։ Միայն Վասպուրականի իշխանը բացառաբար «իշխանաց իշխան» կը կոչուէր և Վրաց թագաւորը «Կիւրապաղատ» կամ Բիւզանդական Պալատի մարաջախտ։

մանակաւորապէս Վրաստանի կցուած էր, միշտ պահեց իր հայ նկարագիրը:

Բագրատունի թագաւորութիւնը եւ բոլոր իրենց գերիշխանութեան տակ կամ զայն մերժող անկախ հայ թագաւորութիւնները եւ իշխանութիւնները, ամէնը միասին առնելով, իրենց ամէնէն ծաւալուն օրերուն, ամէնէն աւելի տարածուն սահմաններուն մէջ, դարձեալ չեն կրցած աշխարհագրական Հայաստանը Հայ պետութիւններու հաւաքական իշխանութեան տակ առնել, վասնզի Հայաստանէն կարեւոր մասեր օտար տիրապետութեան տակ գտնուած են միշտ: Հետեւաբար Հայաստանի աշխարհագրական սահմանները եւ քաղաքական սահմանները նոյն այս շրջանին իրարու համաձայն չեն եղած:

---

## Զ.

## ԲԻԶԱՆԴԱԿԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ

### (1045—1071)

Ինչպէս տեսնուեցաւ, թէեւ Հայաստան մը կամ Հայոց թագաւորութիւն մը կազմուած էր Թ. դարուն վերջերը Հայկական Բարձրաւանդակին մէկ մասին վրայ, սակայն անիկա բնաւ չէր տիրած Հայաստանի աշխարհագրական բոլոր տարածութեան:

Բագրատունի թագաւորները հազիւ կը տիրէին Արարատեան նահանգին, իրենց շուրջը ունենալով իրենցմէ կոտորակուած մանր թագաւորութիւններ հիւսիսային Հայաստանի զանազան մասերուն մէջ:

Արծրունիք եւ Սիւնիք եթէ ոչ ամբողջովին գէթ մեծ մասամբ Վասպուրականի եւ Սիւնիքի նահանգները կը գրաւէին: Հայաստանի սիրտին վրայ՝ Տուրուբերանի Ապահունեաց գաւառին մէջ կար Կայսիկ մահմետական էմիրներու իշխանութիւնը, հայ թագաւորներու մէջտեղ կարծես զանոնք իրարմէ բաժնելու համար:

Իսկ Հայաստանի բոլոր ծայրագաւառները գրեթէ ամբողջ, ընդհանուր միութենէն բաժնուած եւ օտար տիրապետութիւններու ենթարկուած էին:

Բիւզանդացիք կը տիրէին Հայաստանի արեւմտեան կողմը հիւսիսէն հարաւ Տայք, Բարձր Հայք եւ Դ. Հայք նահանգներուն եւ երբեմն կը տարածէին իրենց հովանաւորութիւնը Աղձնիքի եւ Տուրուբերանի զանազան մասերուն, ինչպէս Սասունի եւ Տարօնի վրայ:

Հիւսիսային Հայաստանի մէջ Գուգարք՝ Վրացիներէն եւ Ուտի եւ Արցախ գոնէ մասամբ Աղուաններէն սեփականացուած էին կամ Գանձակի ու Գողթան էմիրներուն նման մահմետական օտար իշխանութիւններու տիրապետութեան տակ կը գտնուէին:

Արեւելքի կողմը Փայտակարան եւ Պարսկահայք բոլորովին Հայաստանի հետ ոեւէ կապ չունէին, իսկ հարաւի մէջ՝ Կորճէք ամբողջ եւ Աղձնիք մասամբ նոյն վիճակը կը ներկայացնէին:

Հայերու վարչութեան տակ գտնուած կէս անկախ կամ ինքնավար Հայաստանը իր քաղաքական լիակատար անկախութիւնը ունեցաւ Ժ. դարուն սկիզբը միջոց մը, բայց շատ կարճ տեւեց եւ անհետացաւ, վասնզի Հայերը պառակտուած էին ներքնապէս եւ անկարող պաշտպանելու ինքզինքնին արեւմուտքի կողմէն բիւզանդական ոտնձգութեանց եւ արեւելքէն գործադրուած բարբարոսական արշաւանքներուն դէմ, մինչ խալիֆայութեան հետզհետէ խոնարհող ոյժը այլեւս չէր կրնար ազդուօրէն պաշտպանել Հայաստանը, իր սեփական զինուորական ոյժով:

Բիւզանդացիք, առիթը նպաստաւոր կարծեցին աշխատելու համար վերստին տիրել Հայաստանի կամ զայն իրենց ազդեցութեան տակ ունենալ:

Բիւզանդիոնի այս ձգտումը վտանգի ենթարկեց Արաբներու կողմէ յարգուած Հայաստանի քաղաքական անկախութիւնը: Բիւզանդական կայսրութիւնը, արդարեւ, սկսաւ կցել երկիրը կտոր կտոր, մաս առ մաս եւ յառաջացաւ Հայաստանի ներսերը, այն չափով ինչ չափով որ կը տկարանար Պաշտատի խալիֆայութիւնը եւ ինչ չափով որ Հայերը կը պառակտուէին:

Վերջապէս Բիւզանդական կայսրութիւնը տեղաւորեց իր զօրքերը Անիի մէջ, որ մայրաքաղաքն էր հայկական թագաւորութեան, եւ բիւզանդական նահանգներու վերածեց ամբողջ Հայաստանը, սկսեալ Մելիդինէէն եւ Եփրատէն՝ մինչեւ Դուինի մօտերը, Արաքսէն ալ հեռու, մենչեւ Ուրմիա եւ համանուն լիճին շրջակայքը: Կրկին ձեռնարկելու համար Հայաստանի նուաճման, Բիւզանդիոն՝ որ կը վախնար Հայերու փոփոխամտութենէն, իր հողին վրայ փոխադրեց թագազուրկ արքաները, ինքնաբերաբար իրենց թագաւորներուն հետեւիլ ուզող կամ Բիւզանդիոնի կողմէ իրենց բռնի տարագրութիւնը անհրաժեշտ դատուած ազնուականներուն եւ հպատակներուն հետ:

Այս զանգուածային գաղթին հետեւանքով, Հայաստան կորոյս, առաջին անգամ ըլլալով, իր աւատական ոյժը, որ կրցած էր տեւել ու հաստատուն մնալ Քր.է առաջ Է. դարէն սկսեալ: Բայց երբ այդ ոյժը անհետացաւ, դարձեալ առաջին անգամ, հայ ազգաբնակութիւնը ենթարկուեցաւ օտարներու կատարեալ տիրապետութեան (հմմտ. J. Laurent, «L'Armenie entre Byzance et l'Islam depuis la conquête Arabe jusqu'au 886», 1919, Paris, էջ 3—4):

Բիւզանդիոն, որ երբեմն կը յաւակնէր պետը եւ գերիշխանը ըլլալ Եփրատէն մինչեւ Կովկասի ստորոտը տարածուող Հայ, Վրացի եւ մահմետական փոքր պետութիւններուն, չկրցաւ գնահատել կարեւորութիւնը այս անկախ իշխանութիւններուն եւ ըմբռնել անոնց վերապահուած դերը՝ իր ասիական նահանգներուն պաշտպանութեան համար իսկ, եւ անխորհրդաբար քանդեց իր պաշտպանութեան այս ամրոցները:

Արդիւնքը եղաւ աղէտալի՝ որքան Հայոց նոյնքան Բիւզանդիոնի համար, վասնզի կեդրոնական Ասիայէն թուրանեան ժողովուրդներ ողողեցին Հայաստանը, մտան Բիւզանդական կայսրութեան երկիրները եւ յաղթական առաջացան մինչեւ Պոլիս: Եւ Հայաստանի համար բացուեցաւ դժբախտ շրջան մը, որ պիտի տեւէր մինչեւ մեր օրերը, ուր անկախութեան ամէն հետք հետզհետէ պիտի կորսուէր:

Է.

# ՍԵԼՋՈՒԿԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ

(1064—1220)

ԺԱ. դարուն վերջերը՝ Ասիոյ խորերը ժողովուրդներու տեղափոխութիւններ տեղի ունեցան եւ ազգեր ազգերու վրայ ինկան։ Այս ազգերու գաղթաշարժին ալիքները հասան մինչեւ Հայաստան, վասնզի այդ տեղաշարժ ընող զանգուածներուն առջեւէն խոյս տուող ժողովուրդներ եկան Հայաստան, իբրեւ նախակարապետները արշաւող ժողովուրդներու։ Այսպէս, կիսավայրենի խոր ասիական ցեղեր Հայաստանի մէջ հաստատուեցան եւ անոր բնակչութեան դիմագծութիւնը այլափոխեցին, ինչ որ տխուր անդրադարձութիւններ ունեցաւ Հայաստանի քաղաքական կեանքին վրայ եւ Հայ անկախ իշխանութիւնները, որոնք թէեւ տկարացած կը շարունակէին տակաւին, բոլորովին ընկճուեցան եւ կորսնցուցին իրենց ազատութիւնը։

Այս բարբարոսները, մեր հայ պատմիչներէն Լաստիվերտցի (էջ 20) եւ Վարդան (էջ 93) կը ճանչնան *Պարսիկ* անունով, հաւանօրէն անոնց Պարսկաստանի կողմէն Հայաստան մտած կամ անոնց առաջին նախակարապետները, Պարսկաստանի մէջ իշխանութեան տիրացած Դայլամեանք կամ Գուրտեանք (1) ըլլալուն համար։ Ուռհայեցի (էջ 59) եւ Սամուէլ Անեցի (էջ 104—105) զանոնք կը կոչեն *Թուրք*, ինչ որ ճիշդ է, իսկ Թովմա Արծրունիի շարունակողը (էջ 343 եւ 345) զանոնք կ'անուանէ *Ելամացի* եւ Սմբատ Գունդստաբլ (էջ 45) *Մուղալ* (Մոնկոլ)։

Առաջին ալիքը Հայաստանի արեւելեան կողմը Վասպուրական հասաւ 1016—1018 թուականներուն եւ ընկճեց Արծրունեաց թագաւորութիւնը։ Սենեքերիմ Արծրունի, խելացի բան մը ընել կարծեց իր երկիրը թողլով Բիւզանդացիներուն եւ անոր բնակչութեան հետ տեղափոխուելով Սեբաստիա։

Բիւզանդացիք այս կերպով իրենք պարտաւորուեցան ճակատիլ խուժող բարբարոսներուն դէմ, որոնք Հայաստանը կամուրջ ծառայեցնելով կը ձգտէին դէպի արեւմուտք արշաւելու։

Որչափ ատեն որ Վասիլ Բ. Պուլկարասպան (976—1025) կը կառավարէր Բիւզանդական կայսրութիւնը եւ իր տիրապետութեան ենթարկած էր Հայոց երկիրը, Հայաստան տոկաց թրքական յարձակումներուն։ Սակայն իր յաջորդները չկրցան պահել Հայաստանը։ Միքայէլ Դ. Պափլագոնացիի ատեն (1034—1049) Կաւասելաս, Վասպուրականի գաւառապետը, կը քալէ Բերկրիի վրայ՝ ուր տեղաւորուած էին բարբարոսները եւ Խարիկ անուն ամիրա մը դրած։ Կաւասելաս կը գրաւէ քաղաքը եւ հոն պահապան գունդ կը թողու եւ ինչպէս կ'երեւի քաղաքը կու տայ Գանձի անուն հայ իշխանի մը՝ որ իր զօրքով նպաստած էր քաղաքին գրաւումին։ Բիւզանդական զօրքը կը քաշուի Արծակ կամ Արճակ, ուր աւելի առատ պաշար կար։

Խարիկ կը դիմէ իր ազգակիցներուն, որոնք կու գան, վերստին Բերկրիի վրայ եւ կը ջարդեն 24,000 զօրք որոնք անհոգութեամբ զինարբութեան ետեւէ էին եւ անոնց աւարով կը դառնան իրենց երկիրը։

Արճակի զօրքը օգնութեան չի հասնիր։ Պատերազմի մէջ կ'սպաննուի «Մեծ իշխանն Հայոց» Գանձի եւ իրեն կը յաջորդէ Տանաս որդին (տես *Լաստիվերտցի*, էջ 28—29, *Ուռհայեցի* էջ 86—87 եւ *Սմբատ*, էջ 53)։

Միքայէլ Ե. Կալաբատի (1041—1042) ատեն Հերի եւ Սալմաստի կողմէն Վասպուրական կը խուժեն կրկին բարբարոսները, որոնց կը դիմադրէ Խաչիկ Խուլ, Վասպուրականի Բիւզանդացի կուսակալը։

Բիւզանդացիք՝ Խաչիկի երկու զաւակներուն՝ Հասանի եւ Ճնճղուկի շնորհիւ, այս անգամ ալ կը վանեն բարբարոսները եւ կը յաջողին պահել Վասպուրականը (*Ուռ.*, 105—108, *Սմբատ*, 50—60)։

Հարաւային Հայաստանի մէջ Հայ-Բիւզանդական այս դիմադրութեան շրջանին, հիւսիսային Հայաստանի բնիկ իշխանները իրենց կարգին առանձին կը մաքառէին բարբարոս ժողովուրդներու դէմ։ Այսպէս, Հայերը եւ Բիւզանդացիք մինչեւ 1042 կը տոկային Հայաստանի մէջ։

Սակայն Բիւզանդացիք-մանաւանդ կարճամիտ եւ մոլեռանդ Կոստանդին Մոնոմախոս (1040—1054)— վարեցին անհեռատես քաղաքականութիւն մը եւ Հայ եւ Յոյն համերաշխութեան վնասեցին, վասնզի մասնաւորաբար Հայ Եկեղեցիին գործերուն խառնուեցան եւ զայն Պոլսոյ օրթոտոքս պատրիարքութեան հնազանդեցնել փորձեցին։ Այդ արդիւնքին հասնելու համար այդ անմիտ կայսրը 1045ին փոխանակ ոյժ տալու Գագիկի, որ քաջաբար կը դիմադրէր թրքական յարձակումներուն (Սմբատ, էջ 58—59 եւ Ուռհայեցի, էջ 102) ընդհակառակը քանդեց Բագրատունի թագաւորութիւնը, դաւով Գագիկը Պոլիս տանելով եւ 1046ին Անին գրաւելով։

Այս գրաւումը պատճառ եղաւ որ Բիւզանդացիք պատերազմի բռնուին 1046—1047ին Դուինի եւ Գանձակի ամիրա Ապուսվարի հետ, որ փեսան էր Հայոց Աշոտ թագաւորին, (հմմտ. Ուռ. 117—118, Չամ. Բ. 938)։ Ապուսվար՝ տեսնելով որ Բիւզանդացիք նոր բանակներ կը ղրկեն իր վրայ, փրկելու համար իր իշխանութիւնը՝ հնազանդեցաւ Սելջուկ Թուրքերու պետին Իպրահիմ Նիյալի կամ Տուղրիլի։

Ասիկա պատճառ եղաւ որ Սելջուկները ողողեն Հայաստանը 1048—1049ին իրենց պետերուն Իպրահիմ Նիյալի եւ Գթուլմուշի հրամանատարութեամբ։

Իպրահիմ Նիյալ 1048ին գրաւեց Մանազկերտը, Կարինը, Սպերը, Տայքը, Տարօնը, Հաշտեանքը, Խորձեանը եւ մէկ կողմէն հասաւ մինչեւ Սեւ Ծով, Տրապիզոն եւ միւս կողմէն մինչեւ Եփրատ, Բիւզանդական Փոքր Ասիոյ սահմանը (*Լաստիվերտցի*, էջ 62—69)։

Միւնոյն ատեն Գթուլմուշ զօրավարը արշաւեց Միջագետք, ուրկէ դարձին անցաւ Վասպուրականէն

(1) *1021ին Նախիջեւանի կողմէն Հայաստան մտած եւ մինչեւ Այրարատ (Նիգ) առաջացած են Դոյլամեանք կամ Գուրտեանք* (Ուռ. 13 և *Սմբատ* 29)։

գրքալու համար Պարսկաստան (*Լաստիվերցի*, էջ 69, Շահնազարեան Կար. վրդ. ծան. Օրբելեան Բ. էջ 314):

Այսպէս, Թուրքերը ողողեցին Հայաստանը ինչպէս կը նկարագրէ դառնութեամբ պատմագիրը՝ գրելով թէ «անթիւ բազմութեամբ գան յաշխարհն Հայոց, վասնզի ի ձեռացն Հոռոմոց գիտացին անտէր եւ անպահապան զամենայն աշխարհն Հայոց, զի զարս քաջս եւ զհզօրս քակեալ հանին յարեւելից Հոռոմք եւ կուրտ զօրապետօք ջանային պահել զաշխարհն Հայոց եւ զամենայն տուն արեւելից» (*Ուռհայեցի*, էջ 120, հմմտ. *Սմբատ*, էջ 65—66):

Բիւզանդացիք, վերջին փորձ մըն ալ ըրին, բնիկ տարրերու, Հայերու եւ Վրացիներու գործակցութեամբ, պաշտպանելու Հայկական Բարձրաւանդակը, որուն կորուստը իրենց մահը կրնար ըլլալ:

Ասոր համար 1049ին «*տանն Հայոց*», այսինքն Անիի զօրավար Կամենասին, «*Արեւելից կուսակալ*» կամ Վասպուրականի կառավարիչ Գրիգոր Մագիստրոսին, եւ Վրաստանի բանակին հրամանատար Լիպարիտ Օրբելեանին հրահանգ տուին հաւաքաբար ճակատիլ Սելջուկ Տուղրիլի դէմ (*Ուռ.* 121—122, *Լաստիվերտցի*, էջ 86, *Օրբելեան*, բ. էջ 118), սակայն ոչ մէկ յաջողութիւն ունեցան:

Սելջուկները Հայաստանի ամէնէն գլխաւոր կեդրոնները գրաւեցին, սակայն 1050էն վերջ իրենց առաջխաղացութիւնները կասեցան, իբրեւ հետեւանք ներքին խռովութիւններու եւ գահակալութեան պայքարներու, մինչեւ որ Տուղրիլ միահեծան տէր դարձաւ Սելջուկ պետութեան եւ 1054ին Հայաստան մտաւ եւ գրաւեց Բերկրին եւ Արծկէն, պաշարեց Արճէշն ու Մանազկերտը եւ երկիրին ամէն կողմերը ասպատակներ սփռեց:

Տուղրիլ 1054—1060ին ոտնակոխ ըրաւ Շիրակ, Բասեն, Հարք, Հաշտեանք, Խաղտիք, Բարձր Հայք, Դ. Հայք, Մելիտինէ գաւառները:

Տուղրիլի գործակցեցան Գանձակի եւ Դուինի տէրը՝ Ապուսուարը, որ 1055ին Անի արշաւեց եւ Մանկազմի ու Ծիրանիսի կողոպուտներուն մասնակցեցաւ (1036 Յունվ. 6), եւ Երզնկայի, Հաշտենից, եւ Արշամունեաց գաւառներուն տէրը՝ Իւանէն՝ Լիպարիտի որդին, որ դաւաճանեց Բիւզանդացիներուն, եւ Սելջուկ բանակները առաջնորդեց:

Տուղրիլ 1057ին արդէն հասած էր Եփրատ, հետեւաբար բովանդակ Հայաստանի միահեծան տէրն ու տիրականը դարձած էր:

Մինչեւ Տուղրիլի Հայաստան մուտքը, երկիրին հիւսիսային մասին մէջ, ի Կարս, տակաւին իր գոյութիւնը կը քաշքշէր Գագիկ Աբասեան թագաւորը, որ հայրենի հողին վրայ իշխող ազգային հարստութեան վերջին ներկայացուցիչն էր: Իսկ աւելի հիւսիս կ'իշխէին Գուգարաց, Ափխազաց, Վրաց եւ Աղուանից թագաւորները, որոնք Բագրատունի էին ծագումով, բայց իրենց երկիրներուն բնիկ դարձած:

Անին կը մնար յոյն կուսակալին իշխանութեան տակ, որ բոլորովին իր հեղինակութիւնը կորսնցուցած էր եւ ատելի էր Հայոց, վասնզի Կոստանդին Դուկաս (1059—1067) տակաւին Հայերը կրօնապէս միացնելու անմիտ քաղաքականութիւնը կը հետապնդէր եւ Հայոց կաթողիկոսութիւնը ջնջելու փորձեր կը կատարէր, հակառակ անոր որ օրէ օր աւելի սպառնալից կը դառնային Սելջուկները: Հետեւանքը այն եղաւ որ Ալփասլան (1063—1072)՝ Տուղրիլի յաջորդը, վերջապէս նըւաճեց եւ ընկճեց Հայաստանը եւ անկէ իսպառ ջնջեց Հայ անկախ իշխանութեանց վերջին հետքերը: Անիկա հիմնաւորեց Սելջուկ տիրապետութիւնը Հայաստանի մէջ: Իր առաջին զոհը եղաւ Կիւրիկեան Բագրատունի թագաւորութիւնը, այսինքն Լոռին մայրաքաղաք ունեցող Աղուանից թագաւորութիւնը, որուն կ'իշխէր Կորիկէ, Դաւիթ Անհողինի որդին:

Ալփասլան յետոյ մտաւ Վրաստան եւ գրաւեց Ախալքալէք քաղաքը (*Ուռ.* 175 եւ Վարդան 101):

Վրաց Բագրատ թագաւորը (1) (1027—1072) իզուր պայքարեցաւ պաշտպանելու իր երկիրը: Կարսի թագաւորը, Գագիկ Աբասեան խոհեմութիւն համարեց հնազանդիլ Ալփասլանի եւ ի վերջոյ տեղափոխուիլ Փոքր Ասիա, իր երկիրը Բիւզանդացիներուն թողլով (հմմտ. *Ուռ.* 181, *Սմբատ*, 76—78, *Կիրակոս*, 56—58, *Վարդան*, 102):

Այսպէս վերջացան հայկական իշխանութեան վերջին մնացորդներն ալ եւ «գերեցաւ տունն Հայոց, եւ արեամբ լցաւ առ հասարակ աշխարհն ամենայն, որ եւ իբրեւ զծով ծփայր ծայրէ ի ծայր, եւ քակեալ ապականեցաւ հայրենական տունն մեր լեալ, խախտեցաւ հիմն բնակութեան Հայաստան ազգացս, զի ոչ մնաց տեղի յուսոյ ապաւինի, եւ եղանք մատնեալ ի ծառայութիւն ազգաց անօրինաց եւ օտար գազանաց» (*Ուռհայեցի*, էջ 181):

Տեղացի մահմետական ամիրաներն ալ, ինչպէս կանուխ Դուինի եւ Գանձակի ամիրան Ապուսուար ըրած էր, իրենք ալ հնազանդեցան Ալփասլանի: Այսպէս, Ամիթին ամիրան Ամիր Սայիտ որդին Նըրտոլի կը հնազանդի Ալփասլանի (*Ուռ.*, էջ 187—8) 1061ին:

Լոռիի Կորիկէ թագաւորը իր աղջիկը կնութեան տալով Ալփասլանի՝ հազիւ կը յաջողի փրկել իր ազազուն իշխանութիւնը կամ գիւղական թագաւորութիւնը, եւ դառնալ Լոռի պատուով:

Գանձակի ամիրան Փադլուն 1067ին կ'ստանայ Թիֆլիսը Ալփասլանէն իբրեւ իրեն ստորադաս իշխանութիւն մը:

Կախէթի Գագիկ թագաւորը եւս պէտք է հնազանդած ըլլայ Ալփասլանին, քանի որ իր որդին՝ Ասխարթան՝ Ալփասլանի հետ կը շրջէր:

Ալփասլան վերջին հարուածը տուաւ Հայաստանի մէջ Բիւզանդական տիրապետութեան գրաւելով նաեւ 1065 Օգոստ. 15ին թագաւորական անառիկ ամրոցը՝ Անին:

Ասիական բարբարոսները վարժուած չէին քաղաքներ պաշարելու, սակայն անօրինակ զօրութեամբ Սելջուկ հրոսակները տոկացին այս ամրացած քաղաքին պարիսպներուն առջեւ: Բիւզանդիոն դրամ եւ զօրք չունենալով, օգնական զունդեր չղրկեց եւ թոյլ տուաւ որ հոյակապ քաղաքը բարբարոսներու աւար

(1) *Բագարատ որդին էր Մարիամ Արծրունիի, որ աղջիկն էր Սենեքերիմ Վասպուրականի վերջին թագաւորին եւ թոռն Գագիկ Ա.ի.*

դառնայ (Գելցեր, *Բիւզանդական կայսրերի պատմ.*, էջ 295—7, համմ. *Ուռ.*, էջ 176–180):

Բարբարոս Թուրքերը այսպէս վերջապէս տիրակալեցին Հայաստանի, հոնկէ ջնջելով գրեթէ քրիստոնեայ քիչ շատ պատկառելի իշխանութիւնները, միայն թողլով մի քանի պզտիկ իշխանութիւններ, որոնք յաջողեցան տոկալ ժամանակ մը եւս, ապաստանած իրենց նպաստաւոր դիրքերուն, ինչպէս Սասունի լեռներուն մէջ Թոռնիկեանք, որոնք կրցած են դիմանալ մինչեւ 1185, եւ Վասպուրականի մէջ՝ Ամուկ եւ Աղթամար, որոնք իրենց ծովապաս դիրքէն օգտուելով կրցան քաշքշել իրենց գոյութիւնը մինչեւ ԺԴ. դար:

Իսկ Կովկասի ստորոտը՝ լեռնային վայրերու մէջ տոկացին մինչեւ ԺԲ. դարուն առաջին տարիները (1105) Ծանարաց, եւ Սեւորդեաց կամ Կախէթի թագաւորութիւնը, մինչեւ նոյն դարուն կէսերը՝ (1143) Խաչէնի իշխանութիւնը եւ մինչեւ նոյն դարուն երրորդ քառորդին վերջերը (1169) Սիւնեաց եւ Բաղաց կամ Կապանի թագաւորութիւնը: Իսկ դար մը աւելի ապրեցան մի քանի շատ պզտիկ իշխանութիւններ, ինչպէս Բաղթակեանք (1224), Հաթերք (1231), Կիւրիկեան Խազրատունիք (1249), Մեծ Կողման (1272) իշխանութիւնները, որոնք հետզհետէ ընկնուեցան: Ամէնէն ուշ ԺԵ. դարուն սկիզբը 1404ին նուաճուեցան Փառիսոսի թագաւորութիւնը եւ Վայոց Ձորի իշխանութիւնը: Իսկ արաբ խալիֆաներու ժամանակ եւ անոնց իսկ հաւանութեամբ կազմուած իսլամ էմիրութիւնները ինչպէս Կայսիկներու, Արզնի եւ Գանձակ Փասլունեանց՝ Գողթանի Սալարեան էմիրները 1100—1120 ժամանակամիջոցին գրեթէ ամէնքն ալ աւլուեցան եւ ջնջուեցան:

Սելջուկեանք 1065–1080ին ջնջեցին Բիւզանդացիներէ հաստատուած Անիի կամ Հայոց տան, Վասպուրականի կամ Արեւելից, եւ Թէոդուպոլսոյ զինուորական հրամանատարութիւնները, ինչպէս նաեւ Երզնկայի եւ Մանազկերտի ճորտական իշխանութիւնները:

Այս շրջանին նշանակելի է որ Հայաստանի հողին վրայ թէեւ կային բազմաթիւ հայ թագաւորներու կամ արքայիկներու եւ մահմետական էմիրներու վեհապետութեան տակ մանր մունր իշխանութիւններ, սակայն անոնցմէ ոչ մին կը յաւակնէր ինքզինքն Հայոց պետութիւն կամ Հայաստանի կառավարութիւն համարելու, այլ առ հասարակ պզտիկ շրջանակներու անուններով կը ճանչցուէին:

Իսկ ինչ որ ամէնէն աւելի նշանակելի էր՝ Ալփասլանի տիրակալութենէն յետոյ Ասիոյ խորերէն եկող իր ասպատակները իրենց արշաւանքէն յետոյ ետ չէին դառնար, այլ Հայաստանի մէջ կը հաստատուէին թէ իբրեւ տիրապետողներ եւ թէ իբրեւ բնակիչներ:

Եւ այսպէս հայկական բարձրաւանդակին տիրացած Սելջուկեանք՝ մշտական պատուհաս մը կը դառնային Փոքր Ասիոյ եւ Ասորիքի, սպառնալով անէացնել նաեւ բիւզանդական քաղաքակրթութիւնը՝ որուն առաջին պատուարը Հայաստան արդէն ինկած էր:

Ցովհաննէս Սկիղիցէս Կիւրապաղատ յոյն պատմագիրը (էջ 815– կամ 637), նախատեսելով ապագան, իրաւամբ կը դատապարտէ Կոստանդին ԺԱ. Դուկասի անհոգութիւնը եւ կը ցաւի Ալփասլանէն գրաւուած Անիի եւ այլ հայ քաղաքներուն կորստեան վրայ եւ կ'ըսէ. *«Ահա յայս վիճակ թշուառութեան Հասին սահմանք (Հայոց) որք էին ընդ տէրութեամբ յունաց յԱսիա եւ ամենայն արեւելս»* (Չամ. Բ. 982):

Կոնորաս, ուրիշ ժամատակակից յոյն պատմիչ մը, աւելի իրատես քան Բիւզանդեան պետութեան վարիչները, կը մեղադրէ Դուկաս կայսրը եւ զինքը շրջապատող ծերակուտականները եւ ուսումնականները, որոնք անհոգութեամբ թոյլ տուին Հայաստանի ոտնակոխումը եւ Հայ ազգին անհետումը, դաւաճանելով Բիւզանդական պետութեան լաւ ըմբռնուած շահերուն, եւ պատճառ եղան որ ո՛չ միայն Հայաստան, այլ նաեւ Փոքր Ասիոյ մէկ կարեւոր մասը, անդարձ կորսուի կայսրութեան համար:

Արդարեւ՝ Ալփասլան Հայաստանի տիրելէ վերջ արշաւեց Բիւզանդական երկիրներ, մտաւ Միջագետք, գրաւեց Սեւերեկը, Նիզիպը, Եդեսիան, Հալէպը, Այնթապը եւ առաջացաւ մինչեւ Քեսուն:

Ռոմանոս 1068ին շատ յաջող արշաւանքով մը Հալէպէն ու Պոնտոսէն վանեց Սելջուկները: Վերջապէս 1069ին կրցաւ աւազակային հրոսակները Եփրատէն հեռու քշել, սակայն երբ յանդուգն արշաւանքով առաջացաւ մինչեւ Խլաթ, Սելջուկները յանկարծ երեւացին Կապադովկիա եւ կողոպտեցին մինչեւ Իկոնիա (Գելցեր, *նոյն* էջ 301):

Ռոմանոս հաւաքեց իր ոյժերը եւ 100,000 զօրքով անձամբ գնաց թշնամիին դէմ, սակայն պարտուեցաւ եւ նոյնիսկ գերի ինկաւ Մանազկերտի մէջ (1071):

Այս սոսկալի պարտութեան հետեւանքները թէեւ իրենց բոլոր արհաւիրքներով անմիջապէս զգալի չեղան, բայց Փոքր Ասիոյ արեւելեան մասը՝ Հայաստան եւ Կապադովկիա, անդարձ կորսուեցան եւ բարբարոս Թուրքը իր վրանը լարեց հին հռոմէական անցեալ շքեղութեան աւերակներուն վրայ:

Բիւզանդացիք կարծես կամաւորապէս բաց ասպարէզ ձգեցին այդ վայրենի հրոսակներուն, որոնք իրենց գլուխը ունենալով Տուղրիլի եւ Ալփասլանի պէս անձեր, տարիներով Հայոց երկիրը եւ անոր մերձաւոր շրջակայքը, ինչպէս նաեւ Բիւզանդական երկիրներէն մաս մը տակնուվրայ ըրին, բազմամարդ ու շէն քաղաքներ կործանեցին եւ հազարաւոր մարդեր սուրի եւ գերութեան մատնեցին: Բիւզանդացիք հազիւ Հայաստանի արեւմտեան քանի մը քաղաքները կրցան պահել:

Ալփասլան իր բոլոր վայրագութեամբ՝ որքան քաջայանդուգն նոյնքան ասպետ անձ մըն էր: Անիկա վեհանձնօրէն արձակեց Ռոմանոս կայսրը գերութենէն եւ Կարսի Գագիկ Աբասեան թագաւորին հետ վարուեցաւ ազնուօրէն, երբ անիկա իրեն բարեկամութիւն ցոյց տուաւ:

Թերեւս իր մեծանձնութեան համոզուած՝ Գագիկ Անիի թագաւորը, որ Բիւզանդական դաւաճանութեամբ իր աթոռէն եւ թագէն զրկուած էր եւ Կեսարիոյ կողմերը ճորտական իշխանութիւն մը ստացած, *«խորհեցաւ գնալ առ Աբասլան Սուլտանն Պարսից եւ տիրանալ աթոռոյ թագաւորութեանն տանն Հայոց, զի բազում անգամ կոչէր զԳագիկ Սուլտանն եւ նա յաղագս քրիստոնական հաւատոյ արգելեալ լինէր»* (Ուռ. 217 եւ Սմբատ, 81):

Թերեւս այս կերպով վերակազմուէր Հայ պետութիւնը՝ եթէ կրօնական սխալ ըմբռնուած նախան-

ձախնդրութիւնը եւ կրօնքն ու քաղաքականութիւնը իրարու հետ շփոթելու հայկական մտայնութիւնը Գագիկը չկասեցներ իր մտայնութիւնը գործադրելէ:

Ալփասլանի որդին եւ յաջորդը՝ Մելիք Շահ (1072—1092) որուն ձալալ-էտտին եւ Միւզ էտ Տինի վաս-տին տէտղոսները ալ տրուած էր (Herbert M. J. Leowe. The Seljuqs. 'ի The Cambridge Medieval History. t. IV, Նիւ-Եորք, 1923, էջ 299—318), 18 տարեկան էր երբ գահ բարձրացաւ: Ան Սելջուկ առաջին վեհապետը եղաւ որ այս ընդարձակածաւալ պետութեան մէջ կարգաւորութիւն եւ կանոնաւորութիւն մտցուց եւ զայն կազմակերպեց: Սելջուկ այս սուլթանը բարի եւ ուղղամիտ վեհապետ մը եղաւ եւ բաւական արդար վարչութիւն մը հաստատեց՝ ինչպէս այլուր՝ նոյնպէս եւ Հայաստանի մէջ: Առանց ոեւէ լուրջ ընդդիմութեան մը հանդիպելու բովանդակ Հայաստանի տիրապետելէ ետքը (1086—1092)՝ սիրաշահող քաղաքականութեան մը հետեւեցաւ եւ տեղական իշխաններու, թոյլ տուաւ որ իրենց գոյութիւնը պահեն, հնազանդելով եւ ճանչնալով իր գերիշխանութիւնը:

Անիկա հովանաւորեց այն իշխանները, որոնք ծառայեցին Սելջուկեանց եւ անոնց բանակները առաջնորդեցին: Այսպէս, նպաստաւորուեցաւ Դուինի եւ Գանձակի ամիրան Փատլունը՝ որ Ալփասլանէն շնորհ գտած էր արդէն: Մելիք Շահ անոր տուաւ Անին, որ Փատլուն թողուց իր Մանուչէ թոռան եւ այսպէս Փատլունեանք կազմեցին ընդարձակ իշխանութիւն մը Հայաստանի մեծագոյն մասին վրայ: Նոյն ատեն Հայաստանի մէջ տակաւին իրենց գոյութիւնը կը պահէին՝ իբրեւ նորտ իշխանութիւններ՝ Կիւրիկեանք եւ Սիւնիք, որոնք հնազանդութիւն յայտնած էին Սելջուկներուն:

Մելիք Շահի բարեացակամ վարչութեան տակ Հայերը կ'երեւի թէ բաւական գոհ էին, վասնզի այդ շրջանին Հայերը կը գործէին Սելջուկ բանակներու մէջ (*Ուռհայեցի*, էջ 284): Հաւանօրէն անոնք կը յուսային իր վարչութեան տակ ունենալ անդորր կեանք մը եւ վերակազմել իրենց ազգային եւ կրօնական հիմնարկութիւնները: Անոնք կը հաստատեն Անիի մէջ կաթողիկոսութիւն մը յանձին Բարսեղ Անեցիի, որ 1090ին Մելիք Շահին կ'երթայ եւ կարգ մը առանձնաշնորհներ եւ ապահարկութիւններ կ'ստանայ:

Իր յաջորդին եւ որդիին Պարկիարուխի (1092—1104) ատեն սկսաւ անկումը Սելջուկ մեծ պետութեան, որ 3—4 մասերու բաժնուեցաւ: Ասոնց գլխաւորն էր այն որ իբրեւ Պարսից Սուլթան կը ներկայանար, եւ իր իշխանութեան տակ ունէր Հայաստանը:

Պարկիարուխ, որ այս բաժինին գլուխն էր, անցաւ Եփրատը եւ առաջացաւ մինչեւ Անտարադիա եւ Հիւսնի Մանսուր:

Պարկիարուխի յաջորդեց Մուհամմէտ Տափար (1104—1117) եւ ասոր՝ Սանճար (1117—1156), որոնց շրջաններուն հետզհետէ աւելի կտտրակուեցաւ Սելջուկ ընդարձակածաւալ պետութիւնը:

Պարսիկ Սուլթանութեան սահմանակից եւ անոր արեւելեան կողմը կար նաեւ ուրիշ իշխանութիւն մը, որ Սելջուկեանց նախնական բնակավայրը եղած տեղերուն՝ այսինքն Խուարէզմի վրայ կ'իշխէր: Այս երկու իրարու դրացի Սուլթանութիւնները ջնջուեցան: Խուարէզմի քաջար ցեղերու պատկանող ատպատակներէն, որոնք նախ Խուարէզմի՛ եւ ապա Պարսկաստանի տիրապետելով, վերջ տուին Պարսից Սելջուկ Սուլթանութեան, 1194ին:

Պետութեան այս քայքայումէն օգտուելով գոյութիւն առին մեծ թիւով պզտիկ տանուտիրութիւններ կամ հողատիրութիւններ (seigneurie), որոնք առաւել կամ պակաս իրական հնազանդութեամբ մը կապուած էին կեդրոնական իշխանութեան: Անոնք ոչ միայն իրենց ըմբոստութիւններով կը տկարացնէին կեդրոնական իշխանութիւնը, այլ իրենց իրարու դէմ մղած պատերազմներով՝ նաեւ բովանդակ կայսրութիւնը (Loewe): Այսպէս, շուտով սկսաւ քայքայուիլ Սելջուկեան ընդարձակածաւալ պետութիւնը:

Կուսակալները —որոնք Աթապէկ կը կոչուէին— աւատական դրութեամբ քիչ քիչ իրենց յանձնուած երկիրներուն տէր դառձան եւ ինքնագլուխ ըլլալու միտում ցոյց տալ սկսան: Այս մանր իշխանութեանց գլուխը կը կանգնէին երբեմն Սելջուկ իշխողներ՝ ազգականական կապերով կապուած Մեծ Սելջուկին եւ երբեմն ալ արքայական ընտանիքին չվերաբերող թուրք էմիրներ, որոնք ժառանգական նորտեր կը դառնային եւ սովորաբար կը կրէին այդ *աթապէկ* տիտղոսը, ինչպէս Պարսկաստանի, Ատրպատականի, Սիւրիոյ եւ այլ Աթապէկները:

Սանճարի (1117—1156) իշխանութեան վախճանին այս դրութեան անպատեհութիւնները երեւան եկան: Այս քուականէն յետոյ, Սելջուկներուն պատմութիւնը դարձաւ պատմութիւնը այն միութիւններուն եւ խմբաւորութիւններուն, որոնց միջեւ մինչեւ այն ատեն բաժնուած էր այդ մեծ կայսրութիւնը, որ իր մէջ կը պարունակէր Պարսկաստանը, Անդրօքսոսը (Transoxiana), Միջագետքը, Սիւրիան, որոնք Սանճարի մահէն (1156) ետք բոլորովին բաժան բաժան եղան, վասնզի կեդրոնական իշխանութեան ոյժը պակսեցաւ: Այդ առիթէն օգտուելով հարկատուները եւ կուսակալները դէպի անկախութիւն քայլ մը եւս առին, ինչ որ Աթապէկներու կերպով մը աւատական դրութեան անխուսափելի հետեւանքն էր (Loewe, The Seljuqs, The Cambridge Medieval History t. IV. էջ 299-318):

Այս կեդրոնին անուանական գերիշխանութիւնը երբեմն ճանչցող եւ երբեմն մերժող ժառանգական իշխանութիւնները իրենց շրջանակներուն մէջ կազմեցին աւելի կամ նուազ տեւական պետութիւններ եւ իշխանութիւններ:

Այս ընդհանուր խառնակութիւններուն միջոցին Հայաստանի մէջ կը տեղաւորուէին այլացեղ ժողովուրդներ եւ հոն կ'ամրանային, չարագուշակ ապագայ մը պատրաստելով մեր երկրին համար:

Բայց Սելջուկները իբրեւ անքաղաքակիրթ ժողողովուրդ, չկրցան հաստատել ոեւէ կանոնաւոր եւ ամուր վարչաձեւ մը, ինչպէս իրենց գրաւած բոլոր երկիրներուն՝ նոյնպէս եւ Հայաստանի մէջ:

Համադաշնակցութեան անդամ աթապէկները շարունակ իրարու հետ վէճեր եւ կռիւներ կ'ունենային, որոնց կը խառնուէր գերիշխան վեհապետը իբրեւ իրաւարար կամ իբրեւ գերագոյն պետ:

Այսպէս կառավարուեցաւ մեր երկիրը՝ բաժնուած զանազան իշխանութիւններու, մինչեւ 1127՝ մահը Մուհամմէտ Տափար Սելջուկ վեհապետին, ուրկէ յետոյ երկիրը բաժան բաժան եղաւ եւ զերիշխան վեհապետ-

տին հաւասարակշռող հեղինակութիւնը չմնաց: Երկիրը աւատապետական կարգերով բաժնուեցաւ Աթապէկներու (=Նահապետ) եւ զանազան իշխանական պետերու միջեւ, որոնցմէ մի քանին ալ Հայաստանի մէջ կ'իշխէին:

Է.

## ՄՈՆԿՈԼԵԱՆ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ

### (1220—1380)

Սելջուկեան պետութեան քայքայումի շրջանին, ինչպէս տեսնուեցաւ, Հայաստանի մէջ կազմուեցան քանի մը իշխանութիւններ, բնիկ իշխաններու կամ եկուոր բռնակալներու գլխաւորութեամբ:

Անոնք երբեմն կրօնական, երբեմն ցեղային պատճառներով շարունակ իրարու հետ պայքարեցան: Բիւզանդիոն ուղղակի կամ անուղղակի ոյժ տուաւ այդ կռիւներուն, երբեմն ուղղակի խառնուելով այդ քանդող եւ աւերող ներքին պառակտումներուն՝ եւ երբեմն դիտումնաւոր պաշտպանութիւններ ընծայելով կողմերէն մէկուն:

Այսպէս, երկիրը չարաչար տուժած եւ աւերուած ու քանդուած էր արդէն՝ երբ Թաթարները երեւցին պատմութեան հորիզոնին վրայ: Անոնք եղան վերջին ասպատակները եւ միանգամայն ամէնէն աւելի հեռու հասնողը, ինչպէս նաեւ ամէնէն հզօրը կամ վայրագը եւ կամ լաւ եւս է ըսել՝ ամէնէն աւելի *նետողը*, այնպէս որ հայ պատմիչներ զանոնք կոչած են *«ազգ նետողաց* (Ալիշան, *Յուշիկք*, *Բ*. 411): Անոնք Մոնկոլ եւ Թուրք ալ կը կոչուէին:

Անոնց առաջին պետն էր Ճինկիզ (1) խան, բուն անունով Թէմուճին, որուն հրամանին տակ շարժելով իրենց բնավայրէն, յարձակեցան Պարսկաստան 1194ին եւ Սելջուկեանց բոլոր երկիրները աւերեցին:

Ճինկիզ արշաւեց նաեւ Չինաստան, Հնդկաստան եւ Ասիոյ կեդրոնին վրայ հիմնեց ընդարձակածաւալ պետութիւն մը։ Այս ահեղ հոսանքը, որ Պայքալ լիճին շրջականերէն մինչեւ Եւրոպայի սիրտը պիտի առաջանար, ինչպէս ուրիշ ասիական բարբարոս ժողովուրդներ, ինքն ալ Հայաստանը իբրեւ կամուրջ պիտի գործածէր՝ մտնելու համար արգաւանդ եւ ծաղկեալ երկիրներ, եւ այսպէս Հայաստան նորէն իր աշխարհագրական դիրքին զոհ՝ նոր դժբախտութիւններու պիտի ենթարկուէր:

Արդարեւ Ճինկիզ խանի Ասիոյ մէջ յարուցած այս տակնուվրայութեանց ազդեցութիւնը զգալի եղաւ նաեւ Հայաստանի մէջ, ուր նոյնիսկ Ճինկիզի ողջութեան Թաթարներէն հասուած մը, 1220ին կովկասեան լեռներէն անցնելով *«յանկարծակի յեղակարծում ժամու յոլով գունդք զօրու ծանու ամենայն կազմութեամբ եղեալ ընդ դուռն Դարբանդայ եւ եկեալ յաշխարհն Աղուանից, գալ անցանել յաշխարհն Հայոց եւ Վրաց»* (Կիրակոս, 102):

Իրենց հրամանատարներն էին Սաբատա կամ Սուպութա (յիշուած Կիրակոսէ) եւ Ջէպէ զօրավարները: Անոնք առաջացան մինչեւ Թիֆլիս, Վրաստանի մայրաքաղաքը եւ դարձեալ եկան Աղուանից աշխարհը (*Կիրակոս*, էջ 102):

Աղուանից բազում գաւառները աւերելէ վերջ կրկին դարձան Վրաստան, որուն թագաւորը Գէորգ Լա·ա եւ մեծ հազարապետը՝ Իւանէ Օրբէլեան անոնց դիմադրեցին եւ նախ յաղթութիւն մը տարին, սակայն վերջը դարանի մէջ ինկան եւ պարտուեցան։ Վրացի զօրքը մեծ հարուած եւ ջարդ կրեց, եւ թագաւորը իր իշխաններով հազիւ ազատուեցաւ, իսկ բարբարոսները անհամար աւար ձեռք բերին:

Վրաց թագաւորը առանց յուսահատելու նոր զօրք հաւաքեց, եւ ուզեց նորէն ճակատիլ, սակայն մոնկոլները առանց պատերազմի մտնելու, իրենց կիները, տղաքը եւ շարժական տուն-կառքերը առնելով ուզեցին անցնիլ Դարբանդէն, սակայն *«զօրն Տաճկաց որ ի Դարբանդ՝ ոչ ետուն նոցա մուտ անցից եւ նոցա հատեալ զլեառն Կովկաս ընդ անանց՝ ի վեհն՝ լնլով զփայտ եւ զքար նաեւ զախք իւրեանց եւ զերիվարս եւ զկազմած պատերազմական, անցին գնացին յաշխարհն իւրեանց»* (*Կիրակոս*, էջ 104):

Այս արշաւանքը որ կրնայ Մոնկոլներէն գործադրուած ալ չըլլալ, առաջին արշաւանքն էր որ կը կատարուէր Հայաստանի վրայ իբրեւ մաս կամ հետեւանք ազգերու մեծ շարժման մը, որուն ալիքները մինչեւ Հայաստան կը հասնէին:

Եթէ նոյնիսկ այս առաջին արշաւանքը բուն թաթարական համարուի, որոշ է թէ անջատ անկէ՝ բայց հետեւանք Ճինկիզի յարուցած փոթորիկին՝ հիւսիսէն եւ արեւելքէն զանազան ժողովուրդներ իրենց փախուստի միջոցին Հայաստան ինկած եւ հոն աղէտներ պատճառած են: Այսպէս, պատմիչը կ'ըսէ՝ թէ այս առաջին արշաւանքէն քիչ ետք *«զօր ել ի Հոնաց, զոր խուզախն (1) անուանեն եւ եկեալ ընդ աշխարհն Վրաց առ թագաւորն Լաշայ եւ առ հազարապետն Իւանէ, զի տացեն նոցա տեղի բնակութեան եւ նոքա ծառայեսցեն նմա միամտութեամբ»* (*Կիրակոս*, 104), սակայն անոնք չտուին խնդրուած ասպնջականութիւնը, ուստի գացին Գանձակի շուրջը հաստատուեցան: Գանձակի մահմետական ամիրաները *«յօժարութեամբ ընկալաւ»* (նոյն) վասնզի մեծ նեղութեան մէջ էին, Վրացիներու յարձակմանց դիմադրելու անկարող:

Վրացիք բնական է հանոյքով չէին կրնար դիտել իրենց սահմանագլուխին վրայ հաստատութիւնը այսպիսի կարեւոր ոյժի մը, որ իբրեւ վարձկան Գանձակի իրենց հակառակորդ ամիրային ծառայութեան կը մտնէր, ուստի Իւանէ հազարապետը զանոնք բնաջինջ ընելու մտադրութեամբ՝ հպարտութեամբ կ'երթայ Գանձակի վրայ, սակայն այդ բարբարոսները կը յաղթեն իրեն եւ իր զօրքը փախուստի կը մատնեն (*Կիրակոս* 104—5) եւ շատերը գերի կը վարեն: Գերի ինկողներուն մէջ էր նաեւ Խաչէնի Հայ իշխանը՝ Գրիգոր Հաղբակեան, որուն Վասակ եղբօրը որդիներէն Պապաք իշխան պատերազմի մէջ սպաննուած էր եւ Մկդէմ ու Հասան հազիւ ազատած (*Կիրակոս*, էջ 105): Բարբարոս-

(1) *Ջէնկիզ կամ Չանկզ կամ Կոնգխոս ալ կոչուած է։*

(1) *Խուզախ, Չիղախք կամ Քափչաք Թաթար ցեղ մըն են, իսկ Հոնք վաղածանօթ են Ե. դարէն։*

ները շատ խստութեամբ կը վարուին գերիներու հետ եւ կը նահատակեն Գրիգոր Հաղբակեանը, *(Նոյն* էջ 105):

Քիչ յետոյ Իւանէ նոր զօրքով կու գայ իր պարտութեան վրէժը լուծելու եւ յանկարծակի յարձակմամբ այդ բարբարոսները կը ջարդէ եւ անոնց աւարը եւ մանուկները գերի կը վարէ *(Կիր.* 105—106):

Հիւսիսային այս քշուող ժողովուրդներէն զատ, թաթարական արշաւանքներու հետեւանօք Հայաստան կ'ապաստանի նաեւ Խուարէզմի Սելջուկ Սուլթանը Մուհամմէտ Ճելալէտտին, որ իր երկրէն փախստական կու գայ Դաւրէժ 1225ին եւ զայն կը գրաւէ: Ասիկա անթիւ զօրք կը հաւաքէ Պարսիկներէն, Արաբներէն եւ Թուրքերէն (հմմտ. *Վարդան* 143*)* եւ Հայաստան կը մտնէ: Իւանէ սպարապետ կը փորձէ անոր ալ դիմադրել, սակայն չի յաջողիր եւ վրացի զօրքը սոսկալի կոտորածի կը մատնուի: Ճելալէտտին 1226ին Թիֆլիսը կը գրաւէ եւ բնակիչները կը ջարդէ եւ շատերը ոչ միայն Թիֆլիսի, այլ նաեւ Դաւրէժի եւ Նախիջեւանի մէջ *(Վարդան*, 143—144, *Կիր. կոս.* 118*)* կը բռնադատէ իսլամութիւնը ընդունելու:

Ճելալէտտին կը գրաւէ նաեւ Խլաթը, որ կը հնազանդէր Սալահէտտինի որդւոյն Աշրաֆի *(Վարդան*, 144. *Կիրակոս*, 119*)*:

Ճելալէտտին կ'արշաւէ նաեւ Իկոնիոյ Սելջուկ Սուլթանութեան երկիրները: Իկոնիոյ Սուլթանը՝ Ալաէտտին *(*1219—1237*)* ինչպէս Աշրաֆ եւ անոր եղբայրը՝ Եգիպտոսի Սուլթան Քէմալը, իրարու կը զինակցին եւ կը յարձակին Ճելալէտտինի վրայ եւ կը յաջողին զայն պարտութեան մատնել, իբրեւ ազատարար ընդունուելով Փոքր Ասիոյ ժողովուրդներէն:

Ճելալէտտին կը քաշուի Աղուանից աշխարհը՝ Մուղանի դաշտը, եւ կ'աշխատի նոր զօրք ժողվել, սակայն թաթարները, որոնք զինք իր երկրէն վանած էին, հոն ալ հանգիստ չեն թողուր: Մուղանի դաշտը բանակատեղի դարձնելով՝ Աղուանից աշխարհ կամ Ատրպատական կը մտնեն բուն Թաթարները, Ճինկիզ խանի մահէն (1226*)* բաւական վերջը եւ կը հալածեն Ճելալէտտինը մինչեւ Ամիթ, ուր մղուած ահեղ պատերազմի մը մէջ ան կ'սպաննուի *(Կիր.* 117—121 եւ 123, *Վարդան*,144): Այս արշաւանքով Թաթարները Հայաստանը արեւելքէն արեւմուտք կը նեղքէին:

Վրաստան միակ քրիստոնեայ քիչ շատ զօրաւոր տէրութիւնը, որ Հայաստանի մէկ կարեւոր մասին ալ տէրն էր, անկարող կը հանդիսանայ պահպանելու երկիրը եւ Թաթարները *«սփռեալք առ հասարակ ընդ երեսս դաշտաց, լերանց եւ ձորոց, իբրեւ զմարախ բազմութեամբ, եւ կամ իբրեւ զանձրեւս յորդութեամբ տեղեալ ի վերայ երկրի, եւ անդ էր տեսանել այնուհետեւ աղէտք տրտմագինք, եւ աշխարհ արժանի ողբոց...»* (*Կիրակոս*. էջ 126):

Հայաստան որ մինչեւ Թաթարներու վերջնապէս երկիրին տիրելը, անոնց առջեւէն փախչող ուժերէն —ինչպէս Ճելալէտտինէն— ոտնակոխ եղած եւ ծանր հարուածներու ենթարկուած էր, բոլորովին ուժասպառ եղաւ երբ թաթարները, իրենց տիրելէն վերջ, մահասփիւռ գործունէութեան մը լծուեցան:

Ժամանակակից պատմիչը շատ լայն գիծերով եւ մակերեսային կերպով կը ներկայացնէ Հայաստանի մէջ Թաթարներու գործած աւերները, այնպէս որ լիովին չի բացատրուիր բովանդակ աղէտը, զոր անոնք պատճառեցին: Ճինկիզի յաջորդը՝ Ուխաթա կամ Օգոթայ *(*1226—1241*)* որ կը ժառանգէր աշխարհի ամէնէն ընդարձակածաւալ պետութիւններէն մէկը, իրեն պահելով իր եղբայրներուն վրայ գերիշխանութիւն մը ունենալու իրաւունքը եւ «Մեծ Մոնկոլ»ի տիտղոսը, պետութիւնը բաժնեց իր երեք եղբայրներուն միջեւ, զանոնք ժառանգական իրաւամբ կուսակալ նշանակելով երեք բաժանումներուն վրայ:

Ասոնցմէ՝

*Ա.* Չաղաթա *(*1227—1248*)* կարգուեցաւ կուսակալ Սկիւթացւոց եւ յայնկոյս Կասպից երկիրներու —այսինքն այժմեայ Թաթարիստանի վրայ *(*Խիվա, Պուխարա, եւայլն*)* զոր արաբ պատմագիրները Մաւաշարնահարա կը կոչէին:

*Բ.* Թուշի որուն կը յաջորդէ Պաթու *(*1) *(*1227—1256) ունէր Գափճազը, Արեւմտեան Սիպերիան եւ Վոլկա գետին հովիտը՝ հիներու Մաղքաց եւ Սարմատացւոց աշխարհները*,* այսինքն Հարաւային Ռուսիա, Պուլկարներու հին երկիրը, Լեհաստանը եւ Հունգարիան: Կեդրոնն էր Գազան քաղաքը:

*Գ.* Թուլի *(*1227—1250*)* ստացաւ Թիպետն, Խորասանը *(*Խորազմիա) եւ Պարսկաստանը: Ասոր որդին էր Մանգու, որ յաջորդեց Քիուիքի իբրեւ «մեծ խան» եւ թէպէտ միայն 9 տարի իշխեց *(*1250—1259*)*, սակայն ամէնէն փառաւորն ու նշանաւորն եղաւ թաթար խաներուն մէջ:

Ասոնցմէ Թուշի եւ Պաթու մինչեւ Կովկաս լեռները իրենց տիրապետութեան տակ ունենալով դրացի էին այն կողմէ Հայոց երկիրին, ինչպէս նաեւ Թուլի եւ Մանգու Պարսկաստանի կողմէն, ուստի Հայաստան իր աշխարհագրական դիրքին պատճառով ուղղակի այս երկու բաժանումներուն մէջտեղ, երկու կողմին յարձակումներուն առարկայ եղաւ եւ բոլորովին հիւծաւ եւ սպառեցաւ:

Ուխաթա ողջ էր տակաւին՝ երբ Չարմաղան *(*+1242*)* զօրավարը Արեւմուտք եւ Հայաստան արշաւեց անոր հրամանով:

1232ին Չարմաղանի *նուին* աստիճանով երկու զօրավարները՝ Բինալ եւ Մուլար, Հայաստան արշաւեցին եւ իրենց աւարառու եւ մահասփիւռ գործունէութեան ասպարէզ դարձուցին արեւելեան եւ հիւսիսային Հայաստանը, ուր անոնք կ'երթային *«կանամբ եւ որդովք եւ ամենայն ախիւք բանակին իւրեանց, ուղտիւք եւ անասնովք իւրեանց»* *(Կիրակոս*, 125*)*: Առաջին զոհը եղաւ Գանձակ քաղաքը, որուն բնակիչները քաղաքը հրդեհի տուած ըլլալով, մէկ մասը ջարդուեցաւ եւ միւսը՝ գերի վարուեցաւ *(Վար-*

*(1) Պաթու կամ Բաթու՝ Ճինկիզ խանի որդին էր, որ 1224ին Վոլկան անցնելով նուաճեց Հարաւային Ռուսիան և հիմնեց Գափճագի (հիմա Աստրախանի) կայսրութիւնը, որ կը կոչուէր նաեւ «Ոսկեղէն Հօրդու» (վրան, ընտանիք)։ Ռուս իշխանները՝ բացի Մոսկուայէն, նուաճուած էին։ Գափճագ կայսրութիւնը որ Հայոց հետ ալ գործ ունեցած է, վասնզի Կովկասէն Հայաստան արշաւած է— տեւած է մինչեւ ԺԵ. դար։ Հայ պատմիչները Բաթուն կը կոչեն «զօրապետն հիւսիսոյ»։ Ասոր որդին էր Սարթախ, որ քրիստոնեայ էր և Մանգու իր հօրը յաջորդ նշանակեց եւ պատուեց իբրեւ «երկրորդ իւր»։*

*դան*, 144, *Կիրակոս*, 124—5): Յետոյ Գանձակի վիճակակից եղան բազմաթիւ գաւառներ, քաղաք-ներ եւ բերդեր, եւ աւերուեցան եւ աւարուեցան:

Զարմաղա առաւ Գանձասարը, Լօռին եւ շրջա-կայքը, որոնք կը պատկանէին Զաքարիա Սպալասարի որդւոյն Շահնշահի (*Վարդան*, 144, *Կիրակոս*, 135—136): Գրաւեց նաեւ Անին եւ Կարսը իրենց շրջակա-ներով, որոնք նոյնպէս Շահնշահի կը պատկանէին (*Վարդան*, 144, *Կիրակոս*, 138—141):

Դոլադա կամ Տուղասա գրաւեց Կարեն կամ Կայ-եան բերդը, որուն տէրն էր Աւագ՝ Իւանէի որդին եւ Զաքարիայի մեծ եղբայրը (*Կիրակոս*, 136—138, *Վար-դան*, 144)

Ղատաղա՝ առաւ Զարեքի, Գետաբակի եւ Վար-դանաշատի կողմերը (*Վարդան*, 144 եւ *Կիրակոս*,128):

Մոլար առաւ Շամքորը (Գանձակի մօտ) ուր կ՚իշ-խէր Վահրամ, որդին Բլու Զաքարիայի, որ տէրն էր Գա-գայ եւ Տաւուշի եւ խնամի Խաչէնի իշխաններուն, իր որդիին Աղբուղայի հետ (*Վարդան*, էջ 145 եւ *Կիրա-կոս*, 128) եւ գրաւեց Տաւուշը, Կածարէթը, Տէրունա-կանը, Երտեւանքը, Մածնաբերդը, որոնք կը պատկանէին Ասխարթան Կիւրիկեանի (*Վարդան*, էջ 145, *Կիրա-կոս*, 128) եւ Նորաբերդը՝ Վասակ թագաւորազնի եւ Քաւազինն ու Գագ բերդը (*Վարդան* էջ 144):

Այսպէս մի առ մի առնուեցան հիւսիսային Հայաստանի բերդաքաղաքները, ուր հայ իշխանները ամրացեր էին իրենց ժողովուրդին հետ:

Թաթարները այս վայրերուն մէջ գործեցին ան-գթութիւններ եւ խնայեցին միայն այն քաղաքներուն, որոնց տէրերը ինքնայօժար հպատակեցան իրենց եւ տա-րեկան հարկին հետ խոստացան իրենց թշնամիներուն դէմ կռուիլ:

Թաթարները, ինչպէս կը թուի, տակաւին ոչ կա-տարելապէս իսլամացած, քրիստոնեայ Ասորիներու եւ Նեստորականներու ազդեցութեան տակ, քրիստոնեայ Հայաստանի բնակչութիւնը սիրաշահելու ձեռնարկներ բրած են, եւ նոյն իսկ Հայաստանի տուած են ինքնա-վարութիւն:

Թաթար տիրապետութեան տակ Հայկական ինքնա-վարութեան առաջին պետը եղաւ Աւագ իշխանը, որ ինչպէս յիշուեցաւ, Կայեան բերդին տէրն էր:

Աւագ, երբ Թաթարները յարձակեցան իր բերդին վրայ, անձնատուր եղած էր եւ իր ծառայութիւնը խոս-տացած անոնց (*Կիրակոս*, էջ 137) եւ ասոր համար վարձատրուած էր, եւ իրեն ձգուած էր Հայաստանի մէկ մասին վարչութիւնը: Այսպէս հաստատուեցաւ Հայաստանի մէջ կացութիւն մը, որ բոլորովին յուսա-հատական չէր, սակայն հաստատուն չէր, վասնզի Հա-յաստան թաթար միակ իշխանութենէ մը կախում չու-նէր:

Ինչպէս նախապէս Թաթարներու առջեւէն խոյս տուողները Կովկասեան լեռներու անցքերէն մտած էին Հայաստան, նոյնպէս նաեւ Կովկասի հիւսիսային կող-մերը տիրակալող Թաթարները, Կովկասեան անցքերէն թափանցած էին Հայաստան եւ իջած հարաւ՝ դէպի Խլաթ, Վանի ծովին եզերքը եւ գրաւած զայն: Այս հիւսիսէն արշաւող թաթարները Խլաթի գրաւումէն վերջ *«ինքեանք ասպատակ սփռեալ ընդ կողմանս կողմանս, ի Միջագետս Ասորւոց, յԱմիթ, եւ յՈւռ-հա եւ ի Մծբին եւ Շամբին (իմա՝ Շամի) երկիրն եւ այլ բազում գաւառս, դարձան ունայն. զի թէ-պէտ ոչ ոք էր ընդդէմ նոցա պատերազմաւ, սակայն վասն տօթոյն ամարայնոյն բազումք ի նոցանէ խոր-շակահարք եղեալ մեռան, մարդ եւ երիվար, եւ եկեալ ի տեղի իջեւանի իւրեանց՝ դադարեցին զա-ւուրս ձմերան»*, հաւանօրէն Կարնոյ շուրջը, վասն-զի անմիջապէս պատմագիրը կը խօսի այս քաղաքին վերաշինութենէն (*Կիրակոս*, 161—162):

Ուրեմն Հայաստան կը գտնուէր Թաթարներու հիւ-սիսային իշխանութեան ազդեցութեան տակ եւ Սիպե-րիոյ սառնաշունչ կլիմային վարժ այս ասպատակները չէին կրնար տոկալ տաք կլիմային: Սակայն Հայաստան նաեւ իբրեւ սահմանակից Պարսկաստան հաստատուած Թաթարներու, անոնց հարուածներուն ալ ենթարկուե-ցաւ, վասնզի ասոնք ալ Ատրպատականի ճամբով եւ Մուղանի դաշտը յենակէտ ունենալով ամէն գարնան կը խուժէին Հայաստան եւ զերելով, զերփելով, աւե-րելով եւ աւարելով ձմեռը անցնելու համար դարձ-եալ Մուղան կը դառնային:

Այսպէս Հայաստան երկու կողմէն կը հարուած-ուէր: Ուխաթայի մահէն(+1241) վերջը, անոր յաջոր-դին Քիուքի կամ Քայիւկի (Խայուխ կամ Կույուկ ալ լսուած է) ատեն (1242—1248) Զօրմաղան համրացաւ եւ անկարացաւ եւ իրեն յաջորդեց 1242ին Բաչու (*Կիրակոս*, էջ 152) որ Հայաստանի Բարձրաւանդակին տիրապետութիւնը կատարեալ ընելու համար՝ 1242ին յարձակեցաւ Կարինի վրայ եւ զայն գրաւեց (*Կիրա-կոս*, էջ 152 եւ *Վարդան*, էջ 147) եւ յետոյ 1243ին առաւ Երզնկան, Կեսարիան, Սեբաստիան, Տիվրիկը եւ Խարբերդը (*Կիրակոս*, էջ 155, *Վարդան*, էջ 147), որոնք Իկոնիոյ Սելջուկ Սուլթաններուն կը պատկանէին։

Այս նոր աշխարհակալութիւններով՝ Թաթարները հասան Կիլիկիոյ հայ թագաւորութեան սահմանները, առանց տիրապետած ըլլալու տակաւին հարաւային եւ նոյնիսկ կեդրոնական Հայաստանի՝ այսինքն Վասպու-րականի եւ Տուրուբերանի, որոնք աւելի յետոյ նը-ւաճուեցան:

Թաթարներու այս առաջդիմութիւնները սարսափ պատճառեցին Կիլիկիոյ Հեթում թագաւորին՝ որ Բաչու-ին դեսպան ղրկեց եւ բարեկամութիւն հաստատեց անոր հետ: Հեթում 1248ին Քիուքի ղրկեց իր եղբայրը՝ Սմբատը, որ մեծ պատուով ընդունուեցաւ:

Այս շրջանին Տուրակինա խաթուն, որ արքունի խնամակալն էր Ուխաթայի (1241—1246), Արեւելեան Հայաստանի տիրապետած է եւ Գանձակի, Նախիջեւա-նի եւ Ուրմիոյ մէջ դրամ դրոշմած (Կ. Բասմաջեան) *Հայկ. Դրամագիտութիւն*, էջ 106):

Քայիւկ, Մեծ Մոնկոլը, մեռաւ անզաւակ 1248ին եւ իր այրին Ողուլ-Կըթմիշ իբրեւ խնամակալ ինք կառավարեց այս պետութիւնը մինչեւ 1251:

Ասկէ վերջն է որ գերիշխանութեան իրաւունքը անցաւ Պարսկաստանի տիրապետներուն, որոնցմէ Ման-գոյ կամ Մանգու խան առաւ 1251ին Մեծ Մոնկոլի տիտղոսը:

Մանգուի իշխանութեան շրջանին (1256—1259) Հայաստանի հարաւային մասերն ալ գրաւուեցան եւ ամբողջական եղաւ մոնկոլ տիրապետութիւնը։

Հայաստանի տիրապետութիւնը լրանալէն վերջ՝ հոն հաստատուն կառավարութեան մը սկիզբը դրուեցաւ: Այսպէս, նշանակուեցաւ կառավարիչ մը, որ թէ՛ Գազանի խաներուն եւ թէ՛ Պարսկաստանի մեծ խանին պարտախանատու էր, ինչպէս կը մակաբերուի Կիրակոսի սա տողերէն. 1254ին *«առաքեաց Մանգու ղանն* (1251—1259) *եւ մեծ զօրավարն Բաթու* (1) (Գազանի կուսակալ եւ յաջորդ Թուշիի), *այր մի ոստիկան, Արղուն* (2) *անուն, որ Գիուգ ղանէն* (1241—1248) *առեալ էր հրաման վերակացութեան հարկացն արքունի ի հնազանդեալ աշխարհացն եւ զմիւս եւս այր գըլխաւոր ի տանէ Բաթուին, որում անուն էր Թուրա աղա, հանդերձ այլոք բազմօք որ ընդ նոսա, աշխարհագիր առնել յամենայն ազգս՝ որ ընդ ծեռամբ նոցա էին հնազանդեալ»* (Կիր., 209) *եւ «դնել հարկս ըստ գլխոց արանց. բաց ի կանանց եւ ի բուն ծերոց եւ ի մատաղ տղայոց»* (Վարդան, 148):

Այս խօսքերէն բացորոշ կը հետեւի թէ մասնաւորապէս հիւսիսային իշխանութեան ուղղակի հսկողութեան տակ էր Հայաստան: Կիրակոս Գանձակեցի (էջ 177) Վրաց թագաւորութեան վրայ խօսելով կ'ըսէ. *«Դարձեալ առ նա դեսպանք յերկուց կողմանց՝ ի զօրաց թաթարին ի մեծ զօրավարէն՝ որ ի կողմանս հիւսիսոյ, որում անունն էր Բաթու, մօտակայ ազգական ղանին, որ ամենից իշխէր, այլ եւ ղանն առանց նորա հրամանին ոչ նստէր յաթոռն եւ ի միւս զօրավարէն՝ որ ի կողմանս Հայոց, որ Բաչուն* (3) *կոչէր, գալ առ նոսա սիրով խաղաղութեամբ եւն.»*:

Նոյնպէս Հեթում թագաւորի (1226—1270) 1254ին երթալը առ Բաթու *«որ ի կողմանս հիւսիսոյ զետղ առեալ կայր անթիւ բազմութեամբն որ ընդ նմա առափն մեծ եւ անհուն գետոյն, զոր Եթիլ* (=Վոլկա) *կոչեն, որ մտանէ ի ծով Կասպից»*, եւ ապա անկէ անոր զերիշխանին եւ բովանդակ Մոնկոլներու Մեծ Ղանին Մանգուին երթալը՝ մինչեւ Բեքին՝ նկարագրուած ուղիով (*Կիրակոս*, 221), Սիպերիայէն անցնելով, եւ Թուրքաստանի ճամբով ետ դառնալը (դարձը ութը ամիս տեւած է), արդէն ցոյց կու տայ թէ հիւսիսային կողմի խաները մեծ ազդեցութիւն ունէին Հայաստանի վրայ:

Հեթում իր այս այցելութեամբ ի մէջ այլոց յաջողեցաւ Մանգուի գահակալութենէն անմիջապէս յետոյ գործադրուած խիստ հարկապահանջութիւնը մեղմել տալ (*Կիրակոս*, 209—210):

Թերեւս անոր կը պարտինք նաեւ սա իրողութիւնը՝ որ Մանգուի մեծ խանութեան շրջանին (1250—1259) արիւնահեղութիւնները դադրեցան, կործանած տեղերը նորոգուեցան եւ հաստատուն կառավարութեան մը սկիզբը դրուեցաւ:

Նոյնիսկ՝ Հայերը Թաթարներու բարեացակամութենէն օգտուեցան եւ կազմակերպուեցան եւ աւերները դարմանեցին քիչ շատ:

Հայաստանի ոստիկան նշանակուած Արղուն կամ Արղօն, աշխարհաշէն վարչութեամբ մը Հայաստանի աւերները դարմանեց, քաղաքները վերաշինեց եւայլն:

Մանգու մեծ խան դառնալէն վերջ Հայաստան ենթարկուած է անոր եղբօրը Հուլաղուին, որ ինքն կարգած էր 1251ին իր պետութեան արեւմտեան մասին վարիչ եւ անոր պաշտօն տուած էր նուաճել Արեւմտեան Ասիան: Հուլաղու՝ իրապէս յաջողեցաւ տիրել Ճիհունէն մինչեւ Եգիպտոս գտնուող երկիրներուն՝ Բաչու զօրավարին եւ Հեթումի բանակներով:

Մանգուի մահէն (+1259) վերջ երբ յաջորդութեան պայքարներով տկարացաւ Մոնկոլ պետութիւնը՝ Հուլաղու Հայաստանի մէջ բացարձակ տիրակալեց, եւ որովհետեւ տակաւին Իկոնիոյ Սելջուկ Սուլթանութիւնը —իր տիրապետութեան տակ ունէր Մեծ-Հայաստանի մէկ կարեւոր մասը, Բարձր Հայքը ինչպէս նաեւ ամբողջ Փոքր Հայքը իր լայնագոյն սահմաններով— անոր դէմ մաքառեցաւ, եւ մահացու հարուածներ տուաւ Իկոնիոյ Սուլթանութեան եւ զայն հեռացուց Հայաստանի սահմաններէն:

Հուլաղու 1258 Փետր. 25ին գրաւեց նաեւ Պաղտատը եւ վերջ տուաւ Աբբասեան խալիֆայութեան: Ան գրաւած էր նաեւ Մերտինը, Պիրը, Հալէպը եւ Դամասկոսը:

Այսպէս, հիմնեց ընդարձակ պետութիւն մը: Մանգու խանին մահէն ետք Հուլաղուն, ինքը յաջորդութիւնը ձեռք ձգելու համար փութաց պետութեան կեդրոնը, Քիթբուղա զօրավարին յանձնելով նոր գրաւած տեղերու պահպանումը:

Հուլաղուն արդարեւ յաջողեցաւ «Մեծ խան» դառնալ, սակայն պակաս չեղան ընտանեկան մրցորդներ եւ ժառանգական վէճեր, որոնք մինչեւ իր իշխանութեան վերջը՝ 1265 տեւեցին: Այսպէս, մէկ կողմէն ներքին վէճեր եւ դուրսէն Եգիպտացւոց յարձակումները երկիրը կը տկարացնէին: Հուլաղուի մահէն վերջ իրեն կը յաջորդէ Ապաղա (1265—1282), որ նոյնպէս բարեկամ էր քրիստոնէից:

Այս բանին մէջ թերեւս դեր կատարած են Հուլաղուի կինը եւ Ապաղայի մայրը՝ քրիստոնեայ Տօխուզ (*Օրբէլեան Բ.*, 165, *Կիրակոս*, 233, *Ազգապատում*, 1657) եւ Ապաղայի կինը՝ Դեսպինա կամ Մարիամ՝ ապօրէն աղջիկը Միքայէլ Պալէոլոգի:

Ապաղա իր պետութեան մայրաքաղաքը ըրաւ Դաւրէժը, եւ Պարսկաստանի Իլխանեան կամ Ճինկիզեան հարստութեան հիմնադիրը եղաւ:

Որքան ատեն որ Ապաղա ողջ էր՝ Սիւնեաց ինքնավար Հայ իշխանութիւնը եւ Կիլիկիոյ Հայ թագաւորութեան եւ Թաթարներու միջեւ գոյութիւն ունեցող զինակցութիւնը եւ բարեկամութիւնը, պահպանուեցաւ եւ Հայաստան վայելեց առաւելութիւններ, որոնք չքացան երբ 1282ին Ապաղա եւ եղբայրը՝ Մանգոտան զօրավար, թունաւորուելով մեռան եւ իշխանութիւնը ձեռք առաւ Տանգոտար (=Նիկողոս) քրիստոնեայ մկրտութեամբ եւ Մուհամէտ կամ Ահմէտ խալամ կոչումով (1) (1282—1284) (*Հեթում*, 56, *Օրբ. Բ.*, 172, *Հեթ.*, 84, *Ազգապատում*, էջ 1690): Ասիկա մոլե-

(1) *Բաթու կամ Պաթու* (1227—1256), *Գափչաքի և Հարաւային Ռուսիոյ, Գազանի շրջակայից, Լեհաստանի եւ Ունկարիոյ տէրն էր։*

(2) *Արղօն ըստ Վարդանի* (148)։

(3) *Չարմաղանի յաջորդը։*

(4) *Ըստ Կ. Ց. Բասմաջեանի* (Դրամագիտութիւն, *էջ* 101) *ասիկա որ կը կոչուէր Ահմատ Թագուդար, քրիստոնէական արտայայտութեամբ դրամներ կրոչմած է։*

ուանդ խլամ, Եգիպտացիներուն հետ, որոնք հարուէն կ'սպառնային Կիլիկիոյ թագաւորութեան, հաշտուեցաւ եւ իր հպատակները խլամանալ ստիպեց եւ Հայոց ու Վրաց թագաւորներուն ալ հրաւէր ըրաւ իսլամութեան յարելու (*Հեթում*, 57): Իր եղբօրորդին՝ Արղուն ըմբոստացաւ եւ այսպէս ներքին պառակտումները սկսան Իլխանեան ընդարձակ պետութեան մէջ: Արղուն թէպէտ անգամ մը պարտուած՝ գերի ինկաւ բայց հնարքով մը ազատելով, կրկին զօրացաւ եւ Ահմէտը «միջակտուր սպաննելով 1284ին ինք տիրացաւ իշխանութեան, (*Հեթում*, էջ 58):

Արղուն խան (1284—1289) նպաստաւոր տրամադրուած էր Հայոց եւ Վրաց նկատմամբ, սակայն իր բարեացակամութիւնը երկար չտեւեց. «*անկաւ շփոթումն մեծ ի մէջ մեծամեծացն գլխաւորաց*» (*Օրբ. Բ.*, 176) եւ Արղուն կասկածելով թէ «*խորհուրդս նենգութեան էին խորհեալ նմա*» իր զօրապետներէն շատերը սպաննել տուաւ (*Օրբ.Բ.*, 177): Այս շփոթութեան օրերուն սպաննուեցաւ նաեւ Վրաց Դեմեդրէ թագաւորը 1289ին (*Օրբ. Բ.*, 177):

Արղուն խան ինքն ալ մեռաւ 1289ին (*Հեթ.*, 85) «*դեղակուր*» ի Մուղան, եւ իրեն յաջորդեց եղբայրը Քեղաթուն կամ Գաննիաթու (1289—1292) կամ Գանձիաթու կամ Ռէզայիս (*Հեթում*, 59) որ *էրընջի-Թուրնջի* մականունն ալ ունէր որ «*զտաք զկորուսեալն*» կը նշանակէր (*Օրբ. Բ.*, 231): Սակայն դժբախտաբար թաթար պետութեան մէջ ալ սկսան գահակալութեան պայքարներ եւ արքայական աթոռին շուրջ կռիւներ:

Իրենց մայրաքաղաքը Պաղտատ, ինչպէս Բիւզանդիոն, վայր մըն էր՝ ուր այս տեսակ պալատական դաւեր եւ դաւադրութիւններ սովորական էին:

Քեղաթուն խեղդամահ եղաւ 1292ին (*Ազգապատում*, 1706) եւ իրեն յաջորդեց Բայտուն կամ Պայտօն (Պաիտու) իր ազգականը (*Հեթում*, 59, *Ազգ.*, 1727), որ բարեկամ էր քրիստոնէից՝ հակառակ որ ինքն իսլամ էր (*Ազգապատում*, էջ 1727): Իր այս հակումը պատճառ եղաւ որ իսլամութեան յարող Թաթարները «*դըժկամակ եղեն*» եւ իրենց կողմը վաստկելով Արղունի որդին Ղազան Մահմուտը զայն, հալածեն եւ Ղազանը գահ բարձրացնեն:

Պայտուն, որ հազիւ վեց ամիս իշխած էր (1292), սպաննուեցաւ (*Օրբ. Բ.*, 220) եւ Ղազան Մահմուտ անհակառակ իշխեց (1294—1304): Իր իշխանութեան ժամանակ Հայաստանի կառավարիչն էր Նէվրուզ որ նշանաւոր եղաւ իր անգթութիւններով (*Ազգապատում*, էջ 1727, *Օրբ. Բ.*, 219—221): Նէվրուզը պաշտօնանկ ըրաւ Ղազան Մահմուտ խան (1294—1304), Հեթում Բ.ի եւ Ստեփաննոս եպս.ի խնդրանքով եւ անոր տեղ Հայաստան ղրկեց Խութլուշահ իշխանը «*օգնական քրիստոնէից*» (*Օրբ. Բ.*, 228, *Ազգապատում*, էջ 1727—8:

Ղազան Մահմուտի օրով՝ 1303ին, Թաթարները պաշտօնապէս իսլամութիւնը ընդունեցին վերջնապէս: Ղազանի համար գրուած է որ, թէպէտ առաջ «*խիստ եցոյց զանձն առ քրիստոնեայս, այլ յետ հաստատելոյ զտէրութիւնն սկսաւ պատուել եւ սիրել զքրիստոնեայս*» (*Հեթում*, 60), Ղազան Մահմուտի յաջորդը Ալանաքտու կամ Օլճայթու Խուտաբէնդէ Մոհամմէտ խան (1304—1316) կամ մեր պատմագիրներու Ղարբանդա կամ Խօլչապանն, նոյնպէս բարեկամ եղած է Հայոց եւ զինակից Հայոց Հեթում Բ. թագաւորին: Ղարբանդայի յաջորդը Ապու-Սայիտ Բահատուր (1317—1334), որ մեր պատմագիրներու Պուսայիտն է, զինակիցն էր Լեւոն Դ. թագաւորին, եւ անոր օգնութեան փութաց Եգիպտացւոց դէմ 30,000 զօրքով:

Պուսայիտի կը յաջորդէ Արփա խան որ քրիստոնեայ էր եւ թերեւս այս իսկ պատճառով վեցամսեայ իշխանութենէ մը յետոյ սպաննուեցաւ Պուսայիտի քեռի Ալի փաշայէն, որ Մուսի անուն անզօր մէկը խան դրաւ եւ քրիստոնեաները հալածեց:

Սակայն ինքն ալ երկար չկրցաւ իշխել, վասնզի 1336ին Ալի փաշա սպաննուեցաւ Խալիք աղայէն, որ կ'ընդունուի իբրեւ նոյնինքն Հասան խան, Պուսայիտի որդին, եւ կը ճանչցուի իբրեւ Մեծ Խան, երբ արդէն քայքայուած էր պետութիւնը (*Ազգապատում*, էջ 1855—6), վասնզի Մոնկոլ այս կայսրութիւնը չափազանց տկարացած էր այն երկարատեւ կռիւներէն, զորս մղած էր Եգիպտացիներու դէմ (*Ազգապատում*, էջ 1816):

Այնպէս որ՝ այս Մոնկոլ վեհապետները, որոնց մայրաքաղաքը Պաղտատն էր, հետզհետէ իրենց կեդրոնին մէջ ամփոփուեցան եւ հեռաւոր երկիրներէն ձեռք քաշեցին:

Դարձեալ երկիրը բաժան բաժան եղաւ, կեդրոնական իշխանութեան տկարութեան պատճառով, եւ Հայաստան իրականութեան մէջ ենթարկուեցաւ տիրապետութեանը մեծ ու փոքր իշխաններու, որոնք երկիրին զանազան գաւառները գրաւած էին եւ մասամբ ալ անկէ անկախ: Հետեւաբար, Հայաստանի մէջ կը հանդիպինք կարգ մը իշխանութիւններու, մանաւանդ ԺԴ. դարուն կէսերէն սկսեալ, որոնք գրաւած են երկիրին զանազան մասերը:

Ապու Սայիտ Բահատուր խանի սպաննութենէն (1335) անմիջապէս վերջ, Իլխանեան երկու օրինաւոր գահակալներու դէմ, Կարնոյ մէջ կ'ապստամբի Մոհամմէտ խան (1335—1337) եւ Հայաստանի գրեթէ մեծագոյն մասին, Բարձր Հայքի, Տուրուբերանի, Վասպուրականի եւ Աղուանից երկիրին եւ նոյնիսկ Փոքր Հայքի կը տիրակալէ: Անոր մրցակից կը կանգնին Սաթի բէկ (1337—1340), Թաղա-Թիմուր (1338—1341) Ազզ-էտ-տին Ջէհան Թիմուր (1338—1340), Սոլէյման խան (1339—1350) եւ Նուշիրուան կամ Անուշիրուան (1344—1350), որոնք Հայաստանի զանազան մասերուն մէջ կը բռնակալեն եւ այդ գաւառները իրարու ձեռքէ կը յափշտակեն (1):

Իսկ Արեւելեան Հայաստանի մէջ նոյն թուականներուն կը բռնակալէին յաջորդաբար Ջէլայիրեան տոհմէն Շէյխ Հասան (1335—1356), Շէյխ Օվէյս Բահատուր (1356—1837), Ջէլալ-էտ-տին Հուսէյն Ա. (1374—

(1) *Անոնք ամէնքն ալ դրամներ ունին դրոշմուած Հայաստանի զանազան քաղաքներուն մէջ* (*տես Կ. Յ. Բասմաջեան,* Հայկական Ընդհ. Դրամագիտութիւն, *էջ* 105—106):

382), Ղիյասէտտին Ահմէտ Բահատուր (1382—1385 եւ 1404—1409):

Նոյնպէս կը գտնենք նոյն ժամանակներ՝ Մօզաֆֆէրեանները, որոնք Իլխանեան Ապու Սայիտ Սուլթանին (1316—1335) ատեն անկախութիւն հռչակելով իշխած են Ֆարսիստանի, Իրաքի եւ Ատրպատականի վրայ, 1318էն մինչեւ 1392: Առնցմէ Ճէլալէտտին Շահ Շօջա (1357—1384) պահ մը տիրած է նաեւ Հայաստանի մէկ մասին, Նախիջեւանի շրջակայքին (Կ. Ց. Բասմաճեան, *նոյն*, էջ 107—108):

Այսպէս կը կազմալուծուէր Մոնկոլ կայսրութիւն եւ անոր Հայաստանի տիրակալող Իլխանեաններու հարստութիւնը եւ կը քայքայուէր պետութիւնը, Հայաստանի համար ստեղծելով խառնակ կացութիւն մը եւ անապահով վարչութիւն մը:

Այս պատճառով՝ անպակաս էին երկիրին մէջ անկարգութիւններ եւ բռնութիւններ ու գերառութիւններ (*Ազգապատում*, 1727, *Օրբ. Բ.*, 220) ինչպէս նաեւ ապստամբութիւններ:

Այս շփոթ ժամանակին մէջ իբրեւ գաղթականը Հայաստան մտած տոհմեր ինքնիշխան կը դառնան եւ երկիրին կը տիրեն:

Այսպէս, Հուլաղուի յաջորդներէն Արղուն խանի ատեն (1284-1289), արեւմուտք գալով Հայաստան հաստատուած էին, ի մէջ այլոց, երկու Թիւրքմէն տոհմեր, որոնք՝ կայսրութեան մէջ ծագած շփոթներէն օգտըւելով՝ կազմեցին երկու անկախ մեծ ամիրայութիւններ, իրենց գաղթաշարժէն մօտաւորապէս մէկ դար վերջ:

Առնցմէ մէկը հաստատուած էր Միջագետք՝ Տիարպէքիրի շուրջը, Գարագոյունլու անունով — վասնզի իրենց դրօշակին վրայ կար նկարեալ սեւ ոչխար մը— իսկ միւսը՝ Կապադովկիա, Սեբաստիոյ շուրջը, Ազգոյունլու անունով՝ վասնզի իրենց դրօշակին վրայ կը կրէին սպիտակ խոյի պատկեր մը: Այս վերջինները կը կոչուէին նաեւ Պայընտրեանք՝ տոհմին անունով:

Գարագոյունլուներու յանդուգն պետը Գարա-Եուսուֆ 1390ին հիմնեց պետութիւն մը՝ որուն կեդրոնը Սասունի լեռներուն վրայ էր:

Գրեթէ միեւնոյն ժամանակներ Ազգոյունլուներէն Գարա Օսման կամ Գարա Սուլուգ (=Սեւ Տզրուկ) կը հիմնէ իր կարգին իշխանութիւն մը, եւ իրեն կը հնազանդեցնէ Թօգատի եւ Սեբաստիոյ շրջակայքը եւ կը տիրէ Հալէպի, Դամասկոսի եւ Մերտինի, որոնց իշխանները մէկ օրուան մէջ կ'սպաննէ:

Այս երկու իշխանութիւնները իրարու ցեղակից ըլլալով հանդերձ իրարու թշնամի էին: Երկուքն ալ բազմաթիւ փոքրիկ իշխանութիւններու համամիութիւններ էին՝ գերիշխան պետի մը գլխաւորութեամբ:

Այսպէս, Սասունի տիրող Գարա Եուսուֆի ստորադաս էին կարգ մը ճորտ իշխանութիւններ, որոնց ամէնէն գլխաւորներն էին Արճէշի՝ Գարա Ահմէտ ամիրան, Խոյթի՝ Շէյխ Շէրիֆ ամիրան, Բաղէշի՝ Ամիր Շարաֆ ամիրան: Իսկ Ամիթի Պայընտըրեանց կամ Ազգոյունլուներուն ճորտ էին Սեբաստիոյ, Հալէպի, Դամասկոսի եւ Մերտինի ամիրաները:

Այսպէս, Հայաստան կը ներկայացնէր ԺԴ. դարուն վերջերը տխուր պատկեր մը, բաժնուած մասնաւորապէս Քիւրտ Պէկերու միջեւ, որոնք ինքնիշխան կը տիրակալէին եւ իրենց իրարու դէմ մղած պայքարներով երկիրը կը մատնէին թշուառութեան:

Մոնկոլական տիրապետութեան շրջանին, մասնաւորապէս անոնց բոլորովին իսլամանալէն առաջ, երբ Հայերը կրցած էին Թաթարներու հետ քիչ շատ լեզու գտնել եւ հասկացողութեան մը գալ, Հայաստան ունեցած է համեմատաբար նպաստաւոր վիճակ մը, որ տեւական չէ եղած:

Մայր Հայրենիքի մէջ կը դադրին բոլոր հայ իշխանութիւնները, բայց թաթար հովանիին տակ կը կազմըւին ինքնավար շրջաններ, որոնք բնաւ Հայաստանի կառավարութիւն կարելի չէ նկատել, վասնզի Հայաստանի շատ փոքր մէկ մասին վրայ հեղինակութիւն ունէին եւ միութիւն մը չէին կազմեր: Այս շրջանին երկիրին կը տիրեն մահմետական եկուոր կարգ մը այլազգի իշխաններ, որոնք սակայն չունին ո՛չ հայ եւ Հայաստանի պետութիւն մը հանդիսանալու հանգամանքը:

## Ը.

## ԷՕԶՊԷՔ ԹԱԹԱՐԱԿԱՆ ՇՐՋԱՆ
## (1380 — 1467)

Ինչպէս տեսնուեցաւ ԺԴ. դարուն վերջերը Հայաստանի արեւմտեան կողմը բռնած էին Թուրքմէնները, արեւելեան կողմը Պարսիկները, իսկ հարաւային կողմը՝ Քիւրտ պէկերը՝ Սասունի գլխաւոր ամիրային իշխանութեան տակ:

Հայաստանի զանազան գաւառներուն մէջ կազմըւած էին ինքնիշխան փոքրիկ պետութիւններ՝ մեծ մասամբ Քիւրտ պետերու իշխանութեան տակ, եւ շարունակ իրարու դէմ կը մաքառէին:

Հայ մի քանի փոքր իշխանութիւններ ալ իրենց գոյութիւնը կը պահէին Հայաստանի մի քանի անխուլ մասերուն մէջ:

Իսկ բիւզանդական կայսրութիւնը բոլորովին հեռացած էր Հայաստանի սահմաններէն եւ անոր տեղ Փոքր Ասիոյ մէջ կը տիրակալէր Սելջուկեան Ռումի Գոնիայի Սուլթաններուն հողերուն վրայ Թաթարներու ցեղակից Օսմանցի-Թուրքերու պետութիւնը: Մոնկոլ կայսրութիւնը կազմալոյծ վիճակ մը առած եւ փոքր ուժերու բաժնուած էր, երբ Էօզպէք Թաթարներու ահարկու առաջնորդը՝ Լէնկթիմուր, իր սոսկալի ուժով կը ձեռնարկէր վերականգնել Ճինկիզխանի մեծ պետութիւնը եւ այս առթիւ կ'արշաւէր Փոքր Ասիա եւ կը հարուածէր օսմանեան պետութիւնը, որ հետզհետէ կ'ընդարձակուէր եւ գրեթէ մօտեցած էր Հայաստանի սահմաններուն:

Լէնկթիմուր 1335ին ծնած էր Թաթարիստանի Քէշ քաղաքը եւ 1361ին իր հայրենի երկիրին իշխանութեան անցած եւ հետզհետէ զայն ընդարձակած էր քաջութեան, բռնութեան եւ խարդաւանութեան միջոցները անխտիր գործածելով, մինչեւ որ 1370ին Թաթարներու Մեծ խան հռչակուած էր (*Ազգապատում*, էջ 1968):

Երբ անիկա այս գերագոյն իշխանութիւնը ձեռք

բերաւ՝ մեծ խաներու իշխանութիւնը արդէն ստուերի վերածուած էր, վասնզի Ասիոյ մէջ կազմուած էին բազմաթիւ իշխանութիւններ եւ սուլթանութիւններ, որոնք իրարու ձեռքէ կը խլէին իրենց տիրակալած հողերը:

Մեծ խալիֆա մը կը մնար Պաղտատի մէջ, որ անունէն աւելի ազդեցութիւն չունէր միւս սուլթաններուն վրայ, որոնք կ'իշխէին Հայաստանէն զատ, Պարսկաստանի, Աստրպատականի, Միջագետքի, Ասորիքի, Եգիպտոսի, Փոքր Ասիոյ եւ Կովկասի մէջ:

Լէնկթիմուր՝ էօզպէկ Թաթարներու այս անեղ առաջնորդը, Ճինկիզ խանի քայքայուած տէրութիւնը վերականգնելու մտադրութեամբ, հովուական խուժանի մը գլուխը անցնելով՝ Սմրղանդէն ճամբայ ելաւ 1370ին, նուաճելու համար բոլոր այն ազգերը, որոնք Չինաստանէն մինչեւ Միջերկրական եւ Եգիպտոսէն մինչեւ Ռուսիոյ միջնաշխարհը տարածուած էին: Պարսկաստանը արիւնով ողողելէ, Հնդկաստանի մէջ մարդիկը անասուններու պէս մորթելէ վերջ, իր իշխանութեան տասներորդ տարին, 1380ին, մտաւ Աստրպատական եւ Հայաստան, ուր տիրակալող բազմաթիւ ամիրաներէն եւ պէկերէն ոմանք Լէնկթիմուրի անեղ զօրութենէն ահաբեկ՝ հպատակութիւն յայտնեցին իրեն, իսկ ոմանք ընդդիմացան եւ չարաչար պատժուեցան: Գարա Օսման, Ազգոյունլուներու պէտը՝ իբր հակառակորդ Գարագոյունլուներու պետին՝ Գարա Եուսուֆի, օգնեց Լէնկթիմուրի, որուն ոյժին ապաւինելով կը յուսար իրեն սպառնացող օսմանեան Թուրքերու անմիջական վտանգը հեռացնել:

Օսմանցիք կ'սպառնային նաեւ Տրապիզոնի Կոմնենեան կայսրութեան, որուն Ալէքսիոս կայսեր փեսան էր Գարա Օսման, որ կայսեր Տէսպինա աղջիկը կնութեան առած էր:

Այսպէս, կազմուեցաւ Լէնկթիմուր, Գարա Օսման եւ Ալեքսիոս համաձայնութիւն մը ընդդէմ Օսմանցիներու:

Միւս կողմէ Գարա Եուսուֆ Գարագոյունլուներու պէտը Լէնկթիմուրի դէմ միայն յոյս կրնար դնել Օսմանցիներու օգնութեան վրայ, ուստի անիկա ալ անոնց յարեցաւ եւ այսպէս կազմուեցան երկու մեծ ոյժերու միջեւ տատանող փոքր իշխանութիւններու խումբեր:

Լէնկթիմուրի հպատակութիւն յայտնողներէն մէկն էր Սուլթանիայի ամիրան՝ Էտիլ, որ օգնեց՝ որպէսզի Լէնկթիմուրի ընդդիմացող Դաւրէժի ամիրան՝ Ահմէտը նուաճուի: Բայց Էտիլ իբրեւ գաղտնի դաւադիր ամբաստանուելով պղնձէ սանի մէջ եփուելով սպաննուեցաւ *(Մեծոփեցի,* էջ 13*)*: Իսկ թաթար հրոսները Աստրպատականէն տարածուեցան Վանի եւ Կարսի կողմերը, ինչպէս նաեւ Սիւնիք՝ որուն 12 գաւառները աւերեցին ու աւարեցին *(Թովմա Մեծոփեցի,* էջ 14*)*: Բայց 1382 Յունուար 6ին եկած սաստիկ ձիւնը ստիպեց զիրենք չուել ու այդ առթիւ *«բազումք զերծան ի գերութենէ»* եւ ասպատակողները *«զբազում մասն աւարին ի բաց ընկեցեալ, գնացին յաշխարհն իւրեանց»* (*Մեծ.*, 14, *Ազգ.*, 1968):

Այս առաջին յարձակումէն վերջ Լէնկթիմուր Դաւրէժը գրաւեց (1386*)*, Դամասկոսը այրեց եւ Ասորիքը Մեմլուքներուն ձեռքէն խլելէ ետք կրկին մտաւ Հայաստան, 1387ին, Մուղանէն Սիւնեաց աշխարհը գալով եւ հեղեղօրէն յառաջանալով մինչեւ Երնջակ, Կարբի, Բջնի, Կողբ, Դառնի եւ Սուրմարի (*Սամուէլ Անեցի*, էջ 171, *Մեծ.*, էջ 17): Այդ տեղերու բնակչութիւնը սարերը եւ ձորերը քաշուեցաւ:

Մարտիրոս Կողբացի՝ տանուտէր մը, իր երկրացիները Բարթող լերան վրայ հանեց եւ *«ապրեցոյց... մեծաւ պատերազմաւ եւ սրտապինդ զօրութեամբ»* (*Մեծ.*, էջ 18*)*:

Այն ատեն է որ Յովհ. Որոտնեցի ալ Ծար գիւղի բարձունքը ապաւինեցաւ, Ապրակունիքէն փախչելով՝ Երնջակի պաշարման պատճառով *(Մեծ.*, 18, *Ազգապատում*, 1970*)*:

Լէնկթիմուր Սիւնիքէն դիմեց դէպի Հայաստանի հարաւային կողմը, ուր առաջին անգամ իր դէմը գտաւ Գարա Եուսուֆ, Գարագոյունլուներու պէտը, վասնզի յարձակեցաւ անոր հօրը եղող Արճէշի Գարա Մէհմէտ ամիրային վրայ, որ Ճապաղջուր *(*Պուլանըգ*)* փախաւ, բայց ետ դառնալով զարկաւ Լողմաղան թաթար զօրավարին զօրքը *(Մեծ.* 21*)*:

Ասպատակին մէկ ճիւղը յառաջացաւ Տարօն, ճամբուն վրայ գտնուող Արճէշի եւ Մանազկերտի եւ շրջականերու ժողովուրդը Գլակայ վանքը ապաստանեցաւ:

Եուսուֆ՝ Տարօնի ժողովուրդը Սասուն բարձրացուց, Խոյթի ամիրային՝ Շէյխ Շէրիֆին յանձնելով զայն դէպի Խոյթ քշել *«բռնութեամբ եւ հարկանելով»* զի *«քրիստոնէիցն ապստամբեալ ոչ կամէին ելանել ի լեառն Խութայ եւ Սասնոյ» (Մեծ.*, 22*)*: Բայց վերջէն համոզուեցան թէ ճիշդ էր այս միջոցը: Եուսուֆի Թուրքմէնները յաջողեցան վանել Լէնկթիմուրի ասպատակները եւ *«բեկեալ խորտակեցաւ զօրութիւն Չաղաթային...» (Մեծ.*, 24*)*:

Սասունի եւ Խութի քրիստոնեայ եւ իսլամ բնակիչները հալածեցին Թաթարները (*Մեծ.*, 22*)*: Թիմուր՝ Մուշի ամիրային հնազանդութիւնը եւ Բաղէշի ամիրային՝ Ամիր Շէրէֆի հպատակութիւնը ընդունելէ *(Մեծ.*, 28*)* վերջ ուղղուեցաւ դէպի Արծկէ (*նոյն)*, որուն Սահանդ իշխանը, Հեր եւ Զարեւանդ գաւառին Օտտու Բուղա անուն իշխանին միջնորդութեամբ հնազանդեցաւ եւ *«սիրեցեալ եղեւ... եւ ազատեցաւ... երկիրն ամենայն եւ մնաց ի խաղաղութիւնն» (Մեծ.*, 28*)*:

Թիմուր յետոյ անցաւ Վասպուրական եւ Վան քաղաքին վրայ գնաց: Եղդին ամիրան *«յազգէն Սենեքերիմեանց»* (*Մեծ.*, 30*)*, Վանի տէրը, հնազանդութիւն չյայտնեց նախապէս, եւ երբ յայտնեց՝ կալանաւորուեցաւ եւ քաղաքը պաշարուեցաւ, եւ ի վերջոյ անձնատուր եղաւ եւ սոսկալի անգթութեանց ենթարկուեցաւ *(Մեծ.*, 30*)*: Այսպէս, ըստ ականատես պատմիչին՝ *«աւերեցաւ ամենայն երկիրս, զի յԱրճիշոյ մինչեւ ի տուն Վրաց եւ մինչ ի Կուր գետն Աղուանից շաղախեցաւ արեամբ անմեղաց երկիր ամենայն չարչարանօք, սպանմամբ եւ գերութեամբ» (Մեծ.*, 32*)*, եւ իբր հետեւանք սաստիկ սով մը տարածուեցաւ, մինչ Լէնկթիմուր կը հեռանար Հայաստանէն 1387ին, Հայաստանը նուաճելու գործը յանձնելով Ազտինի:

1395ին կրկին մտաւ Հայաստան եւ նախ գրաւեց Երզնկան (*Մեծ.*, 45) եւ ապա Բասենի Աւնիկ բերդը եւ կալանաւորեց անոր Մսեր իշխանը (*նոյն)*: Լէնկ-

թիմուր մտաւ Արարատեան գաւառը եւ կողոպտեց երկիրը, գրաւեց Կարսը, Կոգովիտը եւ Արճէշը (*Մեծ.*, 46) եւ ապա արշաւեց Վրաստան, կոտորեց Թիֆլիսի բնակիչները, այնպէս որ *«սպանեալն յոլով էր քան թէ ապրեալն»* (*Մեծ.*, 19) եւ Ստեփաննոս Փիր վարդապետն հազիւ ազատեցաւ *«մազապուրծ եղեալ ի սպանմանէ»* (*Նոյն*):

Բագարատ, Վրաստանի թագաւորը, փորձեց ընծաներով ողոքել եւ իսլամացաւ առ երեսս, եւ Լէնկթիմուր զայն հետը առած քաշուեցաւ Մուղան (*Մեծ.*, 20, *Սամուէլ*, 171): Բագարատ թաթար բանակ մը առնելով, 12,000 հոգի կոտորել տուաւ եւ ինքը լեռները քաշուեցաւ (*Ազգապատում*, 1972, *Մեծ.*, 20):

Լէնկթիմուր՝ Վրաստանը կրկին ոտնակոխ ըրաւ եւ անկէ անցնելով արշաւեց դէպի հիւսիս եւ Տէրպէնտի կիրճէն մտաւ կրկին Ղպչաղաց երկիրը եւ առաջացաւ մինչեւ Մոսկուա:

Բաղէշի Իպրահիմ ամիրան, *«ատող քրիստոնէից»*, որ եղբօրը՝ *«սիրող քրիստոնէից»*, Ամիր Շարաֆին յաջորդած էր՝ (*Մեծ.*, 69) իբր ապստամբ ամբաստանուեցաւ: Լէնկթիմուրի որդին Միրանշահ Արճէշի վրայ եկաւ (1396) եւ անկէ յանկարծ Բաղէշ առաջացաւ եւ բռնեց Իպրահիմը եւ սպաննեց: Ոստանի Եզդին ամիրան միջամտեց (*Նոյն*, 68) եւ հաշտեցուց եւ Ամիր Շարաֆին փոքր տղան Շամշատինը՝ Ամիրան դրաւ եւ գնաց Դաւրէժ (*Նոյն*, էջ 69—70): Լէնկթիմուր տեղական փոքր իսլամ եւ հայ իշխանութիւնները հնազանդեցնելէ վերջ, ինքն ալ աւատապետական կարգերով պետութիւն մը կազմակերպեց, իր տիրած ընդարձակ երկիրները մասերու բաժնելով եւ անոնց գլուխը դնելով մէկ մէկ անձ:

Հայաստան կը գտնուէր Ատրպատականի կուսակալ կարգուած իր *«յոյժ ողորմած եւ բարեբարոյ»* Միրանշահ որդւոյն իշխանութեան տակ:

Անիկա իր Օմար որդւոյն կու տայ այս պաշտօնը:

Իսկ Հայաստանի կառավարիչ նշանակուած էր Ոստանի Եզդին ամիրան, իբրեւ ստորադաս Ատրպատականի ամիրային: Եզդին ամիրան *«յազգէն Սենեքերիմեանց»* նաեւ կը տիրէր Վանի, եւ նախապէս ընդիմացած էր Լէնկթիմուրի եւ վերջէն հնազանդած: Եզդին, որ ինչպէս կ'երեւի Հայ ծագում ունէր եւ Արծրունի իսլամացած իշխանի մը սերունդէն էր, Լէնկթիմուրի Հայաստանէն հեռանալէն վերջ, Արճէշը չկրցաւ պաշտպանել՝ երբ Գարա Եուսուֆ պահ մը զօրացաւ (*Մեծ.*, 47) եւ համակերպեցաւ զայն լքելու եւ հաշտութիւն կնքելու Գարա Եուսուֆին հետ (*Նոյն*):

Մինչ այն, թաթար Աքալմիշ իշխանը օգնութեան հասաւ Եզդինի եւ տեղեկանալով որ անիկա արդէն հաշտուած է Ալի գիւղը գերեց (*Մեծ.*, 48), սակայն Գարա Եուսուֆ եւ իր եղբայրը՝ Արալի վրայ հասան եւ յարձակեցան Աքալմիշի բանակին վրայ եւ անոր ամբողջ զօրքը կողոպտեցին եւ զինքն ալ ձերբակալելով Եգիպտոս ղրկեցին (*Մեծ.*, 48):

Գարա Եուսուֆի յաջողութիւնը շատ վաղանցուկ եղաւ: Թաթար ստուար բանակներ Հայաստան հասան եւ ամբողջ երկիրը աւերեցին (*Մեծ.*, 48): Եուսուֆ հարկադրուեցաւ թողուլ Հայաստանը եւ փախիլ Ասորիք եւ 1396էն 1406 հեռու մնալ Հայաստանէն (*Մեծ*, էջ 49): Իր հողերը (Ամիթ եւ Սեբաստիա) Լէնկթիմուր տուաւ իր զինակից Ազգոյունլու Գարա Օսմանին:

Եզդին իր ձախողութեան համար շնորհազուրկ եղաւ եւ իր տեղը Հայաստանի կուսակալ եղաւ Շէյխ Ահմէտը, Լէնկթիմուրի ազգականներէն որ երբեմն Սուլթան տիտղոսով ալ յիշուած է:

Շէյխ Ահմէտ, որուն իշխանութեան գլխաւոր շրջանակը Վանի լճին շուրջբոլորն էր, 1397էն 1407, 11 տարի կառավարեց երկիրը (*Մեծ.*, 49):

Շէյխ Ահմէտի կուսակալութեան ատեն, 1400ին, Լէնկթիմուր կրկին եկաւ արեւմուտք, մտաւ Սուրիա, առաջ խաղաց մինչեւ Դամասկոս եւ Պաղեստին (*Մեծ.*, 62):

1401ին արշաւեց Փոքր Ասիա եւ Կիլիկիա (*Նոյն*, 64), եւ 1402ին Օսմանցիներու հետ պատերազմի բռնուեցաւ, վասնզի Սուլթան Պայազիտ Եըլտըրըմ ապաստան տուած էր Գարա Եուսուֆին:

1402 Յունիս 18ին Եըլտըրըմ Պայազիտ գերի ինկաւ իր ձեռքը, Անկիւրիոյ ճակատամարտին մէջ:

1402ին Վրաստանէն 80,000 հոգի գերի առաւ (*Նոյն*, 67), եւ դարձաւ Արեւելք, ուր 1405 Փետր. 15ին մեռաւ:

Լէնկթիմուրի մահէն վերջ իր ընդարձակ պետութիւնը քայքայուեցաւ եւ իր զօրութեան առջեւ ընկնըւած բոլոր իշխանութիւնները վերստին իրենց կորսուած երկիրներուն տիրապետելու փորձ ըրին:

Այսպէս, փախստական Գարա Եուսուֆ Դամասկոսէն եկաւ Հայաստան (1406) եւ երկրին հարաւային մասին նորէն տիրելով վերականգնեց իր պետութիւնը (1408):

Բաղէշի տէր Շամշատին ամիրան՝ որդին Ամիր Շէրէֆի, որ Միրանշահի կողմէ 1396ին այս պաշտօնը առած էր, Իպրահիմ ամիրայի սպաննութենէն վերջ, (*Մեծ.*, 68) անցաւ Եուսուֆի կողմը (*Նոյն.*, 70), իսկ Ոստանի ամիրան Եզդին եւ անոր Մելիք որդին մնացին հաւատարիմ Միրանշահի եւ Եուսուֆի դէմ կռուեցան (*Մեծ.*, 71):

Եուսուֆ այնքան զօրացաւ որ առաջացաւ արեւելք եւ տիրապետեց Ատրպատականի եւ անոր մայրաքաղաք Դաւրէժին (*Մեծ.*, 71), եւ միացուց իր երկիրներուն եւ Հայաստանի մեծ մասին տէր եղաւ:

Միրանշահ այս պատերազմներուն մէջ սպաննուեցաւ (*Մեծ.*, 71) եւ իրեն յաջորդեց Ապուպէքիր, որ առանց Եուսուֆի հետ կռուելու փախաւ (*Մեծ.*, 72):

Եուսուֆ յետոյ գրաւեց Երզնկան առանց կռիւի, վասնզի քաղաքին իշխանը՝ Դարխատ մեռած էր (*Նոյն*, 72): Առաւ նաեւ Մերտինը, Ամիթը եւ Արղնը:

Երզնկայի տէր Փիր Օմարը հաշտեցուց Ամիթի տէր Ազգոյունլու Օթմանը — որ *«սիրող յոյժ ազգիս Հայոց»* էր եւ *«քաջ զօրական»* (*Մեծ.*, 72)— Եուսուֆի հետ, եւ այսպէս Հայաստան երկու իշխանութեանց մէջ բաժնուեցաւ:

Պաղտատի ամիրան Ահմէտ՝ Եուսուֆի բացակայութենէն օգտուելով Դաւրէժը գրաւեց, սակայն Եուսուֆ Պաղտատն ալ գրաւեց եւ Ահմէտը սպաննելով իր Իսկէնտէր որդին այնտեղ նստեցուց եւ ինք դարձաւ Վաղարշակերտ (=Ալաշկերտ) հանգստացաւ եւ երկիրը խաղաղեցաւ (*Մեծ.*, 73, *Ազգ.*, 2035):

Լէնկթիմուրի որդին եւ յաջորդը Միրզա Մույին էտտին Շահ Ռոխ (1404—1447), տեսնելով Գարա Եու-

սուֆի առաջդիմութիւնները, մեծ պատրաստութեամբ եկաւ անոր վրայ, բայց այն տարին Եուսուֆ մեռաւ (1417) եւ տեղը անցաւ իր որդին Իսկէնտէր (1417—1438), որ նախընտրեց գործածել *Շահի Արմէն* տիտղոսը՝ «Հայոց թագաւոր» ձեւանալով: Իբրեւ անհաշտ թշնամի Լէնկթիմուրի եւ Ագգոյունլու ընտանիքին՝ կռուեցաւ անոնց դէմ, սաստկութեամբ: Հօրմէն աւելի քաջ եւ պատերազմասէր, 17 տարի (1421—1437) յամառութեամբ կռուեցաւ Շահռուխի դէմ: 1422ին եկաւ Խլաթ, հին Շահի Արմէններու մայրաքաղաքը, որուն ամիրան, Շամշադին իր փեսան էր (*Մեծ.*, 83) եւ հոն հաստատուեցաւ։

Այսպէս, դարձաւ պատուհաս Հայաստանի համար (*Մեծ.*, 108):

Անիկա, անվհատ կռուող մը, թէեւ քանի մը անգամ յաղթուեցաւ, բայց մինչեւ վերջը անընկճելի մնաց:

1422ին պարտուած, 1423ին Բաղէշը աւերեց (*Մեծ.*, 83), վերջը մտաւ Վասպուրական, որ կը գտնըւէր Շէյխ կամ Սուլթան Ահմէտի իշխանութեան տակ: Վանը պաշարուեցաւ (*Մեծ.*, 84): Սուլթան Ահմէտ տարուեցաւ Երնջակ, ուր եւ սպաննուեցաւ (*Մեծ.*. 84):

1425ին կրկին եկաւ Վան զոր Մելիք Ասըր ձգեց իրեն եւ ինքն անցաւ Ջուլամերկ (*Մեծ.*, 84): Գրաւեց նաեւ Աղթամար կղզին (*Մեծ.*, 84) եւ 1426ին Արծկէ արշաւեց (*Մեծ.*, 85) եւ առաջացաւ մինչեւ Ուրմիա եւ Սուլթանիա (*Մեծ.*, 85—86):

Շահռուխ ամէն ջանք ըրաւ զսպելու համար Իսկէնտէրը, որուն վրայ գնաց կրկին 1427ին եւ անզօր՝ միայն անոր երկիրը աւերելով քաշուեցաւ Մուղան:

1428ին Իսկէնտէրի զօրքերը կողոպտեցին Վասպուրականը եւ Բաջբերունիքը (*Մեծ.*, 87—88):

Այս խառնակութենէն օգտուելով Օսման Ագգոյունլու կը յարձակի Գարագոյունլուներու այս անհանդարտ պետին վրայ եւ Արճէշը գրաւելով կը կողոպտէ: Պահ մը Իսկէնտէր կը վանուի եւ առերեւոյթ խաղաղութիւն մը կը հաստատուի, սակայն շատ կարճ կը տեւէ, վասնզի 1429ին Իսկէնտէր կը դառնայ, Արծկէն կը պաշարէ եւ դէպի Բասէն կ'արշաւէ՝ հակառակ Շահռուխի որդւոյն Ջանկոյի ջանքերուն (*Մեծ.*, 90):

1430 Մայիսին կ'Երթայ Վան՝ առաջնորդութեամբ Սեւդին անուն քուրդի մը «*ի տանէ եւ յազգէն բարեբարոյ եւ աշխարհաշէն Ամիրայի Եզդին եւ Մելիքին, որ ունէր զերկիրն Բերկրոյ*» (*Մեծ.* 92):

1430 Սեպտ. 17ին Իսկէնտէր կը պաշարէ Արծկէն, որ անձնատուր կ'ըլլայ (*Մեծ.*, 95): Իսկէնտէր կ'ըսպաննէ միայն Սալթին (Սալահէտտին) քաղաքին տէրը եւ խորհրդական Դանիշման մը եւ «*մազ մի ոչ կորեաւ... ի քաղաքէն զի քրիստոնեասէր էր եւ ողորմած ազգին մեր*» (*Մեծ.* 93):

Արալի, Իսկէնտէրի որդին եւ Վանայ իշխանը, որ սաստիկ հարկապահանջութեամբ կը նեղէր ժողովուրդը. եղած բողոքներուն վրայ ետ կոչուեցաւ, բայց ան Շամախի իշխան Խալիլուլլահի քով ապաստանեցաւ, որ Արալին Շահռուխ մեծ խանին ղրկեց (*Մեծ.*, 99—100): Այս պատճառով Իսկէնտէր Շամախիի վրայ յարձակեցաւ 1434ին եւ ամէն կողմ կոտորեց մինչեւ 1435 (*Մեծ.*, 100)

Վերջապէս Իսկէնտէր պէկի զինուորները իր երկարատեւ պատերազմներէն ձանձրացած՝ լքանեցին իրենց անհանդարտ առաջնորդը: Նոյնիսկ իր մերձաւոր ազգականները իրմէ բաժնուեցան եւ Շահռուխի կողմն անցան:

Շահռուխ՝ երբ Սուլթանիան պաշարեց եւ Երընջակ եկաւ, Իսկէնտէրի մայրը եւ եղբայրը զայն սպաննել փորձեցին, սակայն անիկա կրցաւ փախչիլ եւ Կարինի վրայ քալեց եւ Գարա Օսմանի հետ զարնուեցաւ (1435) եւ զայն իր որդիին՝ Պայազիտին հետ սպաննեց եւ առաջացաւ մինչեւ Ագշէհիր եւ Թոգատ (*Մեծ.*, 102—103):

Շահռուխի որդին Ջոնտայ, չկրցաւ անոր ետեւէն հասնիլ (*նոյն*):

1436ին Իսկէնտէր Սեբաստիա արշաւեց, Տիվրիկը, Խարբերդը, Դերջանը գերեց (*Մեծ.*, 104) եւ 1438ին Շահռուխի եղբօրը Հայաստանի կուսակալ Ջիհան Շահի վրայ քալեց, սակայն վերջապէս սպաննուեցաւ իր մօրմէն եւ իր հարազատ Շահուբաք որդիէն (Մեծ., 108) եւ այսպէս առժամապէս խաղաղեցաւ երկիրը, դըժբախտ ու աղէտալի արիւնահեղութեանց թատերավայր ըլլալէ վերջ:

Այս շրջանին պատահած արիւնալի դէպքերը պատմելով Թովմա Մեծոփեցի ԺԵ. դարուն սկիզբը (1404) կը խօսի նաեւ իշխանական տուներու վրայ, ինչպէս Օրբէլեանց (1), Եզէգեանց (2), Աղցից (3) եւ Մակուայ (4), որոնք «*Իբրեւ զճիռ մի ողկուզաց մնացեալ էին ի մէջ ազգիս* (*Պատմութիւն Լէնկթիմուրայ եւ յաջորդաց իւրոց*, Բարիզ տպ. Շահնազարեան 1860, էջ 67):

Ուրիշ գրիչ մը՝ Թովմա Մինասենց, Ոստանի Եղիշէ վանքի մէջ պահուած Աւետարանի յիշատակարանին մէջ — որ Աղթամար գրուած է 1428ին — կը հաստատէ թէ ինչպէս ԺԵ. դարուն սկիզբը, քրիստոնէից բարեկամ(5) կամ մանր մունր քրիստոնեայ իշխանութիւններ կը կոխոտուին բարբարոս ժողովուրդներու կողմէ:

Ան կը պատմէ թէ «*ի հայրապետութեան տեառն Դաւթի, եւ ի ղանութեան ազգին նետողաց* (իմա Թաթարաց) *Ամիրզա Սքանտարին թուրք ազգաւ, որ տիրեաց աշխարհիս մերում, էառ բռնութեամբ զանառիկ ամրոցք աշխարհիս մերոյ, այս է զանմատչելիս եւ զանկոխ ոտից թշնամեաց եւ զտեղիս*

(1) *Բուռթել եւ եղբայրը՝ Սմբատ ժամանակին իշխողներն են։*

(2) *Այդ օրերուն իշխողն էր Տարաայիճ զոր Լէնկթիմուրի թոռը Էօմէր բռնի իսլամացուցած էր։ Բայց վերջը զղջացած է եւ դարձած է քրիստոնէութեան։*

(3) Աղցք, Աղձք *կամ* Աղիո, *Այրարատի Արագածոտն գաւառին մէջ գիւղ մըն էր, ուրկէ ազատորդի մը Ղիտան կամ Աղիտան անունով Լէնկթիմուրի Էօմէր թոռնէն ստիպուած, ուրացաւ կրօնքը, բայց վերջը երբ երկիրը խաղաղեցաւ զղջաց եւ սրբեց ուրացութեան կեղտը* (Այրարատ, *էջ* 147—148 *Թովմա Մեծոփեցի, էջ* 68 *և* Ազգապատում, *էջ* 2035)։

(4) *Սարղաթմիշ իշխան՝ այն ժամանակի իշխողն էր։*

(5) *Նոյն գրիչը ուրիշ տեղ մը* 1412*ին Վասպուրականի տիրող մելիքի մը (Գարա Եուսուֆի կողմէ կուսակալ կարգուած) խօսքը կ'ընէ* «որ էր յոյժ խնամածու եւ բարեկամ քրիստոնէից» (Դիւան Հայոց պատմութեան, *Ժ. Գիրք, էջ* 8)։ *Անոր օրով վանքերը կը ծաղկին եւ նոր քրիստոնեայ տաճարներ կը կառուցուին (տես. նոյն)։*

*ապաստանի բոլոր աշխարհացս, զկղզիս Աղթամարայ, եւ զանառիկ ամրոցս եւ զմայրաքաղաքս երկրիս զՈստան եւ զպարանոցատանցն զԱմուկ... զբոլոր աշխարհն բռնակալեաց ընդ ձեռամբ իւրով եւ ընդ իշխանութեամբ»:*

Յետոյ կը թուէ տասնամեայ շրջանի մը մէջ պատահած աղէտներու երկար շարք մը, որոնցմէ մին էր 1424—1425ին Իսկէնտէրի Ոստանի Սուլթան Ահմէտը եւ Բաղէշի Շէմսէտտին Սուլթանը նուաճելը եւ Վանի տիրելը:

Այս կարգին հետաքրքրական է որ Թովմա կ՚ըսէ. *«Իսկ ի ՊՀԶ* (=1427*) թվին էառ նոյն Սքանտարն զանառիկ բերդն Մակուայ ի ձեռաց ի քրիստոնէից եւ տիրեաց նմա... զի ի բոլոր աշխարհացս՝ այն մին բերդն միայն մնացեալ ի ձեռս քրիստոնէից, եւ այն եւս առաւ ի մէնջ» (Դիւան Հայոց Պատմ.* Ժ. Գիրք, էջ 3—5*)*:

Նոյն գրիչը Ռշտունեաց Ս. Յակոբայ վանքին պատմութեան մէջ նոյն դէպքերը անցողակի կը յիշատակէ սա բառերով. *«Էառ անիծեալն Սքանտար զաշխարհս մեր եւ զանառիկ բերդորայքն քրիստոնեայց, զՎան եւ զՈստան եւ զայլս ամենայն ի ձեռաց բնիկ պարոնաց մերոց եւ անցոյց զտունն Շամօանից եւ մնաց երկիրս շատ աւերակ» (Դիւան Ժ. գիրք*, էջ 10):

Խիստ նկատելի է որ իսլամական ընդարձակ տիրապետութեան մէջ իբրեւ կղզեակ քրիստոնէական վարչութեան տակ մնացած վայրերէն մէկն ալ հաւանօրէն Աղթամարն էր, վասնզի նոյն գրիչը անմիջապէս կը յարէ (*Դիւան Ժ.*, էջ 10, *«եւ ՊՁ (*=1431) *թուականին, էառ Փիր բէկն զԱղթամար կղզին եւ անպատմելի տրտմութիւն եհաս աշխարհիս եւ ազգիս Հայոց, եւ երկիրս աւերակ մնաց երկու տարի»*: Այսպէս Հայ իշխանութիւններու վերջին հետքերն ալ կը ջնջուէին:

Միայն կը մնար Վրաց թագաւորութեան հովանիին տակ Օրբէլեանց իշխանութիւնը իբրեւ *«ճիռ մի ի մէջ... ողկուզաց եւ աստղ մի՝ ի խաւար գիշերի եւ տեղիք ապաւինի ամենայն քրիստոնէից ազգիս»* (Թովմա Մեծոփեցի, նոյն, էջ 119*)*:

1438ին այս տան վերջին իշխանը՝ Պեղգին կը թունաւորուի դաւաճան հայու մը ձեռքով՝ հրամանով Վրաց Ալիքսան թագաւորին:

Այս սպանութեան շարժառիթը թէեւ Մեծոփեցի տեղ մը կը մեկնէ սա կերպով թէ *«ազգն քաղքեդոնական»* չկրցաւ տանիլ *«զբարերարն ազգիս, ուղղադաւան եւ ճշմարիտ հաւատացեալ»* (Թով. Մեծոփեցի, էջ 118*)* Պեղգինը, սակայն աւելի հաւանական է ընդունիլ իր երկրորդ տեսութիւնը՝ որով Ալիքսան կը վախնար թէ մի՛ գուցէ Հայեր՝ Պեղգինի շուրջը *«ժողովեսցին, եւ աւերումն լիցի կողման Վրաց» (Նոյն*, էջ 118*)*:

Ալիքսան կը վախնար ուրեմն հայկական ապստամբութենէ մը Սիւնեաց նահանգին մէջ:

Այս գաղափարը անհաւանական չէ ենթադրել թէ գոյութիւն ունէր կամ գէթ Վրաց հովանաւորութեան տակ Հայոց բարօրութիւնը ապահովելու ծրագիր մը կար, վասնզի երբ երկու տարի յետոյ 1440ին Ջիհանշահ կը մտնէ Վրաստան եւ զայն կը նուաճէ եւ իր պետութեան կը կցէ, Մեծոփեցին որոշապէս կ՚ըսէ. *«մենք (որ) հանապազ յոյս ի Վրացին ունենալով պարծէաք, յայնմանէ յուսահատեալ, առաջի անօրինաց ափ ի բերան եղաք» (Նոյն.*, էջ 123*)*:

Իսկէնտէրի մահէն *(*1435*)* վերջ, երբ այսպէս կը շարունակուէր անիշխանութիւնը Հայաստանի մէջ, եւ տեղական իշխաններ իրարու հետ կը պատերազմէին շարունակ, յանկարծ անակնկալ կերպով կ՚ստեղծուէր կացութիւն մը՝ որ խաղաղութեան յոյսեր կը ներշնչէր: Ջիհան կամ Ջահան՝ Իսկէնտէրի եղբայրը, որ անոր յաջորդած էր *(*1437—1467) 1446ին Շահրուխի հպատակութիւն կը յայտնէր *(Մեծ.*, 103*)*, եւ Շահրուխ զինք կը նշանակէր Իսկէնտէրի տեղ *Շահի-Արմէն* կամ Ատրպատականի ամիրա:

Ջիհան Շահ օրէ օր աւելի զօրացաւ եւ ընդարձակեց իր տիրակալութիւնը:

Անիկա Դավրէժ նստելով կը տիրէր Պարսկահայքի, Կորճէից Սիւնեաց, Արդուինի, Արարատի եւ Վասպուրականի, ունենալով ամէն տեղ իր հովանաւորութեան տակ ամիրաներ եւ բէկեր — մեծ մասամբ քիւրտ — որոնց պետն էր իր որդին Հասան Ալի, որ կը նստէր Նախիջեւան, իբրեւ ընդհանուր կուսակալ Հայաստանի, իր ձեռքին տակ ունենալով փոխ-կուսակալներ, Վանի, Երեւանի, Տփղիսի եւ այլ վայրերու մէջ բէկ կամ պէյ = պէկ կոչումով:

Ասոնցմէ մէկն էր Եաղուպ պէկը, Հայերու բարեկամ, որուն հովանիին տակ կատարուեցաւ 1441ին Հայոց կաթողիկոսական աթոռին վերահաստատութիւնը իր նախկին վայրը՝ Էջմիածին:

Ջիհան Շահ իր տիրապետութիւնը դէպի Արեւելք տարածելէ եւ բովանդակ Պարսկաստանը իր իշխանութեան ենթարկելէ *(*1460*)* եւ այսպէս մեծ եւ ահարկու ասիական կայսրութիւն մը կազմելէն անմիջապէս վերջը, նոյնիսկ յաջողեցաւ իրեն հարկատու դարձնել Հայաստանի հարաւային մասին տիրող Ազգոյունլուներու Սուլթանը՝ Ճիհանկիրը (1461), որ այս թուրքմէն պետութեան վրայ իշխող երրորդ վեհապետն էր:

Անդրանիկ պետը այս պետութեան էր Գարա Օսման, որուն յաջորդած էր իր որդին Համզա պէկ *(*1435—1444), որուն յաջորդն էր Ճիհանկիր *(*1444—1467) որդին Համզայի եղբօր՝ Ալի պէկի:

Ազգոյունլուներու իշխանութեան որորանը Միջագետքն էր եւ իրենց մայրաքաղաքը՝ Ամիթ կամ Տիարպեքիր: Ասոնք կը տիրէին նաեւ հարաւային Հայաստանի, այսինքն Աղձնիքի եւ Տուրուբերանի եւ Հայկական այս շրջանակները կը կառավարէին Բաղէշի, Խլաթի, Սասունի, Մուշի եւայլն մէջ իրենց կողմէ նշանակուած ամիրաներով:

Յայտնի չէ թէ Գարագոյունլու Ջիհան Շահ որ, յաջողեցաւ պատկառելի ոյժ մը դառնալ եւ ընդարձակել իր իշխանութիւնը եւ բովանդակ Հայաստանի եւ Պարսկաստանի դէմ դարձաւ, ինչո՞ւ բացառիկ բարեացակամութիւն մը ցոյց տուած է Հայոց նկատմամբ:

Հաւանօրէն քաղաքագիտութիւն մըն էր Հայաստանի մէջ բնակչութեան ամէնէն օգտակար եւ ամէնէն բազմաթիւ տարրը հանդիսացող Հայերը սիրաշահիլ:

Անիկա քաջալերած է Հայերը ազգային ընդհանուր ժողով գումարելու եւ Ամենայն Հայոց կաթողիկոսութիւնը իր նախկին վայրին մէջ վերահաստատելու:

Այս ձեռնարկը իր կրօնական-եկեղեցական դի-

մազձութեան մէջ ունէր նաեւ քաղաքական մաս մը:

Շարժումին վարիչները թերեւս միամտաբար կը խորհէին թէ Ջիհան Շահ Հայոց կրօնական աթոռին առընթեր քաղաքական իշխանութիւն մըն ալ ստեղծելու թոյլ պիտի տար իր հովանաւորութեան տակ: Այս իրողութիւնը կը հաստատուի մի քանի յիշատակութիւններով:

Այսպէս, Թովմա Մեծոփեցիի կենսագիրը՝ Կիրակոս վրդ. կ'ըսէ թէ Թովմա *«համապազ խնդրէր յԱստուծոյ, զի էջմիածինն վերստին նորոգեսցի, կաթողիկոս եւ թագաւոր նստցի յէջմիածինն»* (*Արարատ*, 1913, էջ 745)

Իսկ ինքն Թովմա, իր յիշատակարանին մէջ (էջ 62) որոշ կ'ուզէր թագաւորական հրամանի մը լծորդել Աթոռին վերահաստատութիւնը եւ իրեն կամ իրեններուն գործի խառնուիլը արդարացնելու համար՝ կ'ըսէ «դարձեալ դիտելի է, թէ վասն էր ի խնդիր ելաք էջմիածինի իշխանութեանն եւ կաթողիկոսութեան հայկազեան սեռին, զի ոչ գոյր մեզ թագաւորութեան հրամանք եւ ոչ իշխան, այլ նզովեալ քան զամենայն որդի մարդկան» եւ միամտօրէն կը կարծէ, իր ոգեւորութեան մէջ ցնորքներու մղուած, թէ ժամանակը հասած է վերականգնումին ազգին կրօնական եւ քաղաքական աթոռներուն:

Այս պատճառով աթոռի փոխադրութեան իբրեւ արդարացում բուած 17 պատճառներու շարքին կ'ըսէ թէ «Թորգոմեան ազգիս *փրկութեան ժամանակը* հասաւ, Մեծն Ներսէսի տեսիլքին համեմատ»:

Այս ցնորքին թերեւս մղուած էր, Թովմա Մեծոփեցի եւ իր ժամանակակից գործակիցները, քաջալերուելով սա իրողութենէն որ Իսկէնտէր եւ իր որդին Ջիհան Շահ պճնուած էին «Շահի Արմէն» տիտղոսով: Մասնաւորապէս Ջիհան Շահ կրցած էր հաստատուն իշխանութիւն մը եւ համեմատական հանդարտութիւն մը ստեղծել, խոհականութեամբ ճանչնալով Շահռուխի գերիշխանութիւնը եւ անոր հրամանով նստելով Դաւրէժ, ինչպէս կը հաստատէ հայ ձեռագիրի մը յիշատակարանը (*Ցուցակ Ձեռագրաց Վասպուրականի*, էջ 369):

Թէ Ջիհան Շահ Հայերը սիրաշահելու նետամուտ էր, կը հաստատէ 1449ին գրուած ձեռագիր մը, որ կ'ըսէ թէ «սիրեաց երկու թագաւորութեան Հայոց եւ Ասորոց, եւ էր խաղաղասէր, բայց հարկապահանջութիւնն բուռն է ի վերայ քրիստոնէից» (*Ցուցակ Ձեռագրաց Վենետիկի*, էջ 691): Իսկ Շահռուխը, ձեռագիր մը «բարեսէր եւ արդարադատ արքայն» «ողորմած... եւ քաղցր... բարուք» կը կոչէ (Հ. Աճառեան, *Ցուցակ Թավրիզի ձեռագրաց*, էջ 113):

Երեւանի մէջ նստող կուսակալին՝ Եաղուպի բարեացակամութիւնը եւ անոր պետին Ջիհան Շահի դէպի Հայերը ցոյց տուած մասնաւոր շահագրգռութիւնը եւ վերջապէս վերին հովանաւորին Շահռուխի ցոյց տըւած մեղմութիւնը, տեղի մը պատրանք տուաւ Հայոց, թէ այլեւս իրենց համար պիտի բացուի անդորր եւ խաղաղ կեանքի շրջան մը, տեսակ մը քաղաքական ապահով հովանի:

Այսպէս, անոնք թերեւս միամտութիւնը ունեցան խորհելու թէ Ամենայն Հայոց կաթողիկոսութեան քով կրնային ստեղծել տովահաւորեալ հայ թագաւորութիւն մը եւս, սակայն ասիկա ընել չյաջողեցան, վասնզի սկզբնական գաղափարը պղտորեցաւ եւ այդ գեղեցիկ առաջադրութիւնը առանց անձնական շահախնդրութիւններու եւ փառասիրութիւններու, ընդհանուր համերաշխութեամբ գլուխ հանել կարելի չեղաւ:

Աթոռին փոխադրութեան գաղափարը մշակողները եւ զայն իրագործելու համար ձեռք ձեռքի տուողները ամէնքն ալ իրենց յետին միտքերը եւ ակնկալութիւնները ունէին եւ ոչ թէ միայն ազգին շահը եւ անոր օգուտը:

Այս կուսակցապետներէն մէկն էր Աղթամարի Զաքարիա կաթողիկոսը, որուն հոգեւոր եւ մարմնաւոր կրկնակ իշխանութիւնները «յոտն Վարագայ, ի կողմն հարաւոյ» միակ մնացորդ փոքրիկ նշոյլներն էին «բարեպաշտական», ըստ Թովմա Մեծոփեցիի (տես վերը): Անիկա մէկն էր անոնց որ էջմիածինի ժողովէն յուսախաբ եղած էին, վասնզի իրեն տրուած խոստումը չէր գործադրըւած, ուստի Զաքարիա, ինչպէս տեսնուեցաւ Ջիհան Շահի բարեկամութեան կռթնած՝ բռնի գրաւեց էջմիածինը: Ան անշուշտ զօրացնելու համար հաւանօրէն իր կրօնական պետի իշխանութիւնը, ծրագրած էր նաեւ ստեղծելու քաղաքական իշխանութիւն մը, սակայն կ'երեւի իր նպատակին չհասած վանուեցաւ էջմիածինէն եւ մեռաւ (1464):

Իր յաջորդը, Ստեփաննոս կաթողիկոս (1465—1485), որ նոյնպէս ինքն ալ Ջիհանշահի հրամանով պիտի գրաւէր վերջը՝ էջմիածինի աթոռը, հաւանօրէն Զաքարիայի ծրագիրը իրագործելու համար, նախ քան էջմիածինը գրաւելը զարմանալի փորձ մը ըրած է, իրեն հովանաւոր թագաւորութիւն մը ստեղծելու:

Անիկա իր ազգականներէն Սմբատը՝ (որդին Ամիր Գուրջի բէկ Սէֆէնտինեանի) կ'օծէ Աղթամարի մէջ «Հայոց թագաւոր», 1465ին, նշանակելի համարձակութեամբ մը, որ անշուշտ իր ոյժը կ'ստանար տիրողներու բացառիկ մէկ թոյլտուութենէն կամ մեզի անծանօթ պատահականութենէ մը:

Աղթամարի կաթողիկոսը իբրեւ տէրը կղզիին՝ ազատ էր իր հողատէր—տիրապետութեան իրաւունքը փոխանցելու ուրիշի մը, սակայն ձեռնարկը ինքնին զըրգըռիչ էր: Որչափ որ Սմբատի թագաւորութիւնը, — որ միայն երկու տարի տեւած է կամ այնքան ատեն միայն յիշուած է յիշատակարաններու մէջ— ծիծաղելի բան մըն էր, քանի որ Աղթամար կղզեակէն դուրս ոչ մէկ իշխանութիւն ունէր եւ կրնար ունենալ, սակայն իսլամ տիրապետներու ուշադրութիւնը կրնար գրաւել եւ աղէտ մը պատրաստել Հայոց համար:

Ասանկ անխոհեմութիւն Զաքարիա եւ Ստեփաննոս կաթողիկոսները պիտի չընէին:

Հաւանօրէն այս ձեռնարկին մէջ երկու կաթողիկոսներուն եւ Ջիհան Շահի անձնական բարեկամութիւնն ալ դեր մը կատարած է, սակայն աւելի ճիշդ է խորհիլ թէ անոնք օգտուեցան Ջիհան Շահի՝ հայ տարրին կրթնելու քաղաքականութենէն:

Ասոր գլխաւոր փաստ կարելի է ներկայացնել սա պարագան թէ անիկա նոյնիսկ այն թուականներուն որ դէպի Արեւելք՝ Պարսկաստան կը տարածուէր եւ Շահռուխի (✝1451) յաջորդող Պուսայիտի կամ Ապուսայիտի հողերը կը գրաւէր եւ Ջիհանկիրը հարկատու կը դարձնէր եւ պատկառելի ոյժ մը կը ներ-

կայացնէր նորէն չէր դադրեր Հայերը հովանաւորելէ:

Զաքարիա եւ Ստեփաննոս կաթողիկոսները անոր կամքով կրցան բռնակալել Էջմիածինի աթոռը եւ հաւանօրէն իր աթոռին ազդեցութիւնը զերակշիռ ընելու համար՝ Ստեփաննոս յաջողեցաւ զայն համոզել որ իր քով՝ Աղթամարի մէջ Հայոց թագաւոր մը օծէ, եւ ան թերեւս հաւանեցաւ մտածելով թէ Աղթամարի կղզեակին մէջ Հայոց հողատէր-կաթողիկոսի մը հետ «Հայոց թագաւոր» տիտղոսով եւ իրականութեան մէջ ոչ մէկ իշխանութեամբ անձի մը գտնուիլը ոչինչով կը վնասէր իր վեհապետական իրաւանց, սակայն Հայերուն ուրախութիւն կրնար պատճառել:

Ջիհան Շահի (1444–1467) այս սիրաշահող քաղաքականութիւնը փոխուեցաւ իր մահէն վերջ, վասնզի Աքգոյունլուները կամ Պայընտրեանք զօրացան եւ Ուզուն Հասանի (1467–1478) վեհապետութեան տակ, բացուեցաւ այս գերազանցապէս զօրացած պետութեան համար միահեծանութեան շրջան մը:

Պետութիւնը այլեւս կը յենուր պարսիկ տարրին վրայ, որ պետութեան մէջ մեծամասնութիւն կը կազմէր:

Ուզուն Հասան յաջողած էր ստեղծել միահեծան եւ միապաղաղ իշխանութիւն մը Գարագոյունլու եւ Աքգոյունլու տէրութիւնները միացնելով եւ ամբողջ Պարսկաստանը իրեն հպատակեցնելով, եւ այսպէս՝ վերակազմելով պարսիկ մեծ կայսրութիւնը:

Այս նորակազմ մեծ պետութեան մաս կազմեց Հայաստան որ միահեծան ու զօրաւոր լուծի ենթարկուեցաւ: Սակայն այս պետութիւնը չկրցաւ խաղաղօրէն տիրակալել Հայաստանի, վասնզի մինչեւ անոր արեւմտեան սահմանները՝ այսինքն մինչեւ Եփրատ տարածուած էր ուրիշ զօրաւոր կայսրութիւն մը՝ Օսմանեանը որ անխուսափելիօրէն պիտի ջանար տիրապետել Հայկական Բարձրաւանդակին՝ իր Փոքր Ասիական երկիրներուն ապահովութեան համար: Հետեւաբար անխուսափելի էր բախումը պարսիկ եւ Օսմանեան կայսրութիւններուն միջեւ:

Եւ պատահեցաւ ինչ որ իբրեւ բնական հետեւանք երկու ոյժերու գոյութեան պիտի պատահէր, եւ սկսաւ երկարատեւ պայքար մը, որ երեք դար տեւեց գրեթէ:

Երկու պետութեանց բախման վայրը՝ գլխաւորապէս Հայաստանը ըլլալով, Հայկ. Բարձրաւանդակը ամբողջովին մշտատեւ պատերազմի մը թատերավայրը եղաւ եւ դարերով երկիրը բանակներէ ոտնակոխ եղաւ, իսկ հայ բնակչութիւնը իր իսկ հայրենիքին մէջ խամրեցաւ եւ հիւծեցաւ, եւ հայ իշխանութեան գրեթէ ոեւէ հետք չմնաց:



Թ.

## ԹՈՒՐՔ, ՊԱՐՍԻԿ ԵՒ ՌՈՒՍ ՏԻՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆ (1467–1918)

Պարսկաստան, տեղական փոքր իշխանութիւններու ձուլմամբ կայսրութեան մը վերածուած, մինչեւ Եփրատ իր տիրապետութեան ենթարկած էր: Հոն կ'իշխէր թուրք արքայական տուն մը, որ ազգայնացած էր ընդգրկելով եւ պետական կրօնք հռչակելով Պարսիկներու հերձուածը, Շիի իսլամութիւնը. մինչ Օսմանեան սուլթաններն որոնք Պոլսոյ գրաւումէն յետոյ Գարամանի իշխանութեան վերջ տուած եւ հասած էին մինչեւ Եփրատ, կը մնային հաւատարիմ Սիւննի դաւանանքին, եւ իբրեւ պետն ու հրամանատարը անոր՝ կ'ատէին Շիի աղանդաւորները:

Երկու պետութիւններուն ճակատագրուած էր շարունակել այն վաղեմի պայքարը զոր Հայաստանի տիրապետութեան համար մղած էին Պարթեւները եւ Հռոմէացիք, Սասանեանք եւ Բիւզանդացիք, Արաբները եւ Յոյները, նկատելով անհրաժեշտ կռուան մը իրենց նուաճումները տեւականացնելու համար:

Առիթը՝ բախումի մը համար շուտով ներկայացաւ: Գարամանի պէյը՝ Իսհակ ապաստանեցաւ Պարսիկ վեհապետ Ուզուն Հասանի քով, անոր օգնութեամբ իր տէրութիւնը վերահաստատելու համար:

Խրոխտ եւ անհանդարտ Ուզուն Հասան, որ իր յաջողութիւններով կը սոնքար, ասիկա յարմար առիթ մը նկատեց ընդարձակելու իր տէրութեան սահմանները եւ տիրելու ամբողջ Հայաստանի: Սակայն գործադրութեան մէջ ապիկարացաւ եւ Օսմանցիք Դերջանի վճռական յաղթանակով արեւմտեան Հայաստանի տէր դարձան (1473):

Այս թուականը սկիզբն է այն երկարատեւ կռիւներուն, զորս Թուրքերը եւ Պարսիկները մղեցին աւելի քան 250 տարիներ:

Այս պայքարին մէջ յաղթանակներ եւ պարտութիւններ իրարու յաջորդեցին բայց առաւելապէս Օսմանցիք էին որ յաջողութիւններ ունեցան եւ հետզհետէ Հայաստանի զանազան մասերէն Պարսիկները վանեցին եւ իրենք տէր դարձան երկիրին, մինչեւ որ պարսիկ տիրապետութեան տակ մնաց հայկական հողէն աննշան մաս մը:

1473ի Դերջանի յաջողութենէն 40 տարի վերջ, Չալտրանի ճակատամարտին մէջ իրենց տարած յաղթանակով Օսմանցիք Հայաստանի արեւելեան մասին ալ տիրեցին եւ՝ մինչեւ Ուրմիոյ լիճը առաջացան (1514):

Այսպէս, Հայաստան ԺԶ. դարուն սկիզբը ենթարկուեցաւ Օսմանեան տիրապետութեան, սակայն Պարսիկները բնաւ չհամակերպեցան այս իրողութեան եւ շարունակ փորձեցին Հայաստանին վերստին տիրանալ, բայց յաջողութիւն չունեցան եւ իրենց յարձակումները՝ որոնք երկիրը արիւնլուայ կ'ընէին եւ պատերազմի

դաշտի կը վերածէին, վանուեցան Օսմանցի Թուրքերու կողմէ:

1533ին Հայաստանի հարաւային գաւառներն ալ, որոնք Պարսից ձեռքը մնացած էին, անցան Օսմանցիներուն, վասնզի 1514ի ձախողումէն վերջ Պարսիկները չհամակերպելով Օսմանցիներու տիրապետութեան՝ Հիւսիսային Հայաստանի վրայ պատերազմը շարունակեցին։ Եւ միայն պզտիկ այլ սակայն ոչ տեւական քանի մը յաջողութիւններէ վերջ հարաւային Հայաստանն ալ կորսնցուցին:

Պարսիկները սակայն նորէն չհամակերպեցան եւ 1551ին Շահ Թահմազ արշաւեց դէպի թուրք տիրապետութեան տակ գտնուող Հայաստանի զանազան գաւառները եւ աւերեց:

Սուլթան Սիւլէյման ոչ միայն վանեց պարսիկ բանակները, այլ Պարսկաստանը, Երեւանը, Նախիջեւանը եւ Սիւնիքը աւերեց:

1555ին երկու պետութիւնները կնքեցին Ամասիոյ դաշինքը, երկար կռիւներէ վերջ: Սակայն քսան տարի ետքը, 1575ին դարձեալ պատերազմը սկսաւ եւ տասը տարի շարունակ մէկ կամ միւս կողմին յաղթութեամբը երկիրը զանազան տառապանքներու ենթարկուելէն վերջ՝ Թուրքերը առաջացան մինչեւ Տփղիս (1578) եւ 1579ին առին Երեւանը:

1585ին թուրք եւ պարսիկ պատերազմը բուռն թափ առաւ եւ Օսման Էօզտէմիր փաշան գրաւեց Դաւրէժը: Այսպէս, Հայաստան ամբողջ թրքական իշխանութեան ենթարկուեցաւ, սակայն Քիւրտերը անկարգութիւններ յարուցին եւ ըմբոստութիւններ ցոյց տուին:

Այս խառնակ կացութենէն օգտուելով՝ երեւան եկան ապստամբներ եւ աւազակներ, որոնք յուզկահարութեանց ձեռնարկեցին: Այս աւազակները, որոնք Ճէլալի կը կոչուէին, մեծ մասամբ ապստամբ թուրք կուսակալներ էին (1590—1608): Ասոնք անլուր խժդըժութիւններ գործեցին եւ երկիրին աւերի, սովի եւ համաճարակներու մատնուելուն պատճառ եղան:

Հազիւ թէ այս ապստամբութիւնները եւ ասպատակութիւնները զսպուած էին, Շահ Աբբաս դարձեալ պատերազմ բացաւ (1603) Օսմանցիներու դէմ: 1605ին Օսմանցիք մեծ արշաւանքով մը ուժգին հարուած մը տուին Պարսիկներուն, եւ աւերուած ու սովի մատնըւած երկիրին մէջ կրցան զսպել ապստամբները եւ հաշտութեան հարկադրել Պարսիկները (1612), որոնք չորս տարի վերջը (1616) նորէն պատերազմի ձեռնարկեցին եւ մինչեւ որ Օսմանցիք չզիջան Արեւելեան Հայաստանը իրենց ձգելու, զէնքերը վար չդրին (1620): Քիչ վերջը Օսմանցիներու զբաղած վիճակէն օգուտ քաղելու յոյսով, դարձեալ նոր յարձակում մը ըրին եւ երկարատեւ պատերազմներէ վերջ՝ կնքեցին խաղաղութիւն մը (1639), որով Երասխ եւ Կուր գետերու միջեւ գտնուող գաւառները դարձեալ Պարսիկներու ձեռքը կը մնային:

Այս խաղաղութիւնը 80 տարի տեւեց, վասնզի Պարսկաստան ներքին խռովութիւններու մէջ ըլլալով կարող չէր Հայաստանի տիրապետութեան համար ոեւէ ձեռնարկ ընելու: Օսմանցիք զօրաւոր կերպով կը տիրապետէին առանց իրենց դէմ ոտքի ուժ մը ունենալու:

Սակայն այս վիճակը երկար չտեւեց: Հայաստանի դառն նախատագիրն էր որ կա՛մ երկու ուժերու մէջ մրցման առարկայ ըլլար, կա՛մ բարբարոս ժողովուրդներու արշաւանքին ենթակայ:

Այս անգամ ալ հիւսիսէն կու գար հոսանքը:

Լեզկիները՝ ուրիշ լեռնական ցեղերու հետ խառըն, հեղեղի պէս թափեցան պարսկական գաւառներու վրայ եւ ճամբուն վրայ թալանելով, աւերելով եւ սպաննելով հասան մինչեւ Սեւանայ լիճը:

Այս արշաւանքին յաջորդեցին զանազան թափառական ցեղերու ասպատակութիւնները, որոնք մեծ շփոթութիւն ձգեցին Սիւնեաց եւ Արցախի պարսիկ խաներուն մէջ, որոնք սկսան իրարու դէմ կռուիլ եւ երկիրը տակնուվրայ ընել:

Այս քայքայող կռիւներու ընթացքին երկու մահմետական պետութիւնները կը շարունակէին իրենց գոտեմարտութիւնը Հայաստանի շուրջը:

Այսպէս, 1724ին Օսմանցիք կը գրաւէին Երեւանը եւ 1725ին՝ Սիւնիքը եւ 1727ին Ատրպատականը: 1730ին Պարսիկները մասնակի յաջողութիւն մը կ'ունենային՝ Թուրքերը ետ մղելու մինչեւ Երեւան, սակայն անոնք կրկին կը յարձակէին եւ կ'առաջանային մինչեւ Պարսկաստանի ներսերը:

Վերջապէս, 1732ին Երասխ գետը սահման ունենալու պայմանաւ հաշտութիւն կնքուեցաւ, սակայն Պարսիկները 1733էն մինչեւ 1746 շարունակ յարձակումներ ըրին Հայաստանի վրայ եւ միշտ ձախողեցան եւ ետ մղուեցան:

1746ին հաշտութիւն կնքուեցաւ այն պայմանաւ որ Մուրատ Դ.ի ատենուան սահմանները պահուին, այսինքն Հայաստանի արեւելեան մասը մինչեւ Երեւան եւ Նախիջեւան Պարսիկներու ձեռքը մնայ։

Յաջորդ տարին Նատիր Շահ սպաննուեցաւ եւ Պարսկաստան անիշխանութեան մատնուեցաւ:

Այս անիշխանութեան ժամանակամիջոցին պարսկական Հայաստանն ալ տագնապ մը անցուց։ Հայերը խլրտեցան անկախութիւն ձեռք բերելու համար եւ իրենց այս ձեռնարկին մէջ արտաքին օժանդակութեան դիմեցին:

Պետութիւնը, որուն վրայ անոնք յոյս դրած էին, Քրիստոնեայ Ռուսիան էր, որ արդէն մինչեւ Կովկաս տարածուած էր հիւսիսէն, եւ կը ձգտէր աւելի հարաւ, Կովկասեան լեռներու հարաւային կողմը իջնել: Անիկա 1762էն սկսեալ ուղղակի կը քաջալերէր Կովկասի հարաւային կողմը ապրող քրիստոնեայ ժողովուրդները եւ 1787էն սկսեալ ուղղակի յարաբերութեան կը մտնէր հայ մելիքներուն հետ:

Այս յարաբերութիւնները պատճառ եղան որ Պարսիկներու զայրոյթը գրգռուի Հայ մելիքներուն դէմ եւ անոնց հողերը աւերուին։

Աղա-Մեհմէտ խան Ներքինին, Պարսկաստանի ներքին խռովութիւնները զսպելով՝ թագաւոր կը հռչակուէր Թէհրան, եւ պատժելու կը ձեռնարկէր անոնք, որոնք ապստամբական խորհուրդներ ունեցած էին:

1795ին այս ահարկու մարդը կ'արշաւէր Ղարապաղ, Իպրահիմ խանի վրայ, որ մերժեր էր անոր իշխանութիւնը ճանչնալ: Դեռ Երասխ գետը չանցած՝ մարդիկ կը ղրկէ հայ մելիքներուն որ զան հպատակութիւն յայտնեն իրեն, խոստանալով զանոնք վերահաս-

տատել իրենց վաղեմի իշխանութեան մէջ եւ Իպրահիմ խանի իշխանութիւնը ջնջել։

Մելիքները, որոնք դեռ յոյս ունէին քրիստոնեաներու օգնութիւնովը իրենց հայրենիքը մահմետականներու լուծէն ազատելու, նախամեծար համարեցին հաւատարիմ մնալ ռուսերուն. ուստի, առժամապէս միացան իրենց ոխերիմ թշնամի Իպրահիմ խանի հետ եւ քաջութեամբ պաշտպանեցին Շուշիի բերդը։

Շահը, ժամանակ չկորսնցնելու համար՝ նախ մտաւ Վրաստան պատժելու համար Հերակլ թագաւորը, որ իր երկիրը Ռուսիոյ հովանաւորութեան տակ դրած էր, վերջի ձգելով իր վրէժը լուծել Շուշիի բերդականներէն։

Վրաստան իր առջեւ խոնարհեցաւ եւ 1797ին Շուշի գրաւուեցաւ, բայց Շահը միեւնոյն ատեն մեռաւ։

Այս անցքերուն լուրը Ռուսիա հասնելով՝ Պօղոս Ա. Զարը հրաման բրաւ Պոտիմքին զօրապետին Ղարապաղը գրաւելու զինուորականապէս, միւս կողմէն ալ ուրիշ բանակ մը Վրաստան ղրկեց։

Այդպէս, Հայոց անկախութեան ձգտումը չպաշտպանուելէ զատ՝ երկիրին վրայ ալ հզօր ձեռք մը ծանրացաւ, ռուս տիրապետութեան ենթարկուելով Պարսկական Հայաստանի մէկ մասը։

Պարսիկները կարելի չէր որ դիւրաւ մոռնային իրենց կորսնցուցած երկիրները, որոնց Ռուսերը տիրացեր էին առանց կաթիլ մը արիւն թափելու։ Թէեւ Աղա Մահմուտ խանի յաջորդները, Ֆաթալի խան խաղաղասէր մարդ էր, բայց անոր երէց որդին, Աբաս-Միրզան, Ռուսերը ետ մղելու յոյսով զէնքի դիմեց։ Կռիւը մի քանի տարի տեւեց եւ մեծ վնաս հասցուց նոր գրաւուած երկիրներու բնակչութեան։

Ռուսերը թէեւ սակաւաթիւ էին, բայց ի վերջոյ խորտակեցին Պասիկներու զօրութիւնը։

Այս պատերազմներուն ժամանակ Հայերը մեծ օգնութիւններ ըրին իրենց նոր տէրերուն, պատերազմի մէջ անոնց հետ հաւասար արիւն թափեցին եւ հացի պակասութեան ժամանակ պաշար հասցուցին։ Աբաս-Միրզան ստիպուեցաւ հաշտութիւն խնդրել եւ Կիւլիստանի դաշնադրութեամբ Ղարապաղը եւ մի քանի ուրիշ գաւառներ Ռուսերուն թողուլ (1813)։ Բայց այս հաշտութիւնը Պարսից կողմէ լոկ զինադադար մըն էր։ Ո՛չ Ռուսերը իրենց գրաւած բաժինը բաւական պիտի համարէին եւ ո՛չ ալ Պարսիկները պիտի հանդուրժէին որ այնքան տիրապետող դիրքի մը վրայ օտար իշխանութիւն մը այնքան զօրանար։ Հետեւաբար՝ 1826ին պատերազմը վերսկսաւ։ Պարսիկները եղան նախայարձակը։ Ռուսերը՝ Հայերու օգնութեամբ յաղթական ելան եւ մինչեւ բուն պարսկական հողը առաջացան (1827)։

Պարսկաստան, Թուրքմէնչայի դաշնադրութեամբ (1828 Փետր. 10)՝ Երասխ եւ Կուր գետերու միջեւ գտնուած Հայաստանի մասը Ռուսերուն ձգելու ստիպուեցաւ եւ Հայաստանի տիրապետութեան համար մրցակից հանդիսացող երեք ուժերու մէջ իր ունեցած դերը կորսնցուց եւ ասպարէզին վրայ երկու պետութիւններ միայն մնացին։

Հազիւ թէ երկու ամիս անցած էր ռուս եւ պարսկական պատերազմին վերջանալէն՝ երբ 1828 Ապրիլ 4ին հրատարակուեցաւ ռուս եւ թուրք պատերազմ մը, որուն մէջ դարձեալ Ռուսերը յաղթեցին՝ հակառակ իրենց պարսկական պատերազմէն յոգնած ըլլալուն։

1829 Յուլիս 26ին Ռուսերը մտան թրքական Հայաստանի մայրաքաղաքը՝ Էրզրում, մինչ Եւրոպայի կողմէն մինչեւ Ադրիանուպոլիս առաջացած էին, ուր կնքուեցաւ խաղաղութեան դաշինքը 1829 Սեպտ. 2ին։

Այս դաշնադրութեամբ Անապան, Բոդի, Ախալցխա եւ Ախալքալաք իրենց շրջակայքովը Ռուսերուն ձգուեցան։

Այն օրէն ասդին ռուս պետութեան համար Հայկական Բարձրաւանդակին տիրապետութիւնը նպատակէտ մը դարձաւ, վասնզի իր բոլոր ձգտումն էր հասնիլ բաց ծով՝ Միջերկրական եւ իր հայեացքը Ասիական ցամաքին վրայ կ'ընդգրկէր ընդարձակ երկիրներ, որոնց մէջ էին Միջագետքի բարեբեր դաշտերը եւ Փոքր Ասիոյ արգասաւոր հովիտները, որոնց տիրելու համար անհրաժեշտ էր տէր դառնալ Հայկական Լեռնադաշտին։

1854—1856ի Խրիմի պատերազմը զոր Ռուսիա բացաւ Թուրքիոյ դէմ պատրուակ մը ստեղծելով, նախաքայլ մըն էր, որ սակայն եւրոպական կառավարութիւններու կողմէ կասեցուեցաւ, վասնզի Անգլիա, Ֆրանսա եւ Սարտենիա օգնութեան հասան Թուրքիոյ եւ զայն պաշտպանեցին Ռուսիոյ դէմ։

Հազիւ քսան տարի վերջ պալքանեան Սլաւ ցեղերու ապստամբութիւնը պատեհութիւն մը եղաւ Ռուսիոյ համար՝ Թուրքիոյ վրայ յարձակելու։ Ռուսիա 1878 Ապրիլ 17ին պատերազմ հրատարակեց եւ այս անգամ յաջողեցաւ մեծ հարուած մը տալ Օսմ. կայսրութեան՝ Եւրոպական աշխարհամասին մէջ անկէ բաժնելով բաւական ընդարձակ երկիրներ եւ Ասիոյ մէջ Կարսը, Արտահանը եւ Պաթումը՝ իրենց շրջակայքով։

Եւ այս՝ շնորհիւ եւրոպական պետութեանց միջամտութեան, առանց որուն Սան Ստեֆանոյի դաշնադրութիւնը —որ շատ աւելի աննպաստ պայմաններ կը պարունակէր Թուրքիոյ համար— ընդունուած պիտի ըլլար։

Իսկ համաշխարհային Ա. պատերազմին (1914—1918) երբ Թուրքիա, իբրեւ զինակից Գերմանիոյ, պատերազմին մասնակցեցաւ (1914 Հոկտ. 1), ռուս ապագայ տիրակալութեան մը մղձաւանջէն միանգամ ընդ միշտ ձերբազատուելու համար եւ անոր պատրուակ եւ առիթ ընծայող հայկական խնդիրը արմատապէս լուծելու համար, մէկ կողմէն Կովկասի ճակատին վրայ պատերազմած ատեն Ռուսիոյ դէմ, միւս կողմէն տեղահանութեամբ եւ ջարդով բնաջնջեց Հայերը Հայաստանէն, ինչպէս նաեւ ամբողջ Թուրքիոյ ուրիշ վայրերէն։

Թրքական Հայաստան գրաւուեցաւ ռուս բանակներէն՝ որոնք գրեթէ մինչեւ Սեբաստիոյ մօտերը առաջացան, եւ քանի մը անգամ նահանջելէ եւ առաջանալէ վերջ, պոլշեւիկեան յեղափոխութեան եւ «դէպի տուն» շարժումին հետեւանքով բոլորովին լքեցին Թրքական Հայաստանը։ Պրէսթ Լիթովսքի դաշնադրութեամբ (5 Մարտ 1918) Թուրքիոյ կը թողուին այն հողերը, որոնք 1877էն առաջ իրեն կը պատկանէին, մանաւանդ Կարսի նահանգը, որուն կրկին տիրացաւ Թուրքիա, զայն կորսնցնելէն քառասուն տարի վերջ։

Յետոյ՝ թէեւ Թուրքերը այս նահանգը պահ մը լքեցին եւ զիջան Հայաստանի նորակազմ Հանրապետութեան, սակայն նոր պատերազմով մը Հայաստանի Հանրապետութենէն բռնի կորզեցին զայն իր շրջակայքով,

Ալեքսանդրապոլի նուաստացուցիչ դաշինքը պարտադրելով (1921 Դեկ. 2) Հայաստանին:

Լօզանի Դաշինքը (1923 Յուլիս 24) վերջնապէս նուիրագործեց նոր սահմանները:

Ինչպէս տեսնուեցաւ, ԺԶ. դարէն մինչեւ մեր օրերը, Հայաստան գրեթէ միշտ պատերազմներու թատերավայր եղած է, անոր կարգ մը մասերը մէկ պետութենէն միւսին անցած են, անշուշտ ոչ առանց վնասներու ենթարկելու երկրին բնիկ ժողովուրդը, որ առանց պատերազմներու աղէտին ալ ոչ նուազ անտանելի կացութեան մատնուած էր, մանաւանդ երկու իսլամ պետութիւններուն՝ Թուրքիոյ եւ Պարսկաստանի, տիրող կարգերուն պատճառով:

Երկու պետութիւններն ալ, ինչպէս այլուր, նոյնպէս նաեւ Հայաստանի մէջ ստեղծած էին դժոխային վարչութիւն մը, ուր կեղեքում, հարստահարութիւն, կաշառակերութիւն, յափշտակութիւն, հպատակներու արժանապատուութեան վիրաւորանք սովորական իրողութիւններ էին: Պարսկաստան եւ Թուրքիա շատ կը նմանէին իրարու իրենց հառավարական կազմով եւ վարչական դրութեամբ: Երկուքն ալ կը կառավարուէին աւատական կարգերու մէկ այլափոխութիւնը եղող վարչաձեւով մը:

Պարսկաստանի մէջ, ծայրագաւառներու կուսակալները, որոնք խան տիտղոսը կը կրէին՝ ժառանգական կամ նշանակովի տիրացած իրենց պաշտօնին, պարսիկ Շահերու գերիշխանութեան տակ մէկ մէկ բռնակալներ էին, որոնք միայն մէկ նպատակ ունէին, կեղեքել ժողովուրդը որքան որ կրնան:

Թուրքիոյ մէջ կուսակալները *(վալի)* կ'անուանուէին կեդրոնէն, սակայն անոնք իրենց պաշտօնը կ'ստանային ոչ թէ իրենց արժանիքով, այլ իրենց դրամով, պարզապէս կապալով:

Ով որ շատ կը վճարէր անիկա կը տիրանար պաշտօնին, եւ իր առաջին մտահոգութիւնը կ'ըլլար կեղեքել ժողովուրդը իր տուած դրամը վերստանալու համար: Ասկէ զատ երկրին զանազան մասերուն մէջ որջացած էին կարգ մը ձորապետներ կամ ուրիշ բռնապետներ, որոնք կաշառքով կը գոհացնէին կուսակալը, որպէսզի զիրենք անհանգիստ չընէ եւ իրենց կեղեքիչ գործը կարենան շարունակել եւ իրենց հարստահարութեանց արդիւնքէն կարեւոր բաժիններ հանել կուսակալին եւ անոր ընչաքաղցութիւնը գոհացնել: Բնակչութեան, մանաւանդ րայաներու (տիրապետուածներու) ո՛չ կեանքը, ո՛չ պատիւը եւ ո՛չ ստացուածքը ապահով էին:

Պարզ քմահաճոյքով՝ անդատաստան գլխատումներ, գեղեցիկ կիներու, աղջիկներու եւ տղայոց յափշտակութիւններ, եւ հողերու եւ տուներու գրաւումներ սովորական բաներ էին այս երկիրներուն մէջ, ուր պարտաւորուած էին ապրիլ Հայերը, որոնք ԺԱ. դարէն սկսեալ Հայաստանի հողին վրայ վայրենի ժողովուրդներու տիրապետութեան ենթարկուած էին (1):

Արդէն Հայերը Սելջուկ եւ Թաթար տիրապետութիւններուն տակ բոլորովին հիւծած եւ սպառած էին՝ երբ թուրքեւպարսիկ պայքարները սկսան Հայաստանի հողին վրայ, ուր այլեւս հայկական իշխանութեան ոչ մէկ հետք մնացած էր:

Բոլոր հայ իշխանութիւնները ընկճուած էին եւ միայն մի քանի լեռնային գաւառներու մէջ կը մնային շրջաններ, որոնք տակաւին կատարելապէս նուաճուած չէին: Ասոնք կը ճանչնային գերիշխանութիւնը Պոլսոյ Սուլթանին կամ Պարսից Շահին, բայց կը պահէին տեղական մասնաւոր առանձնաշնորհներ եւ կը կառավարուէին ժառանգական իշխողներու կողմէ:

Պարսկաստանի մէջ այս տեսակ առանձնաշնորհեալ շրջանակ մը կը ներկայացնէր, օրինակի համար, Վրաստան, որ կը կառավարուէր հին թագաւորական տան ժառանգորդներէն, որոնք Վրաց համար թագաւորներ էին, մինչ Պարսից համար *վալի*ներ (կուսակալ, տէր կամ իշխան իմաստով): Վրաստանի այս թագաւորները իրենց իշխանութիւնը պահելու համար երբեմն հարկադրուած էին նոյնիսկ իսլամանալ եւ կերպով մը քաշքշել իրենց պետութեան գոյութիւնը:

Նոյնպէս կը շարունակուէր Աղուանից թագաւորութիւնը, որ բոլորովին կերպարանափոխ եղած եւ իսլամ պետութեան վերածուած էր, եւ եղած Շիրվանի թագաւորութիւն, Շիրվանշահ տիտղոսով իսլամ վեհապետի մը իշխանութեան տակ: Շիրվան՝ Կուրի միջին հոսանքէն մինչեւ Կասպից ծով՝ Տերպենտի դուռներուն մօտ կը տարածուէր: Երկիրին մայրաքաղաքը՝ Շամախի եւ գլխաւոր քաղաքը Արաշ՝ առեւտրական խոշոր կեդրոններ էին (Լէօ, *Պատմ. Հայոց*, էջ 171): Հայերը, ինչպէս Վրաստանի նոյնպէս Շիրվանի մէջ առաջնակարգ դիրք ունէին, եւ երկրին ամէնէն կարեւոր տարրը կը ներկայացնէին:

Այս երկու կազմակերպուած ինքնավար շրջաններէն զատ՝ Հայկական Բարձրաւանդակին վրայ կային քրտական պզտիկ տոհմապետութիւններ կամ աշիրէթներ, որոնք կը ճանչնային իբր թէ Պարսկաստանի Շահին գերիշխանութիւնը, սակայն կը պահէին իրենց ներքին առանձին կառավարութիւնը, կախում ունենալով աշիրէթներու պետերէն, որոնք իրենց հետեւորդները իրենք կը դատէին, տուրքեր կը գանձէին եւայլն:

Ասոնք, նախանձախնդիր իրենց այս անկարգ կազմակերպութեան եւ տեսակ մը անկախութեան, թուրք եւ պարսիկ պատերազմներու միջոցին, երբեմն մէկ եւ երբեմն միւս կողմին յարեցան եւ երբեմն ալ իրենցմէ մաս մը մէկ կողմին եւ ուրիշ մաս մը միւս կողմին օգնելով, չկրցան արժեցնել իրենց ոյժը, վասնզի շատ հեռու էին ազգային միութիւն մը ներկայացնելէ: Բաղէշի, Խլաթի, Ատիլճավազի (Արծկէ), Արճէշի, Սասունի, Զմշկածագի, Բալուի, Ճապաղջուրի մէջ պզտիկ պզտիկ կղզիացեալ միութիւններ կը կազմէին, որոնք շարունակ զբաղում կը հայթայթէին թուրք կառավարութեան, որ տարիներու ընթացքին պա-

(1) *Թէ Թուրքիոյ և Թէ Պարսկաստանի Հայաստանին նըկատմամբ ընդգրկած մեթոտներուն լիակատար նկարագիրը տրուած է* Լէօ *իր* Հայոց պատմութիւնի *Գ. հատորին մէջ, ինչպէս նաև իր* Հայկական տպագրութիւնի *Ա. հատորին* (1901 *Թիֆլիս*) 29—39 *էջերուն մէջ, որոնց կրնան դիմել հետաքրքիրներ ամբողջական գաղափար մը կազմելու համար։ Բազմաթիւ են նաև հայ և օտար ուրիշ հեղինակներ, որոնք ԺԵ. դարէն մինչև ԺԹ. դար տեւող շրջանին պատմութեան վրայ խօսած և տուած են տեղեկութիւններ, Ասոնք ալ կը հաստատեն անխտիր միեւնոյն երեւոյթները։*

տեղութիւն ներկայացած ատեն զանոնք նուաճելու եւ պետական ընդհանուր կազմին մէջ ներմուծելու աշխատած է:

Թուրքիա, հետեւաբար, իր արտաքին թշնամիներուն դէմ սահմանագլուխի վրայ կռուած ատեն, ստիպուած էր պահել նաեւ ներքին ճակատ մը, այս ըմբոստ քիւրտ աշիրէթապետութեանց դէմ:

ԺԶ. դարուն սկիզբը, Եաւուզ Սուլթան Սելիմ Քիւրտերը իր կողմը շահելու եւ Հայաստանի տիրապետութիւնը ապահովելու համար, շլացուցիչ նուէրներով եւ խոշոր թոշակներով իր կողմը որսաց Մոլլա Իտրիս Քիւրտը, որ յաջողեցաւ Քիւրտերը կապել Թուրքերուն եւ Պարսիկներուն դէմ հանել:

Այսպէս, Հայաստանի նուաճումը դիւրացաւ: Սակայն Քիւրտերը միշտ մնացին աննուաճ եւ ուզեցին պահել իրենց անկախ դիրքը եւ երբ Թուրքերուն կողմէ աշիրէթ մը հնազանդեցնելու ձեռնարկներ եղան, կամ ոեւէ դժգոհութեան մը առիթ տրուեցաւ, չվարանեցան Պարսից կողմը անցնելու: Երբեմն, քիւրտը քիւրտին դէմ կռուեցաւ:

Քիւրտերու միակ մտահոգութիւնն էր իրենց աշիրէթապետութիւնները պահել: Չունէին հասկացողութիւնը իրարու ձեռք տալու եւ ընդհանուր Քրտութեան համար աշխատելու: Անոնք մերթ Սուլթանին, մերթ Շահին կը հնազանդէին անուանապէս, միշտ մէկ կողմէն միւս կողմը անցնելու պատրաստ: Ուստի կը ներկայացնէին անվստահելի տարր մը, զոր թէ՛ Թուրքիա եւ թէ Պարսկաստան սիրաշահիլ աշխատեցան, իրենց իրարու դէմ մղած պատերազմներուն մէջ, եթէ ոչ անոնց բոլորանուէր աջակցութիւնը՝ գէթ անոնց ձեռնպահութիւնը ապահովելու համար, պահելով անոնց առանձնաշնորհները անձեռնմխելի:

Քիւրտ պէկերը, այսպէս, դարձան շփացած եւ անկարգ տարր մը եւ շարունակ կեղեքեցին երկրագործ ու խաղաղ ժողովուրդը: Հայերը, որոնք խուզուելու յատկացուած ոչխարներ էին, Հայաստանի Քրտական փոքր ինքնավար շրջաններուն մէջ այս պատճառով չարաչար կեղեքուեցան, վասնզի կը կողոպտուէին թէ՛ քիւրտ պէկերէն եւ թէ օսմանցի ու պարսիկ պաշտօնատարներէն:

Կեդրոնական կառավարութեան հեղինակութիւնը ոչինչ էր պետութեան կարգ մը մասերուն մէջ: Փոքր Ասիոյ մէջ կային մասնաւորապէս Թիւրքմէն ձորապետներ (*տէրէպէյի*ներ), Բաղէշի, Մուշի, Տիարպէքիրի նահանգներուն մէջ *հիւքիւմէթ* կոչումով քրտական իշխանութիւններ, եւ Հայաստանի զանազան մասերուն մէջ մի քանի լեռնային համայնքներ (Լէօ, *Պատմ. Հայոց*, Գ., էջ 51), որոնք կը տիրակալէին իրենց գիտցած եղանակով, արհամարհելով կեդրոնին հեղինակութիւնը:

Այս կացութիւնը շարունակուած է մինչեւ մեր օրերը:

Գերման նշանաւոր զօրավար Մոլթքէ, որ իբրեւ մարզիչ Օսմ. բանակին մէջ ծառայած է 1830ական թուականներուն, շատ իրաւամբ դիտել տուած է թէ Օսմ. պետութիւնը իր սահմանները ընդարձակելու աշխատելու տեղ, աւելի լաւ բան կ'ընէր եթէ իր սահմաններուն մէջ գտնուող աննուաճ եւ ըմբոստ շրջանները նուաճէր:

Արդարեւ, Թուրքիոյ սահմաններուն մէջ բազմաթիւ էին վայրեր, որոնք կատարելապէս նուաճուած չէին:

Միայն թէ՛ դժբախտաբար՝ Հայերը ստիպուած էին գրեթէ ոչինչ պահել իրենց նախկին իշխանութիւններէն, Օսմանցիներու Հայաստանի տիրանալէն վերջը: Միայն մնացած էին մի քանի լեռներ, որոնց վրայ հայ մարդիկ զէնքի ոյժով կը պահպանէին իրենց ազատութիւնը: Այսպէս, քանի մը լեռնային փոքրիկ գաւառներու մէջ պահուած էին հայկական կիսանկախութիւններ:

Թուրք կառավարութիւնը կը հանդուրժէր անոնց գոյութեան, քանի որ Հայերը չէին միայն, որ արծիւի բոյներու մէջ կտոր մը ազատութիւն կը պահէին իրենց համար, կտրուած աշխարհէն: Այս տեսակ բոյներ ուրիշ ազգեր ալ ունէին Օսմանեան պետութեան ամբողջ տարածութեան վրայ:

Հայ լեռնականներ իրենց ազատութիւնը պահելու համար կը միանային դրացի նոյնպէս անկախ Թիւրքմէն ցեղերու հետ՝ իրենց հասարակաց շահերը պաշտպանելու համար:

Ապրելով միեւնոյն հանգամանքներուն մէջ, միեւնոյն հասկացողութիւններով եւ գաղափարներով, լեռնական Հայերէն շատերը կորսնցուցած էին իրենց ազգային նկարագիրը, եւ մոռցած մայրենի լեզուն եւ նոյնիսկ քրիստոնէութիւնը:

Ամէնանշանաւորը այդ լեռնային փոքրիկ ու ազատ համայնքներէն՝ Զէյթունն էր (Լէօ, Գ., էջ 149), իսկ Հայաստանի մէջ կը յիշուէին Մոկս եւ Շատախ գաւառները Վասպուրական նահանգին մէջ: Աւելի նշանաւոր էր Տիարպէքիրի նահանգը, ուր մի քանի գաւառներու Հայերը, իբրեւ քաջ եւ պատերազմասէր լեռնականներ՝ ազատութիւնը կը պահէին Քիւրտերուն հետ միացած: Այդ տեղերն էին Սավուր, Խզու, Իսիան, որոնցմէ վերջինին մասին կան բաւական տեղեկութիւններ (տես Լէօ, Գ., էջ 150):

Իսիան կը նշանակէ ապստամբութիւն: Այնտեղի հայ գիւղերը սովորաբար քրտախօս էին եւ հազիւ հազ կը պահէին իրենց քրիստոնէութիւնը: Հայերը հետեւակ էին եւ շատ նշանաւոր հրացանաձիգներ, որովհետեւ իրենց զաւակները կը վարժեցնէին նշանառութեան՝ հինգ տարեկանէն սկսեալ: Այս էր իրենց արհեստը եւ ապրուստի միջոցը, որովհետեւ աւելի աւազակութեամբ կ'ապրէին քան խաղաղ աշխատանքով: Մարմինով յաղթանդամ էին, բարձրահասակ եւ շատ ուժեղ: Միշտ կը շրջէին զինուած: Լուսնկայ գիշերները աւազակութեան ելլելով՝ կը հագնէին վերէն վար ճերմակ հագուստներ, այնպէս որ ճամբորդները կը կարծէին թէ անոնք մարդիկ չեն, այլ ճերմակ քարի կտորներ: Պատերազմի ատեն իրենց տան գոյքերը կը թաղէին գետնափոր գաղտնի փոսերու մէջ, կիներն ու երախաները կը փակէին ամրացուած աւանի մը մէջ, իսկ իրենք կ'երթային պաշտպանելու լեռնային անցքերը: Կռիւի ժամանակ կանայք ու երեխաները աւանին մէջ ուրախութեան ձայներ բարձրացուցած կ'երգէին թշնամիին դէմ: Այնքան սիրելի էր անոնց համար պատերազմը, որ թշնամիներու գալստեան լուրը աւետիս կը համարէին (Հ. Ձ. Ինճիճեան, *Աշխարհ*, *Հատ.* Ա., էջ 161—163 եւ 234—235):

Անոնք սակայն անկազմակերպ տարր էին եւ եր-

բէք կարելի չէր զանոնք կառավարութիւն կամ տէրութիւն նկատել:

Թուրքիա ընկնած էր Հայերը իր սահմաններէն ներս եւ նոյն իսկ չէր հանդուրժեր որ պարսիկ տէրութեան սահմաններուն մէջ — ուր անոնք ունէին ինքնավար կամ կէս անկախ շրջաններ — անոնք զօրանային: Արդարեւ թաթար ոյժերու կողմէ հայ իշխանութիւններու վերջին մնացորդները ջնջուելէն վերջ, տակաւին լեռնային Ղարաբաղի մէջ Հայերը կը շարունակէին ապրիլ հին կարգերով:

Հակառակ անոր որ Հայաստանի մէջ պայմանները այնքան փոխուած էին, սակայն տակաւին հին հայկական նախարարութիւններու հետքերը կը մնային: Այնպէս, Սիւնեաց լեռներուն մէջ իրենց գոյութիւնը կը պահէին աւատական կալուածատիրութիւնները իրենց յենարան դարձուցած տիրողներ կամ իշխողներ: Անոնք մեծ ու փոքր կալուածատէրեր էին: Այսպէս, ամբողջ երկիրը ծածկուած էր մեծ ու փոքր կալուածատէր-իշխողներու խիտ ցանցով մը, որոնցմէ պզտիկները ենթարկուած էին մեծերուն, ինչպէս երբեմն հայ նախարարութիւններուն մէջ:

Անոնք *նախարարի* տեղ *մելիք* կը կոչուէին եւ կը թուի թէ շարունակութիւններն էին այն գիւղական թագաւորութիւններուն, որոնք Բագրատունեաց շրջանին երեւան եկան Սիւնեաց լեռներուն մէջ, Աղուանից կամ Սիւնեաց թագաւորութեան անունով:

Անոնց ծննդաբանութիւնը կը հասնէր մինչեւ Հայոց պատմութեան այն փառաւոր շրջանը ուր Հայաստանի հիւսիսային լեռնական նահանգներուն մէջ կազմակերպուեցաւ հայ իշխանական տոհմերու հզօր դաշնակցութիւն մը՝ Զաքարիա Սպասալարի գլխաւորութեամբ (Նմմտ. Լէօ, *Հայոց Պատմ.*, Գ. հտ., էջ 497), եւ մասնակցութեամբ խնամի եւ բարեկամ իշխանական տուներու, ինչպէս Դոփեաններու, Մելիք Շահնազարեաններու, Հասան-Ջալալեաններու եւայլն (*Նոյն*, էջ 497—498):

ԺԶ. դարուն նոր Սեֆեան Պարսկաստանի զօրանալէն վերջ, Պարսիկ Շահերը ուզեցին որ Ղարապաղի այս հայ իշխան-կալուածատէրերը ճանչնան Պարսկաստանի վեհապետութիւնը եւ հաստատուին իրմէ, անուանելով *մելիք*, անշուշտ ոչ թէ այս բառին հին եւ իրական իմաստով (թագաւոր), այլ իբրեւ գաւառական մասնաւոր կառավարիչներ:

Այսպէս, իրականօրէն անոնք ժառանգաբար կ'ստանային իրենց իշխանութիւնը, բայց ձեւապէս պարսիկ Շահերէն կ'առնէին իրենց իշխանութիւնը, նման վրաց թագաւորներուն:

Մելիքները ունէին մասնաւոր առանձնաշնորհներ եւ ինքնավար իշխաններու յատուկ կարգ մը իրաւունքներ, եւ իբրեւ հիմնարկութիւն կը գրաւէին պարսիկ պետութեան մէջ զարմանալի դիրք մը (1):

Մելիքները մեծ պատիւ ունէին Հայերուն մէջ, նոյնիսկ Ղարապաղի սահմաններէն դուրս:

Իբրեւ խոշոր կալուածատէրեր եւ արեւելեան նորտեր՝ մելիքները մեծ հարստութիւն կը դիզէին եւ կ'ապրէին ճոխութեան մէջ, հետեւելով բարձրաստիճան աւագանիի նիստ ու կացին, բայց միեւնոյն ատեն մնալով կատարեալ ժողովրդական մարդիկ, ժողովուրդի մէջ ապրող եւ ժողովուրդին հետ շփում ունեցող (Լէօ, *Նոյն*, էջ 506): Անոնք իրենց լեռնային գաւառակներու պաշտպանութեան համար ունէին սեփական զօրք, բերդեր եւ ամրոցներ (*Նոյն*, էջ 510): Առանց ուրիշ մանրամասնութիւններու մէջ մտնելու, կրնանք ըսել թէ Ղարապաղի հսկայական լեռնաշխարհը գրեթէ անվթար պահած էր իր ծոցին հայկական ինքնուրոյնութեան գլխաւոր եւ հիմնաւոր յենարանները — ամէն բանէ առաջ հայ իշխանները յանձին մելիքներու, որոնք հին նախարարական կալուածատիրութեան հարազատ ներկայացուցիչներն էին (*Նոյն*):

Ժողովուրդը ինչպէս հին ատեն, անխօս էր, զուրկ նախաձեռնութենէ եւ լիովին յանձնուած՝ իր իշխաններու խնամատարութեան:

Մելիքները հին աւատական շրջանի նորտերուն պէս, չափազանց տեղական պզտիկ շահերու կապուած, իրարու հետ թշնամանալով բախում կ'ունենային, ինչ որ զիրենք կը տկարացնէր:

Հակառակ այս անկազմակերպ վիճակին մելիքութիւնները եղան այն կռուանը՝ որուն վրայ փորձեցին ոմանք կառուցանել հայկական անկախ պետութիւն մը, Հայաստանի հողին վրայ, եւ յաջողեցան իսկ կազմելու՝ երազի մը չափ տեւող հայ իշխանութիւն մը, որ շուտով նուաճուեցաւ, դժբախտաբար:

Այդ փորձարկումներուն մէջ ամէնէն նշանաւորը հանդիսացաւ մելիքական ընտանիքներէն մէկուն պատկանող դէմք մը՝ Իսրայէլ Օրին, որ ԺԷ. դարուն վերջերը հայկական պետութիւն մը հիմնելու գաղափարը ունեցաւ եւ հայ ազատագրական պայքարին ռահվիրան հանդիսացաւ, գործնականին մէջ կէս երազային եւ կէս արկածախնդրական գործունէութեամբ մը:

Ազատագրութեան այս ձգտումը ԺԸ. դարուն առաջին քառորդին վերջերը գործնական կերպարանք առաւ Լեզկիներու արշաւանքին պատճառով, վասնզի այս լեռնականները, 1719ին, 1720ին, եւ 1722ին, ամէն տարի Տէրպէնտէն անցնելով՝ Տաղստանէն հարաւ իջան, եւ աւարի տուին երկիրը, մինչ Երեւանի եւ Գանձակի պարսիկ խաները ոչինչ կրնային ընել անոնց դէմ: Բնակչութիւնը այս կացութենէն մղուած՝ ինքն իր գլխուն ճարը նայելու հետամուտ եղաւ եւ 1722ին Դիզակի մէջ հայ եւ մահմետական միացած դիմադրեցին Լեզկիներուն, որոնք իրենց գաւառը քար ու քանդ ըրին: Վարանդայի մելիքը ուրիշ ճար չգտաւ եթէ ոչ կաշառքով փրկել իր երկիրը, իսկ Խաչէն ծանր կորուստներ կրեց եւ խոշոր գերեվարութեամբ մը դատարկացաւ:

Այս դէպքերը առաջ բերին հակազդեցութիւն մը մը, եւ Հայերը պատրաստուեցան ինքնապաշտպանութեան եւ կազմեցին հայ բանակ, նախաձեռնութեամբ Աղուանից Եսայի կաթողիկոսին եւ քաջալերութեամբ Վրաց Վախթանգ թագաւորին:

Այս շարժումին խթան եղաւ նաեւ Մեծն Պետրո-

(1) *Մելիքութիւններու կազմակերպութեան և իրաւանց մասին մանրամասնութիւններ տուած է Լէօ* (Հայոց Պատմ., էջ 499—502 *եւ յաջորդները*):

սի 1722ին ձեռնարկած արշաւանքը, որ ոգեւորեց եւ յոյսեր ներշնչեց Հայոց: Այնպէս որ, երբ Լեզկիները դարձեալ արշաւեցին, անպատրաստ եւ անպաշտպան չգտան երկիրը:

Լեռներու մէջ ամրացած, զինուած, Հայերը դիմադրեցին եւ ետ մղեցին այդ գիշատիչ լեռնականները: Հասարակաց վտանգին առջեւ միացած այս կռուող ուժերը կազմակերպուեցան եւ ծնաւ հայ զինուորական ոյժ մը որ, մելիքներու սեփական զօրքերէն անջատ էր:

Այսպէս, Հայերը ունեցան երեք բանակ:

Ա) Մեծ Սղնախը, որուն հրամանատարն էին՝ Աւան Իւզպաշին, Մելիք Յովսէփը եւայլն:

Բ) Փոքր Սղնախը, Վարանդայի մէջ, Շուշիէն քիչ հեռու:

Գ) Ղափանի բանակը, որուն պետն էր Վրաստանի մէջ զինուորական ասպարէզի մէջ մարզուած Սիւնեցի Դաւիթ բէկը:

Այս երեք բանակներուն համագումարը 10,000 հոգիէն քիչ մը աւելի էր: Հակառակ իրենց այս սակաւ թիւին՝ Հայերը կացութեան տէր դարձան Կովկասի ստորոտը, վասնզի Պարսկաստանի մէջ կեդրոնական իշխանութիւնը ծանր տագնապի մատնուած էր Աֆղաններու արշաւանքին հետեւանօք:

Աֆղանները գրաւած էին Սպահանը եւ սպաննած Հիւսէյին Շահը: Ամբողջ երկիրը անիշխանութեան մատնուած էր: Այս խառնակ վիճակը յարմար առիթ նկատելով՝ Մեծն Պետրոս, 1722ին ինքն ալ արշաւել սկսած էր դէպի հարաւ, իսկ Թուրքերը կանխելու համար Մեծն Պետրոսը՝ իրենք ալ մտած էին Կովկաս եւ կ'աճապարէին գրաւել Վրաստանը եւ Երեւանը:

Բայց Մեծն Պետրոս շուտով լքեց իր արշաւանքը, մեծ յուսախաբութեան մատնելով թէ՛ Վրացիները եւ թէ Հայերը, որոնք առանձին մնացին թէ լեռնականներուն եւ թէ Պարսիկ ու Օսմանեան բանակներուն դէմ եւ հարկադրուած առանձին վարեցին պայքարը, միշտ ակնկալելով օտարներու աջակցութիւնը, որ բնաւ չհասաւ եւ հայ բանակը տրորուեցաւ Սիւնեաց լեռներուն վրայ, ներքին եւ արտաքին թշնամիներուն միջեւ (1):

Օսմանեան բանակը 1723ին գրաւեց Գանձակը եւ հրաւիրեց հայ բանակին հրամանատարը Մելիք Աւանը, որ իր զօրքերով միանայ Օսմանեան բանակին: Հայերը մերժեցին այս առաջարկը:

Քիչ վերջը, 1723 Սեպտ. 12ին Մեծն Պետրոս զինակցեցաւ Թահմազ գահազուրկ Շահին հետ եւ յանձն առաւ Պարսկաստանը պաշտպանել ամէն յարձակման դէմ, ի փոխարէն ստանալով Տէրպէնտը, Պագուն, Գիլանը, Մազանդարանը եւ Աստրապատի նահանգները:

Այս դաշինքով Մեծն Պետրոս խոշոր պատառ մը իւրացնելէ վերջ կը լքէր Հայերը եւ Վրացիները իրենց բախտին, ինչպէս նաեւ Թահմազ Շահը, վասնզի անոր ալ դրական օգնութիւն մը չընծայեց, երբ Օսմանեան բանակները 1724ին առաջացան մինչեւ Խոյ, Համատան, Երեւան եւ հաստատուեցան Վրաստան, փախստական դարձնելով Վախտանկը եւ միայն Հայերը մնացին Օսմանեան բանակներուն դէպի Պագու առաջացման ճամբուն վրայ՝ Ղարապաղի եւ Ղափանի մէջ իրենց բանակներով խոչընդոտ: Երբ Թուրքերը մտան Արարատեան դաշտը, Երեւանի պարսիկ խանը լքեց քաղաքը եւ ետ քաշուեցաւ: Հայերը ընդհակառակը Կարբիի մէջ դիմադրեցին եւ Թուրքերը շատ մեծ դժուարութեամբ էր որ ընկճեցին զանոնք եւ առաջացան Երեւան, ուր դարձեալ Հայերը դիմադրեցին. սակայն մի քանի ամիսներու կռիւէն վերջ Թուրքերը իրենց գերակշիռ ուժին շնորհիւ վերջապէս յաջողեցան գրաւել քաղաքը, մեծ կորուստներ տալէ վերջ:

Հայերը իզուր կ'աղերսէին եւ կը թախանցէին Մեծն Պետրոսի, որ Պարսկաստանի հետ կնքած զինակցութենէն վերջ, 1724 Յունիս 24ին, Օսմ. կառավարութեան հետ ալ համաձայնեցաւ եւ անոնց ձգեց հարաւային Կովկասը՝ Կասպից ծովու եզերքներէն եւ Ատրպատականէն զատ: Շամախին տրուեցաւ Տաղստանցի Տաութ պէկին, Սուլթանի նորտին, եւ այսպէս, Ղարապաղ եւ Ղափան մտան Օսմանեան տիրապետութեան սահմաններուն մէջ, երբ արդէն Հայերը Դաւիթ բէկի գլխաւորութեամբ, չորս տարուան ընթացքին մաքրած էին Սիւնիքի Մահմետական բնակչութիւնը եւ հոն հիմնած հայկական իշխանութիւն մը՝ ուժին իրաւունքով:

Արդարեւ, Դաւիթ բէկ, Ղափանի մէջ քիչ ատենէն համախմբած էր ըմբոստ տարրերը եւ Ղափանը վերագրաւել փորձող պարսիկ խաներու դէմ երկարատեւ պայքարներ մղած եւ յաղթական դուրս եկած էր այս անհաւասար կռիւէն, յաջողելով Զանգեզուրը եւ Մեղրին ազատել Պարսիկ լուծէն եւ միանալ Մեծ Սղնախի եւ Փոքր Սղնախի կռուող ուժերուն, որոնց հետ ազատագրած էր նաեւ Ղարապաղը:

Դաւիթ բէկ իրեն նստոց ըրած էր Հալիձորը՝ հոն կառուցանելով ամուր բերդ մը:

Իր հիմնած հայ փոքրիկ իշխանութիւնը՝ գտնուելով ճամբուն վրայ Օսմ. բանակներուն՝ խոչընդոտ կը կանգնէր անոնց առաջացման, մերժելով ճամբայ տալ (1724), որպէսզի թուրք բանակը Ղարապաղի ճամբով դէպի Շամախի եւ Կասպից ծովին եզերքը առաջանար:

Բնական է Թուրքերը ասոր պիտի չհանդուրժէին եւ ինչ որ պահանջած ու չէին ստացած, զէնքով առնել պիտի ուզէին: Ուստի 1725ին թուրք բանակը կ'առաջանար դէպի Սիւնիք: Հայերը կը կռուէին Օսմ. կանոնաւոր բանակներուն դէմ անկանոն արձակազէնի կռիւներով:

Օսմանեան բանակները արդէն հիւսիսէն հասած էին Ղարապաղ, երբ 1726ին սկսան հարաւէն ալ գործել Հայոց դէմ եւ մօտեցան Ղափանի եւ գրեթէ զայն պաշարեցին: Հայերէն շատերը օսմանեան ուժին առջեւ տկարացան եւ Դաւիթ բէկը մինակ ձգեցին Հալիձորի մէջ, միայն 17 մարդով:

Դաւիթ բէկ անվհատ հոգիով նոր զօրք հաւաքեց եւ կազմակերպեց փոքրաթիւ ոյժ մը, հազիւ մի քանի հարիւր հոգի եւ պատերազմ յայտարարեց Օսմանեան բանակներուն դէմ:

(1) *Մանրամասնութեանց համար կարդալ Լէօյի* Հայոց Պատմութիւն, *Գ. հատոր, ինչպէս, նոյն հեղինակէն՝* Հայկական Տպագրութիւնը *(Բ. հատոր, յաւելուածէն էջ 222—415) եւ* Խօջայական կապիտալ *գործը: Կարեւոր օժանդակներ են նաեւ Չամչեանի* Հայոց պատմութիւնը *եւ Օրմանեանի* Ազգապատումը *եւ ուրիշ Հայ պատմութեան վերաբերեալ ձեռնարկներ:*

Թուրք զօրքերը թիւով 70,000, (որոնց մէջ էին նաեւ Նախիջեւանի, Ագուլիսի, Ջահուկի, Զաւրնտուրի եւ Բարկուշատի անձնատուր հայ գունդերը, առանց հաշուելու ծառայութեան եւ բռնակրութեան հարկադրեալ գիւղացիներու բազմութիւնը) ներխուժեցին Ղափան եւ պաշարեցին 1726 Մարտ 5ին Հալիձորը, Դաւիթ Բէկի նստոցը եւ 8 օր բուռն յարձակումներ գործեցին, ուժով գրաւելու համար բերդը:

Մխիթար սպարապետը եւ Տէր Աւետիքը 300 զինուորներով՝ հերոսական յարձակումով մը Հալիձորէն դուրս խոյանալով ցրուեցին Օսմանեան ահարկու բանակը: Թշնամին հեռացաւ Ղափանի շրջանէն եւ վերականգնեցաւ Դաւիթ Բէկի իշխանութիւնը Սիւնիքի մէջ: Դաւիթ Բէկ անվհատ շարունակեց իր պայքարը թրքական նոր յարձակումներու դէմ:

Այս կռիւներուն մէջ Հայերը յաջողեցան գրաւել նաեւ Մեղրին:

Թահմազ Շահ, որ նոյնպէս կը կռուէր Օսմանցիներուն դէմ եւ կը գտնուէր տագնապալի կացութեան մէջ, նկատելով որ Հայերը կազմակերպուած ռազմական ոյժ մը ունին եւ այսքան քաջաբար կը դիմադրեն Օսմանեան բանակներուն, ճանչցաւ Դաւիթ Բէկը իբրեւ Ղափանի իշխան, անոր տուաւ նոյնիսկ դրամ հատանելու իրաւունք, եւ ընդունեց իրեն եղած դաշնակցութեան առաջարկը եւ Դաւիթ Բէկը նշանակեց ընդհանուր հրամանատար, Կովկաս գտնուող պարսկական զինուորական ոյժերուն:

Այսպէս, իրագործուեցաւ Օրիի երազը եւ Հայերը ունեցան իշխանութիւն մը (1727):

Դաւիթ Բէկ շարունակեց կռիւը Օսմանցիներու դէմ եւ առաջացաւ մինչեւ Ագուլիս: Եւ այս միայն Հայոց՝ իրենց սեփական ոյժերով, վասնզի՝ ինչպէս տեսնուեցաւ՝ Ռուսերը, հակառակ Հայոց ակնկալութեան, փոխանակ իրենց օգնութեան գալու, մղուած իրենց սեփական շահերէն, հաշտութեան դաշինք կնքած էին թէ Պարսկաստանի եւ թէ Թուրքիոյ հետ, եւ դաւած էին Հայոց, զանոնք իրենց թշնամիներուն դէմ ձգելով մինակ:

Դաւիթ Բէկի իշխանութիւնը, որ Հայաստանի մէկ փոքր մասը ունէր իր գրաւման տակ, երկար անիշխանութենէ մը վերջ Հայաստանի հողին վրայ կազմուած առաջին Հայկական անկախ իշխանութիւնն էր, որ դժբախտաբար չկրցաւ երկար ապրիլ, վասնզի անոր քաջ վարիչը՝ Դաւիթ Բէկ կանխահաս կերպով մեռաւ 1728ին Հալիձորի մէջ եւ իրեն յաջորդեց Մխիթար սպարապետը, որ միայն մէկ տարի իշխեց:

Տէր Աւետիքի դաւաճանութեամբ՝ Հալիձոր անձնատուր եղաւ Թուրքերուն, որոնք քարուքանդ ըրին բերդը (1729):

Մխիթար սպարապետ անցաւ հիւսիսային Սիւնիք եւ հաստատուեցաւ Խնձորեսք բերդը:

Անիկա մէկ տարուան մէջ կրցաւ նոր զօրք հաւաքել եւ յարձակիլ Օրտուպատի վրայ, եւ մեծ աւարով դառնալ Խնձորեսք, որուն բնակիչները՝ Հալիձորի ճակատագրին ենթարկուելու վախով՝ վատաբար 1730ին կ'սպաննեն Մխիթար Սպարապետը:

Այնուհետեւ Դաւիթ Բէկի կառուցած շէնքը կ'սկըսի քայքայուիլ արագութեամբ: Կը ցրուին զօրքը եւ իր զօրապետները եւ վերջ կը գտնէ Հայկական այդ անկախ իշխանութիւնը, հազիւ մի քանի տարիներու գոյութենէ վերջ: Վերակազմուած Պարսկաստանը՝ Նատիր Շահի գլխաւորութեամբ՝ այլեւս պէտք չունէր Հայերու օգնութեան, դիմադրելու համար Օսմանցիներուն եւ Ռուսերուն, քանի որ անիկա իր սեփական ուժով վերագրաւած էր Հայաստանը եւ Վրաստանը եւ Ռուսերը խոհեմութիւն համարած էին կամովին դարձնելու Պարսկաստանի իրենց գրաւած հողերը՝ մինչեւ Տէրպէնտ:

Հայկական անկախութեան յոյսը անգամ մը եւս փճացած էր:

Նատիր Շահ հարաւային Կովկասի Պարսիկ խաներու անջատողական ձգտումներուն հակազդելու համար, Հայերը սիրաշահելու եւ զանոնք գործիք ծառայեցնելու միտքով, Ղարապաղի մանր մելիքութիւններէն կազմեց հինգ համեմատաբար խոշոր մելիքութիւններ, որոնք կոչուեցան *Խամսայի Մելիքութիւններ*:

Ասոնք էին.

Ա) Կիւլիստան, որ կը գտնուէր Գանձակի հարաւակողմը, Մռաւ լեռան շրջակայքը:

Բ) Ջրաբերդ՝ Թարթառ գետին միջին հոսանքին վրայ:

Գ) Խաչէն՝ Խաչէն գետի հովիտին մէջ:

Դ) Վարանդա՝ Խաչէն գետի հովիտէն դէպի հարաւ՝ Շուշիի շրջակայքը:

Ե) Դիզակ՝ որ կը տարածուէր Վարանդայէն դէպի հարաւ:

Մելիքները կը ներկայացնէին նոր իրաւակարգով դարձեալ հայկական ինքնավար շրջան մը, որ կրնար յառաջիկային կորիզ մը կազմել Հայ անկախ իշխանութեան մը, սակայն տեւական չեղաւ Նատիրի վերակազմած Պարսկաստանին կեանքը:

Իր մահէն վերջ՝ հարաւային Կովկասի մէջ հաստատուած խաները չճանչցան կեդրոնական իշխանութեան հեղինակութիւնը, եւ սկսան իրարու դէմ մաքառիլ:

Այս քայքայումէն օգտուելով՝ անգամ մըն ալ Հայերը փորձեցին քաղաքական անկախութեան ձգտիլ եւ որովհետեւ դարձեալ օտար ուժերու ապաւինելու ձախող քաղաքականութեամբ գործեցին, ուրիշ ոչ մէկ արդիւնք քաղեցին՝ եթէ ոչ պարսիկ տէր իշխանութեան տեղ Կովկասի մէջ տեղաւորեցին Ռուս զօրաւոր պետութիւնը, առանց իրենց երազին հասնելու: Իսկ ինչ որ աւելի ցաւալի է՝ կորուսին ինչ որ ունէին անկախութեան կամ ինքնավարութեան իբրեւ վերջին հետքեր: Այնպէս որ Հայաստանի մէջ չմնաց ոչ մէկ վայր՝ որ Հայերով կառավարուէր, մինչեւ Վասպուրականի իշխանութեան եւ Երեւանի հանրապետութեան հռչակումը, որոնք նոր շրջան մը կը բանան մեր պատմութեան մէջ:

ժ.

## ԱՆԿԱԽ ՀԱՅԱՍՏԱՆ

Թուրք, Պարսիկ եւ Ռուս տիրապետութիւններու տակ Հայաստանի մէջ Հայկական անկախութեան ամէն հետք ջնջուած էր, թէեւ Հայերը բնաւ դադրած չէին իրենց անկախութեան երազէն, որքան որ իրենց ուժերը շատ տկար էին՝ զայն շռնի ձեռք բերելու համար:

Մասնաւորապէս ԺԹ. դարուն՝ Հայերը իրենց մտաւոր զարգացմամբ անհանդուրժելի կը համարէին օտար բռնակալ լուծը, զոր թօթափելու համար անզօր ճիգեր կը գործադրէին գաղտնի գործող կարգ մը մարմիններ, դժբախտաբար թերի պատրաստութիւններով, առանց գետին յարդարելու եւ յաճախ տղայական երազատեսութեամբ մը յաղթական յեղափոխութեան մը ցնորքը սնուցանելով, առանց յաջողութեան, վասնզի ներքին ոյժէն աւելի օտար ոյժերու վրայ կը հաշուէին եւ օտարներէն կ'ակնկալէին օգնութիւն մը, որ բնաւ չհասաւ:

Բայց այն ստորերկրեայ աշխատանքը, զոր մեր յեղափոխական մարմինները կատարեցին, գոնէ ունեցաւ այն օգտակարութիւնը որ հայ ժողովուրդին մէջ արծարծեցին անկախութեան իղձը, զոր իրագործելու եւ երազը իրականութեան վերածելու համար բնաւ նպաստաւոր չէին պայմանները, որոնց մէջ կ'ապրէին Հայերը, թէ Ռուսիոյ եւ թէ Թուրքիոյ մէջ երկու կառավարութիւններու ալ դէպի Հայերը սնուցած անբարեացակամութեան պատճառով:

Սակայն անակնկալ պատահար մը, որ յանկարծական կերպով բռնկցուց համաշխարհային գուպար մը 1914 Օգոստոս 1ին, առաջ բերաւ յեղաշրջում մը եւ դէպքերու այնպիսի դասաւորութիւն մը, որ Հայաստանի հողին վրայ, երկու հարիւր տարի վերջը հայկական անկախութեան յետին նշոյլներուն անհետացումէն, կը կազմուէր Հայ անկախ երկու իշխանութիւններ, որոնցմէ մին՝ այն որ Վասպուրականի մէջ կազմուած էր, միայն վեց ամիս ապրեցաւ եւ միւսը՝ Արարատեան նահանգին մէջ ստեղծուածը, որ կը շարունակէ, աւելի քան երբեք ամուր հիմերու վրայ դրուած եւ իբրեւ մէկ անդամը ազատ հանրապետութիւններու հզօր միութեան մը, որ աշխարհի մէկ հինգերորդին վրայ կը տարածուի, եւ ամենապատկառելի ոյժ մը կը ներկայացնէ, ինչպէս տեսնուեցաւ վերջին համաշխարհային պատերազմին (1939—1945) մէջ:

Անցեալ ընդհանուր պատերազմին (1914—1918)՝ երբ Թուրքիա իբրեւ Գերմանիոյ դաշնակիցը 31 Հոկտ. 1914ին պատերազմի մէջ նետուեցաւ, Հայերը ջնջելով հայկական խնդիրը վերջացնելու հնօրեայ ծրագիրը գործադրելու յարմար առիթը գտած համարելով, տարագրութեան եւ կոտորածներու ձեռնարկեց: Դժբախտաբար Հայերը անպատրաստ դիմագրաւելու այս տեսակ զարհուրելի դաւ մը, ոչխարային համակերպութեամբ մը իրենց բնակավայրերէն քշուեցան դէպի Արաբիոյ անապատները, ճամբան կողոպտուելով եւ ջարդուելով: Միայն մի քանի վայրերու մէջ — Շապին Գարահիսար, Ուրֆա եւայլն — Հայերը հերոսական դիմադրութիւն մը ցոյց տուին, սակայն դժբախտաբար կտրուած աշխարհէն, դիւցազնական մաքառումէ մը վերջ ընկճուեցան եւ ջարդուեցան:

Այդ ըմբոստ վայրերէն մէկն էր Վանը՝ որ բախտաւոր եղաւ, դուրսէն հասնող օգնութեան շնորհիւ փրկուելով:

Արդարեւ, 6 Ապրիլ 1915ին, Վանի Հայերը թուրք անասելի խժդժութեանց դէմ ըմբոստացան: Ռուս բանակին կողքին կռուող հայ կամաւորներ դուրսէն հասան օգնութեան եւ պարտաւորեցին Թուրքերը որ լքեն Վանը, ուր քիչ յետոյ մտաւ Ռուս բանակը: Եւ հոն 1915 Մայիսի սկիզբն իսկ հիմը դրուեցաւ հայկական վարչութեան մը: Սակայն այս կառավարութիւնը հաստատուն կեանք ու տեւականութիւն չէր ունենար, վասնզի ռուս բանակները կը նահանջէին քանի մը անգամ եւ կը պարպէին Վանը:

Ռուս բանակները յետոյ կը յառաջանային Հայաստանի սիրտը՝ մինչեւ Տարօն, Շապին Գարա Հիսար եւ Պոնտոս:

5 Յունիս 1916ին Թրքահայաստանի համար ընդհանուր նահանգապետ մը կը նշանակուէր եւ առժամեայ օրէնքներ կը հաստատուէին։ 25 Ապրիլ 1917ին ռուս առժամեայ կառավարութիւնը Թրքահայաստանի համար կարգադրութիւններ կ'ընէր, եւ զայն քաղաքային վարչութեան տեսակէտով կ'ենթարկէր ուղղակի առժամեայ կառավարութեան եւ կը նշանակէր ընդհանուր կոմիսար մը:

Մարտ 1917ի Ռուս յեղափոխութիւնը երբ կազմալուծեց բանակը, եւ 1917 Սեպտ. եւ Հոկտ. ամիսներուն, երբ 10,000նոց Ռուս բանակը եւ 300 Ռուս քաղաքային պաշտօնեաներն այս ընդհանուր քայքայման հետեւանօք թողուցին Վանը, Հայերը հարկադրուեցան տէր կանգնիլ քաղաքին եւ Հայաստանի հողին վրայ կազմել առաջին Հայ անկախ կառավարութիւնը՝ որուն ենթարկուած էին.

Ա) Վան քաղաքը եւ իր արուարձանները,
Բ) Հայոց Ձոր,
Գ) Պաշգալէ,
Դ) Արճակ,
Ե) Սարայ,
Զ) Թիմար,
Է) Բեկրի Գալէ,
Ը) Արճէշ-Ալջավազ,

Այս շրջաններէն իւրաքանչիւրն ունէր իր գաւառապետը, որ իր քովն ունէր գաւառին ժողովուրդէն ընտրուած ներկայացուցչական խորհուրդ մը:

Հայ անկախ կառավարութիւնը ունէր վարչութիւն մը՝ կազմուած 9 տեսուչներէ, որոնց պետն էր նահանգապետ եւ արտաքին գործոց տեսուչ Կոստիա Համբարձումեան:

Կառավարական պաշտօնէից թիւն էր 130 եւ երկիրին կարգապահութեան հսկելու համար կազմուած էր՝ 1 Մայիս 1917ին՝ ոստիկանութիւն մը 200 պաշտօնեաներով:

Այս իշխանութիւնը կարճ ժամանակամիջոցի մը մէջ կազմակերպեց պետական ամբողջական կազմ մը:

Պետութիւնը բացած էր 25 դպրոց 47 ուսուցիչներով, 1220 երկսեռ աշակերտներով եւ ամսական 6765 ռուբլի ծախքով։ Հաստատուած էր հարկային կանոնաւոր դրութիւն եւ որոշ տուրքեր: Պետութեան պիւտճէն կը հասնէր 10 ու կէս միլիոն ռուբլիի, որմէ սակայն 3 միլիոնը կարելի կ'ըլլար հայթայթել տուրքերով:

Կառավարութիւնը 1918 Փետրուարին հրապարակ կը հանէր 164,000 ռուբլի թղթադրամ զոր ապահոված էր իր եւ անգլ. պետութեան Թիֆլիսի ապայակոյտին ներկայացուցիչներէն՝ Քէբբըն Մ. Գրէյսիի կողմէ, որ Վանի անկախ կառավարութեան կազմակերպութեան առաջին օրերուն հոն կը գտնուէր եւ օգնած էր Զօր. Սիլիկեանի՝ կազմակերպելու Հայ բանակը, անգլ. ապայակոյտի անունով յանձն առնելով հոգալ Վանի Հայ իշխանութեան զին. բաժնի ամբողջ ծախքը, որ

մօտաւորապէս ամսական կէս միլիոն ռուբլիի կը հասնէր: Մ. Գրէյսի կը խոստանար նաեւ տալ 20 զնդացիր եւ 12 թնդանօթ, իրենց մարզիկներով: Անկէ զատ, Հայ եւ Քիւրտ գործակցութիւն մը ստեղծելու համար, Մ. Գրէյսի 1917 Դեկտ.ին կ'երթար Խոյ, կը տեսակցէր աւազակապետ Սմկոյի հետ եւ կը յաջողէր խոստում ստանալ անկէ: Յետոյ կ'անցնէր Ջուղայի ճամբով Կովկաս, որպէսզի իր խոստումը կատարէր, սակայն չէր կրնար դառնալ Վան, Կովկասի ներքին խռովութեանց եւ մանաւորապէս Գերմաններուն դէպի Կովկաս յառաջացման պատճառով:

Այսպէս, 1917 Հոկտ.ին Հայաստանի հողին վրայ ծնունդ կ'առնէր Հայ անկախ կառավարութիւն մը իր ամէն ստորոգելիներով:

Դժբախտաբար Ռուսերուն Հայաստանէն քաշուելէն խրախուսուած՝ Թուրքերը կը պատրաստուէին յարձակիլ այս Հայ անկախ կառավարութեան վրայ, հակառակ անոր որ 30 Դեկտ. 1917ին Խորհրդային Միութեան Ժողովրդական Կոմիսարներու Խորհուրդը հրովարտակով մը կը յայտարարէր Հայ ժողովուրդին, թէ Ռուս կառավարութիւնը պէտք պաշտպանէր Հայոց իրաւունքները Ռուսիոյ կողմէն գրաւուած Թրքահայկական Հայաստանի ազատ ինքնորոշման հիման վրայ, մինչեւ լիակատար անկախութիւն: Թուրքերը, որոնք գործնապէս տեսած էին Ռուսերու տկարութիւնը, բնաւ ուշադրութիւն չընծայեցին այս յայտարարութեան եւ առաջանալ սկսան Ռուսերու գրաւած հողերուն վրայ:

Այսպէս, 1918 Մարտ 12ին գրաւեցին Կարինը եւ դէպի Կարս, Արտահան, Ալեքսանդրապոլ առաջացան: Կարա Քիլիսէի եւ Ալաշկերտի բնակիչները խոյս տուին, եւ Պայազիտ ապառնալիքի տակ էր:

Միայն Վան կը մնար, կտրուած արտաքին աշխարհէն, իր սեփական ուժերով թշնամիին դիմադրելու զբաղած:

17 Մարտ 1918ին Վանի անկախ կառավարութեան հրամանատարութիւնը անակնկալօրէն կ'ստանար հեռագիր մը, որով հրահանգ կը տրուէր իրեն Վանը թողուլ եւ Կովկաս անցնիլ: Վանի Հայ իշխանութեան Բարձրագոյն Խորհուրդը Մարտ 19ի իր բացառիկ ժողովին մէջ նկատի ունենալով երկիրին պայմանները ու Կովկասէն հասած հակասական լուրերը, ժողովրդական ներկայացուցիչներու հետ կ'որոշէ չնահանջել՝ մինչեւ վերջնական հրահանգ, այն յոյսով որ Կովկասի հետ յարաբերութիւն ստեղծել եւ Անգլիացիներէն խոստացուած օգնութիւնը ստանալ կարելի պիտի ըլլար:

Վանի անկախ կառավարութիւնը իր 2370 զինուորներով բանակը եւ 80 զնդացիրները կը ղրկէ՝ դիրք բռնելու համար Վանի ծովին հարաւ-արեւմտեան եւ հիւսիս-արեւմտեան ճակատներուն վրայ: Մինչեւ 1918 Փետրուար, Զօր. Նազարբէկեանի բանակը գտնուելով Ախլաթ, լուրջ երկիւղ մը չկար հիւսիսի՝ Առնիսի ճակատէն, իսկ Արճէշ Հայ կառավարութեան ձեռքն էր: Ալշավազ գաւառը անբնակ էր, բայց երբ ռուս բանակին քայքայման պատճառով Ախլաթը լքուեցաւ, Թուրք բանակը Կամուրջն ալ գրաւեց (1918 Փետրուար)՝ փորձելով առաջանալ մինչեւ Ալշավաղ:

Հարաւային ճակատին վրայ Գաւաշն էր կեդրոնը Թուրք բանակին, որուն շուրջ հաւաքուած էին բազմաթիւ քիւրտ ցեղեր: Այդ ճակատին մէկ մասը կը կազմէր Պաշ-Գալէի ճակատը, որ Մուսուլի ճամբան էր, ուրկէ Հայերը կ'սպասէին անգլ. յառաջխաղացումը: Հոնկէ էր որ Հայ բանակը կապուած էր Սալմաստի հետ, ուր պատրաստուած հայ նոր գումարտակ մը Հայ բանակին թիկունքը կը պաշտպանէր: Վանի Հայ կառավարութիւնն ի զուր ամէն ջանք կ'ընէր բանակին թիկունքին սպառնացող քիւրտ ցեղերու բարեկամութիւնը շահելու համար:

Թուրքերը յարձակողականի կ'սկսին 21 Մարտ 1918ին՝ հարաւէն, բայց կը ձախողին եւ ետ կը վանուին: Իսկ հիւսիսային ճակատին վրայ Հայերը կը գրաւեն Ալշավազը,—ուր թուրք յառաջապահներ մտեր էին— եւ ծովէն կը ռմբակոծեն Կամուրջը եւ Ախլաթը, մեծամեծ կորուստներ պատճառելով թշնամիին պահեստիներուն:

Ապրիլ 2ին Թուրքերը կ'սկսին յարձակողականի, հարաւէն՝ Ոստանի եւ յաջորդ օրն ալ Առնիսի ճակատներէն: Կարճ յաջողութենէ մը վերջ Հայերը կ'սկսին ընկրկիլ:

Հայ կառավարութիւնը կը յայտարարէ թէ պէտք է ժողովուրդը դէպի Կովկաս քաշուի: Սակայն ճամբաները բռնուած ըլլալուն, հազիւ 4—5 հազար հոգի կը յաջողին անցնիլ Կովկաս, քանի մը հազար ժողովուրդ կը մնայ Վանի լինին կղզիները, իսկ մնացեալները, մօտաւորապէս 12,000 հոգի, Վանի իշխանութեան անդամներէն մէկ մասին հետ Ապրիլ 6ին կ'անցնին Պարսկաստան:

8 Ապրիլ 1918ին ժողովուրդը Կոթուր հասած էր արդէն, երբ քաղաքը Թուրքերուն ձեռք ինկաւ եւ վերջ գտաւ Հայկական հողի վրայ կազմուած առաջին անկախ կառավարութիւնը, որ ընդամէնը վեց ամսուան կեանք մը ունեցած էր:

Երբ Վանի անկախ կառավարութիւնը կը ջնջուէր, անդին գոյութիւն առած էր «*Անդրկովկասի Դաշնակցական-Ռամկավար Հանրապետութիւն*»ը, որուն մէջ իրաւատէր երեք ժողովուրդներէն մին ալ Հայերն էին: Ան ալ ծնունդ առած էր 1917 Մարտի Ռուս յեղափոխութենէն: Քերենսքիի առժամեայ կառավարութիւնը Անդրկովկասի համար ստեղծած էր վարչական մասնաւոր խորհուրդ մը՝ «*Անդրկովկասի մասնաւոր Կոմիթէ*» անունով: Երբ 1917 Նոյեմբերին պոլշեւիկները Քերենսքիի կառավարութիւնը տապալեցին եւ հաստատեցին Ռուսիոյ մէջ սովիեթական վարչութիւն մը, Անդրկովկաս մերժելով անոնց հեղինակութիւնը ճանչնալ՝ կազմեց Անդրկովկասեան Կոմիսարութիւնը, որ 28 Նոյեմբեր 1917ին հռչակուեցաւ գերագոյն հեղինակութիւն:

Պոլշեւիկ շարժումը սկսելէ ետք, ռուս ուժերը կովկասեան ճակատը լքելով՝ դարձան Ռուսիա: Թաթարք Թուրքիոյ հետ կը համաձայնէին բացորոշ կերպով: Վրացիք Գերմանիոյ հետ յարաբերութեան կը մտնէին եւ կը մնան չէզոք՝ կռուողներուն հանդէպ. միայն Հայերն էին որ կը շարունակէին ճակատիլ Թուրքիոյ դէմ: 1917 Նոյեմբերէն մինչեւ 1918 Մարտ, 6 ամիս անդադար հայկական ուժերը —դանդաղօրէն հաւաքուած եւ դժուար պայմաններու, անիշխանութեան եւ շփոթութեան մէջ կազմակերպուած— կը կռուին ճակատ առ ճակատ Թուրքերուն դէմ, կռնակնին ունենալով Թաթարները:

Գերազանց ուժերու առջեւ կը քաշուին Հայերը,

քայլ առ քայլ կռուելով իրենց նահանջի միջոցին: Վերջապահներու կռիւներ կը մղուին Երզնկա եւ Մամախաթուն եւ Կարինէն անցնելով մինչեւ նախկին ռուս եւ թուրք սահմանագլուխ, միեւնոյն ատեն պաշտպանելով Հայ քաղաքային բնակչութիւնը, որ կը փախչէր դէպի հիւսիս, թուրք ջարդերու սարսափին տակ:

Երբ այս կը կատարուէր Հայաստանի հողին վրայ, անդին, Կովկաս՝ լքուած Ռուսերէն՝ կը մնար ինքնանագլուխ: Կովկասի երեք գլխաւոր ազգերուն՝ Հայոց, Վրաց եւ Թաթարներուն քաղաքական կուսակցութեանց ներկայացուցիչներէն գրեթէ հաւասար թիւով առնուած անդամներով Սէյմ (Օրէնսդիր Ժողով) մը կը գումարուի 1918 Փետրուարին՝ Թիֆլիս, նոր կացութեան համապատասխան կարգադրութիւն մը ընելու համար: Սէյմը վերջ կու տայ Քոմիսէրներու Խորհուրդին իշխանութեան եւ կը կազմէ առժամեայ կառավարութիւն մը՝ 11 նախարարներով, որոնցմէ 5 կարեւորները Վրացի, 3ը՝ Հայ, մնացեալ երեքը Թաթար: Այսպէս, առանց յայտարարութեան, Անդրկովկաս գործնականապէս կը բաժնուէր Ռուսիայէն, միշտ իրաւապէս անոր մասը նկատուելով:

Սակայն թուրք բանակներու յառաջխաղացումը, ռուս բանակներու քայքայումը եւ Պրէսթ-Լիթովսքի բանակցութիւնները հարկադրեցին Անդրկովկասեան կառավարութիւնը՝ Թուրքերու հետ ուղղակի բանակցելու:

1918 Մարտին, Տրապիզոնի մէջ կ'սկսի բանակցութիւն մը, որ արդիւնք չ'ունենար, զի Թաթարները եւ Վրացիները կը դաւեն Հայոց դէմ, առանձին համաձայնելով Թուրքերուն հետ:

Թուրք բանակը, զօրացած Սիւրիոյ ճակատէն բերուած երկու զօրաբաժիններով, յաղթական, նախկին ռուս եւ թուրք սահմանագլուխը հասնելէն վերջ կանգ չ'առներ հոն, այլ կ'առաջանայ դէպի Կովկաս: 31 Մարտ 1918ին Սէյմը կը բողոքէ ասոր դէմ եւ բանակցութիւնները խզուած կը յայտարարէ: Եւ որովհետեւ Պրէսթ-Լիթովսքի մէջ Ռուսիա լքած էր Կարսը, Արտահանն ու Պաթումը, Անդրկովկասի կառավարութիւնը նոյն դաշնագիրն ստանալու պարտաւորութենէն ազատ մնալու համար՝ գործնականապէս արդէն իրագործուած բաժանումն իրաւապէս ալ կը նուիրագործէ Սէյմը, հանդիսաւոր յայտարարութեամբ մը 22 Ապրիլ 1918ին, հռչակելով Անդրկովկասի բաժանումը Ռուսիայէն եւ կազմութիւնը «Անկախ Անդրկովկասի Դաշնակցական-Ռամկավար Հանրապետութեան»: Այս կառավարութիւնը հազիւ հինգ շաբաթ ապրեցաւ, վասնզի անոր բաղկացուցիչ տարրերը իրենց սեփական ձգտումներով իրարու դէմ կը կանգնէին եւ շահերու համերաշխութիւն մը ո՛չ թէ միայն չէր ստեղծուած, այլ ներքին գաղտնի դաւերով պառակտումը աւելի կը շեշտուէր օրէ օր: Այնպէս որ, Անդրկովկասի Դաշնակցական-Ռամկավար Հանրապետութեան հռչակումին յաջորդ օրն իսկ (23 Ապրիլ 1918) նոր կառավարութեան պետը Չխենկէլի, առանց դահլիճ կազմելու եւ Հայերու հետ խորհրդակցելու, կը հեռագրէ Կարսի հրամանատար Զօր. Նազարբէկեանին որ Կարսը յանձնէ Թուրքերուն եւ ըստ Պրէսթ-Լիթովսքի Դաշնագրին՝ քաշուի Ալէքսանտրապոլ: Զօրավարը, որ նահանջող հայկական ուժերը հաւաքած եւ Կարս ամրացած էր՝ կը պարտաւորուի գործադրել այս հրահանգը:

Բայց Թուրքիա, առանց նկատի առնելու Պրէսթ-Լիթովսքի Դաշնագիրին պայմանները, կանգ առնել չ'ուզեր այդ դաշնագիրով որոշուած սահմանին վրայ: Վեհիպ փաշա Մայիս 26ին Կովկասի Սէյմի պատուիրակներուն կը ներկայացնէ վերջնագիր մը, պահանջելով Ախալցխան, Ախալքալաքը, Ալեքսանդրապոլի շրջանն ամբողջ, Սուրմալուն, Նախիջեւանն ու Էջմիածինը: Վերջնագիր, որուն նպատակն էր Անդրկովկասի ազգութիւնները բաժան բաժան ընել եւ մէկիկ մէկիկ ջախջախել զանոնք: Առաջին հարուածը Հայերն էին որ պիտի կրէին: Թուրքերը Թրքահայաստանի Հայութիւնը բնաջինջ ընելէ յետոյ կ'սպառնային ջնջել նաեւ Ռուսահայաստանի բնակչութիւնը:

Վրացիները եւ Թաթարները ապահովուած Թուրքերէն՝ Հայոց համար զոհողութիւն չէին ուզեր ընել: Ընդհակառակը՝ Հայերը չէին կրնար թողուլ որ Թուրքերը գային զիրենք ջարդել, ուստի չէին կրնար համակերպիլ Վեհիպ փաշայի պահանջներուն:

Այլեւս Անդրկովկասի Դաշնակցական կառավարութիւնը իր գոյութեան իրաւունքը կը կորսնցնէր, եւ ամէն ազգ պէտք էր որ իր գլխուն ճարը նայէր: Հետեւաբար՝ պարզ ձեւակերպութիւն մըն էր՝ երբ 26 Մայիս 1918ին Սէյմը կը հռչակէր Անդրկովկասի Դաշնակցական հանրապետութեան բաժանումը, հրաժարելով իր հեղինակութենէն,

Արդէն նոյն օրը Վրաց Ազգային Խորհուրդը կը հռչակէր Վրաստանի անկախութիւնը, մինչ Ատրպէյճանցիք ալ հռչակած էին իրենցինը ի Պագու, յաջորդ օրը 27 Մայիս 1918):

Այսպէս, Հայերը մինակ կը մնային Կովկասի ճակատին վրայ, դէմ դէմի թուրք արշաւողներուն, որոնք Ալեքսանտրապոլը գրաւելէ վերջ՝ կ'առաջանային երկու տարբեր ուղղութեամբ, դէպի հարաւ՝ Արարատեան դաշտ եւ դէպի հիւսիս՝ Բամբակ եւ Լոռի: Հայ ուժերն ու երկսեռ ժողովուրդն անխտիր ծառացած ընդդէմ թրքական այս ճնշումին, զօտեպնդուելով վերջին գերագոյն պայքարին համար: Եւ իրաւամբ, Արագածի ստորոտը, Սարտարապատի առջեւ (Արարատ) եւ Ղարաքիլիսէի (Բամբակ) լեռներուն վրայ, երկու պատմական ճակատամարտներ կը վճռեն Հայերու բախտը:

Թուրքերը պարտուած՝ կանգ կ'առնեն եւ հետեւաբար Թուրք կառավարութիւնը կը ճանչնայ Հայկական Անկախութիւնը, սահմանափակ հողաբաժինի մը վրայ:

Երբ անդին Հայ ժողովուրդը իր բախտը կը վճռէր զէնքով, այդին՝ Թիֆլիսի մէջ՝ Հայոց Ազգ. Խորհուրդը կու տայ վճռական որոշում մը եւ 1918 Մայիս 28ին ինքզինքը կը յայտարարէ Ազգային Գերագոյն Իշխանութիւն եւ հայկական խնդիրները լուծելու միակ ձեռնահաս օրգան, փութալով Երեւան, Հայ հանրապետութեան գաղափարը հիմնաւորելու եւ մարմնացնելու համար:

Այսպէս, կը կազմուէր Հայկական անկախ պետութիւն մը Հայաստանի մէկ պզտիկ մասին վրայ, Երեւան մայրաքաղաքով: Թուրքիա ասիկա կը ճանչնար՝ 4 Յունիս 1918ին Պաթումի մէջ հայ պատուիրակներուն հետ իր կնքած համաձայնութեան իբրեւ հետեւանք:

Թուրքիա հոն կը խոստանար նաեւ հաշտութեան դաշինք մըն ալ կնքել, որուն համար Յունիս 11ին կը

հրաւիրէր հայ պետութիւնը՝ պատուիրակներ ղրկել Պոլիս:

26 Հոկտ. 1918ին կնքուած համաձայնութեամբ՝ Թուրքիա կը քաշէ իր զօրքը մինչեւ Պրէսթ-Լիթովսքի դաշնագրութեամբ որոշուած սահմանագլուխը: Սակայն քանի մը օր ետքը Մունդրոսի մէջ կնքուած զինադադարը կը հարկադրէ Թուրքերը քաշուիլ աւելի ետ, մինչեւ ռուս եւ թուրք 1878ի սահմանագլուխը: Մինչ այն արդէն Խորհրդային Ռուսաստան 13 Նոյեմբեր 1918ին չեղեալ կը յայտարարէր Պրէսթ-Լիթովսքի դաշնագիրը:

Արդարեւ, 1918 Դեկտ.ին Թուրքիա կը յանձնէ Կարսը եւ Պաթումը դաշնակիցներուն: Ճիշդ այդ օրերուն Հայ կառավարութիւնը խնդիր կ'ունենայ Վրաստանի հետ Լոռիի եւ Ախալքալաքի շրջաններուն համար: 4 Դեկտ. 1918ին կ'սկսի Հայ-Վրացական առաջին ընդհարումը:

Զինակիցներու միջամտութեամբ՝ Դեկտ. 25ին զինադադար կը կնքուի, Լոռիի մէկ մասը չէզոք գօտի հռչակուելով:

Յաջորդ տարին, Ապրիլ եւ Մայիս ամիսներու ընթացքին՝ Հայ բանակը կը գրաւէ Կարսը, Կաղզուանը, Արտահանը, Շարուր-Նախիջեւանի շրջանները, 300,000 բնակչութեամբ:

26 Օգոստոս 1919ին Հայ բանակը կը յաղթէ նաեւ Մուսթաֆա Քեմալի զօրքերուն ի Սարը Ղամիշ:

1919 Յուլիսին Թուրքերը եւ Թաթարները դաւադրութեամբ չորս կողմէն կ'արշաւեն Հայաստանի վրայ: Ղարաբաղի նահանգապետ Տոքթ. Սուլթանով կը սարքէ կոտորածներ, ստիպելու համար Ղարաբաղի լեռնականները, որ ընդունին Ատրպէյճանի իշխանութիւնը: Արիւնալի կռիւներէ յետոյ՝ Անգլ. միջամտութեամբ այս շրջանը առժամապէս կ'ենթարկուի Թաթար իշխանութեան, վերջնական որոշումը ձգուելով Խաղաղութեան Վեհաժողովին: Նոյն բանը կը փորձեն Զանգեզուրի մէջ կրկին անգամներ, մինչեւ Պոլշեւիկներուն գալուստն ու այս շրջանն ալ իւրացնելը (1920 Մայիս):

30 Նոյեմբ. 1918ին, Ազգ. Պատուիրակութիւնը կը հռչակէր Միացեալ Հայաստանի Անկախութիւնը Փարիզի մէջ, սակայն Հայ հանրապետութիւնն էր որ 28 Մայիս 1919ին կը նուիրագործէր զայն, Միացեալ Հայաստանի անկախութեան յայտագիրով եւ խորհրդարանին անդամակցութեան հրաւիրելով 12 հոգի, իբրեւ Արեւմտահայութեան ներկայացուցիչ:

19 Յունուար 1920ին՝ Խաղաղութեան Վեհաժողովը, 28 Ապրիլին ալ Միացեալ Նահանգները «արդեամբ» (de facto) կը ճանչնան Հայաստանի անկախութիւնը, առանց անոր ապագայ սահմանները որոշելու:

Իսկ Օգոստոս 10ին Սեւրի դաշնագիրը կը նուիրագործէ Հայաստանի «իրաւական» (de juri) ճանաչումն ալ, ընդունելով զայն ի շարս դաշնակից եւ յաղթական պետութեանց՝ որոնք այդ դաշնագիրը պարտադրած էին Թուրքիոյ:

Նոյն Դաշնագիրը կը նուիրագործէր նաեւ Միացեալ Հայաստանը, պարտաւորելով Թուրքիան՝ Հայաստանին թողուլ իր չորս արեւելեան նահանգներէն այն մասերը, զորս նախագահ Ուիլսընն իբր իրաւարար՝ պիտի որոշէր:

Սակայն Սեւրի դաշնագիրը պարտադրող ոյժ մը չկար եւ ոչ ալ զայն ուղղամտօրէն գործադրելու տրամադրութիւն՝ Թուրքերուն կողմէ:

Ընդհակառակն՝ Միլլի կազմակերպութեան վրայ յեցած, Մուսթաֆա Քեմալի Էնկիւրիի մէջ ստեղծած կառավարութիւնը, զէնքի ուժով կը մերժէր գործադրել այդ Դաշնագիրը, զոր Պոլսոյ Թուրք կառավարութիւնը ստորագրած էր:

Միլլի կառավարութիւնը հետեւաբար կատաղի հակառակորդ մըն էր Հայաստանի Հանրապետութեան, որ Սեւրի դաշնադրութեամբ իր իշխանութեան տակ գտնուած խոշոր հողաբաժինի մը պահանջողը կը դառնար:

Թրքական քեմալութեան բնական հետեւանքն էր թաթարական ատելութիւնը, զի Ատրպէյճան պարզապէս թուրք ստեղծագործութիւն մըն էր եւ թրքական քաղաքականութեան մէկ գործիքը՝ Կովկասի մէջ: Վրաստան թրքական հողերէն ոչինչ կը պահանջէր, հետեւաբար շատ տրամադիր չէր Թուրքերուն դէմ մաքառելով՝ անոնց զայրոյթն իր վրայ հրաւիրելու, երբ մանաւանդ Հայոց ալ բարեկամ չէր, զի 1918 Դեկտ.ի պատերազմը խրամ բացած էր երկու ժողովուրդներուն միջեւ:

Հայաստանի դժուարին դիրքը աւելի եւս ծանրացաւ, երբ պոլշեւիք Ռուսիոյ վարիչները դրամատիրական տէրութեանց դէմ ըլլալու համար գործակցեցան թուրք Միլլի կառավարութեան հետ, եւ քաջալերեցին այս կառավարութիւնը, որ Հայաստանի ներքին անդորրութիւնը խռովելու համար Հայաստանի թուրք բնակչութիւնը կը գրգռէր Հայ կառավարութեան դէմ,. որ առանց անոր ալ ներքին դժուարութիւններ ունէր՝ երկրին քայքայուն վիճակին եւ մասամբ կառավարութեան կուսակցական կազմին հետեւանքով:

Գետինը պատրաստ էր հակապետական թելադրանքներու համար: Ուրեմն Պոլշեւիկները կրցան առաջ բերել 1920ի մայիսեան շարժումը որ Հ. Հ. կառավարութիւնը զսպեց. սակայն ինչպէս կ'երեւայ, պոլշեւիկեան գաղափարները լայն գետին գտած էին Հայ բանակին մէջ, որ ամէնէն յարմար կայանն էր այդ հակազինուորական գաղափարները արդիւնաւորելու: Հայ հանրապետութիւնը 1920 Օգոստոսին գործնապէս Սեւրի դաշնագիրը իրագործելու համար յառաջխաղացման փորձ մը ըրաւ Օլթին գրաւելով:

Էնկիւրիի Միլլի կառավարութիւնը, որ կը պատրաստուէր ոեւէ փորձ դիմագրաւել, Սեպտ. 20ին եւ 21ին Սարը Ղամիշի մօտ սկսաւ կռիւի՝ Քէօրօղլի—Պաշի սարի ուղղութեամբ, եւ Սեպտեմբեր 22ին Օլթին ետ առաւ:

Սեպտ. 29ին կռիւները ստացան աւելի կատաղի բնոյթ, եւ Հայաստան փորձեց գերագոյն ճիգ մը:

Հոկտեմբեր 1ին կացութիւնը կը ծանրանայ եւ Կարսը վտանգի տակ ըլլալը կը մատնանշուի:

Հոկտեմբեր 5ին քեմալական ուժերը շարունակելով հանդերձ իրենց յարձակողականը Սարըղամիշի եւ Կաղզուանի ուղղութեամբ եւ հրետանիի մեծ կռիւ մը կատարելով հանդերձ Նովո-Սելիմի կողմը, Իկտիրի կողմէն ալ կ'սկսին յարձակողականի:

Հայ բանակը կ'ընկրկի եւ տեղի կու տայ թուրք զօրքին առջեւ:

Հոկտ. 31ին Կարսը, «Հայաստանի բանալին» ա-

ռանց դիմադրութեան հայ բանակը կը ձգէ Թուրքերուն, որոնք բնակչութեան բոլոր այրերը գերի կը վարեն եւ քաղաքը ջարդի եւ թալանի կ'ենթարկեն:

Երբ Հայաստանի հարաւային սահմանին վրայ այս լուրջ եղերական դէպքերը տեղի կ'ունենային, երկրին հիւսիսային սահմանին վրայ ալ ոչ նուազ ճակատագրական իրողութիւններ կը պատահէին, թրքական յառաջխաղացման հետ գրեթէ միաժամանակ:

Սեպտեմբեր 19ին՝ Ռուս Կարմիր բանակէն մասեր յանկարծ յառաջ կը խաղային Ղազախի շրջանին մէջ՝ Աքիպարայի կիրճէն եւ կը գրաւէին հայկական հողեր: Հանրապետութեան զօրքը Սեպտ. 21ին կը վերագրաւէր Աքիպարան, Բոզոմխս, Այրում եւ Կուզզի-Այրում գիւղերը:

Այս կերպով Հանրապետութիւնը երկու ճակատի վրայ կռիւի կը բռնուէր, եւ մուրճին ու սալին մէջտեղ կը մնար: Անկարելի էր միեւնոյն ատեն կռուիլ թէ Ռուս եւ թէ Թուրք բանակներուն դէմ:

Ուստի՝ Հոկտ. 1ին բողոք մը ներկայացնելով Մոսկուայի բանակցութեան կը վերսկսի՝ Սովետական Ռուսաստանի Հայաստանի դիւանագիտական լիազօր Լըկրանի հետ, եւ 21 Հոկտեմբեր 1920ին կ'ստորագրուի համաձայնագիր մը, որով Ռուսերը կը խոստանային իրենց ազդեցութիւնը ի գործ դնել Թուրքիոյ եւ Ատրպէյճանի վրայ, որպէսզի անոնք հողային զիջումներ ընէին Հայաստանի:

Այս պայմանագրութեան համաձայն՝

ա) Հ. Հանրապետութեան պիտի ձգուէր ամբողջ Երեւանի նահանգը, Կարսի նահանգը, Զանգեզուրի գաւառը, Ղազախն ու Լոռին.

բ) Թրքական զօրքերը պիտի պարպէին ամբողջ Ռուսական Հայաստանը, մինչեւ 1914ի սահմանները.

գ) 1914ի սահմաններէն մինչեւ Տրապիզոն, Կարին եւ Մուշ տարածութենէն թուրք զօրքը պիտի քաշուէր եւ միայն թրքական վարչութիւնը պիտի մնար.

դ) Անոնցմէ վերջ միայն Ռուսաստանի օժանդակութեամբ եւ աջակցութեամբ պիտի սկսէին Էնկիւրիի եւ Հայաստանի միջեւ բանակցութիւններ՝ սահմաններու վերջնական ճշդումին համար.

ե) Ռուսաստան Հայաստանի պիտի տար նաւթ եւ այլ անհրաժեշտ պիտոյքներ.

զ) Ռուսաստան Հայաստանի կառավարութեան պիտի զիջէր հայկական քանի մը մշակութային հիմնարկութիւններ, որոնք կը գտնուին ռուսական քաղաքներու մէջ, իրենց ամբողջ հարստութեամբ, ինչպէս Լազարեան ճեմարանը, գրադարանները եւայլն:

Անոնց փոխարէն՝ Հայաստան Սովետական Ռուսաստանի, պիտի տար *թրանզիթի* իրաւունք, զէնք եւ ռազմամթերք անցնելու համար դէպի Թուրքիա, Տրապիզոն-Կարին-Մուշ գիծէն անդին: Ռուսաստան պիտի ապահովէր, որ այդ զէնքն ու ռազմամթերքը չգործածուին Հայաստանի դէմ եւ իբր *թրանզիթի* իրաւունք՝ անոնց 25 առ. 100-ը պիտի ձգուէր Հայաստանի:

Հայաստանի կառավարութիւնը երբ խնդրեց որ այս համաձայնութիւնը — որ երկիրը կը փրկէր անել կացութենէ մը — շուտով իրագործուի, Լըկրան անհրաժեշտ համարեց երթալ Պագու՝ Ատրպէյճանի հետ սահմաններու մասին համաձայնութիւն գոյացնելու, ինչպէս նաեւ Մոսկուա՝ իր կառավարութեան եւ այնտեղ գտնուող թուրք պատուիրակութեան հետ որոշ եզրակացութեան գալու նպատակով:

Իր մեկնումէն հազիւ քանի մը օր յետոյ Հայաստանի մէջ դէպքերը կը գահավիժէին եւ այդ համաձայնութեան կնքումէն 10 օր հազիւ անցած՝ Կարս կ'իյնար եւ թուրք զօրքերը կը հասնէին Ալեքսանդրապոլի առջեւ:

Եթէ կռիւը քանի մը օր ալ շարունակուէր՝ Թուրքերը կրնային Երեւան մտնել:

Կառավարութիւնը Նոյեմբեր 3ին կը հեռագրէ Էնկիւրիի կառավարութեան՝ զինադադարի եւ հաշտութեան բանակցութեանց ձեռնարկելու իր պատրաստակամութիւնը: Գարա Պէքիր փաշայի պահանջով հայ զօրքը Ալեքսանդրապոլը կը պարպէր եւ Նոյեմբեր 7ին զինադադար կ'ըլլար:

Սակայն յաջորդ օրը Էնկիւրիւ կը պահանջէր այնպիսի բաներ, որոնք Նոյեմբեր 11ին Խորհրդարանէն միաձայն կը մերժուէին, եւ կ'որոշուէր զէնքերու բախտը անգամ մըն ալ փորձել:

Նոյեմբեր 12էն 18 կատաղօրէն կռուելէ յետոյ՝ Հայ բանակը կը պարտուէր եւ Նոյեմբեր 18ին նոր զինադադար մը կը կնքուէր եւ Նոյեմբեր 25ին կ'սկըսէին Ալեքսանդրապոլի մէջ հաշտութեան բանակցութիւնները:

Դեկտ. 3ին կը կնքուէր Ալեքսանդրապոլի դաշնագիրը, որով Հայաստան կը զիջէր մինչեւ Արաքս եւ Արածանի գտնուող հողամասերը Թուրքիոյ եւ կը մերժէր եւ չեղեալ կը հռչակէր Սեւրի դաշնագիրը եւ այլ այնպիսի պայմաններ որոնք Թուրքիայէն մեր բոլոր պահանջներուն ուրացումն էին:

Մինչ այն, արդէն Հայաստան կ'ընդունէր «խորհրդային վարչաձեւ»:

Ամէնէն առաջ Ալեքսանդրապոլցիք իմանալով Թուրքերու մերձենալն ու կառավարական պաշտօնեաներուն քաղաքը ձգել փախչիլը, Նոյեմբեր 8ին յայտարարած էին Պոլշեւիկեան իշխանութիւն, թուրք հրամանատարութեան հովանիին տակ:

Գարա-Քիլիսէ եւ Սանահին երկարող տարածութեան վրայ գտնուող բնակչութիւնն ալ, նաեւ հոն ապաստանած գաղթականները, համակրութիւն ցոյց կու տային պոլշեւիկներուն հանդէպ եւ կ'ուզէին տապալել կառավարութիւնը:

Հայաստանի միւս վայրերուն մէջ ալ այս տեսակ խմորումներ կային, որոնց ուժ կու տար Նոյ. 21ին Մոսկուայէն Երեւան վերադարձող Լըկրանի պատուիրակութիւնը:

Նոյեմբեր 17ին կը կազմուի «Խորհրդային Հայաստանի Ռազմայեղափոխական Կոմիտէ» անունով մարմին մը: Այդ օրերուն Բամբակ-Ղազախ շրջանի կարգ մը գիւղերէն մասնակի դիմումներ կ'ըլլան պոլշեւիկներու եւ Իջեւանի մօտ բանակած ռուս կարմիր զօրամասին՝ գալ եւ կառավարել Բամբակ-Ղազախի շրջանը, Թուրքերու մուտքն արգիլելու համար:

Նոյեմբեր 28ին պոլշեւիկեան 11րդ բանակի 6—7 հազար զինուորները 8—12 թնդանօթներով՝ երեք ուղղութեամբ կը խուժէին Հայաստան:

Նոյեմբեր 29ին Դիլիջանի մէջ կը կազմուէր *Հայաստանի Յեղկոմը*, որ ռուս բանակին հետ կ'առաջանար:

Նոյեմբեր 30ին Լըկրան բացորոշ յայտարարեց թէ վճռուած էր Հայաստանը խորհրդային դարձնել:

Արդարեւ, արդէն երկու օր վերջ, Դեկտ. 2ին, Հայաստան կը հռչակուէր խորհրդային:

Հայաստանի խորհրդային դառնալէն անմիջապէս ետք՝ Խորհրդային Ռուսիոյ արտաքին գործոց քոմիսէր Չիչերին՝ Դեկտ. 6 թուականով ծանուցագիր մը կ'ուղղէ Մուսթաֆա Քեմալի եւ կը պահանջէ պարպել Հայաստանի գրաւեալ մասերը:

Դեկտ. 14ին Երեւանի մէջ հրատարակուիլ սկսող *Քոմունիստ* թերթը, հայերէն եւ ռուսերէն իր առաջին թիւին մէջ կը հրատարակէր կառավարական յայտարարութիւն մը, որ չեղեալ կը հռչակէր Ալեքսանդրապոլի Դաշինքը, սակայն թէ՛ Չիչերինի պահանջը եւ թէ Խորհրդային Հայաստանի կառավարութեան յայտարարութիւնը ոչինչ չփոխեցին, եւ Ալեքսադրապոլի դաշինքը մնաց, վասնզի խորհրդային կառավարութիւնը՝ թէեւ հաստատուած Հայաստանի մէջ՝ տակաւին չէր կրցած ապահով դիրք մը ունենալ:

Զանգեզուրի եւ Դարալագեազի մէջ նախկին կառավարութիւնը տէր էր կացութեան եւ կ'սպառնար Երեւանի:

Պաշ-Քեառնիի եւ Պաշ-Ապարանի գիւղացիք, որոնք միշտ ըմբոստ մնացեր էին, Փետր. 15ին յառաջ կը խաղան: Աշտարակ, Վաղարշապատ, Կոտայք կը ծաւալի շարժումը եւ Փետր. 17ի գիշերը կը գրաւուի Երեւանի արուարձանը՝ Քանաքեռ:

Փետր. 18ին Երեւանի մէջ կը կազմուի «*Հայրենիքի Փրկութեան Քոմիթէ*» մը, իբրեւ կառավարութիւն, մինչ Հայաստանի համայնավար կառավարութիւնը, կուսակցութիւնը եւ Հայաստանի Կարմիր Բանակէն 3–4 հազար հոգի զրահապատ կառախումբով կը քաշուին դէպի հարաւ, Ղամարլուի, Վեդրի եւ Շարուրի շրջանները:

Լոռի եւ Գարագիլիսէ կը պահեն պոլշեւիկեան վարչաձեւը եւ պոլշեւիկները չեն դադրիր հոսելէ:

«Փրկութեան Քոմիթէն» ի զուր ոգորումներէ յետոյ, Ապրիլ 2ին Երեւանը կը թողու եւ կ'ապաստանի Զանգեզուր, իր հետ տանելով Երեւանի բնակչութեան մէկ գլխաւոր մասը՝ մօտ 15,000 հոգի, որոնցմէ մէկ մասը կ'անցնի Իրան:

Խորհրդային նոր կառավարութիւնը Ապրիլ 10ին կը հրատարակէ ընդհանուր ներում, որոշ վերապահումներով, որ Ապրիլ 24ին լիակատարի վերածուեցաւ:

Խորհրդային կառավարութեան կարեւոր յաջողութիւններէն մին եղաւ 1920 Ապրիլ 21ին Ալեքսանտրապոլ կարեւոր քաղաքին Թրքաց կողմէ պարպումը եւ կցումը Խորհրդային Հայաստանին:

Ապրիլ 20ին Հայ Կարմիր Բանակը մտաւ առաջին անգամ Շարուր եւ փորձեց երկիցս «Լեռնահայաստանի կառավարութեան» հետ խաղաղ բանակցութեամբ հրաւախոհութեան մը գալ, սակայն մերժումի հանդիպեցաւ:

Նոյնիսկ 16 Յունիսին, Լեռնահայաստանի բանակը գրաւեց Շարուր-Դարալագեազը: Այն ատեն Հայաստանի Ռուս Կարմիր Բանակին հրամանատար Հէքեր հրամայեց զէնքի ուժով վերջ տալ ըմբոստութեան: Գորիս գրաւուեցաւ, նոյնպէս Դիզակ եւ Վարանդա: Ապստամբները քաշուեցան Ղափան, որ Յուլիսին ինկաւ Պոլշեւիկներուն ձեռք՝ առանց կռիւի եւ Հայաստանի միասնականութիւնը վերահաստատուեցաւ:

Լոռին — երբեմն Հայաստանի եւ Վրաստանի միջեւ կռուախնձոր, ապա չէզոք գօտի — Հայաստանի վարչութեան տակ մտաւ եւ Թիֆլիսէն 4 ժամ հեռու Սազախլու՝ սահմանը եղաւ Վրաստանի: Զանգեզուր միացաւ Հայաստանի:

Ղարաբաղ սկզբունքով Հայաստանի մաս հռչակուած, լայն ինքնավարութիւն ստացաւ Ատրպէճանի հովանաւորութեան տակ, նոյնպէս Նախիջեւան:

Կարսը մնաց Թուրքերուն ձեռքը:

Խորհրդային Հայաստան հռչակուեցաւ անկախ պետութիւն՝ Խորհրդային Ռուսաստանի հանդէպ ունենալով այն դիրքը՝ զոր ունէին նախկին ռուս կայսրութենէն բաժանեալ Լեհաստան, Լիթուանիա, Էսթոնիա, Լաթուիա, Ֆինլանտա եւ Վրաստան, այն տարբերութեամբ որ անոնք արեւմտեան պետութեանց յարած էին, մինչ Հայաստան եւ Վրաստան՝ ռուսականին:

1921 Յունիս 2ին Հայաստանի, Վրաստանի եւ Ատրպէճանի միջեւ արտաքին առեւտուրի համար դաշինք մը կնքուեցաւ, ինչ որ առաջնորդեց յետոյ այս երեք հանրապետութիւնները կազմելու միութիւն մը՝ բանակի, արտաքին քաղաքականութեան, մաքսային, հաղորդակցութեան եւ թղթատարութեան տեսակէտով, պահելով իրենց տեղական ինքնօրինութիւնը եւ անկախութիւնը եւ այսպէս կազմելով Անդրկովկասեան Հանրապետութեանց Դաշնակցութիւնը, որ 1922 Մարտ 12ին հռչակուեցաւ:

1921 Հոկտ. 13ին Կովկասեան երեք հանրապետութեանց, ինչպէս նաեւ Էնկիւրիի եւ Մոսկուայի ներկայացուցիչներուն միջեւ կնքուած Կարսի դաշինքով խաղաղութիւն կը կնքուէր, Ալեքսատրապոլի դաշինքին հողային տրամադրութիւնները անփոփոխ պահուելով:

1921 Նոյեմբեր 6ին Թիֆլիսի մէջ կնքուեցաւ դաշինք մը, որով ճշդուեցաւ Հայաստանի եւ Վրաստանի սահմանը փոխադարձ զիջումներով:

1922 Դեկտ. 10ին Պագուի մէջ վերջապէս լուծուեցաւ Կովկասեան Միութեան հարցը, նոր խորհըրդակցութեամբ մը, մինչ 1922 Դեկտ. 30ին հռչակուած նոր Սահմանադրութիւնը, Ռուսիոյ պատմութեան համար կը բանար նոր էջ մը, վասնզի Ռուսիա կը դադրէր միութիւն մը ըլլալէ եւ անոր չորս մասերը, Ռուսաստան, Ուքրանիա, Պելոռուսիա եւ Կովկաս իբրեւ ինքնավար պետութիւններ միանալով՝ կը կազմէին նոր միութիւն մը, որ պիտի կոչուէր «*Խորհրդային Ընկերվարական Հանրապետութիւններու Դաշնակցութիւն*» առանց Ռուսիոյ մասնաւոր յիշատակութեան:

Հետզհետէ աւելի բարեշրջուելով վերջապէս Ռուսիա վերածուեցաւ խորհրդային ընկերվարական հանրապետութիւններու դաշնակցութեան մը, որ 16 միաւորներ ունէր, որոնցմէ մէկն էր Հայաստան, որ այլեւս մաս չէր կազմեր Կովկասեան Դաշնակցութեան, այլ ուղղակի կապուած էր Մոսկուայի կեդրոնին:

Այս կերպով Հայաստան կ'ստանար պատեհութիւն անջատօրէն զարգանալու եւ Հայութեան միակ յոյսը հանդիսանալու, մանաւանդ Լօզանի դաշինքէն (1923 Յուլիս 24) յետոյ, որ կատարեալ լքումն ու ուրացումն էր քաղաքականութեան մը, որուն ամէնէն գլխաւոր զոհը մենք՝ Հայերս կ'ըլլայինք:

Եւրոպական դրամատիրական երկիրները կը մոռնային Հայոց տուած իրենց բազմաթիւ խոստումները

եւ հաւատքները եւ արեան այնքան մեծ զոհողութիւնները, զորս Դաշնակիցներու դատին համար Հայերը ըրած էին:

Եւրոպա Հայկական դատը Լօզանի մէջ այնքան անարգ ու այնքան անխղճաբար անամօթութեամբ եւ թեթեւութեամբ կը լքէր որ աշխարհի ամէն կողմը գտնըւած Հայերը վերջնականապէս կը համոզուէին թէ խորհրդային Հայաստանի վարիչները քաղաքական հասկացողութեամբ գերազանցապէս ուղիղ տեսութեան մը յարած էին՝ ընդգրկելով ռուսական *օրիենդացիա*:

Իրենց նախատեսութիւնները եւ թերահաւատ վերաբերումը դրամատիրական աշխարհի նկատմամբ —որ իսկապէս մեր դատին հանդէպ անխիղճ շահագործողի դերը կատարեց – բնական է որ իրենց բարոյական վարկը բարձրացուց յաչս աշխարհի չորս կողմերը ցրուած Հայոց, որոնք մեծ մասամբ յուսահատ եւ նոյնիսկ կրնանք ըսել մասամբ խելակորոյս զանգուածներ՝ ուրիշ յոյսի եւ լոյսի նշոյլ մը չունէին՝ եթէ ոչ խորհրդային Հայաստանը, որուն ուղղուեցան բնազդաբար իրենց աչքերը եւ Հայաստանի վարիչները յուսախաբ չըրին իրենց ջանքերով, ամբողջ Հայութիւնը, Հայաստանը յարուցանելով իր աճիւններէն իբրեւ կենդանի, առոյգ եւ կենսունակ ոյժ մը:

* * *

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ՀԱՅԱՍՏԱՆԷՆ ԴՈՒՐՍ
## ՀԱՅ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐ

### Ա.

Հայաստանի հողին վրայ կազմուած հայկական իշխանութիւններու այս համադրական պատկերին մէջ, ինչպէս որոշապէս տեսնուեցաւ, Հայաստան կամ այդ անունով իբրեւ աշխարհագրական միութիւն ճանչցըւած երկիրը չէր ներկայացներ հաստատուն եզր մը, որուն վրայ միակ պետութիւն մը տեւականապէս տիրապետած ըլլար՝ օգտուելով անոր աշխարհագրական անփոփոխելի, անխախտ եւ ամուր պատուարներով ճշդուած սահմաններէն:

Ընդհակառակը, այդ աշխարհամասին վրայ ապրող Հայ ժողովուրդին, ինչպէս իր կազմած պետութիւններուն կեանքը, յարափոփոխ եւ անկայուն եղած է: Հայերը չեն կրցած տեւական գերիշխանութիւն մը հաստատել եւ ունենալ թուական մշտատեւ գերակշռութիւն մը երկրին ընդհանուր տարածութեան վրայ, որպէսզի կարենային իրենց մայր հայրենիքին մէջ կազմել պետութիւն մը, որ տեւականապէս տիրէր ամբողջ Հայաստանի:

Հայերը իրենց այս անհաստատ վիճակը եւ ամուր պետականութիւն մը ստեղծելու անկարողութիւնը կը պարտին գլխաւորապէս իրենց երկրին աշխարհագրական դիրքին եւ Հայ ժողովուրդին պատմութեան:

Իբրեւ դիրք Հայաստան յայտնի է թէ կամուրջ ծառայած է բազմաթիւ բարբարոս ժողովուրդներու, որոնք Կովկասեան լեռներու հիւսիսային կողմը տարածուող տափաստաններէն դէպի հարաւ եւ կեդրոնական Ասիոյ խորերէն դէպի արեւմուտք արշաւած են, բարգաւաճ Փոքր Ասիան եւ արգաւանդ Միջագետքը գրաւելու համար: Այնպէս որ միշտ քանդիչ եւ աւերող ժողովուրդներու ոտից կոխան եղած է Հայաստան, եւ տեւական խաղաղութիւն մը չէ վայելած, որով զրկուած է մշտապէս զարգանալու, զօրանալու եւ բարգաւաճելու դիւրութիւններէն:

Ոչ նուազ մեծ արգելք մը եղած է երկրին Ֆիզիքական կազմը: Ամբողջ Հայկական բարձրաւանդակը կտրատուած է բարձրաբերձ անմատոյց լեռներով եւ խոր ձորերով եւ ընդարձակ հովիտներով, եւ բազմաթիւ սրընթաց ու խոր գետերով, եւ այսպէս, երկիրը բաժնուած է նահանգներու, որոնք հաղորդակցութեան դժուարութիւններ ունէին իրարու հետ յարաբերելու համար եւ մեկուսացած էին իրենք իրենց մէջ:

Աւելցնելու է ասոր վրայ սա պարագան՝ որ այդ նահանգներուն բնակչութիւնը երբեմն ցեղով ալ իրարմէ կը զանազանուէր, իբրեւ դրացի ժողովուրդներէ նուաճուած եւ ցեղային խառնուրդներու ենթարկուած շրջանակներ: Այնպէս որ՝ Հայաստանի նահանգները յաճախ կը ներկայացնէին անջատ միութիւններ գրեթէ իրարու հաւասար ուժով, հաւասար ընդարձակութեամբ եւ հաւասար թիւով բնակչութեամբ:

Չկար մեծ նահանգ մը, որուն պետը կարող ըլլար իր շրջակայ նահանգները նուաճելու եւ իր իշխանութեան ենթարկելու ամբողջ երկիրը, կազմելու համար ուժով պետութիւն մը, որ ապրէր եւ տեւէր:

Ասոր համար է որ—ինչպէս տեսնուեցաւ— բացի շատ կարճ շրջանէ մը՝ գրեթէ գոյութիւն չէ ունեցած Հայ իշխանութիւն մը՝ որ բովանդակ Հայաստանի տիրապետած ըլլայ:

Ընդհակառակը՝ Հայ պետութիւններ տիրապետած են Հայաստանի աշխարհամասին մասնակի, որով Հայաստանի աշխարհագրական եւ քաղաքական սահմանները բնաւ իրարու համաձայն չեն եղած:

Այս երեւոյթը անմեկնելի չէր տուեալ պայմաններուն մէջ, բայց ինչ որ բոլորովին անսովոր էր եւ գրեթէ աշխարհի պատմութեան մէջ շատ քիչ անգամ տեսնուած, այն է որ Հայերը Հայաստանի աշխարհագրական սահմաններէն դուրս, բոլորովին ուրիշ հողամասերու վրայ, կազմած են հայ իշխանութիւններ կամ թագաւորութիւններ, որոնք իբրեւ Հայ պետութիւններ գործած են:

Ասոնք իբրեւ բուն Հայաստանի աշխարհագրական սահմաններէն դուրս կազմուած, այս աշխատութեան ծրագիրէն դուրս պէտք է մնային, սակայն նկատի ունենալով թէ ասոնցմէ ոմանք կազմուած են Հայոց ցեղագրական սահմաններուն, ոմանք կրօնական սահմաններուն, եւ ոմանք լեզուական սահմաններուն մէջ եւ պատմականօրէն ու իբրեւ պետութիւն «Հայաստան» կը նկատուին, հարկ էր որ անոնց վրայ ալ գոնէ հարեւանցի ծանօթութիւն մը տրուէր իբրեւ հայկական իշխանութիւններու, որոնք նոյնիսկ «Հայաստան» անունով ներկայացած են եւ իրենց վեհապետը կամ իշխանը կրած է «Հայոց թագաւոր»ի տիտղոսը:

Տեսնուեցաւ (վերը էջ 12 – 13, 19—20, 25) որ

հայ ցեղը իր բնաշխարհէն՝ Հայկական Բարձրաւանդակէն դուրս Եփրատի արեւմտեան կողմը, մինչեւ Ալիս տարածուող հողերը ցեղային նուաճումի մը ենթարկած էր եւ Հայացուցած, այնպէս որ զայն օտարները կը կոչէին Փոքր Հայք կամ Փոքր Հայաստան։

Սակայն աւելի ուշ ժամանակներու մէջ, մանաւանդ ԺԱ. դարէն վերջ, Հայերով բնակուած երկիրներուն սահմանները դէպի արեւմուտք, դէպի Կապադովկիա, Պամփիլիա, Կիլիկիա, Հիւսիսային Ասորիք, Միջագետք ընդարձակուեցաւ եւ ամբողջ այդ շրջանները Հայերով լեցուեցան եւ նոյնիսկ որորան եղան Մեծ եւ Փոքր Հայ իշխանութիւններու, աւատապետութիւններու, բերդապահութիւններու եւ սահմանապահութիւններու, աւելի կամ նուազ հաստատուն եւ քիչ շատ կախում ունեցող Բիւզանդական կայսրութենէն: Արդէն հարաւային Տաւրոսի եւ Կիլիկիոյ մէջ Հայերը հաստատուած էին Նիկեփոր Փոկասի (963—969) օրերէն սկսեալ եւ տարածուած էին արեւմուտքէն մինչեւ Սելէֆքէ, Անտալիա, եւ արեւելքէն Ասորիք, Անտիոք, Կեսարիա (Որոնդէսի վրայ), Տլուք, Եդեսիա:

Իր երկու անմիջական յաջորդները՝ Զմշկիկ (969—976) եւ Վասիլ Բ. (976—1025) շարունակեցին, Տաւրոսի լեռնաշղթան ամրացնելու եւ անանցանելի ընելու համար, ո՛չ միայն Հայ զինուորական գաղութներ հոն տեղաւորել, այլ անոնց առանձնաշնորհներ տալով իրենց դժնդակ պարտականութեանը լծուած պահելու համար ամէն ջանք ըրին, մինչ անոնց տկմար յաջորդները, շարունակեցին Հայաստանը պարպել, առանց սակայն որոշ ծրագիրի եւ առաւելագոյն օգուտի մը հետապնդութեան (փաստարկութիւնները եւ աղբիւրները զանց առնուած են: Հետաքրքիրները կրնան կարդալ *Պատմութիւն Հայ Կեսարիոյ* գործին 412—481 էջերը, եւ յատկապէս հայ գաղթականութեան համար 478—479 էջերը):

Այնպէս որ կարգ մը շրջանակներ, որոնք Հայաստանէն բոլորովին հեռու էին, ինչպէս Հարաւային Կապադովկիա, մինչեւ Բիւզանդի եւ Էրէկլի, կը նկատուէին *Հայկական երկիրներ*, նման Փոքր Հայքի որ ԺԱ. դարուն եւս ընդունեց մեծ թիւով հայ գաղթականներ, եւ բոլորովին հայացաւ:

Այս շրջանակին մէջ եկան հաստատուիլ այդ դարուն յաջորդաբար Վասպուրականի՝ Սենեքերիմ Արծրունի, եւ Անիի ու Կարսի՝ Գագիկ Բագրատունի եւ Գագիկ Աբասեան թագաւորները:

Իսկ Մանազկերտի աղետալի պարտութենէն (1071) յետոյ՝ Հայերը զանգուածօրէն գաղթեցին եւ եկան հաստատուեցան Եփրատի արեւմտեան երկիրները եւ Փոքր Ասիոյ հարաւ-արեւելեան խորշերուն մէջ:

Հայերով լեցուեցան Սեբաստիա, Կեսարիա եւայլն, ինչպէս նաեւ Իսոսի ծոցին բոլորտիքը, որ անկէ վերջ՝ Հայոց Ծոց յորջորջումը ստացաւ: Այսպէս, Ամանոսի եւ արեւելեան Տաւրոսի երկու զառիթափերը հոծ հայութեամբ մը լեցուեցան, հայ վաներ՝ շէնցուցին Քեսունի, Բերդուսի, Ուլնիոյ, Գերմանիկէի եւ Տլուքի շրջանները եւ նոյնիսկ հիւսիսային Ասորիքը:

Այնպէս որ ԺԲ. դարուն, Ներսէս Լամբրոնացի ընդհանուր կերպով շատ մօտ է ճշմարտութեան՝ երբ կը գրէ. *«այն դարուն ուր Ֆրանքները* (իմա՛ խաչակիրները) *հասան, բոլոր Միջագետք, Սուրիա, Ասորիք, Կիլիկիա, Պամփիլիա, Կապադովկիա եւ բոլոր Գամրաց երկիրը բնակուած էր Հայերով»*:

Այս երկիրներուն մէջ թէեւ տարօրինակ, բայց ինչպէս ըսի, ծնունդ առին Հայ կառավարութիւններ,—քաղաւորութիւններ եւ իշխանութիւններ— որոնք Հայաստանէն դուրս էին, այսինքն արտաերկրեայ, սակայն չէին դադրեր Հայոց պատկանելէ եւ Հայերով կառավարուելէ եւ Հայոց համար հիմնուած ըլլալէ:

Նախ քան անոնց կազմութիւնը, բուն Հայաստանի մէջ, ինչպէս տեսնուեցաւ (տես վերը էջ 68), հաստատուած էին ԺԱ. դարուն Քաղքետոնիկ իշխաններուն գլխաւորութեամբ ճորտական տուներ, որոնք կը կազմէին առաջին գիծը պաշտպանութեան՝ Բիւզանդական կայսրութեան ընդդէմ բարբարոսներու արշաւանքին: Բայց անոնք այնքան հեռու պետութեան կեդրոնէն եւ այնքան անմիջականօրէն ենթակայ բարբարոսներու յարձակման եւ գուցէ մեկուսացած, չէին ներկայացներ շատ կանոնաւոր պատնէշ մը: Թերեւս անոր համար Բիւզանդացիք ջանացին կազմել, Փոքր Ասիոյ արեւմտեան կողմը, նոր զօրաւոր պատուար մը կայսրութեան պաշտպանութեան համար, նուազ վտանգելի Հայաստանի պաշտպանութեան առաջին գիծին կռնակը: Այսպէս Փոքր Ասիոյ մուտքին վրայ՝ կազմուեցաւ երկրորդ գիծ մը, որ Սեւ ծովի հարաւ արեւելեան անկիւնէն (Խաղդիքէն) մինչեւ Իսոսի (Իսկէնտէրունի) ծովածոցը կ'երկարէր եւ Եփրատ գետին ընթացքին եւ Տաւրոսի լեռնաշղթային կը կրթնէր:

Այս պաշտպանութեան երկրորդ գիծը կրկնակ կարեւորութիւն ունէր, վասնզի Բիւզանդական կայսրութեան սպառնացող վտանգը միայն արեւելքէն սպառնացող բարբարոսները չէին, այլ հարաւէն արդէն է. դարէն ի վեր զինք զբաղեցնող եւ չարաչար յոգնեցնող եւ մաշեցնող մահմեդականները, որոնք հետզհետէ աւելի կը տեղաւորուէին կայսրութեան հողերուն վրայ եւ հոն բնակութիւն կը հաստատէին, մինչդեռ առաջ ամառնային արշաւանքներով կը բաւականանային:

Հետեւաբար, Բիւզանդիոն մեծ ճիգեր ընելու պարտաւորուած էր պաշտպանելու համար Տաւրոսէն Եփրատ տարածուող երկիրները եւ Ասորիքը:

Բիւզանդացիք կորսնցուցած էին Հալէպը (1060ին), բայց տակաւին կը պահէին Կիլիկիան, Անտիոքը, Պիրը (Եփրատի վրայ) եւ նոյնիսկ Եփրատէն անդին՝ Ուռհան կամ Եդեսիան:

Այս շրջանակներուն մէջ Բիւզանդիոն հաստատած էր կարգ մը իշխաններ, որոնք կը գործէին իբրեւ ճորտեր Բիւզանդական կայսրութեան:

Կային անոնց մէջ ոմանք, որ բախտախնդիրներ էին եւ պարագաներէն օգտուելով կազմած էին իշխանութիւններ, զորս Բիւզանդիոն ակամայ ճանչցած էր, վասնզի Սելջուկեան Թուրքերու յարձակումները կը հարուածէին եւ կը նսեմացնէին կայսրութեան հեղինակութիւնը Պոլիսէն հեռու այդ երկիրներուն մէջ, ուր ան պէտք ունէր յենարաններու եւ պատուարներու, եւ այդ իշխաններով գտած ըլլալ կը կարծէր:

Անոնց մէջ կային նաեւ հայ իշխաններ, որոնք երբեմն Բիւզանդիոնէն կալուածներ իբրեւ պարգեւ ստանալով՝ բիւզանդական ճորտ դարձած էին եւ ոմանք ալ բունի տէր դարձած էին հողի մը, որ վերջը Բիւզան-

դացիք ճանչցած էին իր օրինաւոր սեփականութիւնը, կ'ըմբռնէր որ անիկա ծառայէր Բիւզանդական Պետութեան շահերուն:

Անիկա քաղաքականութիւն մըն էր զոր Բիւզանդիոն գործադրեց իր կայսրութեան շահերուն համար, եւ յաջողեցաւ կազմել այդ երկրորդ գիծը, որ սակայն Փոքր Ասիոյ Թուրքերէն նուաճումը հազիւ 60 տարի (1020—1080) կրցաւ յետաձգել, վասնզի Թուրքերը Մանազկերտի (19 Օգոստոս 1071) միակ կարեւոր յաղթանակէն վերջ, կրցան անցնիլ այդ գիծն ալ, որուն գլխաւոր յենակէտն էին Հայ նախկին թագաւորներու եւ այլ Հայ իշխաններու գլխաւորութեամբ հաստատուած հետեւեալ իշխանութիւնները:

## Ա. ՍԵԲԱՍՏԻՈՅ ԱՐԾՐՈՒՆԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Սենեքերիմ Արծրունի, Վասպուրականի Թագաւորը (1003—1026+) որուն երկիրը կը գտնուէր Հայաստանի արեւելեան ծայրագաւառը, առաջինը եւ գլխաւորն էր այն Հայ թագաւորներուն որոնք Բիւզանդական պաշտպանութեան այս գիծին առաջին յենարանը եղաւ: Անիկա հազիւ բարբարոս Թուրք Սելջուկներու հարուածներուն ենթարկուած, վաչկատուն եւ վայրագ ցեղերու արշաւէն տագնապած եւ նոյն ատեն հրապուրուած Վասիլ Բ.ի զօրութենէն, թողուց իր երկիրը 400,000 հպատակներով եւ տեղափոխուեցաւ 1016-1020ին Սեբաստիա, որ արդէն կիսովին հայ՝ դարձաւ բոլորովին Հայ քաղաք մը:

Այս առաջին հայ ճորտ (vassal) իշխանութիւնը, որ կը կազմուէր Կապադովկիոյ մէջ, Սեբաստիայէն զատ ունէր իր սահմաններուն մէջ շրջակայ գաւառները, որոնց մէջ էին Լարիսա, Աւարա եւ ուրիշ քաղաքներ: Իր արեւելեան սահմանը, հաւանօրէն, մինչեւ Եփրատ կը հասնէր եւ Տիվրիկ, Ակն եւ Արաբկիր քաղաքներն ալ իր մէջ կը պարունակէր, իսկ արեւմուտքէն մինչեւ Սեբաստիոյ հարաւ-արեւմուտքը Ուզուն Եայլա կը տարածուէր (1), իսկ դէպի հիւսիս՝ մինչեւ պոնտական լեռները:

Բիւզանդական ծրագիրն էր, ինչպէս կը տեսնուի, ստեղծել Փոքր Ասիոյ բերանը Սենեքերիմի աւատապետութեան տակ Հայ ոյժ մը, որպէսզի ան միութիւն մը կազմէր թէ Միջագետքի եւ Հայաստանի հեռաւոր ճորտերուն հետ եւ թէ իր մէջ ընդունէր Հայաստանէն գաղթող նորանոր տանուտէրերը եւ դառնար զօրաւոր պատուար մը բարբարոսներուն դէմ քանի որ անոնք հետզհետէ կ'առաջանային:

Յունաց կողմէ իրեն տրուած *«Պատրիկ եւ զօրավար Կապադովկիոյ»* կամ *«Դուքս Միջագետաց եւ ստրատիկոս Կապադովկիոյ»* տիտղոսները, հակառակ Հայոց կողմէ *«Հայոց Թագաւոր»* ճանչցուելուն, յատկանշական են եւ կերպով մը ցոյց կու տան Բիւզանդացւոց նպատակը:

Արդարեւ, այս աւատապետութեան սահմաններուն մէջ իբրեւ ճորտեր հաստատուած ըլլալ կը թուին 1045ին Անիի Գագիկ Բագրատունի եւ 1065ին Կարսի՝ Գագիկ Աբասեան թագաւորները, ինչպէս նաեւ Մուտառասունի (2) մէջ իշխող Գագիկ իշխանը՝ որդի Գուրգէնի (*Ուռ.*, էջ 217), եւ թերեւս ուրիշներ, որոնց յիշատակութեան չենք հանդիպած:

Սենեքերիմի մահէն վերջ իրեն յաջորդած է Դաւիթ (1023—1035) որ աւելի ընդարձակեց իր կալուածները, 1025ին ի վարձ իր յոյժ կարեւոր մէկ ծառայութեան ստանալով իբր «օժիտ» կամ բացառիկ նուէր, որոշ կալուածներ, որոնք յետոյ 1065ին Կարսի թագաւորին շնորհուեցան:

Դաւիթին կը յաջորդեն իր երկու եղբայրները՝ Ատոմ եւ Աբուսահլ (1035—1079), որոնք գործակցաբար եւ միասին վարեցին իրենց իշխանութիւնը միշտ Սեբաստիոյ եւ շրջակայից մէջ:

1080ին վերջ գտած է այս թագաւորութիւնը:

## Բ. ԳԱԳԻԿ ԲԱԳՐԱՏՈՒՆԻԻ ՊԻԶՈՒԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Սենեքերիմին տեղափոխութենէն յետոյ, երբ Բիւզանդիոն նենգութեամբ տիրեց Անիի (1044), Գագիկ Բագրատունի թագաւորին —որուն նախապէս Մելիտինէն խոստացուած էր Անիի փոխարէն եւ ինքն մերժած էր— տրուեցաւ Մագիստրոսի տիտղոս եւ թոշակ, Պոլսոյ մէջ պալատ մը, եւ հողեր՝ Կապադովկիոյ, Ղարսիանի, Լիկանդոսի, Կալոնպաղատի եւ Պիզուի մէջ: Այնպէս որ կը կարծուի թէ Կիւրին, Աշոտի, Տարենտէ քաղաքները Գագիկի սահմաններուն մէջ էին, արեւելեան կողմէն, իսկ Պիզու էր Գագիկի մնայուն ոստանը մերձակայ Կալոնպաղատ դղեակով:

Գագիկ Բագրատունիի այս ճորտ իշխանութիւնը շարունակուած է դարձեալ մինչեւ 1079, իր եղերական վախճանը:

## Գ. ԳԱԳԻԿ ԱԲԱՍԵԱՆԻ ԾԱՄՆԴԱՒԻ ԹԱԳԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Գագիկ Բագրատունիի տեղափոխութենէն յետոյ ոյժերը ջլատուեցան եւ բնիկ Հայ իշխաններէն շատեր հետզհետէ հեռացան:

Այսպէս, Կարսի թագաւորը՝ Գագիկ Աբասեան, զգալով իր տկարութիւնը բարբարոս ահեղ հոսանքին առջեւ, ինք ալ իր տէրութիւնը տուաւ Յունաց եւ փոխարէնը առաւ Ծամնդաւ (=Ազիզիյէ) եւ Լառիսա քաղաքները (1065) եւ շարունակեց իր իշխանութիւնը դարձեալ մինչեւ 1079—1080:

## Դ. ՊԱՀԼԱՒՈՒՆԻՔ ԵՒ ԱՅԼ ԻՇԽԱՆԱԿԱՆ ՏՈՒՆԵՐ

Ինչպէս տեսնուեցաւ երեւոյթները այնպէս ցոյց կու տան թէ Հայաստանէն Փոքր Ասիոյ Արեւմուտքը փո-

(1) *Դուքս կը մնար Մելիտինէն որ Լիկանտոսի թեմին կը պատկանէր:*

(2) *Արդի Մուտառասըն կամ Մէնտրէսիրըն՝ Կէմէրէկ քաղաքին մօտը:*

խադրուած հայ քաղաքները իրարու հետ կապակցութիւն մը ունէին եւ դաշնակցութիւն մը կը կազմէին, բիւզանդական հովանաւորութեան տակ: Նոյնպէս, Հայ քաղաքները փոխադրուած էին Բիւզանդական հողերուն վրայ ոչ թէ առանձին այլ բազմաթիւ հայ իշխաններով, որոնք իրենց կարգին իբր ստորադաս ճորտեր, այդ քաղաքներուն կապուած էին:

Դժբախտաբար, ինչպէս ըսի, անոնց անունները եւ հաստատուած վայրերը չեն յիշատակուած:

Տեսանք թէ Սենեքերիմի ստորադաս կը յիշուի իր ազգականներէն Գագիկ իշխան մը, որ Մուտառասուն հաստատուած էր: Հաւանօրէն ասիկա իր տեսակին մէջ միակը չէր եւ կային ուրիշներ, որոնք Հայաստանէն դէպի արեւմուտք Փոքր Ասիա, Միջագետք, Ասորիք փոխադրուած էին, Բիւզանդական հողերու վրայ եւ Պոլսոյ կառավարութեան կարգադրութեամբ հողեր ստացած եւ այդ հողերուն վրայ իբրեւ ճորտեր Բիւզանդիոնի, իշխած կամ արդէն գոյութիւն ունեցող ճորտի մը ստորադասուած էին:

Այս տեղափոխուած հողատէր իշխաններուն մէջ ամէնէն կարկառուն ընտանիքը Պահլաւունի մեծ եւ ազդեցիկ տունն էր, որ Սեբաստիոյ Արծրունի թագաւորին ստորադաս կամ անկէ բոլորովին անջատ, եկած հաստատուած էր Հայաստանի արեւմտեան կողմը, Սեբաստիայէն արեւելք եւ Եփրատի արեւմտեան ափին վրայ:

Գրիգոր Պահլաւունի, որ տէր էր Բջնի, Կայեն եւ Կայծոն բերդերուն, Արարատեան նահանգին մէջ, Գագիկ Աբասեան Կարսի թագաւորին տեղափոխութեան տարին, այսինքն 1045ին, այդ բերդերը ինքնաբերաբար թողուց Վասիլ Բ.ի եւ ստացաւ Միջագետքի մէջ գիւղեր եւ քաղաքներ եւ անոնց տոհմական ժառանգական իրաւունքը հաստատող հրովարտակ, միեւնոյն ատեն նաեւ Մագիստրոսի աստիճան:

Մագիստրոս իբր յոյն լեզուին ծանօթ եւ ազդեցիկ հայ տոհմի մը պետը, մնալով տէրը իբր փոխարինութիւն իր ստացած կալուածներուն, որոնց վրայ հաստատուեցան իր ընտանիքին անդամները եւ զանոնք աւելի ընդարձակեցին, ինք Բիւզանդական կայսրութենէն պետական պաշտօնակատարութեան կոչուեցաւ, եւ Հայաստանի մէջ իրեն կառավարչական կամ կուսակալական պաշտօն տրուեցաւ, դուքս կամ բդեշխ տիտղոսն ալ շնորհուելով իրեն: Գրիգոր Մագիստրոս այսպէս եղաւ, ինչպէս ինք իսկ կը հաստատէ *«Վասպուրականի եւ Տարօնոյ եւ Մանազկերտի, Արճիշոյ, Բերկրի, Միջագետաց տէր, Մոնումախին Մագիստրոս. վեստ եւ դուկ»*:

Մագիստրոս մեռաւ 1058ին, սակայն իր ճորտ իշխանութիւնը շարունակուեցաւ:

Առաջին յաջորդը եղաւ իր որդին՝ Վահրամ, որ 1065ին կաթողիկոս ընտրուեցաւ:

Իսկ ընտանիքին միւս անդամները մնացին իրենց կալուածներուն վրայ, մինչեւ որ Սելջուկեանք եկան աւերել այդ հողերը եւ պարտաւորել Պահլաւունիները ցրուիլ ուրիշ վայրեր:

***

Իբր Բիւզանդական պաշտօնատար Պոլիսէն պաշտօնի կոչուած են Հայ կառավարիչներ կամ զօրավարներ, որոնք պետութեան արեւելեան եւ մանաւանդ հարաւ-արեւելեան, այսինքն Ասորիքի եւ Միջագետքի զանազան վայրերուն մէջ կարեւոր դեր կատարած են:

Ինչպէս յայտնի է, Միջագետք եւ Ասորիք այդ միջոցին կը ներկայացնէին հնոց մը ուր կը մաքառէին իրարու հետ Արաբները, Քիւրտերը, եւ Սելջուկները, որոնք ամէնքն ալ Բիւզանդացիներուն դէմ էին: Իսկ Բիւզանդիոն իբրեւ վաղեմի տէրը այդ շրջանակին, Է. դարէն սկսեալ, ինչպէս որ միշտ մաքառած էր զանոնք չկորսնցնելու համար, ԺԱ. դարուն տակաւին դադրած չէր անոնց վերագրաւումին համար աշխատելէ, եւ երբ առիթը ներկայանար այդ վայրերը գրաւելէ:

Այսպէս, օրինակի համար ԵԴԵՍԻԱ, որ երկար ատեն մահմետականներու իշխանութեան տակ կը գտնուէր, ԺԱ. դարուն վերագրաւուեցաւ (1) եւ հոն իբրեւ բիւզանդական պաշտօնատար, կառավարիչ նշանակուեցան նաեւ Հայեր: Անոնց անդրանիկն էր Ապուքապ «որ յառաջ վրանապահ էր լեալ Դաւիթի կիւրապաղատին Վրաց» (Ուռհայեցի, էջ 65): Ասիկա Գէորգ Բարազբացեի հետ, որ հիմնադիրն էր Աթոս Լեռան Իվերոն վանքին, (Schumberger, Epopée, Գ. էջ 102 եւ Կենտրենոս Բ., էջ 520) միասին կը կառավարէր (2):

Ապուքապ, Ռոմանոս Գ. կայսեր (1028–1034) բանակին մէջ էր 1030ին, երբ անիկա Սիւրիա էր: Ապուքապ կայսեր մեծ ծառայութիւն մը մատոյց, «ազդ արարեալ թագաւորին զնենգութիւն զօրացն» (Ուռ., էջ 64), վասնզի անոնք համաձայնած էին չկռուելու եւ Ռոմանոսը թշնամիին մատնելու:

Ռոմանոս առոր ի վարձատրութիւն՝ իրեն տուաւ Եդեսիոյ կառավարչութիւնը, Մանիակը փոխադրելով այլուր (Ուռ., էջ 73):

Կենդրենոս՝ (Բ. էջ 512) Մանիակի յաջորդ ցոյց կու տայ Լեւոն Լեբանդոխոսը, զոր կը յիշէ նաեւ Ուռհայեցի (էջ 260)՝ Լեւոն «եղբայր Դուտասանոսի» ձեւով: Կը պատմէ թէ խումբը ըմբոստացած է անոր դէմ եւ զայն հարկադրած է փախուստի, իսկ իր Պրռոքսիմոսը սպանուած է. եւ ասկէ վերջն է որ Ապուքապի որդին՝ Վասիլ անցած է իշխանութեան գլուխը:

Կ'երեւի երկու պատմագիրներէն մին շփոթութիւն մը ունի հօր եւ զաւակին միջեւ:

Ապուքապ *«շինեալ էր եւ սին առեալ զամենայն գաւառն»* (Ուռ., էջ 260):

Վասիլ՝ Ապուքապի որդին եւ Մանազկերտի իշ-

(1) *Եդեսիա կը գտնուէր Մուֆարղինի Նասր Տօլ էմիրին իշխանութեան տակ և երկու էմիրներով կը կառավարուէր, որոնք ամբողջական տիրապետութեան համար իրարու դէմ կը կը կռուէին. Սալման՝ անոնցմէ մէկը, քաղաքը տուաւ Սամոսատի Հոռոմոց Մանիակ իշխանին՝ որ Գորգ կը կոչէին (1032ին) Ուռհայեցի իբրեւ տեղացի շատ ընդարձակօրէն կը նկարագրէ այն անցքերը որոնք իր ծննդավայրին շուրջը պատահած են (տես էջ 65—73).*

(2) *Կ'երեւի Բիւզանդացիք ալ պահած էին իշխանակցութեան ձեւը եւ երկու անձով կը կառավարէին Եդեսիան.*

խանը, որ Ուզերուն ձեռքը գերի ինկած էր, գերութե-նէ ազատելէն վերջ, գացած էր Եդեսիա՝ իր հօրը քով. ինքն ալ Եդեսիան կառավարեց 1078էն 1083 եւ հոն մեռաւ (Ուռ. 259—266 եւ 268): Ուռհայեցին մեծ գո-վեստով կը խօսի անոր մասին՝ զայն ներկայացնելով *«այր բարի եւ աստուածասէր, ողորմած ի վերայ որբոց եւ այրեաց եւ խաղաղարար եւ շինող աշ-խարհի»* (*Ուռ.*, էջ 259 եւ 268):

Իր մահէն վերջ, ինչպէս կ'երեւի, Եդեսիոյ եւ Բիւզանդիոնի յարաբերութիւնները ընդհատուած են Եդեսիա իր ճակատագիրին լքուած է, վասնզի քաղա-քացիք ժողովով անոր յաջորդ կ'ընտրեն իբրեւ դուքս Սմբատ անուն մէկը, որ քաջութիւն ցոյց տուած էր Սել-ջուկեանց արշաւանքին ատեն:

Սմբատ հազիւ վեց ամիս կը պաշտօնավարէ, վասնզի *«ոմն ի մեծամեծաց քաղաքին ջանայր առ-նուլ դուկութեան զաթոռ ի յազգէ Հայոց, որ անուն ասէին Իշխան, ի ցեղէն՝ որ ասէին Առջքթոր»*:

Այս ներքին վէճը պատճառ եղաւ որ քաղաքին տէրը Փիլարտոս, որ՝ ինչպէս պիտի տեսնուի, պատեհու-թիւնը օգտագործող եւ տեսիլք ունեցող բախտախնդիր մըն էր, եւ որ ծրագրած էր հայկական մեծ պետու-թիւն մը հիմնել Ասորիքի հիւսիսային կողմը, Եփրա-տէն մինչեւ Տաւրոս, Կիլիկիան ալ իր մէջը ունե-նալով:

Եդեսիայի չափ կարեւոր կայան մըն էր ԱՆՏԻՈՔ, զոր ԺԱ. դարու առաջին կիսուն Բիւզանդացիք պահ մը յաջողեցան իսլամական տիրապետութենէն փրկել:

Հոն ղրկուած կառավարիչներուն մէջ կը յիշուին Հայերու անուններ:

Այսպէս, իբրեւ քաղաքին կառավարիչը կը յիշ-ուի Աբաս հայը, որ եղբայրն էր Կարսի եւ Թէոդոսու-պոլիսի հրամանատար Գրիգոր Բագուրիանոսին:

Աբաս՝ Անտիոքի մէջ ունէր կալուածներ եւ ստա-ցած էր Մագիստրոս կամ Դուքս տիտղոսը:

Այս պարագան մտածել կու տայ թէ Անտիոք՝ իբ-րեւ ժառանգական ստացուածք՝ պարգեւ տրուած է իրեն, սակայն թերեւս իբրեւ անժառանգ իր յաջորդը չէ ու-նեցած եւ իրմով վերջացած է իր իշխանութիւնը:

1065ին Անտիոք կը գտնենք «տուկ» կամ դուքս տիտղոսով (*Ուռհայեցի*, էջ 188), Պեխտ կամ Վեստ Խաչատուր Անեցի Հայաստանցի կամ Հայ ուշիմ, քաջ եւ երեւելի անձը, որ 1068ին Ռոմանոս կայսրէն ստա-ցաւ Անտիոքի հրամանատարութիւնը (*Ատտալիատէս*, էջ 137 եւ 172, *Սկիղիցէս*, էջ 684, *Զոնարաս*, էջ 705, *Փսիլլոս*, էջ 284): 1069ին յանձնարարուեցաւ իրեն գրաւել Մամեստիան՝ արգիլելու համար անցքը Թուր-քերուն, որոնք կը դառնային Իկոնիոնի կողոպուտէն: Թողուց որ անոնք փախչին (*Ատտալիատէս*, էջ 137, եւ *Սկիղեցէս*, էջ 684): Խաչատուր հաւատարիմ գտնը-ւեցաւ Ռոմանոսի (1071—72)՝ պաշտպանելով զայն Դուկասի դէմ: Կորոյս իր զօրքերը, իր պաշտօնը եւ իր ազատութիւնը, բայց ոչ իր կեանքը (*Ատտալիատէս*, էջ 174, *Փսիլլոս*, էջ 284—286, *Բրիեննիոս Ա.*, էջ 24, *Սկիղիցէս*, էջ 703):

Իր մահուան թուականը յայտնի չէ: Կը թուի յաղ-թուած ըլլալ Անդրոնիկ Դուկասէն: 1071էն վերջ՝ նոյն իշխանութեան մէջ իրեն յաջորդած են ուրիշ Հայեր, ինչպէս Գր. Մագիստրոսի որդին՝ Վասակ Պահլաւունին, որ սպաննուեցաւ 2 Մարտ 1078ին եւ *«ազատագունդն Վասակայ կոչեցին զՓիլառտոսն եւ տան զԱնտիոք ի ձեռն նորա»* (*Ուռ.*, էջ 256):

Այսպէս, Անտիոք ալ կը բաժնուի Բիւզանդական կայսրութենէն եւ կ'անցնի Փիլարտոսի:

Իսկ Էլ Աթիր, արաբ պատմագիրը, իբրեւ քաղա-քին իշխան կը յիշատակէ Ալֆարոնտաս անունով մէկը, որ հաւանօրէն նոյն է Փիլարտոսի հետ՝ որ յափշտակեց Անտիոքի տիրապետութիւնը (*Աննա Կոմնենոս Դ.*, էջ 300, Michel le Syrien, Դ., էջ 173):

Հիւսիսային Ասորիքէն անցնելով ԿԻԼԻԿԻԱ, հոն ալ կը գտնենք Հայեր, որոնք բիւզանդական կայսրու-թենէն հողատիրութիւններ կամ պարգեւներ ստացած են:

Թերեւս հոն գտնուած են ԺԱ. դարուն վերջին քառորդէն առաջ հայ տանուտէրներ (seigneur), որոնք որոշ շրջանակներու մէջ հաստատուած էին:

Պատմութիւնը կը յիշատակէ նախապէս Վասպու-րականի դուքս, բնիկ Անեցի, Վեստ Խաչիկի թոռը եւ Հասանի որդին՝ Ապլղարիպը, որ Տարոնի կառավա-րիչ էր (*Ուռ.*, էջ 263 եւ *Սամուէլ Անեցի*, էջ 453), իր իշխանութեան տակ ունենալով նաեւ Մամեստիա (= Մսիս) Ատանա քաղաքները, եւ Լամբրոն ու Պապեռոն բերդերը (*Վարդան*, էջ 106): Անոր աղջիկը ամուսնա-ցած էր Գագիկ Բագրատունիի որդւոյն Դաւիթի հետ, այսպէս խնամիացած էր Փոքր Ասիոյ Հայ թագաւորնե-րուն հետ եւ անոնց ու Փիլարտոսի հետ զօրակցած:

Այս հայ իշխանները, որոնք այլեւայլ վայրերու մէջ իբրեւ կառավարիչ եւ իբրեւ տէր հաստատուած էին, միշտ Բիւզանդիոնի ստորադասուած էին եւ անկէ կախում ունէին, եւ անոր կը հպատակէին:

Մասնաւորապէս հայ նախկին թագաւորներու եր-կիրները աւատապետական կարգերով կը կառավարուէ-էին, որով անոնց սահմանին մէջ հաստատուած էին բազ-մաթիւ հայ հողատէր իշխաններ, որոնք Հայաստանէն կու գային եւ կը հաստատուէին այս շրջաններուն մէջ:

Բիւզանդացիք՝ ամրացնելու համար իրենց ստեղ-ծած այս պատնէշը, աշխատած են հրապուրելու Հա-յերը որ թողուն Հայաստանը եւ գան հայ նախկին թա-գաւորներու հողերուն վրայ: Ասիկա իրենց համար որոշ քաղաքականութիւն մըն էր՝ Վասիլ Բ.էն (+1025) մինչեւ Ռոմանոս Դիոգինէս (+1071) տեւող յիսնամ-եայ ժամանակամիջոցին, երբ հետզհետէ աւելի սպառ-նալից կը դառնային ասիական բարբարոսները: Մաս-նաւորապէս, Ռոմանոս, որ մտադրած էր Թուրքերը Բիւ-զանդական երկիրներէն դուրս վանել, քաջալերած ըլլալ կը թուի, յատկապէս հայ իշխաններու փոխադրութիւնը: Հակառակ անոր որ Յոյները՝ ինչպէս նոյնիսկ կայսրը, կրօնական մոլեռանդութեամբ, կասկածով եւ ատելու-թեամբ կը վերաբերուէին Հայոց հետ, կայսրը պարգեւա-տրութիւններով շատցուցած էր հայ իշխաններու թիւը:

Լաստիվերտցի (էջ 171) Ռոմանոսի վրայ խօսելով կ'ըսէ՝ թէ *«տէրս անդէպս ցուցանէր եւ պարգեւս անձեռնարկելիս խոստանայր»*, ինչ որ կը նշանակէ թէ ան Հայոց տուած էր «անձեռնմխելի պարգեւներ» կամ «կալուածներ», իբրեւ ճորտական ստացուածքներ: Միայն չի ճշդեր՝ թէ որո՞նք էին այդ պարգեւառու-ները: Յունական աղբիւրներ կը հաստատեն՝ թէ Ռոմա-նոս նաեւ աւելցուցած է թիւը հայ զինուորական հրա-մանատարներուն:

Այսպէս, ինքն էր որ Հիերապոլսոյ (=Բամպուք Գալէսի՝ Կոռիկոսի կամ Լաւոդիկէի մօտ) մէջ հաստատեց Ապուքապը, որ արդէն տէր էր Եդեսիոյ (*Ատտալիատես*, էջ 116), Անտիոք ղրկեց Խաչատուր Արշակունին եւ վերջապէս ինքն էր որ Վերին Ասորիքի հրամանատարութիւնը (1) յանձնեց Փիլարտոս Հայ զօրավարին, որ կայսեր Մանազկերտի ձախողութենէն (19 Օգոստոս 1071) վերջ՝ իր այս դիրքը օգտագործեց հիմնելու համար պետութիւն մը Կիլիկիոյ եւ Ասորիքի մէջ:

* * *

## ՓԻԼԱՐՏՈՍԻ ԻՇԽԱՆԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

Փիլարտոս որ քաջ եւ յաջողակ բիւզանդական զօրավար մըն էր եւ իր ժամանակներուն լաւ ռազմիկներէն մին, ինք յղացաւ առաջին անգամ գաղափարը Հայ իշխանութեան մը կազմութեան, Փոքր Ասիոյ արեւմուտքը եւ հիւսիսային Ասորիքի մէջ, ուր Հայերը կոչուած էին իրենց արիւնով պաշտպանելու Բիւզանդական կայսրութիւնը անոր ստրուկ մնալով եւ անկէ հալածուելով մէկտեղ:

Փիլարտոս, որ ինչպէս կը տեսնուի, թէեւ լաւ զինուորական, սակայն բախտախնդիր, անյագ եւ փառասէր անձ մըն էր, Ռոմանոս կայսրէն պաշտօն ստացած էր պաշտպանելու Ռոմանոպոլիսէն(=Բալու) մինչեւ Մելիտինէ եւ Անտիոք երկարող ռազմական կարեւոր գիծը: Փիլարտոս, որ բիւզանդական պաշտօնատար մը եւ նոյնիսկ յունադաւան մըն էր, քաջ ծանօթ այն մեծ յուսախաբութեան՝ որուն Հայերը ենթարկուած էին կայսրութեան երկի ները ապաստանելէն ետք, Ռոմանոսի պարտութենէն վերջ շահագործեց Բիւզանդական կայսրութեան մէջ ապրող Հայոց եւ մասնաւորապէս նորտ Հայ թագաւորներու ընդհանուր դժգոհութիւնը, — իբրեւ հետեւանք Բիւզանդացիներու կրօնական անխորհուրդ քաղաքականութեան — եւ ծրագրեց Կապադովկիոյ, Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ հաստատուած հայ թագաւորները եւ իշխանները իր գլխաւորութեան եւ Բիւզանդիոնի հեռաւոր հովանաւորութեան տակ միացնել եւ զօրաւոր դաշնակցային պետութիւն մը կազմել, ընդարձակ եւ ներքին միութեամբ ամրացած եւ կազմակերպուած, որ մէկ կողմէն Սելջուկեան յարձակումներուն դէմ կայսրութեան արեւելեան սահմանագլուխին վրայ՝ իբրեւ պատուար պիտի ծառայէր, իսկ միւս կողմէն ալ ջախջախեալ եւ հալածեալ Հայ ժողովուրդին նոր օճախ մը պիտի դառնար, իբրեւ նոր հաւաքավայր մը եւ հայրենիք մը:

Ռոմանոս երբ Մանազկերտի մէջ կը պարտուէր՝ Փիլարտոս Խարբերդ կը գտնուէր իբրեւ պահեստի զօրքերու հրամանատար: Ան յաջողեցաւ անկանոն կերպով նահանջող կամ փախչող բիւզանդական բանակէն կարեւոր մաս մը վար դնել եւ անոնց նոր ոգի ներշնչելով՝ թումբ կանգնիլ դէպի արեւմուտք խուժող Սելջուկեան հեղեղին եւ կասեցնել բարբարոսական յառաջխաղացութիւնը:

Այսպէս, գիտցաւ առիթէն օգտուիլ եւ գրեթէ ինքնիշխան կառավարութիւն մը հաստատել, հետզհետէ իր սահմանները ընդարձակել եւ իրեն կեդրոն ընտրել Գերմանիկէ (=Մարաշ) քաղաքը:

Բիւզանդական կայսրութիւնը այդ օրերուն ի վիճակի չէր Փիլարտոսը անհանգիստ ընելու, մանաւանդ որ անիկա կատարեալ ազատութեամբ գործելով հանդերձ՝ գէթ անուանապէս ինքզինքը բիւզանդական պաշտօնատար մը կը դաւանէր: Միքայէլ Պարապինաս (1071—1078), որ ընդհանրապէս մեղմ եւ առաքինի ինքնակալի մը համբաւը թողած է, աչք գոցեց Փիլարտոսի ինքնակամ տնօրինութիւններուն եւ դէպի անկախութիւն ձգտող քայլերուն, գոհ ըլլալով որ ան այս կերպով Սելջուկեանց դէպի Կիլիկիա եւ Կապադովկիա յառաջխաղացման ճամբան կը փակէր:

Դիտելի է որ Յոյները չէին կրնար յոյս դնել երկիրին ամենէն մեծ զանգուածը ներկայացնող Հայերուն վրայ, իրենց անոնց նկատմամբ բռնած ընթացքին համար: Ասոր համար այդ շրջանակին մէջ Հայու մը գործի գլուխ անցնելուն չհակառակեցան:

Նոյնիսկ պատմագիր մը, Միքայէլ Ասորի (Michel le Syrien. Գ. հտ.: էջ 187—8) կը հաւաստէ թէ *«Հոռոմները իշխան կարգեցին Փիլարտոսը Կիլիկիոյ վրայ, որպէսզի դիմադրէ Թուրքերուն, որովհետեւ Փիլարտոս ռազմիկի համբաւ ունէր»*:

Այսպէս, Փիլարտոս ձեռք բերաւ իշխանութիւն մը՝ ու հանդէպ շրջակայ իշխաններու իշխանապետի մը դիրքը ստացաւ եւ իբրեւ անոնց վարիչը կարեւոր դեր մը կատարեց:

Մանազկերտի ձախողումէն վերջ՝ Փիլարտոսի հետ միեւնոյն ատեն ինքզինքնին Բիւզանդական կայսրութենէն անկախ նկատած են նաեւ Սեբաստիոյ, Ծամընդաւի եւ Պիզուի մէջ հաստատուած Հայ թագաւորներերը, որոնք երբ Փիլարտոսի պէս կարեւոր դեր մը չեն կատարած. եւ այս պատճառով իրենց գործերը չեն յիշուած, սակայն գէթ սա որոշ է՝ թէ Բիւզանդիոնէն կախում չեն ունեցած եւ աւելի Փիլարտոսի իշխանութիւնը ճանչցած եւ անոր ստորադաս դիրք մը գրաւած կամ անոր համաձայն ու համամիտ գտնուած են, ինչպէս կը պարզուի ինչ ինչ պարագաներով (տես *Պատմ. Հայ Կեսարիոյ*, էջ 457 – 460):

Այսպէս, Հայ թագաւորները իրարու մէջ եւ ամէնը միասին՝ Փիլարտոս իշխանապետին հետ կատարեալ համակցողութեամբ, համաձայն էին եւ յոյժ հաւանօրէն ամէնքն ալ կը փափաքէին Փոքր Ասիոյ մուտքին վրայ կազմելու Հայ պետութիւն մը աւատապետական դրութեամբ, ամէն մէկը իր սահմանին մէջ ինքնավար, սակայն իրարու միացած:

Բայց պահը շատ վտանգաւոր էր:

Ալփասլան, Մանազկերտի ճակատամարտէն անմիջապէս վերջ, ըրած էր կարգ մը կարգադրութիւններ, որոնք սպառնալիքի տակ կը դնէին Փիլարտոսի հայ իշխանութիւնը եւ անոր ենթարկուած միւս Հայ իշխանութիւնները:

(1) *Ոմանք Արեւելքի կամ Կոմմագենէի և Դ. Հայոց բանակներուն հրամանատար կը ներկայացնեն զինք:*

Ալփասլան Հայաստանի փոխարքայ նշանակեց Սիւլէյման Իպն Գութուլմիշ իր քեռորդին, Էրզրումը տուաւ Սուլտուկ անունով Թուրքման ամիրայի մը եւ Երզնկան՝ Մանկուճակի: Իսկ Երզնկայէն մինչեւ Ալիսի բերանը տարածուող հողերն ալ — որոնք դեռ նուաճուած չէին Թուրքերէն — շնորհեց Դանիշմանդ անուն մէկու մը, արտօնելով զանոնք որ իրենց նուաճած երկիրներուն վրայ ապահարկ իշխեն, պայմանով որ միաբան գործեն եւ ջանան հետզհետէ տկարացնել քրիստոնեայ իշխանութիւնները եւ ժողովուրդը ընտելացնել իսլամներու տիրապետութեան:

Դանիշմանդ, որ դեռ նոր պիտի նուաճէր իրեն սահմանուած երկիրը, 1071ին գործի ձեռնարկեց, եւ նախ գրաւեց Նիկսարը, ապա առաւ Ամասիան, Թօգատը, Մարզուանը եւ Չորումը եւ անխուսափելիօրէն նաեւ մերձակայ երկիրները, մասնաւորապէս Սեբաստիան, Կեսարիան եւայլն:

Այսպէս, Գագիկ Բագրատունիի սպանութենէն վերջ, կամ նոյն օրերուն իսկ, բարբարոսներու կողմէն կը գրաւուէին Հայ փոքր թագաւորութիւններուն հողերը՝ Դանիշմանդի կողմէն: Մատթէոս Ուռհայեցի (էջ 261) իրաւամբ կ'ըսէ՝ թէ *«ազգն Թուրքաց տարածեցաւ ընդ ամենայն երկիր»*, հաւանօրէն 1079—1080 թուականներուն կատարուած ընդհանուր յարձակողականով մը: Յարձակման նախաձեռնարկն էր ապահովաբար Դանիշմանդ, որ մինչեւ Ալիս առաջացած էր արդէն եւ Ալփասլանի պատուէրին համաձայն միշտ բարեկամ եւ զինակից մնացած էր դրացի մահմետական ամիրաներուն, մանաւանդ Երզնկայի, Կամախի եւ Կողոնիայի (Շապին-Գարա-Հիսար) տէր Մանկուճակի եւ կը թուի թէ անոր գործակցութեամբն գրաւեց Սեբաստիոյ եւ Ծամնդաւի Հայ թագաւորութիւններուն երկիրները եւ աւլեց զանոնք 1080ին:

*«Աստանօր դատարեալ եղեւ թագաւորութիւնն ի տանն Հայոց»* (Ուռհայեցի, էջ 265):

Այս ընդհանուր յարձակողականի միջոցին՝ Սելջուկեաններէն կարեւոր մաս մըն ալ արշաւեց դէպի Անտիոք եւ Կիլիկիոյ վրայ, եւ առաջացաւ մինչեւ Տլուք, Մարաշ եւ Տարոն:

Փիլարտոսի իշխանութեան դէմ ուղղուած այս յարձակումները, որոնք հիւսիսային Սուրիայէն, այսինքն Հալէպի կողմէն կու գային, կարեւոր արդիւնքի մը չյանգեցան, որովհետեւ Փիլարտոս կրցաւ յաջողութեամբ ետ մղել բոլորը եւ պահպանել Անտիոքը եւ ուրիշ տեղեր Կոմմագենէի մէջ:

Այս պատճառով՝ Սեբաստիոյ, Գզուի եւ Ծամնդաւի Հայ արքունիքներուն վերջին մնացորդները իսկոյն կանգուն մնացած միակ հայ իշխանապետին՝ Փիլարտոսի քով ամփոփուեցան, իսկ Սելջուկները քանդելով Բիւզանդացիներու պաշտպանութեան այս երկրորդ գիծը՝ վերջնապէս գրաւեցին Փոքր Ասիան, վասնզի Բիւզանդացիք՝ ինչպէս Հայաստանը, նոյնպէս Սեւ Ծովէն մինչեւ Տաւրոսի լեռնաշղթան տարածուող երկիրները պաշտպանելու անհոգ գտնուեցան եւ թողուցին որ անկէ ներս խուժեն Սելջուկի բարբարոսները:

Փիլարտոս, որ կրցած էր Կապադովկիոյ, Կիլիկիոյ եւ հիւսիսային Սուրիոյ եւ Միջագետքի մէջ հաստատուած Հայ իշխանութիւններէն կազմել դաշնակցային պետութիւն մը, նախապէս այդ շրջանակին մէջ գտնըւող հայազգի կամ այլ ծագումով, Բիւզանդական պաշտօնակալները, երբ կամովին հպատակեցան ու գործակցեցան իրեն, հաստատեց եւ պահպանեց զանոնք իրենց իշխանութիւններուն մէջ:

Անոնց ամէնէն կարեւորներն էին Մելիտինէի կառավարիչը, Գաբրիէլ անուն յոյնը եւ Եդեսիոյ հայազգի Թորոս Կիւրապաղատը, որոնք իրարու աներ եւ փեսայ էին:

Անկէ զատ Արեւելեան Հայաստանէն արտագաղթող Հայ իշխաններուն, որոնք իրենց զօրքերով կը մեկնէին, Փիլարտոս մեծապէս օժանդակեց եւ զանոնք տեղաւորեց զանազան վայրեր, զինակիցներ կամ դաշնակիցներ ունենալու համար:

Փիլարտոս իրապէս օժանդակութեան եւ բարեկամներու պէտք ունէր իր ծրագիրը իրագործելու համար, եւ անոր համար ոչ մէկ ոյժ արհամարհեց: Անիկա գիտցաւ նոյնիսկ քաղաքականութիւնը եւ կրօնքը իրարմէ անջատ պահել եւ որչափ ցանկաց շրջակայ եւ դրացի Հայ իշխաններուն՝ նոյնպէս նաեւ դրացի իսլամ տիրապետներու գործակցութեան, քանի որ անոնք ալ իբրեւ հակառակորդներ Սելջուկեանց՝ իրեն բնական զինակիցներն էին:

Ուստի՝ հասկացողութեան եկաւ բոլոր հայ եւ իսլամ մանր իշխանութեանց հետ, որոնք արդէն գոյութիւն առած էին:

Այս քաղաքագիտութեամբ Փիլարտոս՝ ինչպէս կը թուի՝ կ'ուզէր բոլոր Հայ իշխանութեանց դաշնակցային միութիւն մը ստեղծել:

Իր ծրագիրը ամէն կերպով գնահատելի, իրագործելու համար երբեմն խտիր չդրաւ միջոցներուն մէջ: Այսպէս, Հայ իշխաններէն՝ Սասունի Թոռնիկ Մուշեղեան իշխանը երբ չհամակերպեցաւ իրեն հետ միանալու, Փիլարտոս չվարանեցաւ զէնքով հնազանդեցնելու զայն եւ երբ դարձեալ չյաջողեցաւ՝ զայն դաւով սպաննել տուաւ (1073):

Հայ իշխանապետին կալուածները, որոնք շրջապատուած էին հիւսիս-արեւելքէն եւ հարաւ-արեւելքէն Մեծ-Սելջուկին, հիւսիս-արեւմուտքէն՝ Դանիշմանդի երկիրներով, երկրորդական աւաններէ զատ՝ կը բովանդակէին իրենց մէջ նաեւ խիստ կարեւոր եւ բազմամարդ քաղաքներ, ինչպէս Խարբերդ, Մալաթիա, Մարաշ, Ուռհա եւ Անտիոք:

Այս շրջանակը մեծ մասամբ հայաբնակ դարձած էր Յոյներու եւ Ասորիներու չափաւոր խառնուրդով մը. իսկ իսլամները շատ ցանցառ էին:

Փիլարտոս, իր մայրաքաղաքը եւ անոր անմիջական շրջակայքը պաշտպանելու հարկադրանքին տակ՝ չէր կրցած նոյն ատեն պաշտպանել Հայ թագաւորները Դանիշմանդի տան յարձակումներուն դէմ. այդ թագաւորութիւններուն սահմաններուն մէջ հաստատուած իշխանական տուներէն անոնք որ իրեն դիմեցին՝ ընդունեց եւ իւրաքանչիւրին առանձին կալուածներ յատկացուց:

Այսպէս, Արծրունի եւ Բագրատունի մնացորդները, կեդրոնական Փոքր Ասիայէն հալածուած, ապաստան գտան Փիլարտոսի քով, որ արդարեւ կանգուն մնացած միակ հայ իշխանապետն էր:

Փիլարտոս ալ, թէ հարաւէն եւ թէ արեւմուտքէն նեղուած, նախախնամական գտաւ հայ արքայազուննե-

րու զայրոյթը եւ զանոնք անմիջապէս իր պետութիւնը զօրացնելու եւ աւելի ընդարձակելու նպատակին գործածեց. միանգամայն զանոնք զոհացուց՝ դարուն սովորութեան համեմատ իւրաքանչիւրին յատկացնելով մէյ մէկ առանձին շրջանակ, ուր պիտի իշխէին աւատական դրութեամբ:

Ըստ Միքայէլ Ասորիի՝ Յոյները երբ լսեցին որ Փիլարտոս եւ իր որդերը յաջողած էին առնել շուրջանակի Կիլիկիոյ շատ մը երկիրները, Մարաշը, Քէսունը, Ապլասթանը եւ Մելիտինէն, նաեւ Ուռհան՝ Եփրատի անդի կողմը, եւ ուրիշ շատ տեղեր, տուին Փիլարտոսին պարգեւներ եւ *Սեւաստոս* կոչեցին զայն:

Այս պարգեւատուութիւնը հաւանօրէն կատարած է Ալեքսիոս Կոմնենոս Կայսրը, որ իմաստութիւնը կ'ունենար Փիլարտոսը — զոր իր նախորդը թշնամի կը նկատէր — դարձեալ Բիւզանդական կայսրութեան ներկայացուցիչ ճանչնալու եւ ընդունելու իբրեւ օրինաւոր տէր Ծոփաց, Մելիտինէի, Կոմմագենէի, Կատուռնիոյ եւ Լեռնային Կիլիկիոյ նահանգներուն:

Փիլարտոս, իր փափուկ կացութեան եւ վտանգաւոր դիրքին տեղեակ, չէ ուզած տեւականօրէն Բիւզանդական կայսրութեան դէմ թշնամական դիրք բռնել, անշուշտ անոր օժանդակութիւնն ալ ապահովելու համար, բայց դժբախտաբար իր գործին մեծութիւնը արժանի կերպով չըմբռնուեցաւ, եւ լքուած՝ Բիւզանդական կայսրութենէն, ընկճուեցաւ եւ իր հոյակապ ու Բիւզանդական Կայսրութեան համար նպաստաւոր ծրագիրը վիժեցաւ:

Եթէ Յոյները անկեղծօրէն գործակցէին Հայոց հետ կամ Փիլարտոսի կազմած Դաշնակցային պետութեան հետ, կարելի է որ Հայերը կարենային զօրաւոր պատւար մը կանգնել Սելջուկներու առաջացման դէմ:

Բիւզանդացիք, ինչպէս միշտ, այս պարագային ալ, ներքին փցուն վէճերու մէջ իրենց ոյժերը սպառելով հիւծած, պէտք եղած օգնութիւնը չհասցուցին ո՛չ Կապադովկիոյ Հայ քաղաքներուն եւ ո՛չ Փիլարտոս իշխանապետին:

Հակառակ ատոր՝ Փիլարտոս իր սահմանափակ ոյժերով քսան տարի յապաղեցուց Սելջուկեանց յառաջացումը եւ թերեւս մի քանի հարիւր տարի ուշ ձգեց Բիւզանդական պետութեան կործանումը, զոր Մանազկերտի պարտութենէն ետք զուգէ մէկ թափով իրագործէին Սելջուկեանք:

Յոյները՝ իրենց մեծամիտ ամբարտաւանութեան մէջ մոլորած, չկրցան ըմբռնել վտանգին մեծութիւնը եւ չունեցան զայն հեռացնելու համար վայրկեանին ու պարագային ներշնչած արթնամտութիւնը, որպէսզի ընդգրկէին իրենց մինչեւ այն ատեն հետեւած ուղղութենէն տարբեր քաղաքականութիւն մը, որ հնարաւոր դարձնէր պետութեան փրկութիւնը, ինչ որ թերեւս կարելի պիտի ըլլար՝ եթէ լրջօրէն անոր մտահոգութիւնը ունեցող մարդիկ գտնուէին պետութեան գլուխը, կայսրութեան հիմերը պեղուած այս օրերուն:

Սակայն կացութեան ծանրութիւնը ըմբռնող մարդիկ չգտնուեցան դժբախտաբար:

1084ին Սուլէյման Իպն Գութուլմուշ անակնկալ կերպով գրաւեց Անտիոքը եւ տիրեց Կիլիկիոյ, Փիլարտոսի դաւաճան որդին՝ Եդեսիոյ դուքս՝ Վարասմի կամ Պարասմի մեղսակցութեամբ:

Նոյն ժամանակամիջոցին՝ հաւանօրէն Դանիշմանդի զօրավարներէն Պոլսանի ամիրան կը գրաւէ Ջահան գաւառը (=Ալպիսթան եւ Կեօքսու):

Հետեւաբար Սուլէյման եւ Դանիշմանդ զինակցաբար կու գան Փիլարտոսի երկիրներուն վրայ, եւ անոր կէսը կը յափշտակեն, եւ թերեւս միւս կէսն ալ պիտի գրաւէին, երբ Սելջուկները պառակտեցան եւ Դդուշ՝ Ալփասլանի որդին եւ Մելիք Շահի եղբայրը եւ Սուլէյման իրարու հետ պատերազմի բռնուեցան, վասնզի Դդուշ՝ Անտիոքը եւ Հալէպը կը պահանջէր:

Յաղթանակը մնաց Դդուշի եւ Սուլէյման սպաննուեցաւ (1086), բայց Փիլարտոսի կացութիւնը չբարւոքեցաւ, վասնզի Դդուշ նոյնքան թշնամութեամբ վարուեցաւ իրեն դէմ որքան Սուլէյման: Փիլարտոս, որ Յոյներէն լքուած էր եւ կորսնցուցած իրեն զինակից Մարաշին եւ Մուծարղինի երկու իսլամ ամիրաները, հարկադրուեցաւ իր հպատակութիւնը առաջարկել Սելջուկեանց Մեծ Սուլթանին եւ կամ Պաղտատի ամիրապետին, զէթ ազատելու համար իր պետութեան վերջին մնացորդները:

Անիկա նոյն իսկ իսլամութիւնը ընդունելու չափ առաջ գնաց իր պետութիւնը փրկելու համար, եւ արդարեւ կրցաւ Պաղտատի խալիֆայէն արտօնութիւն ստանալ իր երկիրը ետ առնելու, սակայն մինչեւ որ եկաւ՝ իր երկրին մնացեալ մասն ալ գրաւուած գտաւ, հաւանօրէն Դդուշէն:

Այսպէս վերջ գտաւ նաեւ Փիլարտոսի իշխանութիւնը 1086ին, Կապադովկիոյ Հայ ճորտական թագաւորութիւններէն վեց տարի ետք միայն:

Հայ իշխանապետին պատմութեան ասպարէզէն անհետանալէն վերջ, ստորակարգեալներէն Մալաթիոյ ճորտ՝ Գաբրիէլ Յոյն (1), եւ շատ մը Հայ իշխաններ՝ ստեղծուած կացութեան համակերպեցան, եւ ջանացին առանձին առանձին կառավարել իրենց երկիրները, գերիշխանութեանը տակ բարի վեհապետի համբաւով եւ քրիստոնէից պաշտպան ու բարեկամ Մեծ Սելջուկին՝ Մելիք Շահի (1072—1092), որուն հարկատու դարձան:

Սակայն երբ Մելիք Շահ մեռաւ (1012) եւ իր պետութիւնը քայքայուեցաւ եւ ներքին խռովութիւններ եւ անկարգութիւններ ծագեցան իր ընդարձակածաւալ պետութեան մէջ, Տաւրոսի կողերուն վրայ հաստատուած Հայ իշխանութիւնները, որոնք գիտցած էին ճկիլ եւ խոնարհիլ՝ ապագային կարենալ յաղթելու համար, երբ Սելջուկեան արշաւանքին թափը անցաւ եւ Մեծ Սուլթանին մահով իր պետութիւնը պառակտեցաւ, ոչ միայն գլուխ վերցուցին եւ իրենց անկախութիւնը վերստացան, այլ նաեւ ջանացին իրենց սահմանները ընդարձակել:

«Ափսո՛ս որ համագործակցութեան ոգին չէր տիրեր այլեւս անոնց մէջ եւ ո՛չ ալ զօրաւոր

*(1) Գաբրիէլ, որ Phiarète կոչուած է Փելարտոսի անկումէն վերջ, տակաւին 15 տարի (մինչեւ 1101) շարունակած է իր անկախ իշխանութիւնը։ Անիկա իր իշխանութիւնը առած էր նոյնիսկ խալիֆայէն, իբրեւ Յոյն իշխան մը, որչափ որ իր տիրած երկիրը առաւելապէս հայաբնակ, մեր շահագրգռութեան շրջանակէն դուրս կը մնայ (տեսնել իր մասին Հայ Կեսարիա, էջ 474)։*

ձեռք մը կար որ ստիպէր զանոնք մէկ նպատակի եւ քաղաքական մէկ ծրագրի վրայ կեդրոնանալ:

Այսպէս, երբ անջատաբար ապրիլ որոշեցին, մէկիկ մէկիկ ալ կործանեցան՝ վերապրող միակ բացառութեամբ մը եւ այն ալ՝ շատ պարզ պատճառով մը (Կոմմագենացի, *Փիլարտոս Հայր*, էջ 85):

* * *

Ինչպէս բացատրուեցաւ, Փիլարտոսի քով ապաստանած էին Արծրունի եւ Բագրատունի թագաւորներու յետնորդներէն շատեր, ինչպէս նաեւ Հայաստանէն նոր խոյս տուող իշխաններ եւ զօրականներ, եւ Փիլարտոս զանոնք զոհացուցած էր՝ դարուն սովորութեան համեմատ իւրաքանչիւրին յատկացնելով մէյմէկ առանձին շրջանակ, որպէսզի իշխեն իբրեւ աւատառուներ կամ ճորտեր:

Ասոնցմէ ոմանք իր անկումէն եւ պատմութեան ասպարէզէն հեռանալէն վերջ իրենց շնորհուած հողերուն վրայ կրցան աւելի կամ նուազ երկար կեանք ունենալ եւ իբրեւ Հայ իշխանութիւն եւ նոյնիսկ թագաւորութիւն ապրիլ:

Դժբախտաբար Փիլարտոսի քով ապաստանած եւ անկէ հողաշնորհութիւններ ստացած իշխաններուն լիակատար ցանկը չունինք: Պատմութիւնը կը յիշատակէ անոնց գլխաւորները, որոնք իրմէ վերջն ալ ապրեցան եւ պատահօրէն նաեւ մի քանին անոնց՝ որոնք իր պետութեան հետ անհետացան: Հոս կը ներկայացնեմ ինչ որ ծանօթ է պատմութենէն:

## Ա· ՄԱՐԱՇԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Ինչպէս յիշուեցաւ, Փիլարտոս իր իշխանութեան մայրաքաղաք ընտրած էր Մարաշը:

Երբ ինք մեռաւ, Մարաշի մէջ իր իշխանութեան ժառանգորդ դարձած ըլլալ կը թուի Թաթուլ անուն անձ մը «*Իշխանաց Իշխան*» տիտղոսով:

Ասիկա ցոյց կու տայ թէ անիկա կը յաւակնէր շարունակել Փիլարտոսի գործը իբրեւ «զօրապետ Հոռոմոց», ինչպէս երբեմն Փիլարտոս (*Ուռ.*, 332 եւ 424):

Թաթուլ կրցած է իր գոյութիւնը պահել եւ իշխել Մարաշի եւ անոր անմիջական շրջանակին վրայ մինչեւ 1101 թուականը, Սելջուկեանց դիմադրելով: Սակայն 1101ին, երեք տարի առաջ իր քով հիւրասիրուած խաչակիրները, վանեցին զինք դաւաճանութեամբ եւ գրաւեցին ամբողջ Ջահանի գաւառը՝ Անաւարզայէն մինչեւ Ալպիսթան: Սակայն Ֆռանկները, իրենց ապերախտութեան պատիժը շուտով գտան, վասնզի նոյն տարին իսկ Մարաշի տէր դարձող Պեմունդ կոմսը ուրիշ խաչակիր իշխաններու հետ գերի ինկաւ Դանիշմանդի ձեռքը:

Ալեքսիոս Կոմնենոս կայսրը, Մարաշ ղրկեց Բուդամեդ զօրավարը, որ նուաճեց քաղաքը եւ Թաթուլը վերահաստատեց իր իշխանութեան մէջ՝ իբրեւ Բիւզանդական կուսակալ (1103): Յոյները դժբախտաբար հազիւ տարի մը կրցան պահել Մարաշը, որ 1104ին գրաւուեցաւ Անտիոքի լատին իշխանին եւ Թլպաշարի Ճոսլին կոմսին կողմէ: Թաթուլ Տիրամօր մեծարժէք պատկերը որ Մարաշ կը պատուուէր ծախեց Թորոս Ռուբինեան իշխանին եւ ինքը անցաւ Պոլիս (*Վարդան*, էջ 113, Ալիշան, *Սիսուան* էջ 49, Օրմանեան, *Ազգապատում*, էջ 1327, Կոմմագենացի *Փիլարտոս Հայր*, էջ 87–88), եւ այսպէս իր իշխանութիւնը վերջ գտաւ:

## Բ· ՔԵՍՈՒՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Փիլարտոսի քով ապաստանած իշխաններէն մէկն էր Գող մականուանեալ Վասիլ իշխանը, որուն Փիլարտոս յատկացուց կեդրոնական մաս մը իր պետութեան մէջ, Քեսունի շրջանակը, սահմանակից Ռապան եւ Հռոմկլայ բերդերով եւ Պեհեսնի եւ Հիսնի-Մանսուր քաղաքներով: Ասիկա կը հաստատէ Փիլարտոսի Վասիլի վրայ ունեցած մեծ վստահութիւնը: Վասիլ, որ իրաւամբ մեծ կարողութիւններով օժտուած մէկն էր Փիլարտոսէն 30 տարի վերջը (մինչեւ 1116) շարունակեց անոր գործը, միեւնոյն ուղղութեամբ թէեւ աւելի անձուկ սահմաններու մէջ:

Գրեթէ Փիլարտոսի պէս կարող իշխան մըն էր, որ սակայն չկրցաւ տեւական իշխանութեան մը հիմնադիրը ըլլալ, վասնզի անորդի մեռաւ (տես *Աւետաբեր*, 1913, էջ 1196 եւ 1218): Վասիլի (+1112 Հոկտ. 12) յաջորդեց Վասիլ «Տղայ» որուն իշխանութեան տակ էին Սամոսատ, Հիսնի Մանսուր, Քեսուն, Ռապան, Մարաշ:

Վասիլ «Տղայ», Եդեսիոյ Պաղտին կոմսին դաւաճանութեամբ կորոյս իր իշխանութիւնը 1116ին եւ պահ մը Կիլիկիա իր աներոջ Լեւոն իշխանին քով մնալէ վերջ գնաց Պոլիս ուր կայսրէն պատուուեցաւ (*Ազգապատում*, էջ 1317—8 եւ Չամչեան, Գ., էջ 31):

## Գ· ԵԴԵՍԻՈՅ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Վերը բացատրուեցաւ (տես էջ 98—99) թէ ինչպէս Բիւզանդացիք պատեհութենէն օգտուելով տիրացած էին Եդեսիոյ, երկար մահմետական տիրապետութեան շրջանէ մը վերջ, եւ ինչպէս Փիլարտոս զայն իր իշխանապետութեան ենթարկած էր: Փիլարտոս Եդեսիոյ դուքս կարգեց իր Վարսամ կամ Պարսամ անուն որդին որ հօրը դէմ դաւաճանեց 1085ին:

Փիլարտոս 1086ին, իր իշխանութեան վերջին տարին Եդեսիան տուաւ Պառակամանոս անուն մէկուն: Դժբախտաբար այս իշխանը որ Յոյն էր եւ «*այր բարի եւ աստուածասէր*», սպանուեցաւ Փիլարտոսի իշխաններէն մէկուն՝ Պարսամայի կողմէ դաւակցութեամբ քաղաքին իշխաններուն: Պատմագիրը կ'ըսէ թէ քաղաքացիք «*յաթոռ տուկութեան Ուռհայոյ*» դրին «*սպանող նորա զՊարսամա*» (Ուռ., էջ 281), վասնզի այլեւս Փիլարտոս տկարացած էր:

Եդեսիա, այսպէս դարձաւ անկախ իշխանութիւն մը, որ ձեռք բերաւ 1094ին Թորոս Կիւրապաղատ Հայը, որդի Հեթումի, որ նախապէս կ'ենթադրուի թէ կառավարիչ էր Խարբերդի:

Կ'երեւի իր իշխանութեան սկիզբը խոհեմութիւն համարած է ինքզինք Բիւզանդական կայսրութեան պաշտպանութեան տակ դնել եւ անոր ճորտ դառնալ:

Ասոր համար զինք *«Իշխան Հոռոմոց»* կը կոչէ Մատթէոս Ուռհայեցի (էջ 300 եւ 316):

Եդեսիան պաշտպանել դժուար էր շրջակայ իսլամ երկիրներուն դէմ, քանի որ Բիւզանդիոն անկարող էր օգնութեան հասնելու: Արդարեւ, Թորոս չկրցաւ պաշտպանել իր երկիրը Սելջուկներուն դէմ եւ պարտուած՝ քաշուեցաւ իր զօրքով Մելիտինէի Գաբրիէլ իշխանին քով, որ իր աներն էր: 1094ին Դդուշ՝ Թորոսը հաստատեց իր իշխանութեան մէջ (*Ուռ.*, 300), թերեւս քրիստոնեայ միաբնակները սիրաշահելու համար: Դդուշի սպանութենէն յետոյ Թորոս ապաստան տուաւ իր բարերարին տղուն՝ Ռատուանի, եւ անոր օգնեց որպէսզի *«նստի Սուլտան ի Հալպ եւ ի սահմանսն նորա»* (*Վարդան*, էջ 108): Քիչ վերջը Յունաց կողմէ պաշտպանեալ Ալփերակ անուն յափշտակիչը Հալէպի գահուն կը թունաւորէ, վասնզի հակառակ անոր որ ինք քաղաքը անոր հովանաւորութեան տակ դրած էր որպէսզի «առցի վրէժս ի թշնամեաց իւրոց», անիկա չար խորհուրդը կը սնուցանէր Թորոսը սպանելու եւ քաղաքը կողոպտելու (*Ուռ.*, էջ 303):

Արփիլակի զօրքը կը փախչի եւ Թորոս՝ Արփիլակի 53 օրուան իշխանութենէն վերջ դառնալ ձեռք կ'առնէ իշխանութիւնը (*Վարդան*, էջ 108—109):

1095—96 թուականներուն իր վրայ յարձակեցան քուրդ ամիրաներ, որոնց յաջողեցաւ յաղթել, սակայն վերջապէս վախնալով որ պիտի ընկնուի, խաչակիրները հրաւիրեց իր մօտ: Պաղտուին կոմսը Եփրատացիներու կողմը երբ քալեց, Թորոս անոր օգնեց որ Թըլպաշարի տիրանայ եւ յետոյ Ուռհայի մէջ հիւրասիրեց զայն: Սակայն ապերախտ Ֆռանկը իր բարեկամութեան հաւատիքներուն եւ երդումներուն հակառակ՝ չարաչար սպաննել տուաւ Թորոսը եւ յափշտակեց Եդեսիոյ իշխանութիւնը, 1099ին (Կոմմագենեցի, *Փիլարտոս Հայը*, էջ 86—87):

## Դ. ԱՆԴՐԻՈՒՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Մարաշի մօտերը կը գտնուէր Անդրիուն, որուն կ'իշխէր, 1078—1079ին Լպիխս կամ Պեխս (1) *«Իշխանն Հայոց» «այր քաջ եւ հզօր պատերազմող, ի տանէն Շիրակայ»* (*Ուռ.*, էջ 257): Ապահովաբար Փիլարտոս Շիրակէն գաղթող այդ հաւանօրէն Պահլաւունի իշխանը ինք հաստատած էր իբրեւ հողատէր-իշխան հոն, ուրիշներու կարգին:

Անդրիունը՝ վերջը տրուեցաւ Ներսէս Շնորհալիի մեծ հօրը՝ Ապիրատ իշխանին որ Գր. Մագիստրոսի փեսան էր եւ տէրը Տովքի:

## Ե. ՏՈՎՔԻ ՀՈՂԱՏԻՐՈՒԹԻՒՆ

Տովք Այնթապի կամ Տլուքի մօտերը դղեակ մըն էր, Փիլարտոսի հողերուն մէջ: Պահլաւունի կալուած էր եւ հաւանօրէն հաստատուած պիտի ըլլայ 1045ին շուրջ, երբ Գրիգոր Մագիստրոս (որդի Վասակ Հայունի) այս շրջանները փոխադրուած է: Տովքը հաւանօրէն դրուած է Գրիգոր Ապիրատ Մագիստրոսի (որդի Հասանայ) որդւոյն Ապլղարիպի, ինչպէս կ'ենթադրէ Հ. Ակինեան (տես *Ս.կօս*, Թ. գիրք, էջ 112): Ասիկա ամուսնացած էր Գր. Մագիստրոսի (+1058) քրոջը կամ աղջկան հետ, եւ խառնուած Պահլաւունի ընտանիքին:

Ապլղարիպի սերունդը պահած է Տովքը, Փիլարտոսի ատեն ալ, անշուշտ անոր հովանիին տակ:

Փիլարտոսի մահէն վերջ հոն կը պայազատէր 1095ին ի մօրէ Պահլաւունի եւ Գրիգոր Վկայասէր կաթողիկոսի քեռորդի Ապիրատ իշխան, նոյն սերունդէն: Տովքը լքուեցաւ ի վերջոյ Գրիգոր Ապիրատի յաջորդներէն, վասնզի դժուար էր պաշտպանել այս դղեակը:

## Զ. ՊԻՐԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Պիր՝ այսօր Պիրէճիկ, կը գտնուի Եփրատի վրայ, Եդեսիոյ մօտ:

Այս շրջանակին մէջ Պահլաւունիք հաստատուած էին, ինչպէս տեսնուեցաւ ԺԱ. դարուն կէսերը:

Փիլարտոս այս շրջանակին վրայ ալ իր ազդեցութիւնը տարածած էր եւ ապահովաբար հնազանդեցուցած հոն իշխողները:

Իր մահէն վերջ այս բերդին եւ շրջակայից հողատիրութիւնը շարունակուած է Պահլաւունիներու ձեռքը մնալ:

1117ին հոն կ'իշխէին Ապլղարիպ եւ Լիկոս հայ իշխանները, որ Պահլաւունի տոհմէն էին եւ Ներսէս Շնորհալիի հօրեղբայր՝ Վասակ իշխանին որդիները:

1117ին Պաղտին լատին իշխանը Պահլաւունեաց այս կալուածը յափշտակել ուզեց: Պիրի բերդականները երկար պաշարումէ մը վերջ ընկճուած՝ զայն յանձնեցին Պաղտինի, իսկ Ապլղարիպ եւ Լիկոս անցան Կիլիկիա՝ Թորոս իշխանին քով, եւ հաստատուեցան Անարզաբայի մէջ:

## Է. ԱՐԵՒԸՆՏԱՆԻ ՀՈՂԱՏԻՐՈՒԹԻՒՆ

Քիլիսի մօտ գտնուող Արեւընտանի մէջ նոյն թըւականներուն կը յիշուի Բազրատ անուն իշխան մը, որուն կալուածն ալ գրաւեց Պաղտին 1115—1120 թուականներուն:

Այս հողատիրութիւնն ալ հաւանօրէն Փիլարտոսէն հաստատուած պիտի ըլլայ:

## Ը. ԿԱՐԿԱՌԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Հաւանօրէն Փիլարտոսէն հաստատուած պիտի ըլլայ նաեւ Կարկառ բերդին շուրջ հողատիրութիւն մը, Եփրատացւոց շրջանակին մէջ, Սամոսատի մօտ, որ նոյնպէս շարունակուած է մինչեւ ԺԲ. դարուն սկիզբները:

Պաղտին այս իշխանութիւնը Եդեսիոյ կոմսութեան ստորադասեց եւ իրեն հպատակեցուց տեղւոյն

(1) *Հաւանօրէն պատուանունն որ տրուած էր նաեւ Անտիոքի դուքս Խաչատուր Արշակունի Անեցի իշխանին, Համապատասխան վէստին: Անունը անյայտ կը մնայ:*

Կոստանդին իշխանը (1117+), որ երբեմն Եդեսիոյ Թորոս Կիւրապաղատին ճորտն էր: Կոստանդինի յաջորդած է Միքայէլ որդին որուն երկիրը աւարի տուաւ Մալաթիոյ Պալաք ամիրան 1122ին, եւ երբ Կարկառացիք իրենց խոստումը չյարգեցին 1123ին բոլորովին պարպեց բերդը իր բնակիչներէն: Միքայէլ բերդը տուաւ Պօտուին թագաւորին եւ ինք այլուր մեկնեցաւ:

1149ին Վասիլ Պահլաւունի (*Գր. Երէց,* էջ 501—2) դարձեալ տէր կը դառնայ Կարկառի, անշուշտ իբր հողատէր-իշխան այդ կողմերու, մինչեւ որ խալամները կը զօրանան եւ վերջնապէս կը գրաւեն Կարկառը:

* * *

Փիլարտոսի իշխանապետութեան արեւմտեան սահմաններուն վրայ գտնուած այս հողատէր-իշխանութիւններէն զատ անիկա իր երկիրներուն արեւմտեան կողմը հաստատուած Հայ իշխանութիւններն ալ իրեն ստորադասեց եւ անոնց իր հեղինակութիւնը ճանչցնել տուաւ:

Մասնաւորապէս երբ չկրցաւ Սելջուկեանց ճնշումին տակ պաշտպանել Փոքր Ասիոյ անցքը բարբարոսներուն դէմ՝ օգնութեան չկրնալով հասնիլ Սեբաստիոյ եւ Ծամնդաւի Հայ թագաւորներուն, զէթ Տաւրոսի լեռնաշղթան անանցանելի ընելու համար Կիլիկիոյ վրայ ուշադրութիւն դարձուց եւ հոն հաստատեց արեւելեան Հայաստանէն իր երկիրները ապաստանող իշխաններէն մէկ մասը, Քեսունէն դէպի արեւմուտք՝ Կիլիկեան անցքերը պաշտպանելու համար:

Այսպէս, այդ շրջանակին մէջ իր ժամանակ հաստատուած, եւ իրմէն վերջ շարունակած են գոյութիւն ունենալ հետեւեալ իշխանութիւնները:

## Ա. ՏԱՐՍՈՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ

Այս իշխանութեան հաստատութիւնը, ինչպէս տեսնուեցաւ, ճիշդ Փիլարտոսի ժամանակները կատարուած էր:

Տարսոնի մէջ իբր թէ Բիւզանդացիք հաստատած էին Վասպուրականի նախորդ դուքս, Ապլղարիպը, Վեստ Խաչիկի թոռը եւ Հասանի որդին, որ խնամիացած էր Գագիկ Բագրատունիի հետ, եւ հաւանօրէն զինակից եւ բարեկամ էր ճորտ Հայ թագաւորներու, ինչպէս նաեւ Փիլարտոսի:

Անհաւանական չէ ենթադրել թէ Ապլղարիպ ալ ինքնակոչ կերպով տիրացած է այս շրջանակին, եւ Բիւզանդացիք աչք գոցած եւ զայք իրենց պաշտօնատարը նկատած են, ինչպէս Փիլարտոսի համար ըրած էին:

Այս իշխանութեան ենթակայ էին Մամեստիա, Ատանա, Լամբրոն եւ Պապեռոն (*Վարդան*, էջ 106):

Այս իշխանութեան գլուխ կը գտնուէր Բազունի իշխան 1098ին խաչակրաց Կիլիկիա հասած ատեն:

Բազունի՝ Ռուբինեան Կոստանդինի եւ Լամբրոնի Օշին իշխանին հետ օգնած է անոնց մասնաւորապէս պարէն տալով:

## Բ. ԼԱՄԲՐՈՆԻ ԵՒ ՊԱՊԵՌՈՆԻ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Օշին՝ Գանձակի Մայրեաց Ջուրք բերդին տէրը, որ Սելջուկեանց արշաւանքներուն պատճառով գաղթեց, իր Հալկում եղբօրը հետ, բոլոր տունով եւ ազատազուն իշխաններով, 1073ին եկաւ Կիլիկիա, ուր *«գրաւեց Սարակինոսներէն Լամբրոնի ամուր բերդը»*, կամ ուրիշ պատմութեան մը համաձայն Տարսոնի Ապլղարիպ իշխանը զինք փեսայացուց եւ երկու եղբայրներուն տուաւ Լամբրոն եւ Պապեռոն բերդերը, շրջակայ գիւղերով: Հաւանական չէ որ Օշին եւ Հալկում Կիլիկիոյ մէջ հարկադրուած ըլլան Արաբներու դէմ կռուելու, քանի որ Կիլիկիա Բիւզանդացւոց ձեռքն էր կամ աւելի ճիշդ Փիլարտոսի իշխանութեան տակ:

Փիլարտոս իբրեւ Բիւզանդացի պաշտօնատար, ինքն է որ կարգադրած պէտք է ըլլայ անոնց բնակութիւնը ի Կիլիկիա, եւ թերեւս նաեւ անոնց իբր օժիտ՝ Լամբրոնի եւ Պապեռոնի ստացութիւնը տրուիլը: Իր մահէն վերջ Բիւզանդացիք ճանչցած են Օշինի իշխանութիւնը, իբրեւ իրենց ստորադաս ճորտ մը:

Լամբրոնացիք Կիլիկիոյ Հայ թագաւորութեան մէջ տեղ մը գրաւած են իրենց յունասէր գործունէութեամբ:

## Գ. ՌՈՒԲԻՆԵԱՆՑ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ

Փիլարտոս իր տէրութեան արեւմտեան սահմանագլուխը պահպանելու համար Անդիտաւրոսի երկիրը ղրկեց Բագրատունի արքայական տան ազգական կամ հետեւորդ Ռուբէն անուն քաջ զօրականը, հարկաւ անոր տրամադրութեան տակ դնելով զինուորական ոյժ մը:

Ռուբէն Անդիտաւրոսի բարձունքներուն վրայ, Կոռոմոզոլի, Բարձրբերդի եւ Կոպիտառի շուրջը ամրացած, ամէնէն բարեբախտը եղաւ Փիլարտոսի ստորադաս Հայ իշխաններուն մէջ, որովհետեւ իր անկախութիւնը պահպանելով հանդերձ, յաջողեցաւ տարագիր Հայութեան բեկորներէն տեւական իշխանութիւն մը ստեղծել բուն Կիլիկիոյ մէջ, որ յետոյ թագաւորութեան աստիճանին ալ բարձրացաւ:

Ռուբէն, որ շուրջ 1080ին հաստատուած էր Կոռոմոզոլ, Բարձրբերդ, Կոպիտառ, Տաւրոսեան լեռնաշղթային մէջ, Զէյթունի մօտ, կը թողու տղայ մը՝ Կոստանդին անուն, որ կը տարածէ իր իշխանութիւնը գրաւելով Տաւրոսի մեծ մասը Թուրքերէն եւ Վահկան Յոյներէն:

Կոստանդին բռնած էր Տաւրոսի անցքերը եւ մասնաւորապէս տէրն էր Անարզաբա—Կեսարիա ճամբուն:

Խաչակիրները ստիպուած էին բանակցիլ անոր հետ: Կոստանդինի եւ Լատիններու յարաբերութիւնները լաւ էին:

Հայ պետը խաչակիրներուն տուաւ ազատ անցք եւ պաշար հայթայթեց Անտիոքի պաշարման ատեն:

Լատինները իրեն տուին «Պարոն» տիտղոսը ի փոխարէն իր մատուցած ծառայութեանց (հմմտ. F. Chalandon, Jean II, Comnène, A, Manuel I, Comnène, էջ 107):

Իր յաջորդները աւելի ամրապնդուեցան եւ ի վերջոյ իրենց միացնելով Տաւրոսի եւ շրջակայ գաւառներու մէջ հաստատուած Օշինեան իշխանութիւնը, հիմնեցին պետութիւն մը, որ երեք հարիւր տարիներու կեանք մը ունեցաւ (1080—1375) եւ իր տիրապետները դար մը վերջը ճանչցուեցան իբր թագաւոր, թէ՛ եւրոպական պետութիւններէն եւ թէ Բիւզանդական կայսրերու կողմէ (1185):

Լեռնային Կիլիկիոյ բարձունքները ապաստանող այս Հայ իշխանները եւ զինուորականները, որոնք ծնունդ տուին Կիլիկիոյ Ռուբինեան թագաւորութեան փաստը տուած են աշխարհի պատմութեան, հայկական անօրինակ ձեռներէցութեան եւ քաղաքակրթական մեծ ընդունակութեան, վասնզի առանց անոնց շատ դժուար պիտի ըլլար համոզուիլ թէ ազգ մը կրնար գաղթել իր բնագաւառէն դուրս ուրիշ երկիր մը եւ իր կենսունակութեամբ եւ ներքին թափուն ոյժովը, տիրել այդ երկիրին թէ զէնքով եւ թէ հոգեպէս, եւ հոն ունենալ քաղաքակրթական գեղեցիկ գործունէութիւն մը:

Իրենց հայրենի հողէն դուրս, օտար միջավայրի մէջ եւ օտար երկինքի տակ, պարագաներէն օգտուելով անկախ իշխանութիւն մը կազմակերպելու չափ ընդունակ գաղթական ժողովուրդ մը բացառութիւն մը միայն կրնար համարուիլ:

Եւ Հայերը այդ բացառութիւնը կրցան ըլլալ Հայաստանի բնական սահմաններէն դուրս տարբեր երկիրի մը մէջ կազմակերպելով թագաւորութիւն մը, որ նոյնիսկ միջազգային դեր մը կատարած է աշխարհի պատմութեան մէջ, զինակից գտնուելով եւրոպական քրիստոնեայ պետութեանց, որոնցմէ Հայերը կրցան օգուտ քաղել, զի կարճ միջոց մը միայն հեռու մնացին ուղղակի միւսլիմաններու հետ սահմանակից կամ բոլորովին անպաշտպան անոնց դէմ գտնուելէ:

Հետեւաբար մինչեւ շրջակայ լատին իշխանութեանց անկումը Կիլիկիա բոլորեց խաղաղ բարգաւաճման հիանալի շրջան մը, ուր այս անդրերկրեայ Հայոց թագաւորութիւնը հասաւ քաղաքակրթական այնպիսի աստիճանի մը որ կրնար իրեն ժամանակակից ամէնէն կարգաւորեալ եւ ընտիր պետութեանց հետ առանց ոեւէ վարանման բաղդատուիլ եւ համեմատուիլ:

Պետութիւնը իր վարչական, զինուորական, դատական կազմակերպութեամբ կը ներկայացնէր կանոնաւոր վիճակ մը, ինչպէս նաեւ վաճառականութիւնը, արուեստները եւ երկրագործութիւնը հասած էին այնպիսի բարձրութեան մը, որուն Հայերը մինչեւ այն ատեն տակաւին չէին հասած:

Մասնաւորապէս դիրքի այն մեծ առաւելութիւնը, որ Կիլիկիա ունէր իբրեւ արգաւանդ ու բարեբեր երկիր, իբրեւ ծովեզերեայ—այն ալ ազատ ծովու վրայ իշխող— շահաստան, իբրեւ ներքին հաղորդակցութեան ընտիր ուղի՝ զինքը կը դարձնէին վաճառականութեան ատակ երկիր մը:

Այս մեծ յարմարութիւնը պատճառ եղաւ որ ընդարձակ յարաբերութիւններ մշակուին Արեւմուտքի հետ, նաւագնացութեամբ, վաճառքներու փոխանակութեամբ եւ յարատեւ երթեւեկութիւններով, որոնք մէկ կողմէն հայ միտքը յարաբերութեան դրին Արեւմուտքի քաղաքակրթութեան հետ, միւս կողմէ Հայոց վաճառականական ձեռներէցութեան առջեւ բացին նոր ասպարէզներ եւ շահաստաններ, որոնք ուղղակի նպաստեցին Կիլիկեան հայ թագաւորութեան քաղաքական բարգաւաճման եւ խաղաղ զարգացման:

Դժբախտաբար բարբարոս ոյժեր հոս ալ եկան հասան եւ յաջորդական հարուածներով վերջապէս կործանեցին Կիլիկիոյ Հայոց թագաւորութիւնը 1375ին:

⁂

Ինչպէս Մեծ Հայաստանի մէջ պատահած էր, Բագրատունեաց կործանումէն վերջ, նոյնպէս նաեւ Կիլիկիոյ մէջ Ռուբինեան եւ անոր յաջորդող Լուսինեան հարստութեան կործանումէն (1375) վերջ, Կիլիկիոյ ինչ ինչ մասերուն մէջ Հայկական անկախ կղզեակներ մնացին, որոնք ժամանակ մը եւս պլպլացին:

Այսպէս, 1375ին Սիսի բերդին անկումէն եւ Լեւոն Ե. Լուսինեան թագաւորին անձնատուութենէն վերջ, թէեւ Հայոց Կիլիկեան թագաւորութիւնը վերջ կը գտնէր, սակայն Տաւրոսի եւ Ամանոսի բարձունքներուն վրայ Հայ իշխաններէն ոմանք իրենց համար ամրութիւններ եւ իշխանութիւններ կը կազմէին երբեմն բոլորովին անկախ ու երբեմն հարկատու Եգիպտոսի Սուլթանին կողմէ կարգուած Սիսի եւ Հալէպի ամիրաներուն:

Անոնք ամէնն ալ տեւականութիւն չեն ունեցած: Անոնցմէ ոմանք հազիւ սկսած՝ ընկճուած, ուրիշներ՝ մերթ նկուն ու աստուերային կեանքով մը, եւ մերթ անսովոր կերպով մը մախառած, քիչ մը ատեն ապրած եւ կլանուած են աւելի մեծ ոյժերէ:

Անոնց մէջ նշանակելի է Կոստանդին անուն մէկը, որ 48 տարի (1376—1424) «Թագաւոր» տիտղոսը կրած է (*Սամուէլ Անեցի*, Էջմիածին, 1893, էջ 170 Ալիշան *Սիսուան*, էջ 543):

Կոստանդինի ծագումը եւ ո՞ր ընտանիքէն ըլլալը անյայտ կը մնայ: Իր իշխանութեան առաջին խանձարուն ուր ըլլալն ալ անյայտ է, թէեւ որոշ է թէ նախապէս Սիս չէր, քանի որ Սիսի մէջ հաստատուած էր Եգիպտացի կուսակալը:

Կոստանդին թագաւորի գոյութեամբ կը հաստատուի թէ Լեւոն Ե.ի գերի իյնալէն վերջ, Կիլիկիոյ Հայերը չէին համակերպած շուտով իրենց անկախութեան ջնջումի գաղափարին, եւ Տաւրոսի կամ Ամանոսի բարձունքներուն վրայ ամրացած իշխաններէն մին, այս Կոստանդինը, հռչակած են թագաւոր կամ այդ անունով ճանչցած:

Կոստանդին թագաւոր, կ'երեւայ թէ հետզհետէ կրցած է իր դիրքը զօրացնել եւ եթէ ոչ ինքնագլուխ, գոնէ Եգիպտացւոց հովանաւորութեան տակ, իշխանութիւն մը հաստատել Սիսի մէջ:

Անով կը մեկնուի այն տագնապը որուն կը մատնուին Սսեցիք 1403—1404ին, երբ Լէնկթիմուրի դէպի Արեւելք մեկնելէն վերջ, այն կողմերուն տիրակալութեան հետամուտ Րամազան թաթար իշխանը կ'երթի Սիսի մօտ եւ զայն գրաւելու համար յարձակումներով կը նեղէ:

Սսեցիները ձանձրացած իրենց կրած նեղութիւններէն եւ տեսնելով որոշապէս Թաթարներու զօրանալը, յուսահատութեան մատնուեցան եւ իրենց ի՛նչ ընելը որոշելու համար Կարապետ կաթողիկոսին նախագա-

հութեամբ ժողով գումարեցին եւ համաձայնեցան քաղաքը լքանելու եւ պարպելու *(1404) (Սիսուան*, էջ 542):

Դժբախտներու առաջին խումբը մեկնեցաւ, իրեն գլուխ ունենալով *«Պարոն Կարապետն, Թոռն Կոստանդին Թագաւորին»*:

*«Այլ որք մնաց ի մեծատանց եւ յիշխանաց, եւ ի պարոնաց եւ ի Թագաւորի ցեղից, ոչ այր եւ ոչ կին, ոչ արու եւ ոչ էգ, համայնքն իւրաքանչիւր ցեղիւ եւ ազգականօք կոչեցին* (չուեցին)*: Եւ յետ երթալուն իշխանացն եւ մեծատանցն, ի Սիս մնացեալ աղքատք եւ չքաւորք որ ոչ ունէին զկարողութիւն փախչելոյ՝ ետուն զՍիս, Յունիսի վեց»*: Այսպէս 1404 Յունիս 6ին Սիս կը յանձնուի Ռամազանի եւ Եգիպտացիք պահ մը կը վանուին Կիլիկիայէն եւ Կիլիկիա կ'ենթարկուի թաթարական տիրապետութեան:

Կոստանդին թագաւոր, որ կ'երեւի թէ ձեռներէց եւ աննկուն անձ մըն էր, Սիսը կը թողու եւ կը քաշուի հաւանօրէն լեռնապաւառ մը, նպաստաւոր առիթի մը ակնկալութեամբ անշուշտ, եւ չի հեռանար երկիրէն, թէեւ իր թոռը հեռացուցած էր:

Անիկա կը շարունակէ իր իշխանութիւնը մինչեւ 1424, վասնզի երկու տարբեր աղբիւրներ կը հաստատեն անոր իշխանութեան տեւողութիւնը 48 տարի *(Սիսուան*, էջ 543*)*: Ուրեմն Կոստանդին այս ձախողուածէն վերջ 20 տարի եւս մաքառած է Կիլիկեան Հայ թագաւորութիւնը վերականգնելու, մինչեւ որ բոլորովին յուսահատ՝ ինքն ալ լքեց երկիրը եւ *«ի Կիպրոս անցաւ, եւ ընդ նմին բազում իշխանք, իւրաքանչիւր տոհմականօքն հանդերձ, զի եկն ի վերայ նոցա Սուլթանն Եգիպտոսի Մուզէֆէրն եւ ոչ կարացին զդէմ ունել» (Սիսուան*, էջ 543*)*:

Կոստանդին մինչեւ 1426 տակաւին ողջ էր, վասնզի նոյն թուականին գրուած ձեռագրի մը յիշատակարանը *(Թորոս Աղբար Բ.*, էջ 425*)* կը հաւաստէ թէ աւարտած է *«ի Թագաւորութեան Հայոց Կոստանդեայ»*:

Կիլիկիոյ մէջ Կոստանդինէն վերջ, Հաճընի եւ Զէյթունի մէջ Հայերը միշտ ունեցած են ձորապետական հանգամանքով անկախութիւն՝ տեղական շատ սահմանափակ միտքով, ենթակայ Տաւրոսեան լեռներու մէջ ամրացած թուրքմէն ձերապետութիւններուն, որոնք երկար ատեն չեն ճանչցած ոեւէ գերիշխան պետութիւն, այլ միայն տուրք կամ հարկ տալով բաւականացած են:

***

## Բ.

1914—1918ի պատերազմի վախճանին, 1918 Հոկտ. 31ին Թուրքիոյ հետ կնքուած Մունտրոսի զինադադարի պայմանագիրը Դաշնակիցներուն իրաւունք կու տար գրաւելու՝ Ա. ոեւէ ռազմագիտական վայր երբ ստեղծուած կացութիւնը Դաշնակիցներու ապահովութեան սպառնար *(յօդ.* 7*րդ)*, Բ. Տաւրոսի փապուղին *(յօդ.* 10):

Ըստ այսմ Դաշնակիցներու Ընդհ. Բանակատեղին 28 Նոյեմբեր 1918ին, թուրք պաշտօնեաներով կառավարուելու պայմանով, կը հրամայէր Թուրքերուն պարպել հետեւեալ շրջանակները Կիլիկիոյ մէջ:

Ա.— Դեկտ. 13ին՝ Ջիհանի Արեւելեան կողմը,

Բ.— Դեկտ. 17ին՝ Սիհունի արեւելեան կողմը եւ Ատանա—Տաւրոս գիծին հիւսիսը,

Գ.— Դեկտեմբեր 21ին՝ մինչեւ Բոզանդի:

Այսպէս, Անգլիական գրաւման շրջանին, թուրք կառավարական կազմը մնաց անփոփոխ, եւ երկիրը միայն զինուորական գրաւման ենթարկուեցաւ:

Ֆրանսական կառավարութիւնը Գնդ. Պրէմոնը խումբ մը Ֆրանսացի սպաներով, Զօր. Ալէմպիի տրամադրութեան տակ դրաւ կառավարելու համար Կիլիկիան, դարձեալ թուրք պաշտօնեաներով եւ զայն անուանեց *«Հայաստանի վերին վարիչ»* (25 Դեկտ. 1918*)*: Զօր. Ալէմպի զայն կը ճանչնար վերին վարիչ Սուրիոյ հիւսիսային գօտիին, բոլոր գրաւման գօտին միութիւն մը նկատելով, Պաղեստինի, Սուրիոյ եւ Լիբանանի հետ:

Գնդ. Պրէմոն, պաշտօնի կը ձեռնարկէր 2 Փետր. 1919ին, միշտ կախում ունենալով Անգլ. Ընդհ. Սպայակոյտէն, որուն հրահանգով կը կատարուէին վարչական բոլոր գործառնութիւնները:

Արդ, ըստ զինադադարի պայմաններուն եւ 1919 Փետր. 20ի յաւելուածական պայմանագրութեան 6*րդ յօդուած*ին տրամադրութեան, Ընդհանուր հրամանատարին վերապահուած էր՝ Հայերը իրենց հայրենիքը դրկելու իրաւունքը, «երբ այդպիսի բաղձանք մը յայտնուէր» եւ անոնց տուները, հողերը եւ ինչքերը «անմիջապէս վերադարձնել»: Դաշնակիցները օգնեցին Հայոց դարձին եւ Հայերը Կիլիկիոյ մէջ քրիստոնեայ տիրապետութեան մը հաստատութիւնը ապահովութեան գրաւական մը համարելով, սիրով սկսան դառնալ իրենց տեղերը:

1919 Յուլիսին Անգլիա եւ Ֆրանսա համաձայնեցան որ անգլիական զօրքին տեղը անցնի Ֆրանսականը՝ քանի որ Կիլիկիան *(*Ատանայի կուսակալութիւն*)* եւ Մարաշի, Այնթապի եւ Ուրֆայի սանճագները եւ Սուրիան իրենց ազդեցութեան կամ հոգատարութեան յանձնելու համաձայնուած էր, ըստ 1916ի կարգադրութեան, որ Դաշնակիցները Թուրքիոյ հողերուն բաժանման համար իրենց մէջ ըրած էին:

Այսպէս, Ֆրանսական զօրքը մտաւ Մարաշ, Այնթապ, Քիլիս, Պիրէճիկ, Սուրուճ, Ուրֆա, Ճարապլուզ եւ Հալէպի կայարանը:

1919 Հոկտ., Նոյեմ. եւ Դեկտ. ամիսներուն, ուր անգլ. զօրքը Ֆրանսականով կը փոխարինուէր, ներգաղթի հոսանքը կը մեծնար եւ Հալէպի, Տէր-Զօրի, Բորդ-Սայիտի քէմբերուն Հայերը, երկաթուղիի ճամբով Կիլիկիա կու գային:

Տարագրեալներու այս ներգաղթը կը կատարուէր «Հայաստանի եւ Սուրիոյ Ֆրանսական Հանրապետութեան Բարձր Կոմիսէրին» հրամանով եւ ծախքով:

Կը կազմակերպուէին դպրոցներ, գործարաններ ու արհեստանոցներ: Կը հիմնուէին Ատանայի, Սիսի, Հաճընի, Տէօրթ-Եօլի, Օրմանիէի, Հարունիէի, Տարսոնի եւ Մերսինի մէջ որբանոցներ, առանց հաշուելու Այնթապի եւ Մարաշի որբանոցները, որոնք Անգլիացիներէն եւ Ամերիկացիներէն կը փոխանցուէին Ֆրանս. իշխանութեանց:

Ֆրանսացիք նոր գրաւուած հողամասերու կառա-

վարութեան համար անգլ. դրութեամբ, բաւականացան զինուորական պարզ գրաւումով մը:

1919 Դեկտ. 2ին սկսաւ Ֆրանսական վարչութիւնը, որ առաջին օրէն ինքզինքը զգաւ զանազան դժուարութիւններու առջեւ, ինչպէս էին պաշտօնէութեան սահմանափակ թիւը, Քեմալական շարժումը, անգլիացի քանի մը սպաներու գրգռիչ արարքները, հաղորդակցութեանց անկանոնութիւնը եւայլն:

Ֆրանսական իշխանութիւնները անկարող եւ ապիկար հանդիսացան իրենց դէմ գործադրուած սադրանքներուն դիմադրելու, հակառակ անոր որ տեղացի քրիստոնեայք, մանաւանդ Հայերը անձնուէր էին Ֆրանսայի, խանդավառուած այն գաղափարով թէ Ֆրանսական հովանաւորութեան տակ Կիլիկիա պիտի ունենար տեղական Հայ վարչութիւն մը, քանի որ Ֆրանսա այս շրջանակը *«Փոքր Հայաստան»* կամ *«Կիլիկիա»* անունով կը ճանչնար եւ իր մարզպանը, որ վերին ներկայացուցիչն էր, կը կրէր *«Հայաստանի եւ Սուրիոյ Բարձր Կոմիսէր»* կամ *«Սուրիոյ եւ Կիլիկիոյ Բարձր Կոմիսէր եւ Արեւելքի բանակին վերին հրամանատար»* տիտղոսը:

Հետեւաբար Հայերը Կիլիկիոյ վրայ նայեցան իբրեւ իրենց երկիրը, եւ հոն հաւաքուիլ սկսան:

Ըստ Գնդ. Պրեմոնի տեղեկագիրին (տես *Հայկաշէն Տարեգիրք*, Կ. Պոլիս, 1922, էջ 332–374), 1919ի վերջերը Կիլիկիոյ մէջ Հայերուն ընդհանուր թիւը կը հասնէր 120,000ի՝ 400,000 ընդհանուր բնակչութեան վրայ:

Մանաւանդ Ֆրանսացիք չկրցան դիմադրաւել Քեմալական շարժումը եւ առաջին օրէն զայն ընկճել:

1919 Օգոստոսին Ամանոսի մէջ երեւան եկան չէթէներ, որոնք հետզհետէ աւելի յանդուգն դարձան:

Չէթական շարժումը արդէն Հոկտեմբերին ստացաւ ծանրակշիռ հանգամանք մը:

1919 Դեկտ. 27ին Քեմալականք Մարաշ հասցուցին 100ի չափ արիւնկզակ ձիաւորներ, որոնք առանց ընդդիմութեան քաղաք մտան եւ գրաւեցին բերդը, եւ հոն պարզեցին թրքական դրօշակը:

Ֆրանսա խայտառակ պայմաններու մէջ պարպեց Մարաշը 1920 Փետրուարի սկիզբը, եւ պատճառ եղաւ 7—8 հազար Հայերու ջարդուելուն: Անոր վրայ քրիստոնեայ տարրին վստահութիւնը խախտեցաւ:

1920 Մարտ 27ին Սիս պաշարուեցաւ եւ Յունիս 7ին պարպուեցաւ եւ բնակչութիւնը Ատանա ապաստանեցաւ:

1920 Ապրիլ 9ին Բոզանթի պաշարուեցաւ:

1920 Ապրիլ 1ին Այնթապ ապստամբեցաւ եւ 1921 Փետր 11ին անձնատուր եղաւ, տասը ամիսներու շատ դժնդակ պաշարումէ մը ետք:

Այսպէս, Արեւելեան զօտիի հողամասերու կացութիւնը շատ փափուկ վիճակ մը առաւ եւ Կիլիկիոյ մէջ աւելի եւս վատթարացաւ: Մանաւանդ Ուրֆայի կացութիւնը շատ վտանգաւոր հանգամանք մը ստացած էր: Ուրֆա պաշարուեցաւ Մուսթաֆա Քեմալի մարդոցմէ, եւ պահակազօրքը իր նահանջի ընթացքին ծուղակը ինկաւ եւ ջարդուեցաւ:

Բուն Կիլիկիան տակաւին հանդարտ էր, սակայն հետզհետէ վտանգը կը մեծնար:

Ճար կը գրաւուէր եւ ապստամբութիւնը կը ծաւալէր եւ կը հասնէր Հաճըն: Մինչեւ 1920 Նոյեմբեր ամիսը Հաճըն դիւցազնաբար դիմադրեց, սակայն վերջապէս ինկաւ Քեմալականներու ձեռքը եւ 8000 բնիկ Հայեր եւ 2000 շրջակայ գիւղերէն հոն ապաստանող, Հայեր ջարդուեցան:

Իսկապէս Քեմալական արշաւանք մը տեղի չունեցաւ Կիլիկիոյ մէջ, միայն 2—3 հոգի եկան՝ որոնք ստիպեցին գիւղերը որ իրենց օժանդակեն դրամով, պարէնով եւ զգեստով եւ զինուորներով, *Թապուր*ներ կազմելու համար:

1920 Ապրիլ 10ին կուսակալ Ճելալ պէյ՝ Ատանայի մէջ եւս շարժում մը պատրաստեց բայց ձախողեցաւ:

Ֆրանսացիք, քրիստոնեայ (Հայ, Քաղդէացի, Ասորի, Յոյն, Իտալացի) կամ իսլամ (Արապ, Ալեվի) կամաւորներու խումբեր կազմելու ձեռնարկեցին, ինչ որ պահ մը խրախուսեց Հայերը:

Ֆրանսացիք Հայկ. Լեգէոնի սպաներէն Շիշմանեանի հրամանատարութեան տակ ձեռնարկեցին կազմել Հայ զինուորական ոյժ մը, որուն պաշտօնական անունն էր «Groupements Arméniens»:

8 Յունիս 1920ին Գնդ. Պրեմոնէ ստորագրուած պաշտօնագիր մը պաշտօն կու տար յիշեալին «վերակազմել եւ կեդրոնացնել հայկական բոլոր ոյժերը, պաշտպանել հայկական թաղը, ապահովել Հայոց ձեռք զտնուած զինուորական զէնքերուն հակակշիռը եւ հաստատել հաստատուն ու կարգապահ կազմակերպութիւն մը (une organisation solide et discipliné)»:

Ազգ. Միութիւնը հայկական ուժերու վերին հրամանատարութիւնը տուաւ Պ. Շիշմանեանի եւ կուսակցութիւններն ալ իրենց վստահութիւնը յայտնեցին: Իսկ ժողովուրդը, առ հասարակ հրճուանքով եւ համակրանքով վերաբերուեցաւ այս յուսադրիչ իրողութեան հանդէպ:

Զինուորագրուած հայ երիտասարդներ, որոնց մէջ կային կիներ ալ, ամէն օր կը մարզուէին կանոնաւոր կերպով:

Տեղակալ Զանգալեան եւ Լ. Փորթուգալեան, կ'օգնէին վերին հրամանատարին:

Ատանայի պաշարման միջոցին, եղած խնդրանքներու վրայ, Հայերը, գիշեր թէ ցերեկ կը կռուէին Ֆրանսական զօրքին կողքին:

Սակայն Քեմալականները հետզհետէ աւելի յանդուգն կը դառնային, դաշտ կ'իջնէին, քրիստոնեայ բոլոր գիւղացիները եւ գործաւորները կը հաւաքէին եւ զանոնք լեռ կը տանէին, զանգուածային կերպով ջարդելու համար:

Ատանա պաշարուելու վտանգին տակ էր, եւ այդ թուականէն սկսեալ ամէն օր գրեթէ ընդհարումներ կ'ըլլային:

Մայիս 3ին Մերսին կը պաշարուէր:

Ֆրանսա այնքան տկար էր որ 1920 Մայիս 28ին Քեմալականները զինադադար մը պարտադրեցին իրեն, եւ պաշարեցին երկիրին մայրաքաղաքը՝ Ատանան Մայիսին, Յունիսին, Յուլիսին եւ Օգոստոսին սկիզբը, «այն աստիճան որ՝ քանի մը շաբթուան միջոցին անոր անկումը կարելի եւ դժբախտաբար հաւանականու-

թիւն դարձաւ ո՛չ թէ թշնամիին ուժին այլ մեր (Ֆրանսայի) տկարութեան հետեւանքով (Գեն. Է. Պրեմոն):

1920 Յունիս 18ին, գիշերը՝ ժամը 11,30ին, զինադադարին պայմանաժամը լրացաւ: Ուստի Քեմալականները Մերսինի վրայ բուռն յարձակում մը սկըսան, սակայն ետ մղուեցան, եւ Յունիս 19ին առտուն ժամը 3ին կրկին փորձեցին յարձակիլ: Նաւահանգիստը խարսխած նաւերու հրետանին օժանդակեց քաղաքին պաշտպանութեան: *«Այս միջամտութեան համար յետոյ վերին հրամանատարութիւնը ցաւ յայտնեց»* (Գեն. Պրեմոն):

Ատանայի ներքին կացութիւնը ժամէ ժամ ծանրակշիռ կը դառնար, մանաւանդ Ֆրանսացւոց տկարութիւնը երեւան գալէն վերջ, եւ Քեմալականք յաջողութիւններ ձեռք կը բերէին Ֆրանս. ոստիկանութիւնը եւ ոստիկան-զինուորութիւնը կազմալուծելով եւ Ատանայի իսլամ բնակչութիւնը պարպելով:

1920ին ամէնէն տագնապալից ամիսը եղաւ Յուլիսը:

Մինչեւ այդ թուականը Մարաշի ջարդին յաջորդած էին Սիսի եւ Ամանոսի ամբողջ շրջանին ամենատխուր պայմաններու տակ պարպումը, Հաճընի, Տէօրթ-Եօլի, Օսմանիէի եւ Նաճարլըի պաշարումը, եւ այս յուզիչ ու պատմական դէպքերու ընթացքին, բազմահազար Հայերուն նահատակութիւնը, ինչպէս նաեւ հիմնայատակ կործանումը թուրք գրաւման տակ ինկած բազմաթիւ հայաբնակ գիւղերու:

Վտանգին մեծութեան առջեւ, Ֆրանսական իշ-նութիւնք իրենց բոլոր զինուորական միջոցները յասկացուցած էին Ատանայի, Տարսոնի եւ Մերսինի պաշտպանութեան: Յամառ զրոյցներ կը շրջէին միեւնոյն ատեն, թէ Ֆրանսացիք պիտի պարպեն նոյնիսկ այս վերջին երեք քաղաքները:

Մտահոգութիւնը ընդհանուր էր: Կը մտածէին թէ այն պարագային երբ պարպումի զրոյցները իրականութիւն դառնային, որքան հնարաւորութիւն կար կազմակերպելու հայ ժողովուրդի զանգուածային գաղթը եւ կամ մնալը, աչք առնելով բոլոր հաւանականութիւնները:

Մարդու եւ հարստութեան ահաւոր կորուստներէ վերջ, տառապանքէ դարձած ժողովուրդը, տակաւին իր վէրքերը չդարմանած, կ'ենթարկուէր նոր տառապանքներու եւ դժբախտութեանց ու խրատուած՝ իր խորհրդաւորութեամբը աւելի եղերական դարձած Մարաշի պարպումէն, գերմարդկային ճիգեր ու զոհողութիւններ կ'ստանձնէր ապահովելու համար իր պատիւը, ինչքը եւ իր կեանքը, սպառնացող վտանգներուն եւ թշնամի ու բարեկամաբար անբարեացակամ ներգործութիւններուն դէմ:

Յունիսի մէջ զէն ի ձեռին իրենց ինքնապաշտպանութեան կռիւը կը մղէին Ատանայի, Հաճընի, Նաճարլըի, Տէօրթ-Եօլի, Այնթապի, Տարսոնի եւ Մերսինի Հայերը, ոմանք օժանդակելով Ֆրանս. ուժերուն, եւ ոմանք ալ առաւել կամ նուազ չափով օգնութիւն ստանալով անոնցմէ:

Սակայն Ֆրանսացիք ընդգրկելով թրքասէր քաղաքականութիւն մը, շփացնել սկսան Թուրքերը, չարաչար յուսախաբութեան մատնելով Հայերը, որոնք կը տրամադրէին իրենց ֆիզիքական եւ բարոյական օժանդակութիւնը Ֆրանս. իշխանութեանց:

Հայերը նոյնիսկ մարտական խումբեր հանեցին Ատանա քաղաքէն դուրս, ապահովելու համար դաշտի եւ քաղաքի, ինչպէս նաեւ Նաճարլըի վրայով Տէօրթ-Եօլի եւ Ատանայի միջեւ կանոնաւոր հաղորդակցութիւնը: Այս խումբերը պաշտօն ունէին նաեւ դիւրացնելու Ատանայի բնակչութեան պարենաւորումը, որ օրէ օր կը դժուարանար:

Յուլիս 17—18ին Ֆրանս. իշխանութիւնք արտօնեցին 500 հոգինոց զին. ուժ մը կազմակերպել, պաշարուած Հաճընին օգնութեան երթալու համար: Սակայն տակաւին այս ձեռնարկը վերջնական ձեւ չառած դէպքերը զահավիժեցան:

Յուլիս 20—22ին Քեմալականներու յարձակումները հասան իրենց ուժգնութեան ամենաբարձր աստիճանին: Ատանայի հարաւային թաղերը մտած էին թուրք խումբեր եւ կռիւներ տեղի կ'ունենային գրեթէ քաղաքին մէջ:

Յուլիս 23ին երբ Ատանա մէկ կողմէն կը ռմբակոծուէր, Գեն. Պրեմոն կը պահանջէր Հայերէն 5000 հոգի հայկական միլիսի մը կազմակերպութեան համար:

Հայերը այս առաջարկին ընդառաջ գացին հակառակ անոր որ Սեւրի դաշնագրութեան մասին աննըպաստ լուրեր կը հասնէին եւ կասկածի տակ կը ձըգէին Կիլիկիոյ ազատութիւնը: Հայերը ամէն ջանք թափեցին կացութիւնը բարելաւելու համար, պարենաւորել Տէօրթ-Եօլը, որուն բնակչութիւնը ոչ միայն թոյլ չէր տուած որ թշնամին մտնէր քաղաքին, այլ եւ Յուլիս 22—23ին խիզախ եւ կազմակերպուած յարձակումով մը, գրաւած էր շրջակայ Գարա-Քիլիսէ, Օճագլը, Չայլը, Գուզուլունու եւ Կիրիտլի գիւղերը եւ ապահոված քաղաքին պարենաւորումը:

Բայց աւելի կարեւոր ձեռնարկի մը գաղափարը միտքերու մէջ տեղ կը գտնէր: Հայերը քանի որ կասկածի մէջ էին որ Ֆրանսա պիտի լքէր Կիլիկիան, կը խորհէին կազմել կիլիկեան կառավարութիւն մը, Սեւրի խորհրդաժողովին տալիք որոշումէն առաջ: Այս նպատակով կ'որոշեն Օգոս. 2ին Ատանայի մէջ հռչակել Կիլիկիոյ անկախութիւնը:

Ռամկավար եւ Ազատական կուսակցութիւնները սակայն խոհեմութիւն կը համարեն նախ լրացնել Հաճընի արշաւախումբին պատրաստութիւնները, յետոյ զօրացնել Իւրէյիլիի մէջ գործող կռուող խումբերը եւ այսպէս հաշիւի առնուելիք ոյժով մը հեռանալ Ֆրանսական գրաւման շրջանակէն դէպի պարպուած եւ Թուրքերու ձգուած վայրերը, ի հարկին մինչեւ Սիս, ու հոն հռչակել անկախութիւնը, ապահովելով նաեւ Հաճնո ուժերուն գործակցութիւնը

Երեւոյթաբար «խոհեմ որոշում» մը, որ սակայն դարձեալ ցնորք մըն էր, վասնզի կ'ենթադրէր անգիտակցութիւն, քանի որ Հայերը որքան ալ գերգնահատէին իրենց ոյժերը, դարձեալ անզօր էին Թուրքերու կազմակերպուած ուժին դէմ, սակայն գոնէ սա առաւելութիւնը ունէր այս ծրագիրը որ Ֆրանսացիները Հայերու դէմ հանելու առիթ չէր տար:

Ինչպէս շատ մը պարագաներու մէջ, այս անգամ սակայն կուսակցական հակամարտութիւնները թոյլ չտուին գոնէ այսքան մը խոհեմութիւն ունենալու:

Դաշնակցութեան կեդր. Մարմինը կանխելու համար Կիլիկիոյ Ազգային Միութեան ծրագիրը, եւ իրեն

սեփականելու համար Կիլիկիոյ անկախութեան հռչակման փառքը, պաշտօն կու տայ Պ. Վերածինի «ինքնավարութեան փորձի կառքին անիւը շարժել տալու համար... երթալ Կիլիկեան Միջագետք եւ ինքնավարութիւն հռչակել» (*Հայրենիք*, 1920 Դեկտ. 11):

Արդարեւ, Պ. Վերածին Յուլիս 31ին կը մեկնի Իւրէյիլի եւ 43 գիւղեր կը գրաւէ եւ 2 Օգոստոս 1920 ժամը 5ին, Հայկական Միջագետքի մէջ համախմբըւած Հայ ուժերու ներկայութեան, Սիհունի եւ Ճիհունի միջեւ տարածուող ամբողջ հողամասը, որ ծանօթ է Իւրէյիլի անունով, հայկական անկախ շրջան կը յայտարարէ Ֆրանսական հովանաւորութեան տակ: Արդէն բռնուած է Չիֆթլիկ, Իւրէյլի, Դարա-Օղլան, Տէլիֆէր Օղլու, Ազպէյլի, Շէյխ Մուրատ, Արաբքէօյ, Պիւքմէսօյլու, Ջանազ, Քաշա Քէօյ, Քըլիճ Քէօյ, իսկ արեւմտակողմը Սիհուն պիտի գծէր այս անկախ շրջանին սահմանը:

Նոյն օրն իսկ անկախութեան հռչակումը կը հաղորդուի Ֆրանսական իշխանութեան, Ամբողջական Հայաստանի պատուիրակութեան, յարանուանութեանց պետերուն, կուսակցութեանց եւ լրագիրներուն:

Անմիջապէս կը կազմուի նաեւ առժամեայ կառավարութիւն մը սա կազմով.

Պետրոս Ախիկեան՝ Նախարարապետ,

Մ. Ոսկան՝ Արտաքին Գործոց նախարար,

Պաղտասար Հայտուկեանց՝ Ներքին Գործոց,

Կարապետ Խանիկեան՝ Պարենաւորման,

Հայկունի Անտոնեան՝ Պատերազմական:

Ազգ. Միութիւնը կը հրաժարեցնէ Վերածինը իր առած ինքնագլուխ եւ «անխոհուրդ» քայլին համար, որպէսզի կարելի ըլլայ պահել իր պաշտօնական հանգամանքն ու յարաբերութիւնները Ֆրանսացիներուն հետ: Բայց դժբախտաբար Ազգային Միութիւնն ալ նոյն սխալը գործեց, վանելի մրցակից կուսակցութիւններն ալ Դաշնակցութենէն ետ չմնալու համար իրենք ալ նոյնանման յայտարարութիւններ ըրին, եւ կազմեցին կառավարութիւններ:

Այս կացութեան առջեւ, Օգոստոս 3ին, Գերագոյն Խորհուրդ եւ Ազգային Խորհուրդ՝ Ամբողջական Հայաստանի պատուիրակ Միհրան Տամատեանի գլխաւորութեամբ, համախորհուրդ կ'որոշեն՝ Օգոստոս 4ին Կիլիկիոյ անկախութիւնը հռչակել Ֆրանսայի հովանաւորութեան տակ:

Արդարեւ, նոյն գիշերը Տամատեան կը խմբագրէ Proclamation մը, որ Օգոս. 4ին առտուն գումարուած արտակարգ համաքրիստոնէական համագումարին մէջ կը կարդացուի եւ բոլորին հաւանութեան կ'արժանանայ եւ կ'ստորագրուի քրիստոնեայ համայնքներու հոգեւոր պետերէն, Ամբողջական Հայաստանի Պատուիրակութեան ներկայացուցիչէն, Ազգ. Միութիւնը բաղկացնող հոսանքներու ներկայացուցիչներէն:

Պատուիրակութիւնը որ տարաւ յիշեալ յայտարարութիւնը, «լաւ ընդունելութիւն գտաւ Գնդ. Պրեմոնէն, որ խաբելով թէ ուշ մնացած են այսպիսի *ակտի* մը կատարման համար, խոստացաւ զայն նոյն օրն իսկ հաղորդել անթել հեռագիրով Պէյրութի Haut-Commissaire Ջօր Կուրոյի եւ կեդր. կառավարութեան» (Ս. Կեպէնլեան, *Եգիպտահայ տարեցոյց*, 1925, էջ 127) (1):

Համաքրիստոնէական խորհուրդին կողմէ անմիջապէս յայտարարութիւն մը գրուեցաւ ժողովուրդին, որ խանդավառուած կատարուած *ակտ*ին զսպած բարեացակամ ընդունելութենէն, դրօշազարդեց քաղաքը հայկական եւ Ֆրանսական դրօշակներով:

Օգոստոս 5ին Միհրան Տամատեանի գլխաւորութեամբ կը կազմուի կառավարութիւն մը բոլոր քրիստոնեայ տարրերու մասնակցութեամբ:

Այսպէս,

Մ. Տամատեան՝ վարչապետութիւնը,

Վ. Ժամկոչեան՝ պատերազմական եւ ոստիկանական,

Ա. Կէնճեան՝ ելեւմտական,

Կ. Նալպանտեան՝ երկրագործական,

Տոքթ. Պէզիրճեան՝ ներքին գործոց,

Տոքթ. Մնացականեան՝ արտաքին գործոց,

Հաննա (Ասորի)՝ կրթական,

Յոյն մը՝ դատական նախարարութիւնները կ'ստանձնէին:

Յետոյ անմիջապէս կը դիմեն Հայկական վերին հրամանատարին, Ատանայի ժանտարմըրիի եւ ոստիկանական հայ փոխ հրամանատարներուն ու անոնց կը հաղորդեն կառավարական կազմը, յանձնարարելով ապահովութեան համար նախազգուշական միջոցներ, մանաւանդ կէսօրէն վերջ ժամը 3,30ին:

Արդարեւ նոյն ժամուն կառավարութեան անդամները կառքերով կը մեկնին եւ կուսակալին պաշտօնատունը հասնելով կը բազմին հոն:

Գնդ. Պրեմոն կը պատմէ թէ «առտուան ժամը 10ին ատեններ, Պ. Միհրան Տամատեան՝ մոռնալով իր գրեթէ դիւանագիտական հանգամանքը, տասնեակ մը Հայերու հետ, ընդհանրապէս օտարական եւ ղեկավարներ՝ Հայ քաղաքական չորս կուսակցութեանց, մտաւ կուսակալին գրասենեակը, հոն հաստատուեցաւ եւ ինքզինքը հռչակեց Կիլիկիոյ կառավարիչ՝ Ֆրանս հովանաւորութեան տակ...:

«Գնդ. Պրեմոն անմիջապէս որ իմացաւ, խզել տուաւ հեռաձայնը եւ հրաւիրեց Պ. Տամատեանը որ դադրեցնէ այս *ծիծաղելի կատակերգութիւնը*: Պ. Տամատեանի այն պատասխանին վրայ թէ՝ ուժի առջեւ միայն տեղի պիտի տայ, Գնդ. Պրեմոն կուսակալին գրասենեակը գընաց (2) եւ սուինաւոր զինուորներ բերել տուաւ. ասոր վրայ Հայերը անմիջապէս կառավարչատունէն հեռացան: Ծանուցուեցաւ Պ. Տամատեանի որ Ֆրանսական իշխանութիւնները ամէն յարաբերութիւն կը

(1) *Դիտել տալ աւելորդ չըլլայ թէ Գնդ. Պրեմոն, բոլորովին տարբեր կերպով կը բացատրէ խնդիրը: Ահա իր բառերը «Օգոստոս 4ին քրիստոնեայ համայնքները վարչական հակակշիռի պետին կը մատուցանէին ֆրանսական հովանաւորութեան ներքեւ իրենց անկախութեան մէկ յայտարարութիւնը: Անոնց պատասխանուեցաւ թէ այս յայտարարութիւնը կառավարութեան պիտի փոխանցուի, բայց շատ ուշ կու գար ան՝ պետութեանց որոշման վրայ ազդեցութիւն մը կարենալ ընելու համար» (Գնդ. Պրեմոն,* Կիլիկիա, 1919—1920, Հայկաշէն Տարեգիրք, 1922, էջ 332—374):

(2) *Իրեն հետ ունենալով Ֆրանս. Տեղեկատու Դիւանին պետը Մ. Կիզը:*

դադրեցնեն իրեն հետ: Այս բոլորը մէկ ժամ չտեւեց: Այս *ողբալի* ցոյցը վերջացաւ՝ իր պաշտօնին մէջ վերահաստատելով կուսակալը» (*Հայկաշէն Տարեգիրք*, էջ 370):

Իսկ Ջօր. Տիւֆիէօ կը ցրուէր զեկոյց մը, որ «գէշ հովիւներ» կ'անուանէր այդ *արթ*ին դերակատարները եւ սպառնալիքներ կ'ընէր «անդորրութիւնը խանգարողներուն» հասցէին:

«Բոլոր բացատրութիւնները՝ տրուած Ֆրանսական իշխանութեան, առնուած քայլերու իսկական նշանակութեան մասին, մնացին ապարդիւն» (Սեդրակ Կէպէնլեան, *նոյն*, էջ 131):

Հայկական կամ Համաքրիստոնէական կառավարութիւնը ցրուեցաւ, հազիւ մէկ երկու քառորդներու կեանք ունենալէ վերջ, իսկ Հայկական Միջագետքի անկախութիւնը հազիւ ապրեցաւ վարդի մը չափ:

Այսպէս, Կիլիկիա ալ կ'ունենար «խաղոյ կառավարութիւն»ներ, ինչպէս երբեմն 1464ին Աղթամար ունեցած էր իր Սմբատ «խաղոյ» թագաւորը:

Գործը ապարդիւն ցոյցէ մը աւելի ոչ մէկ արժէք ունեցաւ:

Կիլիկիոյ վիճակը հետզհետէ աւելի վատթարացաւ:

1920 Սեպտեմբեր 4ին Գնդապետ Պրէմոն ետ կոչուեցաւ եւ իրեն յաջորդեց Հասլէրի:

Իսկ «*Կիլիկիոյ մէջ վարչական պաշտօներ վարելու համար այս միջոցին Պէյրութէն ղրկուած սպաները նպատակ ունենալ կը թուէին՝ քանդելու ինչ որ շինուած էր. այս բանին մէջ լաւ յաջողեցան*» ինչպէս կը հաւաստէ Գնդ. Պրէմոն (*Հայկաշէն Տարեգիրք*, էջ 371):

Շատ ժամանակի պէտք չեղաւ որպէսզի Ֆրանսա աւանդական պաշտպանը Արեւելքի քրիստոնեաներուն, անոնց դաւաճանէր բոլորովին, 9 Մարտ 1921ին Լոնտոնի համաձայնութեամբ (Պրիան-Պէքիր Սամի) Կիլիկիոյ այն մասերը որոնք Սեւրի դաշնագիրով իրեն թողուած էին, դարձնելով Թուրքիոյ: Էնկիւրիի մէջ 20 Հոկտ. 1921ին Ֆրանս. պատուիրակ Ֆրանքլէն Պույեոնի եւ Քեմալական կառավարութեան միջեւ կնքուեցաւ Ֆրանքեւթուրք համաձայնութիւն մը, որուն համաձայն 4 Նոյեմբեր 1921էն կ'սկսէր Կիլիկիոյ պարպումը, երկամսեայ պայմանաժամով:

Այսպէս Ֆրանսա Թուրքիոյ կը թողուր 25,000 քառ. քիլ. տեղ, պատճառելով Հայոց մեծ յուսախաբութիւն.

ՎԵՐՋ Ս. ՄԱՍԻ